Բ

Վայր՝ Սուխարայ վանք

190 բ Գրեցաւ ի սուրբ վանքս Սուխարայ, ի յերկիրս Քաջբերունի, ի թուականութեան ՊԿԸ. (1419)։ Զգծողս յիշեցէք ի Քրիստոս։

255

ՃԱՌԸՆՏԻՐ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 247, 380 և Մ.Տ.Մ.

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Երուսաղէմ

Փառք... վասն որոյ սուրբ և երջանիկ սրբասնեալ և ամենայն առաքինութեամբ զարդարեալ տէր Պօղոս, որ էր արքեպիսկոպոս յԵրուսաղէմայ, զոր սուղ ինչ աւուրց եղև կաթողիկոս ամենայն Հայոց՝ յոյժ ջերմեռանդ սիրով ցանկացող և փափագող եղեալ յայսմ բազմերանգ և յոգնազորով մատենիս...։ [Յիշեցէք] զտէր Պօղոս կաթողիկոսն, զհայրն իւր Զաւտարշահ, և զմայրն իւր Թեմնա, և զամենայն զերախտաւորսն...։ Եւ ընդ նմա յիշեսջիք զԱստուածատուր միայնակեցն զԼեոնակողմեցին, որ ի ծախքն աւգնական եղեն, և զԳինեպետ միակեց... այլև առհասարակ միաբանք և բնակիչք սուրբ Յակոբա և սուրբ Փրկչին և սուրբ Հրեշտակապետացն...։

Եւ արդ, եղև զբաւ գրչութեան այսմ տառիս ձեռամբ մեղսամած և յոգնամեղ և յոյժ մեղաւորի, որ զանունս միայն ունեմ և բարի գործոց դատարկ... Մանուէլ անուն յորջորջողի, և միւս գրագիր [Յոհանէս] Եզընկեցի՝ հեզահոգի և բարի։ Եւ երկուքս սկսաք գրել ի սուրբ աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ, ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ գերեզմանին, ի հռչակաւոր վանքս՝ ի սուրբ Յակոբ։ Եւ գիրքս այս... գրեցաւ ի թվականութեան Հայոց ՊԿԸ. (1419)*, և իշխանութեան այլասեռից՝ ի սուլտանութեան Շեխոյն, և ի հայրապետութեան տեառն Պօղոսի, որոյ զգիրքս ետ գրել, և եպիսկոպոսութեան սուրբ քաղաքիս... տէր Մարտիրոս Անեցոյն, զոր տէր աստուած պահեսցէ մինչև ի խորին ծերութիւն, և զվակա[կա]լ սուրբ Յակոբու զԳրիգորէ փիլիսոփայն և զայլ սպասաւորք սուրբ դամբարանիս։ Այլ և զկրաւնաւոր եղբայրքս՝ զՄկրտիչն, որ օգնական էր ուղղել և յազորդելն, և Յակոբ աբեղայն, որ զտէտրն շինէր, և խազէր, և ի կապելն, և Սաեփանոս աբեղայն...։ Այլ և յայսմ ամի կաթողիկոսն, որ էր նստած յաթոռն՝ Գրիգոր անուն՝ մականուն էր Խանձողաչուր, վասն ապիրատ ինչ գործոյ՝ ընկեցեալ եղև յաթոռոյ։ Եւ եկեալ դուռսն զտէր Պօղոս, և ստացեալ յաթոռ կաթողիկոսութեան, և եդ յիւրում տեղոջ զիւր խոստովանահայրն՝ զՄաթէոս աբեղայն՝ վերակացու գրոցս, և շատ աշխատեցաւ արդեամբք և գործովք սպասաւորել մեզ, այլ և Հայրապետ... աբազայն և զմայրն իւր զապաշխարողն, որ յոյժ աշխատութեամբ սպասաւորէր մեզ յեփել և թափել հանապազ սպասաւորութիւն

* Ձեռագրի ընդօրինակությունն սկսված է եղել 2 տարի առաջ՝ 1417 թվականին։

մեզ, զկոկող թղթիս առաջինն զՄկրտիչ, որ | | | մօտ ի կաթուղիկոսն, և Խաչատուր ժամկոչն և զեղբայրն մեր զՅորաչն:

Արդ, գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ և անարհեստ գրչի Մանուէլի և Յոհանէսի, ի մեծի գերահրաշ աստուածակոխ քաղաքս յԵրուսաղէմ, ի հռչակաւոր վանքս ի Յակոբ | | | *և յոյժ աշխատեցաք, և ես Մանուէլս ծաղկեցի, և ռայիսի որդի Յակոբ աբեղայն լաւ օգնական եղև մեզ ի ծաղկելն, զի հայր նորա Էւար ռէսն գնացեալ էր ի Կիպրոս կղզին, այս աւուրքս խաբար երիք, թէ փոխեալ է ի Քրիստոս.... Եւ յորժամ սկսաք զգիրքս ի թուն ՊԿԶ. (1417) էր, ի մտանել ՊԿԸ. (1419) թուն եղև կատարումն գրոցս...։

Բ

Քրիստոս աստուած, քո սուրբ վկայիցն բարեխօսութեամբ և ամենայն սրբոց ողորմեա սրբազան արքեպիսկոպոսիս Երուսաղէմայ տէր Պաւղոսի, որ յոյժ փափաքմամբ ետ զսա գրել յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և միւս արքեպիսկոպոսիս Երուսաղէմայ տէր Մարտիրոսի, և սպասաւորացն սուրբ Յակոբայ՝ առաջնոց, միջնոց և վերջնոցս, այլ և Աստուածատուր միակեցին, և ծնողացն, և ինձ՝ եղկելի բազմամեղ և փծուն անարհեստի գրչիս՝ Մանուէլիս, և ծնողաց իմոց, և բազմերախտ հոգևոր մաւրն իմոյ, և թուղթս կոկող Մկրտչին, այլ և կարդացողացդ և լսողացդ և որ զամէնն ասեն, ամէն։

Գ

Գրիչ՝ Յովհաննէս Երզնկացի

Ո՛վ սուրբ ընթերցողք և միաբանք սուրբ Յակոբայ, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զարհիեպիսկոպոսն Երուսաղէմայ զտէր Պաւղոսն և զծնողսն իւր, վասն զի ջերմեռանդ սիրով գրել ետ զգիրս յիշատակ իւր և ծնողաց իւրոց, ի վայելումն սուրբ Յակոբայ, ընդ նմին և զանարժան գծողս զՅովհաննէս աբեղայ [Երզնկեցի]...։

256

ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ, ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 1551

Գրիչ՝ Յոհանէս
Վայր՝ Երուսաղէմ

200 բ Գրեցաւ սայ ի թվականիս Հայոց ՊԿԸ. (1419), ի մարտի ԻԱ. (21), ի յԵրուսաղէմ քաղաքիս, ի սուրբ Յակոբայ դուռս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Յոհանէս աբեղի, ի խնդրոյ ճգնազգեաց կուսակրօն Յակոբ տրեղի և հարազատ եղբօր իւր Գրիգոր սրբասնունդ միակեցի։

Արդ, աղաչեմ, ով ոք հանդիպի յիշեսջիք ի տէր զվերոյասացեալսդ, և աստուած, որ առատն է, յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմի...։

* Երկու տող քերված։

## 257

## ՄԱՇՏՈՑ

Փիրղ. Նոտ. 58, Մարզուան

Գրիչ՝ Աթանագինէ Սեբաստացի
վայր՝ Սամսոն քաղաք

... Արդ, գրեցաւ. հայր Մաշտոցս ձեռամբ անարհեստ գրչի Աթանագինէ Սեբաստացւոյ, ի քաղաքս որ կոչի Սամիսոն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տէր Յակոբայ հեզի և ճշմարտախորհի, որ կարդաք կամ օրինակէք՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղուցեալ գրիչս զԱթանագինէ կրօնաւորս...։ Գրեցաւ Մաշտոցս ի թուին ՊԿԸ. (1419)։

## 258

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Վիեն. 505, Տաշ. Ցուց. էջ 978

Գրիչ՝ Յովհաննէս

ա

18 բ Զտառապեալ ծրողս Յովհաննէս անուամբ վարդապետ եւ զործով [Թափուր], եւ զԳրիգոր կրաւնաւոր ստացող սորին յիշման արժանի առնէք։

բ

48 բ Զստացող տառիս զԳրիգոր կրօնաւոր, եւ զծնողսն իւր զՍիմէոն եւ զԸռուզ, եւ զայլ ամենայն արեան մերձաւորսն, նաեւ զԿիրակոս Լիանոսենց՝ հանդերձ ծնողօքն, յիշման արժանի առնէք։

գ

71 բ ... Նա եւս զԿիրակոս եւ զծնողսն՝ զԼիանոս եւ զՄարգարիտ յիշման արժանի առնէք։

դ

110 ա Զեղկելի գրիչս զՅոհաննէս, եւ զծնողսն իմ, եւ զեղբարսն յիշեցէք ի Քրիստոս...։ Թվ. ՊԿԸ. (1419)։

ե

194 ա ԶԿիրակոս, եւ զծնողսն իւր, եւ զկողակիցն իւր զՍուլտան, եւ զամենայն արեան մերձաւորսն յիշելոյ եւ աստուածողորմի ասելոյ արժանի առնէք, պատահողք կտակիս։

զ

206 ա Զերջանիկ եւ զհանգուցեալ բարունիքն մեր զՅոհաննէս եւ զԿիրակոս յիշելոյ արժանի առնէք...։

Է

311 ա ԶԳրիգոր կրօնաւոր եւ զծնօղսն իւր զՍիմէոն եւ զՌուզ յիշման արժանի առնէք ընթերցողք տառիս։ Ընդ նոսին եւ զԿիրակոս եւ զծնօղսն իւր՝ զԼիանոս եւ զՆազխաթուն, որ ձեռնտու եւ օժանդակ եղեւ ի սուրբ գիծս յուսոյ աղագաւ...։*

## 259

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 2142

Գրիչ՝ Բարսեղ

ա

301 բ ... Եւ արդ, ես՝ թախիծ մտօք և տառապեալ անձամբ Բարսեղ սուտանուն քահանայ գրեցի զվերջին մասն սուրբ գրոցս, աղաչեմ խոշորութեան և սխալանաց անմեղադիր լերուք, և եղբայրաբար ուղղեցէք։

Բայց գրեցաւ ի թուաբերութեանս մեծի ՌՃ. և Կ. և Ը. (1419),
302 ա յաստուածապահ և ի գերահռչակ ուխտս, ‖ որ կոչի սուրբ Ցակոր, յիշատակ սրբասնեալ կրօնաւորի Սիմէոնի սպասաւորի բանի, և ծնօղաց իւրոց, և ամենայն մերձաւորաց իւրոց։

Արդ, յերեսս անգեալ աղաչեմ զսրբասնեալ մտնգունս սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՍիմէ[ոն], և զծնօղսն, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զյիշման արժանիսն...։

Աչքս չու.նի լոյս, անմեղադիր [լերուք]։**

բ

337 բ Ով, Սիմէոն՝ սիրող բանի
Եւ բարձօղ յուս զխաչն Քրիստոսի,
Դու հասանիս մտացըդ խորհրդի,
Զոր ցանկայիր այսմ բանի,
Տէր զքո խնդիրսդ քեզ շնորհի,
Ցորժամ յիշես զբանս յատենի,
Մի ողորմի զիս յիշեա, իմ սիրելի,
Զի եմ լցեալ մեղօք ի լի,
Եւ շիւարեալ յոյժ եղկելի,
Միթէ Քրիստոս ողորմեսցի
Քեզ և մեզ 'ւ ամենայնի։

* Հրատարակիչը հայտնում է, որ նման հիշատակագրություններ ձեռագրում շատ կան։

** Այս տողը գրված է ներքին լուսանցքում։

## 260

### ԲԱՌԳԻՐՔ

**Երևան 3201**

ա

Գրիչ՝ Բարսեղ

219 բ ... Աւարտեցաւ գրկունքս ի Թվականիս ՊԿԸ. (1419), ձեռամբ անարհեստ գրչի Բարսղի, ի խնդրոյ Սիմէոնի սպասաւորի բանի, որո տէր աստուած վայել[ել] տաց[է] ընդ երկայն աւուրս, ամէն...։

բ

142 բ ... Արդ, կատարեցաւ գիրքս, որ կոչի Բառ[գիրք] || ձեռամբ անիմաստ գրչի Բարսղի սուտանուն քահանայի, ի հռչակաւոր սուրբ ուխտս, որ կոչի սուրբ Ցակոբ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Ցակոբայ, և սուրբ Ցոհաննիսիս, սուրբ Գ. Մանգանցն, ի խնդրոյ Սիմէոնի պատուական կրօնաւորի՝ սպասաւոր[ի] բանի, որոյ տէր աստուած վայել[ել] տացէ ընդ երկայն աւուրս...։

## 261

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6253**

Հետ. ստացող՝ Ուլուն

5 ա ...Արդ, այսմ վերջի ստացողի և քրիստոսադաւան սուրբ աւետարանիս ցանկացաւղ եղեալ պարոն Ուլուն ոսկեգործ, և ամենայն պարկեշտութեամբ զարդարեալն համեստ և իմաստուն աղախինն Քրիստոսի Քուլաք-խաթունն, ի հալալ արդեանց իւրեանց ծախիւք, ի կենդանութեան իւրեանց յիշատակեցին ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ, որ յանուն սուրբ Առաքելոցն շինեալ է...։

Գրեցաւ վերջի յիշատակարանս ի մեծ թվականիս Հայոց ՊԿԸ. (1419), ի մարտի ամսոյ Զ. (6)։

## 262

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

**Երևան 2117**

Գրիչ՝ Ղազար

430 ա ... Գրեցաւ աստուածաշունչ գիրքս և տառս | | |, որ կոչի Քարոզգիրք, [ձ]եռ[ամբ] բազմամեղ և խխայտեալ մեղաւք ոգւոյ Ղազար աշակերտ բանի, ի վայելումն մ[անկա]նց Սիոնի։

Արդ, աղաչեմ զհանդիպողսդ, յորժամ ճաշակէք ի քաղցրահամ պտղոյ սորա, յիշեսջիք սրտի մտաւք եղկելի գծողակս, և թողութիւն մեղաց հայցեցէք, և սխալանացս անմեղադիր լինել աղաչեմ, զի հարկ կարդալոյն ի վերայ կայր։ Ի թվ. ՊԿԸ. (1419)։*

---

* Մ. Տէր-Մովսիսյանի ցուցակում տեղեկություն կա նաև 1419 թվականին ընդօրինակված Գր. Տաթևացու Քարոզգրքի մասին (Երուսաղեմի Մատենադարանի № 2148 ձեռագիր)։

Այդ ձեռագրի հիշատակարանից Մ. Տէր-Մովսիսյանը քաղել է հետևյալ տեղեկությունները. «Գրիչք Յովհաննէս որդի Ամիրբէկի և Մարթայի և Ներսէս, թղթի կոկող՝ Յովհաննէս Երևանցի՝ միակեցս։





## 263
## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն
*Երևան 5514*

Գրիչ՝ Թումայ Մինասենց
վայր՝ Աղթամար

297 ա *...Եւ արդ, ես՝ ... սուտանունս աբեղայս* Թումայ, *տեսի զփափագ*
*սորա և զսէրն, զոր ունէր առ հոգևորսն, և իմով իսկ տկար անձամբս*
*յանձն առի և ամենակարաւղ զաւրութեամբն աստուծոյ կատարեցի*
*զսուրբ աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս* Աղթամար, *ընդ հո-*
*վանեաւ սուրբ Խաչի և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տեառն*
Դաւթի, *և ի թվաբերութեան հայկազեանս տոմարի* ՊԿԹ. *(1420), յամ-*
297 բ *սեանն սահմի ԺԵ. (15), ի դառն և ի նեղ ժամանակի, որ եր ‖ կիր*
*ամենայն երերեալ կայ և տատանեալ ի ձեռաց անաւրէն ազգին նե-*
*տողաց։ Արդ, աղաչեմ զամենեսեան... ուղիղ մտաւք աստուած-ողորմի*
*ասասջիք ստացողի սուրբ աւետարանիս՝ պատուական և ընտրեալ*
*կրաւնաւորին* Վարդանայ, *և ծնաւղաց նորին* Յոհանիսին *և* Ամէն-Տիկ-
նէն, *և եղբարցն* Թումային *և* Աստուածատրուն, Գրիգորին *և* Սիոնին, *և*
*կենակցաց նոցին, և զաւակացն, և քըւերցն* Ուսլունին *և* Շամշային, *և*
*հաւրեղբարցն* Վարդկէն *և* Սարգսին, *և եղբաւրորդոյն իւրոյ* Կարապետ
298 ա *կրաւնաւորին, և մաւր նորա* Հռիփսիմէին, *և* Աւետիս *կրաւն ‖ աւորին, և*
*հաւրեղբաւրորդւոյն* Թումային, *և* Յովանիսէն, *և* Սարգսին, *և այլ ամե-*
*նայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեացն և հանուգուցելոցն...։*
*...Եւ արդ, ես՝ վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ և առաջինս ի*
*դասս մեղաւորաց...* Վարդան *անուամբ միայն աբեղայս... ստացա*
299 ա *զսա յարդար վաստակոց իմոց և ետու զսա ըն ‖ ծայ և նըւէր ի մեծ*
*և ի հըռչակաւոր և յանուանի սուրբ ուխտս, որ* Պառկի *վանք յոր-*
*ջորջի, որ կայ հանդէպ* Ոստան *քաղաքի, ի դուռն գերամաքուր սուրբ*
*Աստուածածնին և սրբոյն Գէորգեայ զաւրավարին, ի մխիթարութիւն*
*անձին իմոյ և ի յոյս փրկութեան։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսութեամբ*
*և կամ ընթերցմամբ, յիշել զմեզ ի տէր սրտի մտաւք, և աստուած-*
*ողորմի ասել մեզ և մերոցն ամենայնի՝ յիշելոցն ի սմա։ Այլև հոգևոր*
*զաւակին իմոյ* Թումայ *կրաւնաւորին՝ հանգուցելոյն առ Քրիստոս, և*
*ծնաւղաց նորին* Աստուածատրուն *և* Շաքարին, *և հոգևոր եղբօրն իմոյ*
Յոհանին, *և կենակցին իւրոյ* Թանմէլէքին, *և ամենայն հաւատացելոց*
*քրիստոնէից, որոց տէր կամեսցի, ամէն։*

*Գարձեալ, յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր յիշել ի*
299 բ *Քրիստոս և զսպասաւորք սուրբ եկեղեցեացս։ ‖ Նախ և առաջին զբաղ-*
*ձալին հրեղինաց, զամբիծն հոգով և զանարատն մարմնով՝ զիմաս-*
*տասէր և զհանճարեղ և զմեծահամբաւ րաբունին՝* զՅովաննէս, *որ է*

պատճառ շինութեան և ամենայն բարեկարգութեան սուրբ ուխտիս, և խրատիչ և վարժիչ ամենեցուն, և պարծանք ամենայն Հայաստանեայց եկեղեցեաց. զոր աէր աստուած պահեսցէ զսա պարագայց ամօք պարծանք աշխարհիս մերոյ, ամէն։ Եւ ծաղկեալ ալեաւք, մանաւանդ թէ իմաստութեամբ, զառաջնորդ սուրբ ուխտիս զՍտեփաննոս փիլիսո-
փայ, և զԱստուածատուր վարպետ, և զհոգևոր եղբարքս մեր զՄկրտիչ
մահդասի և զՅովաննէս, զԱբրահամ և զՄարտիրոս, զՂազար և զՅովան-
նէս, զՄարգարէ և զԿարապետ, զՅովսէփ և զԱստուածատուր, զՍտեփան-
300 ա նոս և զՅովաննէս, զԱտոմ և զԱստուածատուր, զՄկրտիչ և զՍտեփան || նոս
մահդասի, զՍտեփաննոս և զՄկրտիչ, և զայլ ամենայն գործաւորք և
սպասաւորք սուրբ ուխտիս...։

Ի թուականութեան Հայկազեան տումարիս ՊԿԸ. (1419), յամսեանն արեգի ԻԴ. (24)* տեղաց բաժակ բարկութեանն աստուծոյ, այ-
300 բ սինք || Ն է մարախն ապականիչ, եմուտ ի յերկիրս մեր, և ուր և եգիտ
կիսահաս վաստակ՝ եկեր, և ընկէց զսերմ իւր յերկիր, և սասանեցոյց
զամենեսեան, զոր տէր Յիսուս սատակեսցէ զնա հոգւոյ բերանոյ իւ-
րոյ և քաղցրութեամբ ակամբ հայեսցի ի տառապեալ ազգս քրիստո-
նէից, ամէն։

Սուրբ աւետարանս Պատրկի վանից սուրբ Աստուածածնին է, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սորին, ոչ վանիս հայր և ոչ այլ ոք, ոչ ծախելով և ոչ գրաւելով, և ով յանդրգնի և հանէ՝ պատժի և պատուհասի յաստուծոյ...։**

## 264

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 2880

Գրիչ
վայր՝ Աղուանք

308 ա Գրեցաւ գիրս այս, որ կոչի
Հարցմունք Գրիգորի բանասիրի՝
Արի և քաջ բաբունապետի,
Իմոյ ծնողի ըստ բանի,
Զի ոչ թէ բազում, այլ սակաւ և ըստ կարի
Սնեալ մեր ի նորին հանգիսի,
Եւ ճաշակեալ ի պտղոյ նորա ըստ արժանի,
Եւ ապա եկեալ ի նահանգ այսմ աշխարհի,
Որ բնական Աղուանք կոչի,
Ոչ վայելեալ ի վայելս հրճուալի
Եւ ոչ հասեալ ի նաւահանգիստն ախորժելի,
Այլ կամք ալեկոծեալ ի մէծաւրէի,
Եւ ակն ունիմ ձեռնատուողին մեծին Պետրոսի,

* Ըստ շարժական տոմարի՝ օգոստոսի 10-ը։

** Հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 88բ—89ա, 143ա էջերում, որոնք կրկնում են գլխավոր հիշատակարանի բովանդակությունը։

Զի տացէ մեզ լսել զձայնն վիմին շնորհալի
Եւ հանցէ ի խորոյ խաւարի,
Եւ նմա փառք ընդ հաւրն և հոգոյն, ամէն։

Գծագրեցաւ տառս աստուածային ի թվ. ՊԿԹ. (1420), ի հայրապետութեան տանս Աղուանից տեառն Կարապետի, և եպիսկոպոսութեան յայսմ աթոռոյ տէր Կարապետի, և թագաւորութեան մեծին Իւսուֆին՝ քաջ և արի անրարըշտին, թէպէտ և է այլազգի, բայց խաղաղութիւն ունի ընդ քրիստոնայս, և ընդ քահանայս, և ընդ եկեղեցիս, բայց վասն մեղաց մերոց է. (7) ամ է, որ մարախ զամենայն աշխարհ աւերեաց, և դեռևս եմք ի կաս[կ]ածի։ Այլ յոյս և ապաւէն զՔրիստոս ունիմք, զի դարձուցէ զամենայն պատուհաս մեղաց մերոց, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 265

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 80, «Էջմիածին», 1951 թ., նոյեմբեր-դեկտեմբեր, էջ 88

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Սանահին

34բ-36ա ... Արդ, ես Մարտիրոս քահանայ թախծեալ եմ տրտմական ոգով, ոչ ունելով իմ զաւակ ի Սիոն և ընտանեակ յԵրուսաղէմ, ցանկացայ այսմ... ի վայելս անձին իմոյ և ի պայ[ծառութիւն] մանկանց Սիոնի, և փոխեց[ելոցն] ի Քրիստոս հաւրն իմոյ Իգնատիոսի, և մաւրն իմոյ Խալինարին, և այլ ամենայն արեան մերձաւորացն... և զհարազատ եղբայրն իմ զԴաւիթ, և զդեռաբոյս զաւակն իւր զԱրիսաղամն, և դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի, ամէն։

Արդ, գրեալ եղև սա ի ժամանակս բռնակալին Յուսուֆի, ի թագաւորութեան Վրաց Ալեքսանդրի, ի նահանգի Գուգա[րա]ցոց, ի գաւառիս Ձորոց, և ի գերահռչակ և յերկնահանգէտ սուրբ ուխտիս Սանահինի, որ է ան | | | հիմն մանկ | | | ի, ձեռամբ [յոգ]նամեղ և փցուն գրչացս | | | և Յովհաննէս վարդապետս՝ երկուց հարազատաց, և ոսկիազաւծ խորանաց և ծաղկերանգ վարդաշատ ծաղկանց նկարողի Յովհաննիսի սիրասնունդ աշակերտի, ընդ նոսին և զմեզ՝ զաշխատողքս յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ամէն։

Ի թուաբերութեանս [յ]արեթական մեծ տումարիս ՊԿԹ. (1420), տանուտէր Զուկն, և նտհանջ ամի։

## 266

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 4004

Ստացող՝ Սարգիս
վայր՝ Գեղարքունեաց գաւառ

900 ...Վասն որոյ և տկարս ամենայնի և տառապեալս և յետնեալս ի դասս աշակերտաց բաբունեաց տէր Սարգիս ետու զսա | | | գրել

Ոսաակիսի գրչի, զի փափաքէի այս ժողովեալ գանձուցս, զոր արարեալ երկրորդ լուսաւորիչն... վարդապետն Գրիգոր...:

Արդ, ստացա զսա ի վայելումն անձին իմոյ և ի յիշատակ ծնողաց իմոց, հաւրն իմ Շնորհքին, և մաւրն իմոյ՝ Սիրա | | | * գրեցաւ սայ ի գաւառս Գեղարք[ունեաց, ծաղ]կեցաւ և կազմեցաւ ձեռամբ Առաքել աբեղայի, աղաչեմ յիշել ի տէր։

Ի թվականիս ՊԿԹ. (1420)։

Ի դրան սուրբ և հրաշալի և աստուածաբնակ սուրբ աթոռոյս Գանձասարա եղև կատարումն սորա, զոր տէր աստուած հաստատ պահեսցէ մինչև ի գալուստն իւրն միւսանգամ, ամէն։**

## 267

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 1718

Գրիչ՝ Պետրոս
վայր՝ Մեծոփայ վանք

Ցերկիրն Քաջբերունի ի սուրբ ուխտն Մեծոփայ, ընդ հովանեաւ սուրբ Տիրամաւր, առ ոտս երջանիկ րաբունապետին Թովմայի, յառաջնորդութեան Յովհաննէս արքեպիսկոպոսի, ձեռամբ Պետրոս աբեղայի, որդւոյ Կոոնի(˚) և Նազխաթունի, և աշակերտի Թովմայ րաբունապետի։

## 268

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. նոտ. 60—61, Բերկրի, ի վանս տէր Ցուսկան որդւոյն

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Բերկրի

... Եւ արդ, ես՝ յետինս ի կրօնաւորաց և անպիտանս ի բանասիրաց, անարժանս ի մանկունս եկեղեցւոյ և անիմաստս ի քարաուղարաց [Մկրտիչ] շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ աւետարանս ի թուականիս Հայոց Մեծաց ՊԿԹ. (1420), ի հայրապետութեան տեառն Պօղոսի՝ արի և քաջ ախոյանի և ճշմարիտ ուղղափառի, ի գաւառիս Տարբերունի, որ այժմ կոչի Բերկրի, ի սուրբ ուխտս որ կոչի տէր Ցուսկան որդի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յարութեանս, և սուրբ Կարապետիս, և սքանչելագործ սուրբ Նշանիս, որ կոչի Կարմիրակն, ի յառաջնորդութեան

* Ձեռագրի վերին մասն ամբողջովին բորբոսնել է, քայքայվել և դարձել անընթեռնելի։ Հիշատակարանի 901 էջի վրա գտնվող շարունակությունից հնարավոր է լինում կարդալ միայն վերջին 6 տողը և նախորդ տողերից միայն առանձին բառեր, օրինակ՝ «զհոգւոր Հայրն իմ», «զանյագթ փիլիսոփայն», «որ յիշէք յիշեալ լիջիք» և այլն։

** Վերջին պարբերությունը գրված է այլ ձեռագրով։

սուրբ ուխտիս Մելքիսէթ հեզահոգի և աստուածաբան վարդապետի, և այլ միեղէն եղբարցս, հոգևոր հօրս իմոյ Կարապետ խաչընդուս կրօնաւորի, և հոգևոր եղբօրս իմոյ, որ բազում պիտոյիւք սպասաւորէ մեզ՝ Յակոբայ խօյեցւոյ, Կիրակոսի և Յովանիսի, Մկրտչի և Վարդանի, համաբուեստակից եղբօրս Յակոբի, Սիմօնի և Կիրակոսի, Ստեփաննոսի և Յովանիսի, նաև սպասաւորաց մարմնաւոր պիտոյից մերոց՝ հայր Սարգսին, և Գորգի տնտեսին, և Մկրտիչ մաճակալին, և Աստուածատուր միայնակեցին, և Մեծատուր հովուին, և զամենայն միաբանքս սուրբ ուխտիս, տէր աստուած հանգուցանէ զսոսա յարքայութեան իւրում, ամէն։

Եւս առաւել աղաչեմ յիշել զՅակոբ խօյեցի աբեղայն, որ զօրինակն շնորհեաց...։ Յիշեսջիք յաղօթս ձեր [զստացող սորին]՝ զբարեպաշտ տանուտէրն զՆասրաաին, և զծնողսն իւր [զՍեւինճբէկն և զՍուբաթ-Մէլիքն], ընդ նոսին աղաչեմ յիշման արժանի առնել զանպիտան գրիչս, և ծնողսն իմ՝ զՕրպէլ և զԴօվլաթ, և զմամն իմ զԹադդատ...։ Յիշեցէք զԱբրահամ սրբահոգի կրօնաւորն, որ զարդարեաց և ծաղկեցոյց սուրբ աւետարանս և երկու փլօրի եթող ի վարձէն։ Վարձատուն Քրիստոս տացէ նմա զիւր ողորմութիւն, ամէն։ Աղաչեմ յիշել զարժանին յիշատակի՝ զպատուելի քահանայն զՄկրտիչ՝ առաջնորդ քաղաքին Բերկրոյ, որ բազում գութ և խնամ տանի մեզ։

## 269

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 1626

Գրիչ՝ Իգիա
վայր՝ Նարեկ գիւղ

ա

293 բ ...Ուստի և տեսեալ զսոբայս փրկագործութեան խորհուրդ ոմն
աստուածասէր և բարեպաշտ տանուտէր Թաթարբէկ կոչեցեալ, հարեալ
ի սէրն Յիսուսի ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ և բարեխաւս
առ Քրիստոս աստուած վասն հոգւոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոց Մոմեղենի և Նորտիկնայ, և եղբաւրն Առաքելայ, և կենակցին իւրոյ Միննայի, և որդւոյն Ամիրբէկի, և քեռն իւրոյ Աւրդունի, և եղբաւրորդւոյն Թումայի, և կնոջ նորա Գահարի, և մաւրն Շնոհուռի, և Առաքելի, որ ողորմելի նաց յաշխարհի փոքր մի աւուրք, քանզի էր յոյժ ծերա-
294 ա ցեալ, և ետես զմահ որդւոց իւրոց և զաւերումն տանն և [] հեծեծ[ան]աւք շրջէր, հոգոց հանելով։

...Եւ արդ, ես՝ յետինս ի կրաւնաւորաց և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ Իգիա անուն, քանզի խորշեցայ ի Պսակ անուանէ, որ Նախավկային միայն վայել է, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ՝ Ոչ կոչումն կոչեցարուք՝ ի նմին կացջիք, սկսայ գրել զսուրբ աւետարանս անարժան ձեռաւքս։

Գրեցաւ սա ի գեաւղս, որ կոչի Նարեկ, ձեռամբ սուտանուն կրօնաւորի Իգիտի, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցայյս՝ Յարութեանս,

294 բ Աստուածածնիս, Առաքելոյս || և սուրբ Գրիգորիս, և առ գերեզմանի
տիեզերալոյս Գրիգոր վարդապետի Նարեկացւոյ, ի թուականութեանս
Հայոց ՊԿԹ. (1420), ի հայրապետութեան տեառն Դաւթի, և ի բանա-
կալութեան նախա[ն]կիս մերոյ բարձրանուն Մելէքի:
Արդ, որք ագուիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով, յի-
շեցէք յաղաւթս ձեր զվերոյգրեալսն՝ զԹաթարբէկն, և զծնաւղսն իւր,
և զամենայն արեան մերձաւորսն, ընդ նոսին և զմեղուցեալ գծողս,
և զծնաւղսն իմ՝ զԱմիրբէկ և զԴուամելէք, և զեղբարսն իմ զԹովմայ
քահանայ, զՂազար և զՍտեփաննոս, և զկենակից իւր զՍուլթան-Մելէք,
որ սուրբ սրտիւ և անկեղծ հաւատով սպասաւորէր մեզ և պատրաս-
295 ա տէր զկերակրիկն, աստուած զնա կերակրէ յա || րքայութեան իւրում,
և զՔաւչբէկ սարկաւագ, և դեռաբոյս զաւակսն նոցա...։
Ով որ զայս թղթերս կտրէ, թէ գիր չկայ ի ներս՝ աստուած զնա
կտրէ ընդ մէջ, և զբաժին նորա ընդ կեղծաւորսն դիցէ, և զտանջանսն
սատանայի արկցէ զգլխով նորա։ Այս բաւական է լսող մարդոյն, և
անլուր և թերի մարդոյն՝ սակաւն և բազումն միապէս է։

Բ

Ստացող՝ Թաթարբէկ

295 բ Ես Թաթարբէկս տուեր եմ զսուրբ աւետարանս ի գեաւղս, որ
կոչի Սաւկու, ի դուռն սուրբ Գէորգեայ զաւրավարին, յիշատակ ինձ,
և իմ ծնողացն, և իմ զաւակացն, և ամենայն արեան մերձաւորացն,
ամէն։
Ով որ զայս սուրբ աւետարանս ի դրանէ սուրբ Գէորգեա զաւ-
րավարէս հեռացուցանէ ծախելով կամ գրաւելով, հետ Յուդայի դասի
և հետ խաչահանուացն, ամէն։

Գ

295 ա Աւետիսն՝ Թումի որդէ[ն], տարաժամ փ[ոխ]եցաւ առ աստուած,
շատ տրտմութիւն եբեր հաւրն և մաւրն, աստուած ողորմի իւր հո-
գուն, ամէն,
Աստուած ողորմած եղաւ և ետ իւրեանց նոր զաւակ, իւրեանց
տրտմութեանն մխիթար՝ Սադաղայ անուն, աստուած զինքն ընդ եր-
կայն աւուրս առնէ, իւր հաւր և մաւրն ժառանգ պահէ, մինչև ի խո-
րին ծերութիւնն, ամէն։*

Դ

...Աստուած-ողորմի ասացէք Նաւճօշին և Աւետիսին, որ են սոքա
296 բ ի Բէսաւէնից, || որ ազատեցին զաւետարանս ի ձեռաց անաւրինաց...։
Դարձեալ յիշեսջիք... զՄերուն, և զկին իւր զՇաղզադէն, և զդուստրն
իւրեանց զՀանտղէն, զի այծ մ՝ սոքա ետուն ի գին սուրբ աւետա-
րանիս...։**

* Այս և նախորդ (ստացող Թաթարբեկի) հիշատակարանները գրված են միևնույն ձեռագրով ու թանաքով, կամ գլխավոր հիշատակարանի գրության տարեթվին (1420), կամ մի-երկու տարի միայն նրանից հետո։

** Ըստ հնագրական տվյալների այս հիշատակարանը գրված պետք է լինի կամ ԺԵ. դարի վերջին, և կամ, որ ավելի հավանական է, ԺԶ. դարի ընթացքում։

## 270

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Վիեն. 260, Տաշ. Ցուց. էջ 666

Նորոգող և կազմող՝ Աբրահամ
վայր՝ Շատախ, Մբղկունք գիւղ

136 բ *Թվիս Հայոց ՊԿԹ. (1420) Նորոգեցաւ սուրբ գիրքս ի գաւառիս* Շաթխոյ, *ի գեղն որ կոչի* Մբղկունք, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին։ Արդ, յիշեցէք* զԱստուածատուր *երէցն եւ զծնաւղս իւր, որ երետ նորոգել զգիրքս յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, եւ որ յիշէ՝ յիշեալ լիցի ի Քրիստոսէ, որ առատն է ի տուրս բարեաց։ Այլ գիրքս սուրբ Կարապետին է, ոչ ոք իշխէ ասել զսա իւր, կամ եպիսկոպոս կամ քահանայ ոչ իշխէ ասել թէ իմ է, այլ յիշատակ է իւր տիրոյն՝ ի սուրբ Կարապետն։*

*Արդ ես՝* Աբրահամ *աբեղէս, որ կազմեցի զսա, յերես անգեալ աղաչեմ յիշել ի սուրբ աղաւթս ձեր....։*

## 271

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6374

Գրիչ
վայր՝ Ակէոյ վանք

179 բ *...Ի թուականութիւն Հայոց ՊԿԹ.(1420), ի հայրապետութեանն տեառն* Դաւթի Փոքու *գրեցաւ սուրբ աւետարանս, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զաւրավարիս, յանապատիս որ կոչի* Ակէոյ *վանք։ Եւ արդ, աղաչեմ զամենեսեանդ սիրովն աստուծոյ՝ զընթերցողսդ և զլսողսդ, յիշման արժանի առնել զվերոյստացեալ պատուական ե հոգևորն* Եղիա *և զկենակիցն ի[ւր]* Սիրա | | |

## 272

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7686

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ Կաֆա

280 ա *...Ի թուաբերութեանս ազքանազեան և յաբեգա || կան տումարի ի ՊԿԹ. (1420), ի հայրապետութեան տեառն* Պաւղոսի *և յաթոռակալութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր* Կիւրեղին: *Բայց գրեցաւ սա յաշխարհի* Հոնաց *և յերկիր* Խրիմի, *ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս որ կոչի* Կաֆա, *ընդ հովանեաւ առ ոտն սուրբ Աննաին։*

*Այժմ աղաչեմ զամենեսեան զդասս լուսերամից, որք հանդիպիք այսմ աստուածային խրախճանութեան, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփափագմամբ ստացաւղ սորա զվերոյգրեալ զպարոն* Աստուածատուրն, *և զզուգակիցն իւր* զԵաղութ-Խաթունն, *և զիւր ծնաւղսն նորա՝*

զպապն իւր զԳրիգորն, և զմաՃն իւր զԱննա, և զհայրն իւր զՍատաթ,
և զմայրն իւր Մարեմ-խաթ[ուն], և զքոյրն իւր Մարի-Մելիք, և զեղ-
բայրն իւր զխաչատուրն, զՅոհաննէս, զՍիմէոնն, և զորդեակն իւր զէ-
սանպէկն: Նա և զամենայն արեան մերձակայս նորին՝ զարս և զկա-
նայս, զծերս և զտղայս, զկենդանիս և զհանգուցեալս, զպատուեալս և
զզանցարարեալն։ Նա և եթէ արժանի համարիք զանարժան գծաւղս,
զծաղկաւղս և զկապաւղս զՔրիստոսատուր անարժան կրաւնաւորս և
280 բ զծնաւղսն ‖ իմ ցաւակցաբար յիշման ի փառաւոր և ի սոսկալի ատ-
եանն, և զհոգևոր ծնաւղն իմ զՍիմէոն աբեղան, և զհոգևոր եղբայրն
իմ զսիրասնունդ զՄաղաքիա կրաւնաւորն...։

273

ՃԱՇՈՑ

Երևան 4107

ա

Ա. մասի գրիչ՝ Սարգիս

503 Զմեղսաներկ, զժահահոտ, գարշելի, զաղրագործ զտոկոսխ և զփա-նաքի զծոյլս ի բաբի և արի ի չարի, զբարկացողս և զբանբասողս, ի յամենայն կողմանէ զիՃ թողուլ և զայլոցն քաւել՝ զՍարգիս սոսկա-նուն եպիսկոպոս և ամենայն. բարեաց թափուր, աղաչեմ զսուրբ հան-դիպողքդ, որ յիշմամբ արժանի առնէք ի բարի... և աստուած զձեզ, որպէս և դուք բոլորով սրտիւ յիշել, քան զի բիւր հազար քանքարոց պարտական եմ և իմ կարգէս սեվերես իբրև Յուդա յաստուծոյ, նոյն-պէս մեղուցեալ ծառայս աստուծոյ։

Բայց գիտեմք, որ գրիդ բազում պակասութիւն կայ և անթիւ, թէպէտ որ շատ կայ՝ մեր կարն այդ չափդ էր, ձեռս կու դողայր և աչքս բնաւ չէր տեսնուլ, գրչի մատն չորացած էր, միջի մատամբս ծրեցաք, Ռ.(1000) բերան աստուծոյ և ձեզ մեղայ, թողութիւն առնէք մեր բազում և անթիւ մեղացն և աստուածն, որ առատն է ի տուրս բարեաց, պարգևեսցէ առհասարակ հանդերձ ծնողաւք և ազգականօք, ամէն, զՅովանէս քահանայն, և զԱստուածատուր, և զայլն ամենայն երախտաւորքն մեր յիշեցէք առ Քրիստոս Յիսուս, ամէն։

ԺՍԱ[Հ]Գ. ՔԲԲՀՏ,* դարձեալ ամէն։

Ո՞հ, տէրդ իմ, հիմայ ԽԲ. (42) տարի է, որ մեր բանս այս է. ապա այսոր նման անդէպ չէր եղեալ, խիստ կու ամաչեմ ի ձեզնէ, թողութիւն արարէք։**

բ

Գրիչ՝ Յուսան

920 ...Աւարտեցաւ քրիստոսահիՃ, առաքելաշէն, մարգարէախաւս այս կտակ յամի ութհարեւրերորդի վացսներորդի և իններորդի թըւա-

* Այս երկու բառերը տարբեր տիպի փոխարինագիր ծածկագրերով կարդացվում են «ամմէն»։
** Գրված է էջի ներքին լուսանցքի վրա, մանր տառերով։

կանութեան Հայկազեան ազգիս տոմարի (1420), յամսեան հրոտից ԻԱ. (21), պատկեր աւուրս՝ հինգշաբթի, ձեռամբ յոգնապայծառ և ջահաւորեալ տէր Սարգսի և նեբգևեալ և մեղսամակարթ և փծուն գրչի Յունանի, որպէս և գիրգ ցուցանի՝ ի ԻԲ. (22) տետրիցն ի վեր։ Արդ, եռափափաք սիրով գրեաց զսա տէր Սարգիս և մեզ գրել ետ անջինջ յիշատակ հոգւոյ իւրոյ և ամենայն հոգևոր և մարմնաւոր ծնօղաց և երախտաւորաց և ամենայն քրիստոնէից։

921 Քանզի, որք մեծութեան ընչից ըղձանան՝ ոչ ինչ աշխատութիւն զմտաւ ածեն, յայլմէ յայլ անցանել զաւառս հեռագնացս ուղղաւորութեան, որպէս զի շահն աճեցուցանել մաքթասցեն։ Նա և ընդ համատարած ծովուն ծփանաց նաւարկեալք, որ բարկացայտ ալեաւքն լեռնացեալ կոհակաձև դաշտանան։ Անդընդապտոյտ խորոցն բգացեալ կուտիցն մէտ առ մէտ ալեացն ահ պակուցանող տեսողացն արկանելով, իսկ աբիտցեալքն ստորիջիցն ի խիւզս խոռոջիցն, ի խորս խաւարային ձորոցն համարձակին, ի քարաժեռս դժւարամուտս տեղեացն, ի խնդիր ականց զանազանից, լաւ համարելով զմահ անձանց, քան թէ ունայն ձեռաւք զվատացն ժառանգել զանունն։ Եւ այլք, ըստ քրայական արուեստին, հալոցաւք հնոցացն զոսկւոյն զգիւտ արուեստաւորեալ՝ յառաջ բերեն զանաւթն պատւական։

Ըստ նմին աւրինակի և ես տառապեալ ոգի տէր Սարգիս Պարտաւեցի ի խնդիր ելայ այսմ հոգենորոգ ծաղկաւէտ, վարդափթիթ, անուշահոտ բուրաստանիս, և գծագրեցի զմարգարտաշար և զանառիկ փաքթամութիւնս մանկանց Սիոնի և զուրախարարս սուրբ եկեղեցւոյ, ի յիշատակ վերոյգրելոցն ամենայնի, յուսալով յաստցեալն, թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանի նորա յԵրուսաղէմ։

Եւ քանզի ունի սա զբոլոր մասունս տօնից տէրունականաց, զոր
սուրբ հարքն հաստատեցին՝ զընթերցւածսն Յակոբոսի տեառն եղբաւրն
և զԿիւրղի Երուսաղէմացւոյն, և զԳործս առաքելոցն՝ կաթողիկէից
թղթովքն և Յովհաննու աւետարանաւն, և զտաւնանամակս սրբոց
առաքելոցն, մարգարէից, վարդապետաց, հայրապետաց, մարտիրոսաց,
922 ճգնաւորաց, կուսանաց, զկիրակէի, || զչորեքշաբթի և զուրբաթի, յիս-
կըզբանէ տարւոյն մինչև ցկատարումն տարւոյն ամենայն աւուրս
պատշաճի իւրում ունի յինքեան զգիրք և զաւետարան։ Եւ վասն տօ-
նիցս կարգելոց մի ոք յերկւասցի, զի կարգեալ է զսա սրբոց հարանցն
և սուրբ վարդապետին Գէորգայ, ի սուրբ ուխտն, որ կոչի Դրազարկ,
ի սահմանս Կիւլիկեցւոց, զոր ընկալեալ լուսաւորեցան սուրբ եկեղե-
ցիք։ Իսկ երջանիկ քահանայն Տիրացու, ի քաղաքէն Մշոյ, որ կարո-
ղութեամբն աստուծոյ և հրամանաւ երանեալ վարդապետին Ստեփա-
նոսի, որ ի վանս Իննակնեան, որ յանուն սուրբ Կարապետին, ի գա-
ւառին Տարօնոյ, զայս ամենայն բազմութիւն ծաղկանց ի հոգւոյն
սրբոյ գալստեան աւրէն մինչ ի մեծ պահսն աղուհացից շարագրեաց,
ի վայելումն և ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ...։

## 274

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 62—63 և № 4515, էջ 123—124, Բաբերդ

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Խզան

...[Գրեցաւ] ի մեծ Թուիս Հայոց ՊԿԹ. (1420), ի կաԹողիկոսուԹեան Հայկազեան սեռի տեառն Գրիգորի, և ի մերոյ կաԹուղիկոսուԹեան Աղթամարայ տեառն Դաւթի, և ի Թագաւորութեան այլասեռից Ղարայ-Յուսուֆի...: Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքս Խզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Սարգսի զօրավարին և որդոյ նորա Մարտիրոսին, և սուրբ Գէորգայ, որ է սակաւ մի հեռի։

Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Ստեփաննոս քահանայի՝ սուտանուն և անմար գրչի և անարժանի...։ Գրեցի անարժան ձեռօք իմովք յընտիր և ի ստոյգ օրինակէ, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ, ի դառն և ի նեղ ժամանակի, ի վայելումն անձին Ծերուն քահանայի, և որդւոյն իւրոյ Թոմայ քահանայի, և դեռաբոյս զաւակին Յոհաննիսի: Եւս առաւել զննջեցեալս և զծնողս իմ՝ զՅովհաննէս և զմայրն իմ զԱւագ-Տիկին աղաչեմ յիշման արժանի առնել։ Եւս առաւել զհոգևոր եղբարս իմ... զԱւետիս վարդապետն և զՆերսէս կրօնաւորքն, և զհոգևոր զաւակն մեր զՍուքիաս կրօնաւորն, և զամենայն արեան մերձաւորս մեր առհասարակ յիշեսջիք ի Քրիստոս։

## 275

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ե. Լալայան, Ջաւախք, Ազգ. հանդէս, Բ. 1897, էջ 286

Գրիչ՝ Յովհաննէս գրչիկ

...Ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ, և յեպիսկոպոսութեան տեառն Խաչատրի արհեպիսկոպոսի վերադիտող Հացունեաց գաւառի։

## 276

## ՄԱՇՏՈՑ

Երևան 5917

Գրիչ

ա

98 բ Զհաւատարիմ և զհոգևոր մայրն իմ զՇնորհւոր, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, պատահողք տառիս, յիշման արժանի առնէք զնա։
Թվ. ՊԿԹ. (1420)։

Բ

154 ա Ջնաջելի և զհոգևոր մայրն մեր զՇնորհուոր, որ ձեռնտու և աւգնական եղև ի սուրբ գիրս, պատահողք սուրբ մատենիս յիշման արժանի արնէք զնա, և մեղաց թողութիւն խնդրէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Եւ ինձ՝ անպիտան գրծողիս, և իմոցն ամենայնի.

Գրեցաւ ի թվ. Հայոց ՊԿԹ. (1420)։





## 277

### ԺԱՇՈՑ

Երեւան 4522

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Աղէթ

ա

431 ա ...Աւարտեցաւ քրիստոսահիմն առաքելաշէն մարգարէախօս այս գիրք յամի Գ. և Հ. Թուականիս Հայոց (1421), ձեռամբ Կարապետ աբեղայի, ի խնդրոյ բարեմիտ հիւսանն Յոհաննիսի: Քանզի որք մեծութեան ընչից ըղձանան՝ ոչինչ աշխատութիւն զմտաւ ածեն՝ յայլմէ յայլ անցանել գաւառս հեռագնաց ուղեորութեան, որպէսզի ըշահն աճեցուցանել մարթասցեն։ Նաև ընդ համատարած ծովուն ծփանաց նաւարկեալք, որ բարկացայտ ալեաւքն լեռնացեալ կոհակաձև դաշտանան, անընդապատոյտ խորոցն բքացեալ կուտիցն, մէտ առ մէտ ալեացն, ահ պակուցանող տեսողացն արկանելով։ Իսկ արիացեալքն ստորիջիցն ի խիւղս խոռոջիցն, ի խորս խաւարային ձորոցն համարձակին, ի քարաժեռս դժուարամուտս տեղեացն, ի խնդիր ականց զանազանից, լաւ համարելով զմահ անձանց, քան թէ ունայն ձեռաւք զվատացն ժառանգել զանուն։ Եւ այլք, ըստ քրէական արւեստին հալոցաւք հնոցացն՝ զոսկւոյն զգիւտ արւեստաւորեալ, յառաջ բերեն զնաւթն պատուական։

Ըստ նմին աւրինակի և աստուածասէր Յոհաննէսն հեւսն՝ Ամիրզայն, որ ոչ ունէր զաւակ մարմնաւոր, զի միակեց էր և անախտ ի մարմնական ամուսնութենէ, վասն որոյ ի խնդիր եղեալ այսմ հոգենորոգ և ծաղկաւէտ, վարդափթիթ, անուշահոտ բուրաստանիս, և ստացաւ զմարգարտաշար և զանառիկ փարթամութիւնս՝ զպայծառութիւնս մանկանց Սիոնի և զուրախութիւնս սուրբ եկեղեցւոյ ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի ծնողաց իւրոց Աւետիսին և Խութլու-Մելիքին, և եղբարցն Սարգսին և Մարտիրոսին, Շնոհֆորին և Շամշին ...։

431 բ ...Եւ վասն տաւնիցս կարգելոցս [ի սմայ] մի ոք յերկւասցի, զի կարգեալ է զայս սրբոց հարանցն և սուրբ վարդապետին Գէորգեայ, ի սուրբ ուխտն, որ կոչի Դրազարկ, ի սահմանս Կիւլիկեայ, յերկրին Սըսայ, զոր ընկալեալ լուսաւորեցան եկեղեցիք Հայաստանեայց ի պայծառ տաւնակարգութիւնս։ Իսկ երջանիկ քահանայն Տիրացու, ի քաղաքէն Մըշոյ, որ կարողութեամբն աստուծոյ և հրամանաւ երանեալ վարդապետին Ստեփաննոսին, որ ի վանսն Իննակնեան՝ որ յանուն սուրբ Կարապետին, ի գաւառին Տարաւնոյ, զայս ամենայն բազմութիւն ծաղկանց՝ ի հոգոյն սրբոյ գալըստեան աւրէն մինչ ի յաւագ պահսն

աղուհացից շարագրեաց ի վայելումն և ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ։ Վասն որոյ հայցեմք յաստուծոյ, զի զցաւղն ողորմութեան ցաւղեսցէ յոսկերս նոցին, և բուսուսցէ զնոսին յօրն վերջին…։

Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ աւգտութեամբ ինչ իւիք, յիշեցէք ի մտի բարիս և ի պատկանաւոր խնդրուածս զստացող գրոցս՝ զմիակեց Յոհաննէս հեւսն, և զծնողսն իւր, նաև զԿարապետ աբեղայ՝ գծող սորին, որ բազում աշխատութեամբ գրեցի զգիրքս յԱղէթ, ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ, ի խնդրոյ Յոհաննէս հիւսանն, որ էր նա անկին և անտուն, վարուքն մաքուր և ողջախոհ, անբամբաս և անպարսաւ ի բասբանաց մարդկան։

Վասն որոյ և ես տեսի զյաւժարութիւն կամաց նորա և զբարի մտածմունսն, և յանձն առեալ գրեցի զսա բազում աշխատութեամբ և տառապանաւք՝ յահ և ի փախ, սասանմամբ և դողութեամբ։ Զի Շահրուխ չաղաթայն՝ բարեսէր և արդարադատ արքայն, եկն ի գնլաթ
432ա և փախոյց զԹուրքմանն, և շատ պակասու‖թիւն եղև մեզ և շատոց, զի Թուրքմանն զառաջինն փախեաւ ի ներքին երկիրն, և անտի դարձեալ եկն ի վեր Թուրքմանն բազում զաւրաւք, Ծ. և Ռ. հազար (150,000) ձիաւորաւք, և խիստ խայտառակ կոտորեցան ի չաղաթի զօրացն, ի գաւառն Վաղաշկերտոյ, մերձ Բագւանայ։ Բայց զի ողորմած էր Շահռուխըն և քաղցր էր բարուքն՝ թոյլ ետ նոցա փաղչել մազապուրծ, և զորս գերեացն՝ ազատ արար։

Եւ մեր՝ գրելն զգիրքս յայս պըղտոր տարիս եղև, որ էր հեծելաշարժ, սըղութիւն հացի և ամենայն իրաց պակասութիւն։ Իսկ բարեսէր Յոհաննէսն յայս գառն տարիս, վառեցաւ ի սէր գրոցս, զըրկեաց զմարմինն և զաւրացոյց զհոգին։ Վասն որոյ ոչ ունին իշխանութիւն եղբարք սորա և կամ այլ ոք յազգականաց տիրապետել զգիրքս, զի ի սմանէ ընծայեալ է աստուծոյ, յոր տեղ որ լինի, և այլ մարդոյ հուքըմ ոչ կայ ի վերայ գրոցս, զի աստուծոյ նըւիրեալ է։*

Բ

27 ա Ո՜վ եղբայր, անմեղադիր լերուք, զի անկոխել է թուխթս,** ոխ ի վատ մարդոյ գարդէս։

Գ

186բ Քրիստոս աստուած, քոյ աստուածային յարութեամբդ ողորմեա ստացողի սուրբ տառիս ուսթա Յոհաննիսին, և ծնողաց նորին՝ Աւետիսին և Խութլու-Մէլէքին, և եղբարցն՝ Ամիր-Սարգսին և Մարտիրոսին, և հարսներուն՝ Շայ-Մէլէքին, և այլ արեան մերձաւորացն, ամէն, եղիցի։ Այլև բազմամեղ և տըրտում ոդոյ Կարապետ գրչի և իւր ծնողացն, և եղ-

---

* Որպես հիշատակարանի շարունակություն Կարապետ Աղեթցին հետագայում ավելացրել է իր ուսուցիչ Գրիգոր Խլաթեցու «Յիշատակարան աղետից» չափածո հիշատակարանի 279–417 տողերը (տես 1422-ի թվաշարքում)։

** Բնագրում՝ «թողխս»։

*բաւրըն՝* Թումա *նորընծայ քահանային։ Այլև* Թումա *վարդապետին իմոյ, որ կու աշխատի ի Թըղթի կոկելն, և իւր ծնողացն, և մեր աշակերտիս՝* Աւետարիս, *որ իբրև զջուր է ի ձեռս մեր, Քրիստոս զսա աւրհնէ, ամէն։*

## 278

### *ՃԱՇՈՑ*

*Երևան 4695*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աղթամար

464 ա *...Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով*
*սրբասնեալ և բարեմիտ կրաւնաւորն* Յոհանէս, *և ցանկացեալ այսմ*
*աստուածային փարթամ գանձուցս, և ջերմեռանդ սիրով հոգոյն սըր-*
*բոյ և մեծ փափաղմամբ ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց*
*և ի քրտնաջան աշխատանաց, ի վայելումն անձին իւրոյ և յետ աս-*
*տի կենացս ելանելոյ՝ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց*
Կիրակոսի *և* ՈւլուՆ-Մէլիքի, *նաև եղբաւր իւրում* Յովանիսի, *և զա-*
*ւակաց նորա* Սադալի, *և* Սրմէլիքի, *և կենակցին* Մարեմի, *այլ և քը-*
*ւեր նորին* Խութլու-Մէլիքի, *և զաւակացն* Աստուածատրոյ, Ստեփանոսի
*և* Յոհանիսի, *և սնուցողացն իւր* Շնոհվորի *և* Նոր-Տիկնայ, *և այլ ամե-*
*նայն արեան մերձաւորաց իւրոց և երախտաւորաց՝ կենդանեաց և*
*հանգուցելոցն ի Քրիստոս։ Եւ ետ զսա ընծայ և նուէր ի սուրբ և ի*
*հռչակաւոր և յանուանի ուխտն, որ կոչի* Վարագ, *ի դուռն սուրբ և*
*գերամաքուր Աստուածածնին, և սըրոյն Յոհաննու աւետարանչի, և*
*յայլ բազմահաւաք սուրբ եկեղեցեացն, որպէս զի վայելեսցեն զսա ման-*
*կունք սուրբ եկեղեցեացն և ուրախասցին սովաւ հանապազ ընթերց-*
*մամբ, և յիշեսցեն անմոռաց յիշմամբ յերկնագնաց յաղաւթս իւ-*
*րեանց զյառաջ յիշեցեալ ստացող գրոցս՝* զՅոհանէս...:
*Ի յառաջնորդութեան սուրբ ուխտին իմաստուն և հանճարեղ*
*վարդապետին* Մարգարայ *կոչեցեալ, այլ և յեպիսկոպոսութեան տեղոյն*
*սրբասնեալ եպիսկոպոսացն տէր* Ցովանիսի *և տէր* Աառմոյ: *Ի թվա-*
*կանիս Հայոց ՊՀ. (1421) ամին, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս,*
*յորում կամք ի նեղութիւն և ի տառապանս ի ձեռն այլասեռից աղ-*
464 բ *գաց, զի զամենեսեան չարչարեն և նեղեն, տուժեն և || տուգանեն,*
*կեղեն և կեղեքեն, և այլ ազգի-ազգի վշտաւք տանջեն։*
*Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, և ոչ*
*դառնամք և ոչ ապաշխարեմք զանչափ չարիս մեր, այլ աւր[ը]ստաւ-*
*բէ առաւելումք ի մեղս և արհամարհեմք և անարգեմք զամենայն*
*խրատ և զբանս սուրբ գրոց, որ է ի շահ և յաւգուտ հոգոց մերոց։*
*Այլ և առ մեզ է տեսանել զբանս առաքելոյն, որ ասէ, թէ ի ժամա-*
*նակս յետինս, որ եմք մեք, յարիցեն մարդք արհամարհոդք, ժպիրհք,*
*յանդուգն, անսուրբք, աննուէրք, ուսումնատեացք, արծաթասէրք, անձ-*
*նասէրք քան աստուածասէրք, ծոյլք, գատարկակեացք, չարաճճիք,*

որպէս առ մեզ և ի մէնջ է ուսանել, զի փոխանակ բարոյ չարք եղաք՝ ամբարտաւանք, ամբարհաւաճք, վէսք, սնափառք, ստախաւսք, նենգաւորք, բամբասողք, շոգմոգք, հայհոյիչք, մարդահաճոյք, կեղծաւորք, արատաւորք, նախանձոտք, երախտամոռացք, եղբայրատեացք, մանաւանդ թէ աստուածատեացք իսկ, և որ այլ ևս սոյնպիսիս և յաճախագոյնս քան զսոյնս հայրն չարեաց և ծնիչն անաւրէնութեան՝ այսինքն սատանայ, սերմանեաց ի մէջ զուտ և սուրբ ցորենոյն, այսինքն ի սպասաւորքս սրբարար և աստուածընկալ սեղանոյն և զմարմին և զարիւնն Քրիստոսի պատարագողացս, զի ոմանք զսահմանեալ աղօթիցն անփոյթ արարեալ անխտիր՝ ի տաւնս տէրունականս ի մարմին և յարիւնն Քրիստոսի մերձենան, և կէսք զուսման և զգիտութեան ոչինչ փոյթ առնեն, այլ լոկ միայն տգիտաբար զքահանայականն գործեն զգործ, և կէսք զհետ գինոյ և ցքոյ շրջին և երեկանան ի նմա, և ոչ միայն այս, այլ և եպիսկոպոսք ի վերայ եպիսկոպոսաց յառնեն, և քահանայք ի վերայ քահանայից, և ուխտաւորք ի վերայ ուխտաւորաց, և կրաւնաւորք ի վերա կրաւնաւորաց, և զազատն ի բնէ՝ զեկեղեցի ասեմ, զոր Քրիստոս իւրով սուրբ արեամբն ազատեաց, մեք ի հարկ և ի ծառայութիւն արկաք անաւրինաց, յաղագս փառաց և անձնահաճոյ կամաց. և արդ, որչափ թողութեան արժանաւոր գտանիցիմք։ Եւ արդ, բաւականասցի ասացեալս, զի ոչ եթէ նախատելով
465 ա կամ չա || րախաւսելով զումեքէ գրեցի զայս, այլ ի խրատ և ի ղըղջութ բարեմիտ ընթերցողացն ասեմ և լսողացն՝...։

Եւ արդ, ես՝ ...սուտանունն կրաւնաւոր Թումայ գծողս, տեսի զսէր և զփափագ սորա, զոր ունէր առ հոգեորսն, և իմով տկարութեամբս յանձն առի, և ամենակարող զաւրութեամբն Քրիստոսի կատարեցի զսուրբ գիրքս զայս, բազում և մեծ աշխատանաւք հասուցի զսա յաւտրտութ յաստուածարնակ և յանաոիկ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Գեզարգեանս, ի հայրապետութեան տեառն Դաւթի կաթողիկոսի, զոր տէր պահեսցէ զտեղիս զայս խաղաղութեամբ, աթոռակալաւն իւրով, ամէն...։

465 բ ...Նաև զծնօղքն մեր զԽաչիկ և զԱզիզ-Մէլիք, և զեղբարքն իմ զՆաւասարդ՝ տարաժամ հանգուցեալն, և զԳէորգ քահանայ, և զքոյրն մեր զՀալիմ-Խաթուն, նաև զհաւրեղբարքն իմ զԶաքարիայ գրագիր, և զԿարապետ քահանայ, և զՅովանէս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և զայլ ամենայն ազգատոհմքն մեր և զերախտաւորքն՝ զկենդանիսն և զննջեցեալսն, այլ և զուսուցիչն մեր՝ զիմաստասէր փիլիսոփայն՝ զԱռամ վարդապետ, և զԱւետիս, և զՅովանէս կրաւնաւորք, որ աշխատեցան ի կոկել թղթիս, այլև զայնոսիկ, որ բոլոր սրտիւ մեզ աստուած-ողորմի ասեն յիշելոցս ի սմա՝ ստացողաց և գրողաց և այլ աշխատաւորացն, ամէն...։

## 279

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4624*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Լիմ

ա

287 բ ...*Ես՝ յետինս ի գրչաց և անպիտանս յամենայնի* Յովանէս, *ան-
ւամբ կրաւնաւոր և գործով թափուր յամենայն վարուց կրաւնաւորաց,
որ անուամբս միայն եմ ձևացեալ առանց գործոց, ըստ այնմ որ ասէ՝
Մարթոմս արտաքուստ պճնիմ և անձամբս երփնիւ ճային ճանաչիմ,
գրեցի զսուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՊՀ. (1421), ի սուրբ
մենաստանիս, որ է հանդէպ* Արճիշոյ, *կղզի վայելուչ ի ծովս* Բզնու-
նեաց՝ Լիմն *կոչեցեալ, ընդ հովանեաւ հոյակապ և հրաշակաւոր տաճա-*
288 ա *րիս աստուծոյ, որ յանուն սրբոյն Գէորգեայ զաւ ‖ րավարին կառու-
ցեալ է, որ է նման վերին խորանին։ Եւ ետու զսուրբ աւետարանս
սուրբ եկեղեցւոյս սուրբ Գէորգ կոչեցեալ, յիշատակ բարի հարազա-
տին իմ* Վարդան *ոքբասէր կրաւնաւորի, հանգուցելոյն ի Քրիստոս,
որ յայսմ ամի փոխեցաւ առ աստուած, յուլիս ամսոյ ի Դ. (4), և
եգաւ ի տապանի յարեւելից կողմանէ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեց-
ւոյս, ի թեւս հարաւոյ։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք
զսուրբ աւետարանս կամ աւրինակէք յիշեսջիք* զՎարդան *կրաւնաւորն,
և մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, զի և ձերն թողցի, ամէն։
Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն և ի չար ժամանակի,
ձեռամբ անարժան և փցուն գրչի* Յովանիսի, *զի իմ անընդունակ եղ-
եալ յարուեստ գրչութեան, և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ։ Այլ
ըստ կարի մերում, զոր պարգեեաց մեզ մարդասէր հոգին բազում աշ-*
288 բ *խա ‖ տանաւք և տրտում և ցաւ[ա]գին անձամբ գրեցի մեղսամած
մատամբք իմովք, կենաւք տառապեալ և տարակուսեալ մեղաւք։
Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս, յիշեսջիք յաղաւթս ձեր* զՎարդան *սրբասէր կրաւնաւորն և
զիս՝ զմեղուցեալս յամենայնի, և զծնաւղսն մեր* զՊաւղոս *և* զԽութլու,
*և* զԱննա՝ *քոյր իմ, և զհաւրեղբայրն մեր* զՄաթէոս, *և զկենակիցն իւր*
զՄարթա՝ *զհանգուցեալսն ի Քրիստոս։
Այլ և զհոգևոր ծնաւղսն մեր և զուսուցիչսն՝* զԴաւիթ *կրաւնաւո-
րըն և զծնաւղսն իւր* զԹովմայ *քահանայ... և լի սրտիւ աստուած
ողորմի ասացէք։ Այլև զառաջնորդ սուրբ ուխտիս* զՅոհանէս *խաչըն-
դուս կրաւնաւորն, և զմիաբանքս՝ զտէր* Յովհաննէս *եպիսկոպոս, և*
զՍարգիս *փիլիսոփայն, և* զՄկրտիչ *կրաւնաւորն, և* զՍտեփաննոս *եկե-*
289 ա *ղեցպանն, և* զԹովմա *կր ‖ աւնաւորն, և զհարազատն իւր* զՅակոբ
*կրաւ[նա]ւոր, և զհայրն իւրեանց* զՍտեփաննոս: *Այլ և* զՎարդան *փիլի-
սոփա, հանդերձ հարազատիւն իւր* Թորոսիւ, *և* զՅովաննէս, *և զերկու
հարազատսն իւր* զՅակոբ *և* զՄարտիրոսն՝ *զքաջսն և զարիսն ի գործ*

հոգւորս և մարմնաւորս, և զծեր հայրն նոցա զՍտեփաննոս, և զԿարապետ աբեղայն, և զՅովանէս Արճիշեցի, և զամենայն գործաւորք դրան սուրբ եկեղեցւոյս՝ զտնտես, զմաճակալ, զհովիւ և զամե[նե]սեան՝ զմեծ և զփոքր, աղաչեմ յիշել ի տէր, որք յաւժար կամաւք աւգնական եղեն մեզ։ Այլ և զհոգեւոր եղբայրս մեր զԳրիգոր կազմաւղ և զծնաւղսըն փւր զհոգեւոր և զմարմնաւոր, որ բազում աշխատութեամբ աւգնական եղև մեզ յամենայն գործ և ի սըպա[սա]ւորութիւն, հատուսցի սմա փոխարէն յարքայութիւնն աստուծոյ հազարապատիկ և բիւրապատիկ, ամէն,

:389 բ Դարձեալ, յերես || անկեալ աղաչեմ զամենեսեան, որ խնամով պահէք հանապազ ի սուրբ սեղանն, և խնամք աստուածային ի վերայ խնամով պահողին եղիցի, ամէն։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ աւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցւոյս՝ ծախելով, կամ գրաւելով, կամ այլ ինչ պատճառաւ։ Եւ եթէ լբբի ոք և յանդգնի՝ զանէծսն Կայենի առցէ և զՑուգային և զխաչահանուացն և զնմանեաց նոցին, ամէն։

Եւ թէ փախուցանէ ոք և ի գերողաց ազատէ եկեղեցւոյս համար՝ աստուած զնա ի մեղաց ազատէ և ի գերոզէն սատանայէ փրկէ, և առաջին արդարոյն Աբելի, և միջնոցն, և ներկայիս, և վերջնոցն աւրհնութեանցն և պսակացն և փառացն ·դասակից և մասնակից և պսակակից և փառակից արասցէ, ամէն, և որք զամէնն ասեն, ամէն։

Բ

.221 ա Յամի ութհարիւր և եւթանասուն թուականի Հայոց (1421), յետ մահուան Ղարա-Յու[ս]ուֆին եղեւ խռովութիւն և յոյժ սասանումն ընդ ամենայն երկիրս Հայաստանեայց, զի հեծելազաւրքն ամենայն շփոթեալ՝ զմիմեանս հարկանէին և կողոպտէին։ Որ և գունդ մի ի զաւրացն հատեալ, զորս փաւռնակ կոչէին՝ հինգ հազար տուն, և եկեալ հասին յերկիրն Քաջբերունւոյ, և բազում աւար և գերի առին, Եւ էր որդի մի Յուսուֆին՝ չարաճճի և անագորոյն և յոյժ անողորմ ի բերդն Արծկոյ, ելանէ ընդ առաջ նոցա և առնէ սէր ընդ նոսա, և դարձուցէ և սփռէ ի վերայ երկրին՝ տնով և խոստակաւք։ Եւ զչարչարանսն և զաղէտս կսկծանացն ո՞ կարէ ընդ գրով արկանել, զոր առնէին ընդ տառապեալ ազգս քրիստոնէից Է. (7)ամիս բոլոր։ Եւ ես՝ յետինս ի մանկունս
-221 բ եկեղեցւոյ Յովանէս և հարազատս իմ՝ Վարդան սրբասէր կրաւ[նա]ւոր || եկաք փախստական ի հռչակաւոր մէնաստանս Լիմն կոչեցեալ։ Եւ եղև զրաւ կենաց եղբաւրս իմ Վարդան կրաւնաւորի, և եթող ինձ սուգ անմխիթարելի և վէրք անբժշկելի։ Եւ ես գրեցի զսուրբ աւետարանս և ետու սուրբ եկեղեցւոյս յիշատակ եղբաւր իմոյ Վարդան աբեղայի՝ հանգուցելոյն ի Քրիստոս, այլ և ծնողաց իմոց՝ հոգեւորաց և մարմնաւորաց, և ինձ՝ մեղապարտի։ Ո՜վ նուրբ առաջնորդք և միաբանք սուրբ ուխտիս, յերես անկեալ աղաչեմ զձեզ չհեռացուցանել զսա ի դրանէ սուրբ եկեղեցւոյս ոչ ծախելով և ոչ գրաւելով, և թէ ոք լբբի և յանդգնի՝ զանէծս առնու նա յիրաւի զՑուգային և զայլ խաչահա-

նուացն, այլ և զառաջնոյն՝ հայէնի և զվերջնոյն՝ զնեռինն, ամէն։ Եւ խնամքն աստուծոյ ի վերայ խնամով պահողին եղիցի յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գ

87 ա Զվարդան սրբասէր կրաւնաւորն՝ զկոկող քարտխսխս, որ յետ Թղթիս կոկելոյ Ը. (8) աւր եկաց և փոխեցաւ առ յոյսն ամենեցուն՝ Քրիստոս աստուած, աղաչեմ յիշել յաղաւթս և աստուած-ողորմի ասել, զի և դուք ողորմութիւն գտջիք յողորմածէն աստուծոյ, ամէն։*

## 280

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Առ Կ. Եզյան, Պետերբուրգ Մ.Տ.Մ.**

Գրիչ՝ Յովհաննէս

124 բ ...Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ տառս այս իմաստապատում որ կոչի Լուծմունք արտաքնոց՝ բացայայտեալ զսա մեծ վարդապետին Հայոց Գրիգորի, ի քարանձաւս վիմանց լերանց, յորում փախուցեալ էաք [յերկիւղէ] անհուն զօրաց Ջաղաթայից և Թուրքաց, յորում նեղէին զմեզ յերկուց կողմանց։ Ի Թվին Հայոց ՊՀ. (1421), ձեռամբ անիմաստ և պիտակ անուն վարդապետի Յովհաննիսի ի պէտս կարեաց իմոց։ Եւ որոց հետեւեալ և որք հետեւիք յիշեցէք ի տէր Յիսուս զՅովանէս մեղուցեալ վարդապետ և զծնողսն իմ։

## 281

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Վենետիկ 8

Գրիչ՝ Մկրտիչ Եղեգեցի

... Եւ ետու զգիրս յիշատակ հոգւոյ իմոյ՝ հոգեւոր եղբաւր իմոյ Թովմա վարդապետի աստուածաբնակ ուխտին Մեծոփայ վանուց, վասն զի նա զԱռ որս գիրս Աստուածաբանին ինձ և ազգականին իմոյ Մարգարէ վարդապետին ինքնագիր ձեռաւք գրեալ շնորհեաց մեզ։***

Ի ՊՀ. (1421) Թվին մեք կացաք ի սուրբ մենարանս Վարագ, յահէ Թագաւորին արեւելից Շահրուհ կոչեցեալ, առ հոգեւոր եղբարս մեր Մարգարէ վարդապետին, և բաղձալի սրբազան եպիսկոպոսին տէր Յովհաննիսին... և տեսաք զմածեալն արեամբ Յիսուսի զփրկական փայտ խաչին Վարագայ...։ Եւ սոյն ամի յաղթեաց չաղաթէն զԹուրքմանն՝ զորգիք Յուսուֆին ի Վաղարշակերտ, և դառն գերեաց։

* 136 ա—137 բ էջերի վրա ևս կա մի հիշատակագրություն, որը հետաքրքրական է միայն իր վերջին պարբերությամբ. այդտեղ ասված է. «Որ խնամով և շուշափայիւ պահէ զսուրբ աւետարանս, խնամքն աստուածային ի վերայ նմին եղիցի, ամէն»։

** Ձեռագիրը գնված է եղել Սանասարյան վարժարանի համար։ Զոհ է գնացել հրդեհի։

*** Հմմ. № 148 հիշատակարանի հետ (էջ 144)։

## 282

### ԲԱՌԳԻՐՔ

Երևան 3201

Ստացող՝ Գրիգոր
վայր՝ Բերկրի՞

1 ա Ով | | | կորովամիտ վերածնող այսմ լուսազարդ սուրբ տա[ռիս], յիշեցէք յերկնաբացիկ սուրբ յաղօթս ձեր զնուաստ ոգի վարդապետս Գրիգոր՝ սպասաւոր սուրբ ուխտին Առաքելոց, որ ստացա զս[ա յ]աւարէ երկրին Տար[բերու]նոյ, որ այժմ Բերկրի կոչի։ Եւ եղև ստացումն սորա ի թվ. ՊՀ. (1421), յամի յորում եկն ազգն Նետ[ող]աց և աւերեաց զբոլոր ա[շխարհս] Հայաստանեայց, աւաղ։

## 283

### ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ. 49-50, Արճէշ, Արծուաբեր Աստուածածնին վանք

ա Ստացող՝ Կարապետ
վայր՝ Սուխարայ վանք

...Գարձեալ, ես՝ նուաստս ի բանասիրաց և վերջինս ի վարդապետաց Կարապետ կարօտ բանի՝ փափագող էի աստուածաբնակ քաղաքին Երուսաղէմի, որ բազում անգամ ջանայի գնալ և ոչ յաջողէր... զի բուռն էր հարկապահանջութիւն Ղարայ-Ուսուֆ խանին ի վերայ մեր...։ Եւ ի միւսում տարին գութ մարմնական ծնողաց նեղեաց զմեզ և բնական աշխարհի սովորութիւն, և խնդրեցաք յաստուծոյ հասուցանել զմեզ [Ցերուսաղէմէ] յերկիրս Քաջբերունի՝ ի վանքս Սուխարայ, որ այժմ Խառաբաստայ վանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս։ Եւ տեսեալ իմ զսուրբ աւետարանս ի յԵրուսաղէմ, գրեալ ձեռամբ Յոհաննէս կրօնաւորին, որ փակակալ* էր աստուածային սուրբ գերեզմանին, և ջահավառ սուրբ Գողգոթային, և գրեալ ի մէջ սուրբ Ցարութեան։ Վասն որոյ ցանկացող եղէ ես Կարապետ վարդապետս, զի յայն աւուրն էր գրեալ զաւետարանս, որ աստուածային խորհուրգ մատուցեալ էր ի սուրբ Գողգոթայ։ Եւ գնեցի զսա ի հալալ վաստակոց իմոց, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, [և] հօրեղբօրն իմում տէր Զաքէոսի...։

Եւ դառնալն իմում ոչ եղէ արժանի տեսանել զեղբայրն իմ զՅոհաննէս, զի փոխեալ էր առ Քրիստոս ի չար և ի դառն ժամանակիս, որ վերջացեալ էր Ղարայ-Ուսուֆն...։ Եւ իմ՝ այրեցեալ սրտիւ նուիրեցի զսուրբ աւետարանս գառն սուրբ Աստուածածնի տաճարիս...։

բ

Եւ զիս զՀայրապետ կազմողս յիշեցէք ի Քրիստոս, ի թուականութեան հայոց ՊՀ. (1421),

* Տպված է «փակեալ» (՞)։

## 284

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Վիեն. 419. Տաշ. Ցուց., էջ 873*

*Գրիչ՝* Յոհանէս
*վայր՝* Սանահին

ա

237 ա- 239ա *...Կատարեցաւ ցանկալի երգարանս երաժշտական ձայնաւորաց ի թվականութեան հայկազեան տումարի յութից հարիւրոց եւ Է.-եակ տասանց (1421). յամի յորում եղեւ ելանել ասպատակաւ՝ ի մերում ժամանակս չորրորդ անկամ, ազգին Նետողաց՝ խորազին անուանեալ ազանց* Շահռուխ *փաթշահին Պարսից, սատակչին Թուրքման ազգին. ի յայս եւ ի սոյն ժամանակս գրեցաւ տետրակս ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտս որ կոչի* Սանահին, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ հրաշափառ Կաթուղիկէիս, յառ ոտս* Ղազար *վարդապետի եւ հարազատ եղբօր իւրոյ* Յովսէփ *փիլիսոփայի, ձեռամբ ամենամեղ եւ փցուն գրչի* Յոհանիսի, *ի լաւ եւ յընտիր աւրինակէ* Առաքելցոյ, *ի վայելս անձին սրբասէր աշակերտի եւ ըստ հոգւոյ եղբօր մերոյ* Մելքիսեդ *կուսակրաւն քահանայի։ Վասն որոյ աղաչեմք զամենեսեան, որք աւկտիք ի սմանէ ուսմամբ կամ գաղափար առնելով, յիշեցէք ի Քրիստոս զիս՝ զմեղապարտ գրիչս* զՅոհանէս, *եւ զծնօղսն իմ, խնդրելով ի տեառնէ զթողութիւն մեղաց, նաեւ զստացաւղ սորին* զՄելքիսէթ *ծաղկող եւ կազմող. եւ զբազմերախտ սնուցօղն՝ զալեօք ծաղկեալ հօրեղբայրն իւր՝ զսրբասէր քահանայն* զԴաւիթ, *և զքեռին իւր զտէր* Զաքարայ, *եւ զբարեպաշտ ծնօղսն իւր զհայրն* զԽութլու *եւ զմայրն* զՄինա-խաթուն. *եւ զհարազատ եղբարքն իւր* զՍէթն, զԱթաբէկն, զՄելքի *եւ* զՅովսէփ, *հանդերձ ամենայն լրմամբ յիշեցէք ի Քրիստոս։*

բ

233 բ *Ո՛վ դասք լուսերամից եւ քաղցրանուագ երաժշտապետք, որք օգտիք ի սմանէ եւ վայելէք՝ զմեղաւոր գծողս յիշեցէք ի Քրիստոս։*

## 285

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 2064*

*Գրիչ՝* Թումայ Կափայեցի
*վայր՝* Տաթև

ա

405 բ *Փառք... որ ետ մեզ հասանել ի զլրաւ մատենիս աստուածային և զանձիս հոգևոր, ժողովեալ ի գրոց սրբոց՝ ի խրատ և ի լուսաւորութիւն հաւատացելոց, և յաւժանդակութիւն վարդապետաց և աշակերտաց գրոց։*

Եւ արդ, եղև գրաւ սորայ ի Թուականութեանս Հայոց ՊՀ. (1421), ձեռամբ [յ]ոգնամեղ և տրուպ անուն Թումայի՝ գրոց աշակերտի Կաֆայեցոյ,* երկրին Որոտեան, ի վանս Տաթևոյ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Եւստաթէի, ի յառաջնորդութեան տէր Ընտեփաննոսի ի զարմէն Գուրթելեանց, եղև գրաւ սորայ ի փառս Քրիստոսի աւրհնելոյն, ամէն։

Արդ, և ես՝ Իգնատիոս վարդապետ, տրուպ և յետին ամենայն վարդապետաց՝ մեղսամերձ և դառնացեալ ոգի, ստացայ զգիրքս խրատոյ ի հալալ ընչից իմոց, յիշատակ և բարեխօս ինձ և ծնաւղաց իմոց և ամենայն յարեան մերձաւորաց իմոց՝ եղբարց և քերց և եղբաւրորդաց իմոց՝ քահանայից և աշխարհակ[ան]աց, կենդանեաց և մեռելոց, և ամենայն երախտաւորաց իմոց, առհասարակ, ամէն...։

Բ

380 ա Զսակաւ աշխատողս՝ զՄարտիրոս սուտանուն աբեղա յիշեցէք յաղաւթըս ձեր, ով սուրբ ընթերձողք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 286

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

Ճեմարան Արևելեան լեզուաց 3, Cod. Arm. III Ե. 3, ՀԱ, 1892, էջ 80—83

Գրիչ՝ Կարապետ Դերենանցի
վայր՝ Հերմոնի վանք

443 ա-444 ա ... Քարոզգրոցս ցանկացեալ եղէ [ես] Կարապետ Դերենանցի, վասն որոյ յաւժարութիւն սրտիս մոռանալ ետ զտգիտութիւն արհեստիս, զի ոչ գիտէի կատարել զգրագրութիւն, և համարձակեցայ առ ի գրել զաստուածային բուրաստանս...։

Արդ, գրեցաւ սայ ի Հերմոնի վանս, առ ոտս մեծ բաբունապետին Յովհաննիսի, ի Թուականութեանս Հայոց ի ՊՀ.(1421), ձեռամբ անիմաստ և անմար գրչի Կարապետի սուտանուն գրոց աշակերտի | | |** ընդ հովանեաւ] վարդապետաց գերեզմանացս։

Արդ, որք հանդիպիք այսմ տառիս յիշեսջիք ի մաքրափայլ և յարժանաւոր աղօթս՝ զանարժան և զփցուն գրողս զԿարապետս, և զհայրն իմ զՄկրտիչ քահանայն, և զմայրն իմ զԵղիսաբեթն, և զքոյրն իմ զՄարթայն, և զքեռորդիքն իմ զՄեղիտոնն և զՈսկէգոյնն, որ օգնական եղեն ի գնալն իմ առ դասատունն և ետուն գրաստ մի, զոր տէր

* Այս նույն գրիչը՝ Թումայ Կաֆայեցի՝ 1422 թ. ընդօրինակած մի ձեռագրի հիշատակարանում մաղթում է յիշել իր ուսուցչին. «Վարժապետն և զուսուցիչն, զանհաս երաժիշտն և զքաղցրաձայն փիլիսոփայն, զմեծ պարոն Սարկաւագն, զուսուցիչն մանկանց Նոր Սիոնի» (տես «Սիսական», էջ 241)։ Ալիշանի կարծիքով, այստեղ հիշատակվողը Գր. Տաթևացու հաջորդ Մխիթար Տաթևացին է (°)։

** Ջնջված է երեք տող։

աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զնոսա, և զայլ ամենայն ազգայինսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս....: Նայ և զհոգևոր հայրն իմ՝ զյոյժ երախտաւորն առ հոգևորն և առ մարմնաւորն, զուսուցիչն և զվերակացուն զՅակոբ զկուսակրաւն աբեղայն, զանարատ և զանբիծ փիլիսոփայն՝ զպայծառ ջահն եկեղեցոյ և զուսուցիչն մանկանց նոր Սիոնի, զոր ընդ միոյն հարիւրապատիկ և հազարապատիկ տացէ նմա Յիսուս Քրիստոս վարձս [աշ]խատանաց իւրոց՝ զպսակն անթառամելի և զկեանսն յաւիտենականս։ Նայ և զհարազատ եղբայր նորա՝ զփոխեցեալն առ Քրիստոս [զհա]յրն Մուսեխն, և զաստուածատուր զաւակքըն նորա՝ զԱմիր-Ազահն(°) և զԱմիր-Ճիհանն և զ[Կարա]պետն, զոր աստուած անփորձ պահեսցէ և ընդ երկայն աւուրս արասցէ զնոսա, Նայ և զհոգևոր մայր իմ զՄարեմ-խաթունն: Այլ և զկուսակրաւն աբեղայն զԳալուստ գրոց աշակերտն, որ զաւրինակն շնորհեաց։ Այլ և զբազմերախտ եղբայր իմ ըստ հոգոյ՝ զԿարապետ կուսակրօն աբեղայն՝ ամենայն ժամ օգնական և ձեռնտու եղև ինձ ի գիշերի և ի տուընջեան, և զգիրքս կոզմեաց....:

Այլ և զՍարգիս(°) աբեղայն՝ զկատարեալն հաւատով, յուսով և [սիրո]վ։ Ա[րդ], յերես անկե[ալ աղա]չեմ զձեզ մի [մեղադիր լինի՛ք] վատթարութեան գրոյս, զի կար մեր այսչափ էր....:

## 287

## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 151, սյուն. 340—344, Վանի Արարուց եկեղեցի

ա

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

...Եւ գրեցաւ սա ի թվաբերութեանս Հայոց ՊՀ. (1421), ի հայրապետութեան տեառն Պաւղոսի, և մերոյ աթոռակալի և առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ՝ քաջ հռետորի տիեզերալոյս վարդապետին Մարգարէի և տէր Յովհաննէս եպիսկոպոսի, ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբազան առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, ձեռամբ անարժան և սնոտանուն երիցու՝ Կարապետ անարհեստ գրչի։

Արդ, աղաչեմ զմանկունդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զՍտեփանոս սրբասէր կրօնաւորն և զծնողքն իւր՝ զԹումայ և զՇնոհվոր-Տիկին, և զքեռին զՄկրտիչ կրօնաւոր, որ ի ձեռաց Թամուրին մարտիրոսացաւ, և զպապիկն զՍարգիս քահանայ, և զկենակիցն իւր զԱզիզ-Մէլէք, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս, և զհաւրեղբաւրն զՍտեփանոս քահանայ, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիք և զհանգուցեալսն...: Եւ դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՂազար քահանայ, և զծնողքն զՅովհաննէսն և Սարաւթայ, և զեղբայրն զԽնդուբէկ՝ զհանգուցեալն ի Քրիստոս...:

Եւ զիս՝ զանարժան գծողս, և զծնողսն իմ զՍտեփանոս քահանայ

և զՄինայ, և զհօրեղբայրն իմ զՄովսէս միայնակեցն, և զեղբայրն իմ զՅովաննէս քահանայ՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և զկենակիցն իմ՝ զԹանսու-Խաթուն, և զամենայն ազգականսն իմ . . .։ Այլ և յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչն մեր զՄկրտիչ սրբասնեալ քահանայ, որ բազում աշխատեցաւ ի վերայ մեր . . .։ Այլ և յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՍտեփաննոս սպասաւոր բանի, որ այսօր առ մեզ հանդիպեցաւ . . .։*

Բ

Կազմող՝ Մխիթար Գուզիկ

Արդ, յիշման արժանի առնէք զեղկելի կազմողս՝ զՄխիթար աբեղայս, որ մականուն Գուզիկ կոչի[մ].

Որ մեղաւք լցեալ եմ զհոգիս
Եւ սեաւ ներկեալ քան զԹանաքիս,
Կըպրտեսակ մըթացուցի,
Դեղ չեմ գտնուր ես այս վիրիս։
Ձձեզ աղաչեմ և պաղատեմ,
Արտասուաթոր ի ձէնջ հայցեմ,
Մի բերան ասացուած-ողորմի
Ասացէք մեղաւորիս,
Եւ աստուած ձեզ ողորմի
[Ի] սոսկալի դատաստանին, ամէն . . .։

288

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 8969

Գրիչ՝ Սարգիս

ա

87 ա Զմեղսանէրկ անձն զսեվացեալ հոգով Սարգիս եպիսկոպոս՝ անուամբ և գործովք թափուր ի յամենայն բարեաց, աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք ի տէր, հանդերձ ծնողաւք և ամենայնիւ . . .։

Բ

205 բ | | | Սարգիս | | | գ]իծս գրոցս հասան[ել] վերջին գիրս։ Գրեցօ | | | յաւուր [Լուսա]ւորչի պահոցս, [չա]րեքշաբթի, մեհեկի վերջն | | | և անհուն դառնութեամբ՝ տեղաց ի տեղս փախչելով, ի յաւտարութիւն ընթանալով, անհանգիստ, քաղց[ած] և ծարաւ, անչափ ով կարէ ի գիր արկանել, ի նետողաց ազգէ, որ կոչի Շաղուխ. և ապա ի սուտ եղբարց, վայ հազար բերան, [ի թվական]իս Հայոց ՊՀ°. (1421°)։**

* Հիշատակվում են ձեռագրի գրչության հետ հեռավոր կապ ունեցող մի շարք այլ անուններ։

** Ամբողջ հիշատակարանը եղծված է, նամանավանդ վերջին այս տողը։ ՊՀ․ (1421) թվանիշերը հազիվ են նշմարվում, և նրանց ճշտության մասին երաշխավոր լինել չենք կարող։

## 289

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3716

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

ա

... Արդ, զայս պատուական ակնըս չափիւղայ... առեալ բարե-
պաշտ տանուտէրն Յովհաննէս պաշար երկայնաձիգ ճանապարհին, որ
298 բ տանի առ հանդերձե‖ալ և ահագին դատաստանն...։
Արդ, յանկ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքս, որ
կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և
այլ սուրբ եկեղեցեացս։ Եւ ես՝ Թափուրս ի բարեաց գործոց Կարա-
պետ սուտանուն քահանայ և գործովք ունայն, տկար անձամբ յանձն
առի և ամենակարող զաւրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ
աւետարանս, մեղսամած մատամբս յաւրինեցի, միթէ քաւի մեղս ի
մարմնի. ի թուականութեանս Հայոց ՊՀ. (1421), ի հայրապետութեան
տեառն Պաւղոսի և մերոյ աթոռակալի Մարգարէ վարդապետի և տէր
Յովաննէս եպիսկոպոսի՝ առաջնորդացս ուխտին Վարագայ:
Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, յիշեցէք ի Քրիս-
299 ա տոս ‖ և ի սուրբ յաղաւթս ձեր զՅովաննէս բարեպաշտ տանուտէր, և
զծնողքն իւր, և զամենայն արեան մերձաւորքն իւր լի բերանով աս-
տուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։
Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր զՄկրտիչ
քահանայ, և զծնողքն իւր՝ զհայրն զԿարապետ, և զմայրն զԳոհար-Մէլէք,
և զկենակիցն զՆուէֆ-Խաթուն, և զդեռաբոյս զաւակն զԻգնատիոս, որ
կամակից եղև այսմ բարի գործոյս և բազում աշխատանս կրեաց,
տացէ նմա տէր աստուած վարձս բարիս ի հանդերձեալ աւուրն։ Եւ
Յովանէսն եւս նմա զսուրբ աւետարանս, զի հանապազ ընթեռնու և
աստուած-ողորմի ասէ...։
Այլ յերես անկեալ ես առաւել աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս
299 բ և ի սուրբ յաղօթս ‖ ձեր և զիս՝ զանարժան գծողս զԿարապետ, և
զծնողքն իմ՝ զհայրն իմ զՍտեփաննոս քահանայ, և զմայրն իմ զՄինայ,
և զհաւրեղբայրն իմ զՄովսէս, և զեղբայրն իմ զՅովաննէս քահանայ՝
զհանգուցեալն ի Քրիստոս, և զկենակիցն իմ զԹամար, և զդեռաբու-
սիկն իմ զՄեսրոպ, և զամենայն արեան մերձաւորսն... իմ՝ զկենդա-
նիս և զհանգուցեալս...։
Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զաշխատողս և զկոկոզ թղթիս զԱւե-
տիս քահանայ...։
Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՍտեփանոս սարկաւաք՝ ծառայ
Կարապետ քահանի։*

* Վերջին պարբերությունը գրված է այլ ձեռագրով։

Բ

*Յիշեա Քրիստոս աստուած յարքայութեան քում զաստուածասէր և զբարեպաշտ տանուտէրն՝ զուսթա Մուրատշէն, և զկենակիցն իւր զՕլթա-խաթունն, և զորդեակն իւրեանց զՄիրիջանն, որ էր տեսլեամբ գեղեցիկ ե հասակաւ վայելուչ, և տարաժամ մահուամբ առ Քրիստոս փոխեցաւ, և սուգ անմխիթար եթող ծնողաց իւրոց։ Աղաչեմ զամենեսեան յիշեցէք յաղօթս ձեր ե աստուած-ողորմի ասացէք* Օլջա-խաթունին *և ծնողաց նորին՝* Թումային *և* Հռիփսիմին, *զի արարին ձեռն մի զգեստ պատարագի՝ շուրջառ և ուրար և բազպան, ե ետուն վայելումն* Մկրտիչ *քահանային և որդւոյն իւրոյ* Կարապետ *քահանային, որ որդեգիր եղև* Օլջա-խաթունին, *տէր աստուած վայելել տացէ, ամէն։*

*Դարձեալ, յիշեցէք* զՀայ-խաթունն *և* զՄելէք-խաթունն, *և աստուած-ողորմի ասացէք։*

## 290

## ԱՒԵՏԱՐԱՆ

*ԼՑՎ 156, սյուն. 361—362, Վանի հայկավանք եկեղեցի*

*Գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Սուրբ Խաչ (Աղթամա՞ր)

*...Ի յութ [հ]արիւր թըւին մըտեալ*
*Եւ ևւթանասուն, որ յաւելեալ (—1421)**
*Աւետարանս եղև գըրեալ,*
*Ի գուռն սուրբ Խաչիս կոչեցեալ։*
*Ես* Յովհաննէս *կրաւնաւորեալ,*
*Գործ գըրչութեան յաւժ[տր]եցեալ,*
*Եւ մըտայգիւր ի սայ եռեալ*
*Ծըրագրեցի արկար անձամբ.*
*Եւ մեղսամած մատամբ իմով*
*Կատարեցի մեծաւ յուսով,*
*Առիթ գըտեալ ինձ փրկութեան,*
*Ներքին մարդոյս՝ ըըժըշկութեան,*
*Հզաւրբ մատեանս տէրունական,*
*Որ է պատմիչ տնաւրինութեան,*
*Որով ի լըումն եկն՝ ամենայն*

---

** Հրատարակիչը ձեռագրի գրչության թվականը համարել է 1431-ը, ըստ երևույթին նրան շփոթության մեջ է գցել «ևւթանասուն, որ յաւելեալ» արտահայտությունը։ Այդ նշանակում է, որ ձեռագիրը գրված է ութհարյուր գումարած («յաւելեալ») յոթանասուն թվականին (1421)։ Բայց կարելի է «յաւելեալ»-ը անմիջապես 70-ին կցել և հասկանալ «ավարտված յոթանասուն», այսինքն 86։ Այդ դեպքում իրոք ձեռագիրը գրված կլիներ 1431-ին։*

Խորհուրդ կամացըն հայրական.
Որք հանդիպիք սըմայ սիրով
Եւ ընթեռնուք մեծ հաւատով,
Դուք հայցեցէք բոլոր սըրտով,
Զտէրըն տերանց աղաչելով,
Զհայր երկնաւոր աղերսելով.
Ընդ անառակին յիս գըթալով,
Ըզբանըն հաւր առեալ մարթով,
Ընդ աւազակին զիս յիշելով,
Ըզըղխումըն համապատւով
Ընդ հովանեաւ պարփայկելով,
Ցերիս անձինս բաժանելով,
Ի մի բնութիւն միանալով։
Զի աշխատանս իմ, զոր կըրեալ,
Ի սուրբ մատեանս և ծըրագրեալ,
Իբր ի լումայ այր[ւ]ոյն հաճեալ,
Ի գանձանակն առընկալեալ.
Նոյնասարաս յիս նայեցեալ
Տաճար անուան իւր ընծայեալ.
Գարտ[ե]ացն իմոց, որ ոչ թըւին
Ներքին մարդոյս և արտաքին,
Զի քան զաւազ շատ է զծովին
Եւ քան ըզշիթս անձրևային,
Քաւարան սայ եղիցի
Արքայութիւնըն ըռնալի.
Եւ մի զմիայն իմումս անձին,
Այլ իմ բոլոր ազգատոհմին,
Ծնաւղացն իմոց մարթաւորին,
Որք ի ժողովս են երկնային,
Որ տարաժամ [ելին] յաստեացն,
Առհասարակ մասն և բաժին։

Բ

Ես՝ Հետեես թացի միայն՝ զե[ր]թ զթուփ մի ի մէջ դաշտի, զաւակ չունէի։ Այլ յիշեցի զբանն տերունի՝ որ ասէ, թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանեակք իցեն նորա յԵրուսաղէմ։ ԶՔրիստոս եղի ինձ յոյս և ապաւէն ըստ իմ կարողութեանս, ու գնեցի զայս աւետարանս Ռ. հարիւր (1,100) դրամ։ Ու տուի ի դուռն սրբոյն Սարգսի զաւրավարին, որ Հերպետ քահանայն կարդայ և այլ քահանայք, որք լինին . . .։*

* Հետևնի այս հիշատակարանի գրության ժամանակի մասին հրատարակիչը ոչինչ չի հայտնել։ Հնարավոր է, որ այն ձեռագրի գրչության թվականից (1421) շատ հետո է գրված։

## 291

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 207

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

ա

557 բ ...Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս, և լուսափայլ և մաքուր մարգարտիս ցանկացող եղեալ երջանիկ ոմն կրօնաւոր և աստուածեղէն ձրիւքն բարգաւաճեալ, որոյ անուն Սաղաթիէլ ճանաչի, և ելեալ ի խնդիր այսմ աստուածախօս և աստուածունակ տառիս, որ ունի ամբարեալ յինքեան զբոլոր հին և զնոր կտակարանսն՝ զմարգարէականս և զառաքելականս, որ և անուն գրոցս աստուածաշունչ յորջորջի, և ետ գրծագրել զսա յոյժ փափագանօք բազում գրծագրողաց՝ ի հալալ արդեանց իւրոց։ Որ և վասն առաւել ջերմեռանդ սիրոյն, զոր ունէր առ աստուած, և վասն չքաւորութեան իւրոյ՝ զմեծ մասն գրոցս իւրով իսկ ձեռամբն գծագրեաց ի մեծահռչակ և յաստուածաբնակ և յականաւոր և յերևելի և ի մայրաքաղաքն ամենայն վանորայից՝ ի Վարագ վանքն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և այլ բազմահաւաք սրբոցն, որ անդ կան հաւաքեալ։ Աւրինակ եղջերուին, որ յոլովութենէ հրական մասինն բաղձայ փափագմամբ ի յաղբիւրս ջուրց, ըստ բանի երջանկին Դաւթայ, այսպէս և սբքասէր և ընթերցասէր կրաւնաւորն Սաղաթիէլ, ի յօժարութենէ կամացն յաղթեալ փափագեցաւ այսմ աստուածախօս և աստուածաշունչ կտակիս և ստացաւ զգանձս անկողոպտելի և զանառիկ մեծութիւնս ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ, և ի զուարճութիւն մանկանց Սիոնի, ի վայելումն անձին իւրոյ յաստի կենցաղումս, և յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն իւրոյ Ամիրբէկին, և մօրն Խելօքին, և եղբօրն Մկրտչին, և քեւերն Փաշա-Մելէքին, և հօրեղբօրն Սէթին, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոցն, և որոց տէր կամեսցի....

Այլ և զգծագրողք այսմ աստուածաշունչ կտակիս՝ նախ և առաջին զՅոհաննէս պատուական վարդապետն, մականուն Մոնթ կոչեցեալ*,
558 ա որ պատճառ և սկիզբն գրծագրու || թե[անս | | | եղեալ, և զԽաչատուր քահանայն**, և զԿարապետ քահանայն, [և զԱնդրիաս և զՎար-

* 488 ա էջի ներքին լուսանցքում այս Յովհաննէսը գրել է՝ «ԶՅովհաննէս գծողս աղաչեմ յիշել ի տէր, որ զկէս տետրիս գրեցի մինչև ի վերջքն»։

** 377 բ էջի ներքին լուսանցքում Խաչատուրը գրել է՝ «Զստացող գրոցս յիշեցէք ի Քրիստոս՝ զՍաղաթէլ կրօնաւորն, և աստուած-ողորմի ասացէք։ Ընդ նմին և զմեղապարտ գրիչս զԽաչատուր, եւ աստուած զձեզ յիշէ, ամէն, եղիցի»։ Ունի նաև այլ հիշատակագրություններ՝ «Աւաղ, զայս վատ թանաքս, անմեղադիր լերուք» (էջ 378 ա), «Աւախ, զայս վատ թղխթերս» (էջ 341 բ)։

դաՆ],* և զծնօղս նոցին յիշեցէք ի Քրիստոս սրտի մտօք և աստուածողորմի ասացէք նոցա, ով պատուական հարք իմ և եղբարք, ընթերցողք և վայելողք այսմ տառի։

Ընդ նոսին և զիս... զանարհեստ սոսկանուն աբեղայս Թումա, որ և ես արժանի եղէ սակաւ ինչ աշխատութեան՝ գծագրելով զերկրորդ աւրէնքն ի տառս յոյս մեղսամած մատամբ իմով և զյիշատակարան գրոցս, և կազմեցի զսա ըստ կարի փանաքիմաց գիտութեան իմոյ, միոյ աստուած-ողորմայի արժանի արարէք և զիմս անարժանութիւն....

Աւարտեցաւ և կազմեցաւ գիրքս այս ի թվաբերութեան Հայկազեան տումարի ի ՊՀ. (1421), յաստուածախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ գերահռչակ սուրբ Խաչին և սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան Դաւթի: Արդ, աղաչեմ զհանդիպողքդ սմա զաստուած-ողորմին աննախանձ կամօք ասասջիք սրբասէր և պատուական կրօնաւորին Սաղաթիէլին, որ և ստացաւոր է բանի, և ծնօղաց նորին Ամիրբէկին և Խելօքին, և այլ ամենայն արեան մերձաւորաց նորին...։

Բ

103 բ Ցամի Պ. և Հ. և Ա. (1422) թվականութեան Հայկազեան տումարիս գծագրեցաւ գիրս երկրորդում օրինացս ի կղզիս Աղթամար, ձեռամբ Թումայի անարժանի, ի խնդրոյ սրբասէր աբեղային Սաղաթէլի: Աղաչեմ զհանդիպողսդ զաստուած-ողորմին անմոռաց ասել ստացողի սորին և ծնօղաց նորին, և մեղաւոր գծողին և ծնողաց նորին, և ձեզ ողորմեսցի տէր, ամէն։

Գ

181 բ Ո՜հ, ո՜հ, զանիծածն սատանա, որ ոչ կամի թոյլ տալ գրել զսա, այլ ցնորեցուցանէ զմիտս յայլ դէհ, ապաւէնն աստուած։

Դ

*Ստացող և մի մասի գրիչ՝ Սաղաթէլ*
*վայր՝ Վարագ*

558 ա Ցայսմ ամի եղև զբաւ սորա, որ էր թիւս Հայոց ՊՀԱ. (1422) ի պարնութիւնն էզդինշէրին և որդոյ նորին Մելեքին:

Գրեցաւ գիրքս հոգելից ի գաւառս Տոզը կոչեցեալ, ի սուրբ մենաստանիս Վարակը կոչեցեալ, ընդ հովանեաւ կենսատու սուրբ Նշանիս, և յՆրկոտասան սիւն լուսոյս, և սուրբ Աստուածածնիս, և Նախա-

* Ձեռագրի ընդօրինակությանը մասնակցած մյուս գրիչների անունները լրացնելու համար տեղ է բաց թողնված։ Մենք լրացնում ենք այդ անունները ձեռագրի մեջ պահպանված հիշատակագրությունների հիման վրա։ 420 ա էջում գրված է՝ «ԶԱնդրիաս գծողս աղաչեմ [յիշեցէք]», 428 բ էջի ներքին լուսանցքում գրված է՝ «ԶՎարդան սակաւ գծողս յիշեցէք»։

վկայիս, և սուրբ Յովհաննէս աւետարանչիս, և գերապանծ սրբոյ Սիոնիս, և սուրբ Սոփայիս։ Ի յառաջնորդութիւն տիեզերալոյս բաբունապետիս Մարգարէ քաջ հռետորի և իմաստասիրի, ի հայրապետութեան արքեպիսկոպոսիս տէր Յովանէսի, որ սիրող և խնամածու եղև մեզ իբրև հայր առ որդի, գորովագութ գթով ուսուցանելով և խրատելով, զոր տէր Յիսուս վարձատու լինի սմա, վասն զի սա եղև պատճառ գրոցս, որ Ժ. (10) տետր ետուր և զաւրինակն շնորհեաց, հազարապատիկ առցէ ի հանդերձեալն։ Ես՝ պիտակ անուն վարդապետ Սաղաթէլ առի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց. [որք հանդիպիք] կարդալով, կամ տեսութեամբ, կամ գաղափար ունելով յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյգրեալս ի սմա, և մեզաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ աստուծոյն մերմէ, ամէն։ Եւ նա, որ առատն է յամենայնի ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն, եղիցի, եղիցի։

Ե.

327 ա ԶՍաղաթէլ՝ մեղաւք լցեալ,
Եւ ազգի ազգի ախտիւ գերեալ,
Ի բարի գործոց ունա[յնա]ցեալ,
Եւ գրչէ բան մի չուսեալ,
Ու ի ծերութեանն այս պատահեալ,
Ամէն գրեանքս սխալ* եկեալ։

Եւ աղաչեմ մոխրամած գիմօք, յիշեսջիք ի բարին Քրիստոս զծնաւղ իմ զԱմիրբէկ, և զԽելաւքն՝ զմայրն իմ, և զքոյրն իմ զՓաշա-Մէլէք, և զհօրեղբայրն իմ զՍէթ, և զորդի նորին Կիրակոս, և զամենայն ազգն իմ....։**

## 292

## ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 66, Վան, Ս. Խաչի վանք

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Մարմետ գիւղ

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականութեանս Հայոց տումարի ՊՀ. (1421), ի հայրապետութեան Հայոց կաթողիկոսի տէր Պօղոսի Սսոյ, և Աղթամարայ՝ տէր Դաւթի, ի յաշխարհակալութեան Սքանտար ղանին, ի յեր կիրս Վասպուրականի, ի գեաւղս որ կոչի Մարմետ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսիս և այլ սուրբ Նշանացս որ աստ կան հաւաքեալ, առ ոտս բարեսիրտ և հեզահոգի եպիսկոպոսին մերոյ տէր Մխիթարի, որ է գէտ, հովիւ և տեսուչ և ՛վերակացու այսմ վիճակի, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Արդ, գրեցաւ և աւարտեցաւ ի նոյն ամի, ձեռամբ անարուեստ գրչի Սիմէոն աբեղայի։

* Բնագրում՝ «սխալ»։
** Ձեռագրում կան նաև սակավարժեք այլ հիշատակագրություններ։

## 293

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրզ. Նօա. 65, Վանի Տիրամայր եկեղեցի*

Գրիչ.
*վայր՝* Խիզան

*... Գրեցաւ ի մեծ թուականիս Հայոց ՊՀ. (1421), ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն* Պօղոսի, *և յամիրութեան* Ամիր-Դայուտին, *ի քաղաքիս* Խիզան:

## 294

### ԳԱՆՁԱՐԱՆ ԵՒ ՏԱՂԱՐԱՆ

*Սերաստիա, Մ. Նշան, 136, ՀԱ, 1927, սյուն. 313—314*

*Գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Պառուազրակ

756 *...Գրեցաւ տաղերս ձեռամբ անիմաստ գրչի սուտանուն* Աստուածատուր *դպրի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, ի յանապատս որ կոչի* Պառուազրակ, *ի թվ. ՊՀ. (1421)։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան յիշման առնել զմեզ արժանի... զայս սակաւ աշխատողի և ծաղկողի և գլխագրողի, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Ընդ նմին և զհարազատ եղբայրն իմ՝* զՀայր *կուսակրաւն աբեղայն, որ աշխատեցաւ յետ ինձ...։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ եղանակաւոր տառիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սորա զպատուական կուսակրաւն աբեղայն* զՅակոբ *ճգնաւորն, որ բազում փափաքմամբ ցանկացաւ գնել զաստուածազարդ գիրքս, որ է գանձ և տաղ ի մի տուփ, ամենայն տէրունական տաւնից զարդ և պայծառութիւն, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց՝ զեղբաւրորդի նորա* զԱստուածատուր *աբեղայն, և* զԽաչատուր *սարկաւագն, և* զՊետրոս *կուսակրաւն աբեղայն՝ զծերունին, և զհոգևոր եղբայրն մեր* զՍտեփանոս *կուսակրաւն աբեղայն։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով, կամ աւրինակելով, կամ տեսանելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր* զՅակոբ *ճգնաւորն, որ ստացաւ զսա յիշատակ իւր ի դուռն սուրբ Կարապետին՝ ի* Պառուազրակն: *Արդ, մի ոք իշխեսցէ ի սուրբ հարցն ընդ ձեռամբ պահել կամ արգելուլ, քանզի հասարակաց՝ մեծի և փոքու է։ Արդ, կացցէ սա յեկեղեցւոջն՝ ի սուրբ Կարապետն և եղիցի հասարակաց ամենեցուն՝ յաւրինակ և յուսումն և յամենայն պէտս կարեաց. և կամ որ յանդգնի կամ ընդ ձեռամբ պահէ և արգելու՝* զՅուդայի *և* զՏորելայ *մասն առցէ։*

*Ո՜վ եղբարք հոգևորք, ընկալաբուք ի մէնջ զսակաւ զայս նշանակ սիրոյ և* զՅակոբ *ճգնաւորն՝ զբարին և զընտիրն, յիշեցէք յաղաւթըս ձեր հոգևոր սիրով, զի և զձեզ աւրհնեսցէ Քրիստոս՝ որդին աստուծոյ հոգով և մարմնով, և զարդարեսցէ շնաւրհաւք սուրբ հոգւոյն,*

ամէն։ Ընդ նմին և զառաջնորդ վանիցս զՄաղաքիայն՝ զկուսակրաւն աբեղայն... և զՅակոբ բարի ճգնաւորն և զհոգևոր հայրն մեր զՈնոփրիոս, որ բազում աշխատեցաւ և ուսոյց և սնոյց զմեզ...։

Մի մեղադրէք սղալանաց և խոշորութեան գրոյն, զի ձմեռն էր, և գրողս տխմար էր, և թանաքս պայծառ չէր, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 295

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՀՑՎ 150, սյուն. 329—332, Վանի Արարուց եկեղեցի

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Սպաս անապատ

...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Վարդան աբեղայի անիմաստ և տխմար գրչի...ի դառն ժամանակիս, որ ոչ գոյ համբաւ բարեաց, և ոչ գլուխ Հայոց ազգաց, յայլասեռից յոյժ վշ[տ]ացած՝ հոգոց հանեմք ի խոր սրտաց։ Ի մեծ թուիս՝ ի յեղանակ շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանցն չափեալ՝ յելանելոյն Ադամայ ի դրախտէն ՉՌ. և ՉՃ. (6600) ամ՝ ըստ եւթանասնիցն, որով մեք վարիմք։ Եւ է ի մարդեղութենէ բանին աստուծոյ անժամանակ էին փրկչին Յիսուսի Քրիստոսի ամս ՌՆԻԱ. (1421), իսկ ըստ Ռոսրովային յաբեթեանս տումարի՝ ՊՀ. (1421), և էր մեծ շրջանին։ Ի կաթուղիկոսութեան հայկազեան սեռի տէր Դաւթի՝ եղբաւր տեառն Զաքարիա, որ վկայական արեամբ կատարեցաւ, որպէս հնուեն Զաքարիայն։

Էր նա տեսլեամբ սուրբ հրեշտակի
Որպէր ճրագու* պատարագի,
Ցերեսն առեալ զտիպն Յիսուսի
Սիրտըն լըցեալ հոգով ի լի։
Էր իմաստուն յոյժ և արի,
Ծաղրատեսակ(*) յամենայնի,
Անձամբ յաղթող և կորովի
Տղայ հասկաւ եւթնիցս հնգի։
Պսակեցաւ արեամբ բարի,
Ոչ ուրացաւ զտէրն ամենի,
Զիւր զաւրաւոր անձն և արի
Ետ նա ի սուր վասն Յիսուսի։
Եւ աէր աստուածն Իսրայէլի,
Որ պահապանն աննիրհելի
Պահէ զաթոռ հայրապետի՝
Հաստատ, անշարժ վերայ վիմի,
Աղաչանաւք մօրըն կուսի՝

* Տպված է «զրակ ուշ(*)։

Մարիամու Աստուածածնի
'Ի ամէն* սրբոց յերկինս 'ւ յերկրի,
Ջխաղաղութիւն տայ աշխարհի։
Արդ, այս ահեղ ժամանակի,
Որ կամ լցեալ չարեաւք ի լի,
Ջաւետարան ըստ Քրիստոսի
Ես անարժան՝ գծագրեցի,
Ի յանապատս, որ Սպատ կոչի,
Ընդ հովանեաւ Ամենափրկչի
Եւ Յովաննու Կարապետի**,
Եւ յայլ համաւրէն եղբարց մերոց,
Որք կան բնակեալ յայսըմ տեղի.
Եղբայրութեամբ խնամ[ա]րկեցին,
Որ զգործըս մեր կատարեցի։

...Եւս առաւել ողորմեա, Քրիստոս աստուած, առաջնորդին սուրբ ուխտիս մերոյ՝ տէր Յոհանէսին, որ հայրախնամ խնամէ ի վերայ մեր...։

Արդ, որ ճաշակէք յաստուածային սեղանոյս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զըստացող սուրբ աւետարանիս՝ զԹումայ կրաւնաւորն, և զհայրն իւր ըստ մարմնոյ զՎարդան, և զմայրն իւր զՄարեմ, և զեղբայրն իմ*** զՍտեփաննոս, և զկենակիցն իւր, և զեղբաւրորդիքն իմ՝ զԳրիգոր սարկաւագն, և զՄիրանն և զԿարապետն, և զքոյրն իւրեանց Նոր-Տիկինն, և զՏիրանցն, և զԹանկ-Խաթունն՝ քեռոյ դուստ[ր]ն իմ, և զամենայն արեան մերձաւորացն իմ յիշեսջիք ի Քրիստոս աստուած...։

Եւ ինքն՝ ամենառատն և պարգևատուն Քրիստոս աստուած, տացէ զիւր յաւիտենից հանգիստն Թումային և կենակցին իւրոյ Ոսկոյն, որ զաւրինակն շնորհեցին մեզ։ Ցերես անկեալ աղաչեմ զձեզ, ով որք հանդիպիք աստուածային բուրաստանիս՝ անմեղադիր լերուք սխալանաց և խոշորութեան գրոյս, ո՜հ, ո՜հ...։

## 296

## ԳԻՐՔ ԿԱՑՄԱՆԱՑ ԲԷԳԱ ՔԱՀԱՆԱՅԻ

Երևան 2037

Գրիչ՝ Յօվասափ Ապարանեցի
վայր՝ Կաֆայ

187 ա Փառք...որ հասոյց զմեղապարտ ոգիս և զփցուն գրիչս՝ զՓրայ Յօվասափ Ապարանեցիս ի յաւարտ սորին, զոր և ծրագրեցաք ի սուրբ Նիկօլ, ի Կաֆայ, ի յամի տեառն մերոյ Ցիսուսի Քրիստոսի ՌՆԻԱ. (1421), յապրիլ ԺԲ. (12) եղև աւարտումն սորա, ի յերեսնամեայ կենաց մերոց։ Արդ, աղաչեմք զամենայն հանդիպօղք այսմ սուրբ և-

* Տպված է «ամենայն»։
** Տպված է «սուրբ Կարապետի»։
*** Իմա՛ ոչ թե գրչի, այլ ստացողի։

*պատուական և ի փրկութիւն բազում հոգոց գրոցս, որ կոչի Կայծականց, յիշեցէք զմեղայպարտ ոգիս զՖրայ* Յօվասաբս *և զծնօղսն իմ՝* զՔարիմշայ *և* զԿատարինայ, *և աստուած զձեզ յիշէ ի յիւր յանմահ տեսութիւնն և յարքայութիւնն, նայ և զվարպետսն իմ զառաջին և զերկրորդ՝ զՖրայ* Օգոստինոս *և* զՄխիթարիչ | | | *և զրաբունին յիշեցէք ի Քրիստոս։*

*Ի սոյն ամի ի* Սամիսոն *քաղաք կրա[կ* | | | *և զամենեսեան առհասարակ կիզեաց* | | | *և զամենայն հասակ։ Ի սոյն ամի* | | | *զԹուրքն* կոտրեաց, և կոտոր* | | | *իբրև ՀՌ. (70,000) մարդ։*

## 297

## Մ Ա Շ Տ Ո Ց

***Փիրգ. Նօտ. 66, Կ. Պոլիս, Ղալաթիոյ Թանգարան***

*Գրիչ՝* Մխիթար

*...Գրեցաւ քահանայաթաղս ի Թուաբերութեանս Ասքանազեան և Արեթական տումարի ՊՀ. (1421) ամի, ի հայրապետութեան տէր* Պօղոսի, *և եպիսկոպոսութեան* Աղեքսանդր *վայվոդային, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ձեռամբ մեղապարտ գրչի՝* Մխիթար *անարժան քահանայի, որ ի* | | |

## 298

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

***Երեւան 918***

352 ա *Ո՜վ քահանայք սուրբ Սիոնի և դասք ընթերցողաց, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի Քրիստոս զըրբասնեալ և զարժանապատվեալ, ծաղկեալ ալեաւք ծերունին, զգահագլուխ քահանայն զտէր* Վահրամն, *որ էր երաժշտապետ պանծալի և փակակալ սուրբ լուսաւորչին Գրիգորի։ Քանզի յայսմ ամի, որ էր Թվական Հայոց ՊԿ. (1421) ամ, գնացեալ* յԵրուսաղէմ *յերկրպագութիւն սուրբ տնաւրինականացն Քրիստոսի, և տեսեալ զմատեանս աստուածային, ծաղկաւէտ բուրաստանս որպէս դրախտ վայելուչ և գեղեցիկ, հաւաքեալ ի սմա ծաղիկս զանազանս, բերելով մեզ ճաշակս քաղցրահամս և դեղս բժշկարարս, և եռափափաք սիրով գնեաց զսայ ի հալալ արդեանց ի նոյն վերոյյիշեալ* Կարապետ *աբեղաէ, որ էր յայնժամ փակակալ և սպասաւոր սուրբ դամբարանի Յակոբայ առաքելոյն, ի վայելումն շքեղազարդ անձին իւրոյ, և յետ աստեացս ելանելոյ՝ թողուլ յիշատակ իւր և ծնողաց նորին և ամենայն զարմից։*

*Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան ... յիշեցէք ի յերկնաթռիչ աղաւթս ձեր զվերոյգրեալ քահանայն* զՎահրամն, *և զբարեհամբաւ զուգակիցն իւր զտիկին* Եղներն, *և զիւր նազելի դուստրն՝ տիկին* Մա-

---

** Գրիչն ընդօրինակել է նաև Թարգմանոցի կարևոր հիշատակարանը՝ 1356 թվականից։*

352բ բիուՆՆ, և զփեսայն իւր՝ զպարոն ԹորոսՆ, և զաստուածա ‖ պարգև զաւակքն իւր։ Այլ և զհանգուցեալ սիրուն որդեակն իւրեանց, զսըր-բամիտ, զմաքուր և զամբիծ սարկավաքն, որոյ անուն յորջորջիւր Հե-թում, քանզի յայսմ ամի, որ էր Թվական Հայոց ՊՀ. (1421) ամ, ի յու-նիս ամսոյ ԺԱ. (11), և պատկեր աւուրն չորեքշաբթի, փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենեցուն և գնաց տարաժամ յաշխարհէս, զի էր ամաց Ժ. և Ը. (18)-ից, և եթող մեծ սուգ և անփարատելի տրտմու-թիւն իւր ծնողացն և ամենայն զարմիցն, եւս առաւել մեզ, քանզի ի մանկութենէ ի վեր սնուցել էաք գորովալիր աղետիւք։ Որոյ տէր աստուած զինքն սուրբ սարկաւագացն դասակից և պսակակից և մաս-նակից արասցէ, և ինքն փրկիչն ամենեցուն, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ որ զյիշատակարանս գրեցի, ընդ միոյն հազարապատիկ և բիւրապատիկ պարգևէ զիւր սուրբ արքայու-թիւնն, ամէն ու հազար ամէն։

## 299

### ԱԻԵՏԱՐԱՆ

ՄՑՀ ձեռ. Ա. 36, էջ 77—78

Հետ. կազմող՝ ՍիմէոՆ

639 ...Զվերջին կազմողս սորայ զՍիմէոՆ դպիրս յիշեցէք ի տէր, և տէր յիշէ զձեզ յիւր երկնից արքայութեանն, ամէն։

Ո՛վ դու սուրբ աւետարան, աւգնեայ ինձ և զանարժան ՍիմէոՆ դպիրս արժանացոյ ողորմութեան։ Ի Թվականին ՊՀ. (1421)...։

## 300

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 5708 (Ա), 4522 (Բ), 8908 (Գ) 1117 (Դ)*

Յիշատակարան աղէտից ի ժամանակիս մերում, զոր ասացեալ է Գրիգոր վարդապետի, որ մականուն Ծերենց կոչի, Խլաթեցի*

*Ի յութհարիւր Հայոց թուական*
*Ընդ որ և հինգ եօթն յաւելան (1386),*
*Յունուարի մին ստհք յայտնութեան*
*Լոյս արեւուն խաւարեցան։*
*Մեծ վարդապետն անուն Յոհան,*
*Որ և Կախիկ անուն ծնընդեան*
*Յետ վեց աւուրըն խաւարման՝*
*Փոխի առ տէր իւր անծկական։*
*Ի սոյն աւուրս դառնութեան*
*Ծրագալուցի աւր յայտնութեան*
*Մեծ պատուհաս ի շահաստան*
*Բարբարոսաց ազգէն հասան։*
*Արքայն Հոնաց Թուխթամիշ խան*
*Զաւրս առաքեաց ի Պարսկաստան,*
*Որ եկն, արար առ և թախթան*
*Մինչև յերկիրըն Հայաստան,*
*Հինգն յունուարի Թարվէզ մըտան,*
*Ի քսան և ինն՝ ի Նախչըւան,*
*Անտի գնացին դէպ ի Մուղան,*
*Դարձան յաշխարհն իւրեանց բնական։*

Վերնագիր ունի միայն Ա.-ն 2 Տպ. ընդ որս 3 Գ. Յունուվարի մէկ փխ. Յունւարի մին 4 Գ. արեու 5 Գ. Յովհան 5—8 Ալջ. չիք 6 Գ. իւրեան փխ. ծնընդեան 8 Տպ. աէրն իւր անժամանական, Դ. անձկական 9 Գ. ծննգեան փխ. դառնութեան 10 Գ. սուրբ փխ. աւր 13 Գ. յոնաց Թուխթան իշխան 15 Տպ. Թախտան, Գ. Թալան 16 Գ. յերկիրս 18 Գ. Նաջուան 20 Գ. յաշխարհ

* Գրիգոր Խլաթեցին «Յիշատակարան աղէտից» կոչվող պատմական հոխ բովանդակությամբ իր չափածո հիշատակարանը, որ հայագիտության մեջ իրավամբ կոչվել է՝ պատմական վիպասանություն, գրել է 1422 թվականին, իր իսկ խմբագրությամբ, շուրջ 1408 թվականին լույս ընծայած «Գանձարան» ժողովածուի մի ընդօրինակության առիթով։ Ո՞վ է եղել այդ ընդօրինակության պատվիրատուն և ինչ հանգամանքներում է կատարվել այն՝ պարզ չէ, որովհետև հիշատակարանը մեզ հասել է հետագա (ընդարձակ և համառոտ) ընդօրինակություններով, որոնք լրիվ են իրենց պատմական ու արժեքավոր մասով, սակայն թերի են վերջից։ Մեզ հասած ամենաընդարձակ (Ա) օրինակում պահպանվել է մի հատված, որտեղ գրիչ—հեղինակը փառաբանում է երրորդությանը գանձե-

*Զատ ու զաւար ընդ ինքեանս տարան,*
*Մըտին յաշխարհըն Հոնական։*
*Անթիւ վընաս էր գործեցան,*
*Ի գալ նոցա մինչև դարձան.*
*Բազմաց արիւնք յերկիր հեղան*
*Եւ շատք ի ձիւնն մըսեցան,*
*Բազումք յահէ նոցին փախեան*
*Եւ ի նըզմունս սատակեցան.*
*Մարք ըզտղայոց գութ մոռացան,*
*Ծընաւղք մանկանց դահիճ եղան.*
*Շատք ի սըրոյ նոցին մեռան*
*Եւ այլք բազումք չարչարեցան։*
*Ընդ սոյն՝ ընդ այս գործըս չարին*
*Եւ ընդ կորուստ Հայաստանին*
*Եհաս միւս այլ հարուած կըրկին*
*Ցոյժ դառնագոյն քան զառաջին,*
*Մինչ դեռ ի նոյն էաք սըգին,*
*Եկեալ եհաս մեզ ձայն գուժին,*
*Թէ շարժեցաւ տուն Խորազմին,*
*Առհասարակ ցեղ Թաթարին,*
*Ժառանգաւորք Սըմըրղընդին,*
*Աւտար որդիքն Աբրահամին*
*Միահաղոյն յաշխարհս մըտին,*
*Ցաթոոս Ատըրպատականին։*

21—22. Գ. չիք 23. Գ. յոյժ փխ. էր, Տպ. վնասեր, Ալշ. վնասներ, փխ. վնաս էր 26 Գ. սառեալ միջւան փխ. մըսեցան 28 Գ. ի նիզմունս վախճանեցան 29—30 Գ. չիք 32—34 տողերի փխ. Գ. ունի «և յաստուծոյ պսակեցան» 34 Տպ. Ընա ընա այս, Ալշ. ընգ այս, փխ. ընդ սոյն՝ ընդ այս 35 Ալշ. այլ չիք 36 Ա. Տպ. Եւ փխ. Ցոյժ 37 Գ. էաք ի նոյն 39 Գ. Խարասան փխ. Խորազմին 40 Գ. ազգ փխ. ցեղ 41 Գ. ժառանգաւոր 42 Գ. Հագար փխ. Աւտար 44 Գ. Արպատական ամուրն հասին

*բից բաղկացած («բամեալ գանձերս որ ի միջի») ժողովածուի, այսինքն «Գանձարանի» ընդօրինակության ավարտման կապակցությամբ, և հայ գրիչների համար տրադիցիոն դարձած արտահայտություններով խնդրում է ներողամիտ լինել ընդօրինակության ընթացքում թույլ տված սխալների համար («Եւ սխալանաց շարագրիս անմեղադիր լերուք անձինս»)։ Սպրդած սխալները (եթե իրոք եղել են սխալներ) Խլաթեցին բացատրում է իր հոգեկան ծանր վիճակով։ «Տառապեալ Հայոց առհմին» հասած աղետները անհուն վշտով են համակել հեղինակին, «կըսկըծայր սիրտս ի փորիս»-գրում է նա։*

*«Ցիշատակարան աղէտից»-ը առաջին անգամ հրատարակել է 1897 թվականին Գրիգոր Խալաթյանցը համառոտ առաջաբանով (տես Ցիշատակարան աղէտից Գրիգորի Խլաթեցւոյ, պատմական վիպասանութիւն, հրատարակեց Գր. Խալաթեանց, արտատպված «Արարատ» ամսագրից, Վաղարշապատ, 1867)։ Մինչ այդ որոշ հատվածներ հրատարակվել էին Ղ. Փիրղալեմյանի «Նօտարք Հայոց»-ում (էջ 5, 36, 47, ընդամենը 33 տող) և Ղ. Ալիշանի «Այրարատ»-ում (էջ 323—325, ընդամենը 78 տող)։ Երկրորդ ամբողջական հրատարակությունը լույս տեսավ 1001 թվականին Ալիշանի «Հայապատումի» Բ. հատորում (էջ 563—568)։ Գր. Խալաթյանցի (ինչպես նաև Ղ. Ալիշանի) հրատարակությունը կատարված է Արգվինի Հայոց եկեղեցու մի «Գանձարանի» մեջ եղած բնագրի ընդօրինակության հիման վրա։ Արգվինի այդ ձեռագիրը՝ ընդօրինակված 1462 թ. Վանում, կարապետ գրչի*

Առին աւար և գերեցին
Զազգըս Պարսից և Հայ զարմին,
Տապալեցին 'ւ յատակեցին,
Անխնայաբար խոցոտեցին,
Զարըս սըրոյ ճարակ տուին,
Եւ ըզկանայսըն գերեցին.
Զոմանց զգլուխսըն քերթէին,
Հանդերձ հերաւքն խըլէին,
Զայլոց ըզշունչսն արգելուին
Եւ հեղձամահս խեղդէին.
Որպէս զոչխարըս մորթէին,
Փոկս ի Թիկանցըն հանէին.
Զկէսըս հըրով խորովէին
Եւ ճենճերովքըն ցընծային,
Շատք ըզՔրիստոս ուրանային
Եւ ըզՄահմետ դաւանէին։
Եւ ընդ գաւառն Այրարաթին
Մըտին յաշխարհըն յԱղւանին,
Զարքայանիստ քաղաքն առին
Որում Տըփխիսըն կոչէին.
Զարքայն Բագրատ ըզվըրացին
Ի հաւատոցն ուրացուցին։

46 Գ. Զազդն 47 Ա. չիք 'ւ 48 Գ. Անխնայաբար կոտորեցին 49 Գ. Զոմանս փխ Զարըս 51 Ա. գլուխսըն, Գ. կտրէին փխ քերթէին 52—60 տողերի փխ Գ. ունի «Որպէս գոչխարս զենէին || Զոմանց գգլուխսն քերթէին || Փոկս ի Թիկանցն հանէին || Զոմանս ի հոլչս արգելէին || Եւ հեղձամահս խեղդէին || Զոմանս հրով խորովէին || Եւ զջենջերովն խնդային 61 Տպ. ընտ գաւառ, Գ. Արարատին, Ալշ. Այրարատին։ 62 Գ. ի յԱզուանից աշխարհ մտին 63—64 Գ. չիք. 65 Գ. Բագգագ փխ Բագրատ 66 Ալշ. ի հաւատոյն

կողմից, այժմ գտնվում է Երևանի մատենադարանում և գրանցված է 5798 համարի տակ («Յիշատակարանը» գրավում է ձեռագրի 311բ—317բ էջերը)։ Բնագրի և հրատարակությունների համեմատությունը ցույց է տալիս, որ հրատարակությունների մեջ տեղ են գտել մի շարք սխալներ ու աղավաղումներ և հրատարակիչները (հատկապես Ղ. Ալիշանը) սրբագրել են բնագրից որոշ տողեր ու արտահայտություններ։

«Յիշատակարան աղէտից»-ի համեմատական բնագիրը կազմել ենք, հիմք ընդունելով Երևանի վերոհիշյալ № 5798 ձեռագիրը (Ա. ձեռագիր)։ Լայնորեն օգտագործել ենք նաև հետևյալ ձեռագրերը.

Բ.— Երևան 4522։ Ճաշոց, ընդօրինակված Կարապետ գրչի կողմից, Աղէթ գյուղում։ Գրիչը, ըստ երևույթին, անձամբ ծանոթ է եղել Գր. Խլաթեցուն և, «Յիշատակարանի» գրությունից շատ չանցած, 130 տողանոց մի ընդարձակ՝ հատված է քաղել այնտեղից և կցել իր 1421 թվականին շարադրած հիշատակարանին։

Գ.— Երևան 8908։ Ձեռագիրը միջնադարյան տաղերի ու բանաստեղծությունների ուշագրավ ժողովածու է, որ հավաքել ու խնամքով ընդօրինակել է ձեռագրերի մեծվաջան խուզարկու Ղ. Փիրղալեմյանը։ Նրա ընդօրինակած բնագիրը պատկանում է այլ խմբագրության և բազմաթիվ շեղումներ ունի Ա. և Բ. ձեռագրերի նկատմամբ։ Որոշ հատվածներում կան սղումներ ու խմբագրական կարգի փոփոխություններ, որ ամենայն հավանականությամբ արել է ինքը՝ Ղ. Փիրղալեմյանը։

Անտի անդրէն դարձ արարին
Եւ ի Մուղան ձմըռնեցին,
Ապա յաւուրս գարնանային
Դարձ ի Սիւնիս Մեծն արարին
ԸզԱրռաայն գըղեակն առին,
Մինչև ի Կարս արշաւեցին,
Զերկիրս ամէն չաւլ արարին
Ի յանցանելն երթևեկին.
Զի յետ դարձան և կըրկնեցին
Երրորդ անգամ չորրորդեցին,
Որոյ անուն գըլխաւորին
Էր Լանկ-Թամուր չարեաց գընդին։
Այս էր ի թիւ ութհարիւրին
Եւ երեսուն և վեց ամին (1387).
Զամուր տեղիսն յաւար առին
Եւ շատ ոճիրըս գործեցին,
Յորոց և մի էր և Բըջնին,
Որ էր աթոռ երկուց պետին,
Զոր առին և քանդեցին,
Զեպիսկոպոսն սպանեցին։
Այլ և զՀասանն Ծարեցին
Երեք որդւովքըն զենեցին,
Զի ըզնոցին ամուրն առին

69—93 տողերը Գ.-ում տեղափոխված և տեղադրված են 244—245 տողերի միջև 71 Գ. ԶԱրարատեան փխ ըզԱրռոայն 73 Գ. անմարդ արին փխ չաւլ (չօլ) արարին 81 Տպ. տեղոն 83 Գ. Պըճնին 84 Գ. է փխ էր 86 Գ. գլխատեցին 88 Ա. Տպ. ոպաննեցին փխ զենեցին

Գ.— Երևան 1117։ Ժողովածու, ընդօրինակված Յովհաննէս Տոռոթեցու կողմից, 1693 թվականին։ Ձեռագրի 451բ—452ա էջերում, «Յիշատակարանի» պատմական մասից ընդօրինակված է 54 տող, «Այս Շ[ա]մ[ա]խի մեկ գրքի յիշատակարան էր, գրեցի» խորագրի տակ։

Տարընթերցվածքների բաժնում նշել ենք Գր. Խալաթյանցի (Տպ.) և Ղ. Ալիշանի (Ալշ.) հրատարակությունների միայն կարևոր տարբերակները։

Մատենադարանի գիտ. աշխատող ընկ. Ա. Մնացականյանից տեղեկացանք, որ «Յիշատակարան աղէտից»-ի Լանկ—Թամուրի արշավանքներին ու ասպատակություններին նվիրված բաժնի նյութը Գր. Խլաթեցին շարադրել է նաև 1422-ից տարիներ առաջ, իր մի այլ չափածո ստեղծագործության մեջ (Երևան 6629, էջ 4բ-6բ)։ Այդ ստեղծագործության սկզբի մասից տեղեկանում ենք, որ Խլաթեցին ՊԼԶ. (1387) թվականին, ծանոթանալով Մխիթար Այրիվանեցու հարյուր տարի իրենից առաջ (1286-ին) գրված «Ընտիր գանձերի» հետ, մտադրվել է անձամբ լինել Այրիվանքում, տեսնել նրա սրբությունները ու Մխիթարի դամբարանը. իր փափագը նա իրագործել է 26 տարի հետո, այսինքն 1403 թվականին։ Այդ ժամանակ էլ գրել է պատմական բովանդակությամբ վերը հիշված իր չափածո ստեղծագործությունը, որի մեջ կան ուշագրավ որոշ մանրամասնություններ, որոնք բացակայում են «Յիշատակարան աղէտից»-ից։ Նկատի ունենալով վերոհիշյալը՝ կից հրատարակում ենք նաև այդ բանաստեղծության պատմագիտական արժեք ներկայացնող մասը։

Եւ զըազումըս գերեցին․
Եւ զԿապուտից ամուրն առին,
Եւ չորս հարեւր անդէն սպանին,
Եւ յԵրեւանն մեծ աւանին
Արս հինգհարեւր կոտորեցին․
Զունիմ ասել բան զոր կրեցին
Քրիստոնէից ազգ Հայ զարմին․
Դողան ոսկերքս և սասանին,
Լոյս իմ քաղի, սիրաըս ճըմլին,
Քանզի աչաւք իմ տեսանին
Ողորմագին հարուած սոցին․
Իշխանք բազումք ի տանց ելին
Եւ ի յընչից պարապեցին.
Ցերիվարացն զըրկէին
Եւ հետիոտս տանէին․
Տըղայքն ի մէջ ճանապարհին
Ցոչ ի կարել գնալ՝ մեռանին,
Եւ կրաւնաւորք վանականին
Մոլորելով յարկ ոչ գտին,
Որք ի կանայս ոչ նայէին՝
Հարկիւ ի մէջ նոցա մտին,
Կարաւտ հացի մերկ շրջէին
Եւ ըոկ ոտամըք հետեւէին․
Պատիւ չը կայր պատուականին
Եւ ոչ նըշան ունեւորին.
Զը կայր ոչ հաց հացաըաշխին
Եւ ոչ գինի գինարըուին,
Զը կայր ոչ ձի ձիաւորին
Եւ ոչ սըլեխ հետեակին․
Աւտարք յաւտարս շրջէին
Եւ կերակուրս մուրանային.
Տիկնայք որ ճոխ տունս ունէին
Եւ մետաքսաւք պերճանային՝
Հացակարաւտս երևէին,
Ծածկոյթ անձանցըն խընդրէին.

90 Տպ. չիf. 91 Գ. զԿապուտ 92 Գ. Արս չորս հարիւրս․ 95 Տպ. Քան փխ բան 96 Գ. Քրիստոնեայ 97 Տպ. սաւաանին փխ սասանին 98 Գ. Սիրտս ճմլի և շունչս քաղին 99—100 տողերի փխ՝ Գ. ունի «Զողորմելի հարուածք սոցին»․ 101 Գ. ամէն իւրեանց փխ բազումք ի տանց 102 Գ. Եւ ի յնչիցըն Թափուր մնացին 103 Ա. զըկեցին 106 Գ. Նուազեալ անդէն մեռանէին 108—109 տողերի փխ Գ. ունի «Որք աղօթից պարապէին ‖ ի գեղս կանանց ոչ նայէին» 112 Գ. Ալշ. ոտամբ 113—114 տողերի փխ. Գ. ունի «Ի հեռաւորս ընթանային ‖ յօտար երկիր փտարէին» 118 Տպ. ըըրեխ փխ սըլեխ (զրահ), Գ. Եւ ոչ մի փող պարոն խոճին 119 Գ. Փարթամք փխ Աւտարք 120 Գ. կերակուր 121—122 տողերը Գ.-ում տեղադրված են 124-ից հետո 121 Գ. զարգս փխ տունս 123 Գ. Հացակարօտ նուաղէին

Իշխանք, որ պետք անուանէին
Եւ արծաթով յղըքանային՝
Աղքատացեալըք լինէին
Եւ կերակրոց կարաւտէին.
Եւ որք բազմաց հացըս տային՝
Մին պատառոյ ակն ածէին,
Թէպէտ և յոյժ ամաչէին,
Այլ ի կարեացըն լըրէին,
Թէև մուրալ պատկառէին,
Այլ ի սովոյն յանգըգնէին,
Ծիւրեալք ի ցաւս անտանային
Աւն անգը և ասա մեռանէին։
Մանկունք ի մարըն նայէին,
Միթէ կենաց հընարս առնէին,
Մարքն ի գթոյն խորովէին,
Արագ ըզկեանս վըճարէին։
Հարքն ի գորով աղայոց լային,
Աղիողորմ վայէին
Ի տեսանելն զոր սընուցին
Դառըն կարեաւքն ցաւագին.
Ի մեռանել մանկանց նոցին
Ինքեանց հոգիքն քաղէին.
Կիսոց չկայր ոք որ լային,
'Ի ոչ գերեզմանս ճանաչէին,
Եւ այսպիսի ողորմագին
Այս տեսողացն երևէին։
Այս ոչ միայն քրիստոնէին,
Այլ ի տաճիկ ազգաց ընաւրին,
Զի հասարակ էր նեղութիւն
Պարսից ազգին, Հայ և Թուրքին։
Եւ այս ամէն յայնկոյս գետին,
Որ յԵրասխայ անուն կոչի[ն]։
Իսկ յանցանելն յայսկոյս գետին,
Եւ յարշաւելն ըզհետ Թուրքին
Մինչև յԱմթայ ջուրըն հասին,
Բազում ոճիրըս գործեցին։
Անտի դարձան 'ւ ի Հայք ելին
Եւ ի վերայ Վանայ եկին,

125 Գ. բազմաց էին փխ անուանէին 127—128 Գ. չիք 130 Տպ. ունէին 133 Գ. ամաչէին փխ պատկառէին։ 135—136 Գ. չիք 137 Գ. Տղայք ի մայրսն հայէին 138 Գ. չիք 139 Գ. Մայրքն 140—144 տողերի փխ Գ. ունի՝ «Ի մարց գորովն տղայքն լային ‖ աղիողորմ և գառնագին» 146 Գ. Տպ. ինքեանք 147—150 Գ. չիք 151 Ա. Տպ. քրիստոնէից 153 Գ. հաւասար փխ հասարակ 156—157 Գ. Ալշ. չիք 158 Գ. ի փխ եւ, ի հետ 159 Գ. մինչ ի 161 Գ. Տպ. 'ւ չիք Գ. ի Հայս եկին։ 162 Գ. հասին փխ եկին

Գատեցին 'ւ պաշտրեցին,
Զամուր գրղեակն յաւար առին,
Զհայ և զՏաճիկսըն կապեցին
Եւ ի քարանցն հոսեցին,
Այնքան հարին, սատակեցին,
Մինչ մըսադէզ անդ արարին։
Այլ և զամուրն Երնջակին
Զթողում ասել զանցըս նորին,
Որ ի յաւուրց աւագ զատկին,
Մինչև ի տաւն սըրբոյ Խաչին
Ծանր զաւրաւք պաշարեցին,
Բայց վընասել ոչ կարացին.
Ապա յետոյ դարձ արարին
Ցաշխարհն իւրեանց ուստի եկին։
Դարձեալ կրկին ի դուրս ելին
Ի քառասուն 'ւ երկու ամին
Ի Բաբելոն արշաւեցին
'Ի ի Միջագետըս կոխեցին,
ԶՈւրհա քաղաքըն պանծալին
Եւ ըզԱմիթ երևելին,
ԶՄէրդին ամուր և զՆըսեբին՝
Զորս ընաջինջ գերեցուցին,
Եւ այլ բազում քաղաքանին,
Զորս քանդեցին և գերեցին։
Անտի դարձան յաշխարհս վերին,
Մինչև յԱւենիկ արշաւեցին,
Զոր և ջանիւ մեծաւ առին
Եւ ըզՄսըրն գերեցին։
Անտի դարձեալ յետ գնացին
Եւ զաւրս թողին յԵրընջակին,
Տասնուհինգ ամ խըսարեցին
Զբերդն Երնջակ 'ւ ապա առին։
Զթողում ասել զգործ անարին
Զմեծ հանդէսն Վըրաց արքային,
Որ եկն արար շատ յաղթութիւն
Զզաւրսն փախոյց ըզչաղաթին,

183 Ա. Տպ. 'ւ չիք 165 Գ. զՏաճիկն։ 166 Գ. Եւ ի բերդէն վայր հոսէին 167—168 տողերի փխ Գ. ունի՝ «Այնքան մսադէզն բարձրացուցին ‖ որ յանկանելն չմեռանէին» 1:0 Գ. Զկարեմ, Տպ. Այլ. Թողում փխ Զթողում, Այլ. զանհընարին փխ զանցըս նորին 177 Ա. Տպ. եկին 180 Գ. Եւ փխ 'Ի ի 182 Գ. զյԱմիթ 183 Տպ. ԶՄերաին, Գ. ԶՄէրաին ամուրն և զՄծրին 184 Գ. Զամէն փխ Զորս 186 Գ. Զորս և քանդեալ կողոպտեցին, Տպ. աւերեցին փխ և գերեցին 187 Գ. Ապա փխ Անտի, յաշխարհ 188 Գ. ի Ցոյնս փխ յԱւնիկ 189 Գ. Զորս 190 Գ. Եւ ըզՄըսըր յայժ քանդեցին 193 Գ. Եւ յԵրնջակ կրկին մաին 193 Այլ. ամիս փխ ամ 194 Գ. Երընջակայ, Տպ. Գ. 'ւ չիք 195 Գ. զգործարանին (°), 196 Ա. Զվաթարհանդէս, տպ. Զվատթարհանդէս 197 Ա. վատ փխ շատ 198 Գ. Փախոյց ըզզօրս ջաղաթին 199 Գ. Որք

Որ պաշարեալ խըսաըէին
Զամուր գըղեակն Երընջակին։
Անաի եհան զխանի որդին՝
Զսուլթան Տահիրն յԵրըջակին.
Տարաւ առ իւր և զաւրացոյց
Եւ ետ տանել Ահմատ խանին։
Եւ ի գնալ չար զաւակին՝
Ապըստամբեաց ընդդէմ խանին՝
Սուլթան Ահմատ թագաւորին,
Որ էր որդի խան Ոյիսին։
Ոչ աջողեաց այն անբախտին՝
Սուլթան Տահիր որդւոյ խանին,
Զի հայրանենգ եղեալ չարին
Գեաոն տարաւ ի Բաղդադին.
Իսկ ի լըսել Լանկ-Թամուրին,
Զոր ինչ արար արքայ Վրացին,
Ի բարկութիւն շարժեալ կրկին
Հանդէս արար իւր հեծելին։
Այլ բազմութեամբ քան զառաջին
Ի դուրս եկեալ Թամուր բէկին,
Ցամուրսն եմուտ Վրացտանին,
Արար գերի զամենեսին։
Անտի գնաց մինչ ի Զըմիւռին
Քաղաք Լիկեաց ծովեզերին,
Զզաւրսըն կոխեալ զԻլդրումին՝
Զհըզաւր յաղթող մեծ սուլթանին,
ԶՂարայ-թաթարս այլ ընդ նմին
Գերի տարաւ զամենեսին,
Որոց ոչ էր թիւ համարին՝
Կոտորելոց, զորս գերեցին
Ի տուն Գամրաց Կապադովկին,
Որ Մէջերկրեայ Հոռոմք ասին։
Ո՜հ, զայն զազայն զոր արարին
Արանց, կանանց և ընդ մանկտին,
Զարսն թաղեալ մինչ կենդանին,
Հողով, ջրովըն հեղձուցին,

202 Ա. Զուլտան, Տպ. Զուլզան, Ա. Տախիրն 203 Գ. ինքն փխ իւր 207 Ա. Սաւլթան 208 Տպ. Խանոյիսին, Գ. Իսայ խանին 209 Գ. անբազդին 210 Ա. Սօլթան, Գ. որդի 212 Տպ. Հեառն փխ Գեաոն 214 Տպ. արքայն 217 Տպ. զառաջինն 219 Գ. Վրաստանին 222 Գ. Լիկեայց 223 Տպ. Զչարըսըն, փխ Զզաւրսն Գ. Այլ. կոխեաց Գ. ըզօրըս Իլտըրմին 224 Գ. հզօր, Ա. Սուլտանին, Տպ. Սուլզանին 225 Գ. ըզզարայ թաթարն 227 Գ. զոյր փխ էր 228 Գ. գերի տարաւ զամենեսին 230 Գ. և երկու հոռովմք փխ Մէջերկրեայ Հոռոմք 231 Գ. չարիսն փխ զազայն, գործեցին փխ արարին 233 Գ. Զորսն փխ Զարսն, Ա. թոզեալ փխ թաղեալ, Գ. քեռ փխ մինչ 234 Գ. ծածկեալ մեռանէին փխ ջրովըն հեղձուցին

Իսկ ըզմատաղ տըղայ մանկտին՝
Զայն կալոտիս ծիոցն արկին.
Իսկ յիջանել Միր Թամուրին
Ի Շամատուն Դամասկոսին,
Ծով ու ցամաք սասանէին
Վասըն լըրոյ չար համբաւին.
Զօրըս սըրոյ ճարակ տային
Եւ զօրս բոցով հրոյ այրէին,
Եւ ըզգլուխսն զօր կըտրէին՝
Զայնս մընիրայս յաւրինէին.
Եւ յայսպիսի չար համբաւին
Աշխարհ ամէն սասանեցին.
Զայս արարեալ Միր Թամուրին՝
Դարձաւ յաթոռ Սըմըրղընդին,
Եւ անդ եհաս աւր վաղճանին՝
Սատակեցաւ յիւր աթոռին.
Իսկ Միրանշայ՝ որդի նորին
Եկեալ ի թախթն Թաւրիզին,
Որոյ ընդդէմ կացեալ նորին
Ղարա—Իւսուֆ Բահադուռին՝
Եհար զզաւրսն չաղաթին
'Ի էառ ըզգլուխ Միրանշային,
Թագաւորեաց ի նոյն թախթին՝
Թաւրէզ քաղաք շահաստանին.
Արար բազում խաղաղութիւն
Եւ աջողում մարդկային.
Էր էժանութիւն և էժնութիւն,
Ամենեւին անգողութիւն.
Իսկ յաճախել մեղաց ախտին
Մարդկան ազգիս քրիստոնէին,
Եղև գընալ խան Իւսուֆին
ՑԱխըլծըխէ Վրաց քաղքին,
Արար ղազայ և գերութիւն,
Անթիւ վնաս և չարութիւն.
Այս էր ի թիւ ութհարիւրին,
Այլ և վաթսուն և հինգ ամին (1416).

---

235 Գ. Զկանայս և զմանկտին փխ ըզմատաղ տըղայ մանկտին 236 Գ. կալոտին, Ա. տային փխ արկին 237 Գ. Լանկ—Թամուրին 238 Տպ. շահաստան փխ Շամատուն 239 Գ. և փխ ու, Ա. սասանեցին 244 Տպ. մըներայս, Գ. մընիրայ 240 Ա. համբաւէս, Գ. համբաւով 246 Գ. Զաշխարհս 247 Գ. Լանկ—Թամուրին 249 Գ. Եւ անդ մեռաւ չար կենդանին 250 Գ. աշխարհին փխ աթոռին 252 Գ. Մնաց ի թախթն, Տպ. եկեալ ի թախթն 253 Գ. Որ և, Նմին փխ նորին 254 Ա. Տպ. բախադուռին, Այլ. Բախտիարին 255 Ա. Տպ. Էհար 255 Գ. էառ, Տպ. Եւ առ փխ 'Ի էառ, Գ. զգլուխն 258 Ա. Տպ. Թաւրէժ, Ա. շախաստանին 261 Գ. էժնութիւն և յէժնութիւն 264 Գ. Մերոյ փխ Մարդկան 266 Գ. ՑԱխըլցխայ, Ա. Տպ. քաղաք Վրացին 269 Գ. ի թիւն ութն

*Իսկ զգերիսըն զոր առին*
*Յաւտար երկիր վըտարեցին՝*
Բաղդատ *'ւ ի* Մըսըր *հասուցին*
*'Ի ի* Խորասան *Պարսկացտանին,*
*Ոչ մին հազար կամ հինգ վեցին,*
*Այլ քան ըզբիւրըն էր աւելին,*
*Նոյն սպաննելոցն էր բազմութիւն*
*Եւ անհամար, որ ոչ թըւին.**
*Իսկ ի յամի ութհարիւրին*
*'Ի եւթանասուն թըւականին (1421)*
Ղարայ–Ուսուֆ *տէրըն թախթին*
*Սատակեցաւ ըստ արժանին,*
*Յաղք, խայտառակ որպէս տեսին*
*Անկեալ յերկիր պըղծոյն մարմին,*
*Ուռեալ նեխաւ գէշ գարշելին,*
*Ազգաւք հանին զաչեր նորին։*
*Զի չփոթեցաւ զաւրքըն չարին*
*Եւ յիրերաց փախուստ առին։*
*Իսկ յետ երից աւուրց եկին,*
*Բարձին ըզգէշն՝ յԱրճէշ բերին։*
*Իսկ զաւրք չարին՝* Միր Ուսուֆին
*Ընդ որ գնացին՝ աւերեցին,*
*Չար, անզգամ որդիք էին*
*Եւ անասախ ազգ Թուրքմանին։*
*Ընդ մեռանել* Ուսուֆ բէկին
*Զաւրք չաղաթին եկին հասին,*
*Որոց գըլուխ և առաջնորդ*
*Էր* Շախըռուհ *անուն նորին.*
*Էր նա որդի* Միր Թամուրին,
*Կըրսեր եղբայր* Միրանշային.
*Զաւրքըն բազում քան զ*Թամուրին,
*'Ի այլ աւելի քան ըզնոսին,*
*Հինգ բիւր, որ է յիսուն հազար,*
*Էր սորա զաւրքն ընդ նոյն համար.*
*Զի երեսուն էր* Թամուրին.
*'Ի այլ աւելի քան ըզնոսին՝*
*Երեսուն ու հինք բիւր* Շահռուհին

---

* *Բ.* Ե. Գ. օրինակներում «Յիշատակարանը» սկսվում է այստեղից.

273 Գ. *ի Բաղդատ և ի Մըսըր* 274 Գ. *'ւ* չիք, *Պարսկաստանին* 275—278 Գ. չիք 284 *Ա. մարմին պղծին* 285—286 Գ. չիք, այս երկու տողը *Ա.* Տպ. օրինակներում տեղափոխված է 288 տողից հետո 289 Գ. *երկուց* փխ *երից* 290 *Ա. Բ.* Գ. *և Թագեցին* փխ *յԱրճէշ բերին* 293 *Ա. Տպ. Ալշ. մարդիկ* փխ *որդիք* 294 Գ. *Ալշ. անառակ* փխ *անասախ* 296 *Ալշ. Չաղաթին զաւրքն* 297 *Տպ. առաջին* 298 Տպ. այստեղ և ամենուրեք՝ *Շախ Ռուհ կամ Շահրուհ* 299 Գ. *Լանկ-Թամուրին* 300 *Բ. կըրսեր* 302 *Ա. Տպ. 'Ի* չիք, Գ. *առաւել* փխ *աւելի գնորին* 304 *Ալշ. այս* փխ *սորա,* Գ. *սոյն* 305 Գ. *երեսուն բիւր* 306 այս տողի փխ Գ. ունի՝ *«Յոյժ չարագործ նման Ներին»* 307—308 *Ա. Տպ. Ալշ.* չիք

Զաւրքն ամենայն ի միասին.
Բայց ոչ ունէր սա չարութիւն,
Այլ բարեսէր հանդարաութիւն.
Ցորմէ սարաեաւ ազգ Թուրքմանին
Վասն չարեաց զոր գործեցին.
Զի անողորմ էր 'ւ անիրաւ,
Էր անմըրւաթ 'ւ անշտղաւաթ,
Անդատաոաան և անհաւատ,
Պիղծ, չարագործ իսկ և տըմարդ,
Անպատկառ և անամաւթ,
Մեռաց աման, չարեաց անաւթ.
Փառք աստուծոյ զոր ինչ արար
Ընդ Թուրքմանի չարեացն յարմար,
Քանզի խըտան նախ և փախետն
Եւ յետ դարձեալ կոտորեցան,
Ըստ արժանեացն ի ձեռս անկան
Շահըռուխին և մատնեցան.
Շատք ի սըրոյ նոցա մեռան
'Ի այլքըն փախեան և գերեցան,
Ձիոց կոխան սատակեցան,
Խաղք խայտառակ Թալանեցան,
Ի սար 'ւ ի ձոր փախըստական.
Ընդ որ փախեան հալածեցան
'Ի ինքեանք միմեանց դահիճ դարձան.
Անթիւ ըռզակ էր զոր տարան,
Աղէկ ձիան և շատ ուղտան,
Կին և տըղայքն ի Թիւ չանկան
Զոր գերեցան և կոխեցան.
Բայց ողորմած և խըղճական
Նա սիրտ ունէր՝ Շահըռուխն այն,
Ասախ արար, հուքմ և հրաման
Ոչ կոտորել զամենեսեան,
Այլ Թոյլ ետուր որ ցըրուեցան
'Ի աւտար երկիր վըտարեցան.

---

311 Ա. Ալշ. սարսեաւ, Տպ. սարսդան(*) 311 Ա. Տպ. Բ. Գ. վասն իւր չարեացըն զոր ունին 313—318 տողերի փխ. Դ. ունի՝ «Թէպէտ բազմաց գուր փորեցին ‖ ինքեանք անկան ըստ Սաղմոսին» 314 Ա. Տպ. էր չիք 316 Ա. պեղծ 320 Ա. Թուրքմանին 321 Ա. Տպ. խըրան Ալշ. խլըտան, Գ. եղեն փախստական փխ խըտան նախ և փախեան 322 Գ. յետս, Ա. Գ. դարձան 323 Բ. Դ. արժանեաց, Գ. ի ձեռն 324 Բ. պարտեցան 325 Գ. Նորին 326 Գ. 'Ի չիք 'Ի-ից հետո Ա. Բ. Գ. ունեն՝ «Կողոպտեցան և գերեցան», 327 Գ. չիք 328 Գ. ամենեքեան փխ Թալանեցան 331 Այս տողով ավարտվում է «Ցիշատակարանը» Գ. (Երեւան 1117) ձեռագրում. 333 Բ. Ացւոր փխ Աղէկ, Գ. ձիանք, ապրանք փխ ուղտան 334 Գ. տըղայք 336—338 տողերը Գ-ում այսպես՝ «Բայց Շահուռուխն, որ էր սուլթան ‖ Նա սիրտ ունէր ողորմական ‖ քանզի եհան հիւքմ ու հրաման» 339 Ա. Տպ. Ալշ. կորուսել փխ կոտորել 340 Բ. երետ, Գ. որք 341 Գ. Ցօտար փխ 'Ի աւտար

Եւ Շահռուխն այն մեծ սուլթան
Գնաց, դարձաւ ի Խորասան,
Երթեալ յաթոռն իւր բընական՝
Ի Սըմըրղընդ հայրենական.
Զթախթըն թողեալ ըզշահաստան
Անտէր՝ Թաւրէզ քաղաքըն զայն.
Ապա որդիք Ուսուֆ բէկին
Եկեալ թախթին այն տիրեցին,
Բայց ինքեանք ոչ բարիշեցին,
Այլ մին ըզմիւսըն փախուցին.
Իսկ անիծեալն ամենեւին՝
Կըրսեր որդի Միր Ուսուֆին՝
Սպանդիարն անաւթ չարին,
Լիրբ, անըզգամ, յիմար հոգին,
Էր վնասակար և աւերիչ
Շատ բարելի շէն գաւառնին.
ԶԱրճէշ և զԱրծկէ աւերեց,
ԶԲասեն և զԱւնիկըն քակեց,
ԶԿարնոյ քաղաքըն՝ զԱռզրում
Քան զամենայն խիստ աւերեց.
Իսկ Ըսքանդար աւագ որդին
Ղարա-Ուսուֆ բահադուռին,
Նա ի Թաւրէզ տիրեաց՝ թախթին
'Ի ասախ արար, շատ բարութիւն,
Բայց մեզ աւար ած և խաւար
Եւ չարութիւն դառն և դըժար.
Ի տարելից իւր փախըստին,
Որ ի ձեռացն Չաղաթին,
Հեծել արար շատ բազմութիւն
'Ի եկն ի վերայ Խլաթայ բերդին.
Բերդին վնասել ոչ կարացին,
Այլ զքաղաքն այրեցին.
Ի յԱղուվանք արշաւեցին
Եւ չար ոճիրս անգ գործեցին,

342—343 Գ.-ում այսպես՝ «Իսկ ինքն և զօրքն իւր ամենայն ‖ դարձեալ գնացին ի Խորասան» 344 Ա. Տպ. Գ. Գընաց փխ երթեալ 345 Ա. Տպ. Սամըրղանդ, Գ. Սամըրղանդն 346—347 Գ.-ում այսպես՝ «Քաղաքն Թաւրէզն զշահաստան ‖ թողեալ անդէն և անիշխան» 347 Ա. զԹաւրէզ 348 Գ. որդիքն 350 Գ. «Բայց և յինքեանք չմիաբանեցին» 353 Գ. որդին 354 Տպ. Ըսպանդիարն 355 Գ. յամառ փխ յիմար 356 Ա. Տպ. և աւերող, Գ. 'և աւերողին 357 Բ. «Շէն, բարելի շատ գաւառին» 358 Բ. «ԶԱրծկէ և զԱրճէշ աւերեց», Գ. աւերեցին 359 Գ. չիք 361 Բ. աւերեց 362 Ալշ. իսկ չիք Ա. Տպ. Իսքանդար, Գ. Սքանդար 363 Ա. բախադուռին 364 Գ. Նախ փխ Նա 365 Գ. չիք 366 Գ. «Եւ մեզ խաւար եղև կրկին» 367 Գ. չիք 368 Գ. ի Դաւրիզից փխ ի տարելից 370 Տպ. Խեծել, Գ. Հեծեալ 371 Գ. 'Ի չիք, Ղըլաթ քաղքին 373 Ալշ. աւերեցին փխ այրեցին 374 Բ. յԱղուվանց, Գ. Տպ. յԱղուանք 375 Ա. Տպ. Ալշ. Ղալայմ, Գ. չարիք փխ ոճիրս Ա. Տպ. Ալշ. արարին փխ գործեցին

Ըղբերդն առին, կոտորեցին,
Շատ քրիստոնեայք անդէն սպանին,
Քան զերկերիւրն այլ աւելի,
Զորս սրբոյ ճարակ տուին,
Թող զորս ի ծովըն խեղդեցան
Եւ քարավէժ եղեալ կորեան։
Ո՜հ, գեղեցիկ կերպ ու սուրաթ
Այն մանկտեկացն որ կորուստն,
Լաւ հարկեւոր տանուտրայք
Համեստ 'ւ ազնուր լաւ տանտիկնայք,
Բարձրահասակ 'ւ աղէկ տեսակ
Գուն ու կերպով ճոխ կըտրըճակ։
Այս ամենայն ի սուր անցան,
Գերեզմանի չարժանացան,
Կանայք տղայւքն գերեցան,
Քան զհինգհարիւրն այլ աւելյան.
Զի ի միոյ գեղջէ չէին,
Այլ ի բաղում տեղաց էին,
Ի Խիզանայ 'ւ ի Բաղիշոյ,
Որք հասկաքաղ եկեալ էին,
Մըղաք 'ւ Աղառ ամենեւին,
Շատք յԱղիթայ անդէն էին,
Որք ի սուրն քարշեցան,
Կին և տղայքըն գերեցան։
Այս ամենայն ի պատճառէ
Այն Շամըզդին ամիրայէ,
Զար սատանին արբանեկէ
Եւ ի Նեռին կարապետէ,
Որ նա արար հպարտութիւն,
Զհնազանդեցաւ Ըսքանդարին:
Շատք որ մեռան՝ անթաղ մնացին,
Ոչ հաց հոգւոյ 'ւ ոչ դրամ հողին.

---

376 Գ. և քանդեցին փխ. կոտորեցին 377 Գ. կոտորեցին փխ անդէն սպանին 379 Ա. Տպ. Ալշ. Զոր անդ (Գ. Անդէն) ի սուրըն քարշեցին 380 Գ. Զոմանս փխ Թող զորս 381 Գ. Զայլ քարավէժս մահացուցին 382 Ալշ. զըւարթ փխ սուրաթ 382—383 Գ. չիք 384—388 տողերը Գ.-ում տեղափոխված են 415 տողից հետո և խմբագրված են այսպես՝ «Մեծ պարոնայք և շատ իշխանք ‖ Համեստ 'ւ ազնուր լաւ տանտիկնայք ‖ ամենեքեան ի սուր անցան» 384 Տպ. տանուտիրայք Ալշ. տանուտերայք 385 Ա. Բ. լաւ չիք, Բ. «ճոխ և ազուոր տանտիկնանայք», Տպ. տանտիկընայք, Ալշ. տանտիկնայք 388 Ա. Ալշ. Այսք 390 Գ. և զտղայսըն գերեցին 391—408 Գ. չիք 394 Ա. Տպ. Ալշ. Հիզանայ 397 Բ. յԱղիթայ, Տպ. յՍղիթայ 399 Ա. կանայքն որդւովքըն, Տպ. կանայք որդւովքն 400 Տպ. ամենայնի պատճառ է այն 401 Ա. Շամըզըդին, Տպ. ամիրայի 402 Տպ. արբանեկի 402—403 Բ. չիք 405 Ա. Տպ. Ալշ. Իսքանդարին 406 Ա. Շատք որ սպանւան, Ալշ. Շատ որք ըսպան, Տպ. Շատ որք սպան 'ւ, Գ. Զի որք սպանան փխ Շատք որ մեռան 407 Ա. ոչ դրամ հողին, Տպ. ոչ դրամ թողին, Գ. ոչ մաս բերնին փխ 'ւ ոչ դրամ հողին 406—407 տողերը Գ.-ում տեղափոխված են 415-ից հետո

Եւ որք գերի վարեալ գնացին,
Ցաւտար երկիր վըտարեցին,
Ի յայլազգիս խառնակեցան,
Ըզչարութիւն նոցա ուսան.
Աւտարացան և յոռացան,
Ըզհայրենիսըն մոռացան.
Ոչ ի կամաց, այլ յակամայ
Հանդիպեցաւ այս դէպք նոցա։
Միթէ աստուածըն քաղցրանայ
Եւ ազատէ անտի զնոսա։
Որք հանդիպիք այս երգակիս
Զիս յիշեցէք ըզեղկելիս՝
Զմրափած Գրիգոր Խըլաթեցիս,
Որ սպասաւոր կոչիմ բանիս,
Եւ սխալանաց չարագրիս
Անմեղադիր լերուք անձինս.
Որ գըրէի ըզբանս ողբիս
Եւ կըսկըծայր սիրտս ի փորիս,
Ոչ հանգուրժեալ մըտաց խըղճիս,
Զոր գըրեցի ես ի քարտիս,
Քանզի ի մէջ էաք չարիս,
Որ եկն եհաս մեր աշխարհիս,
Եւս առաւել մերում ազգիս,
Այս տառապեալ Հայոց տոհմիս՝
Անուամբ միայն քրիստոնէիս
Գործոց դատարկ ամբարըշտիս,
Սուրբ աւրինաց հակառակիս,
Բարիատեաց չարասիրիս,
Եմք անաղաւթք հեղգ ի բարիս,
Անապաշաւ խըղճամըտիս,
Տոյլ և պըղերգ յամէն բարիս,
'Ի անկարեկից յայլոց կարիս,
Ցիշոցնատու ոչինչ բանիս,
'Ի երգըթազանց ես ի սնոտիս,
Բախիլ 'ւ յաչաղ յայլոց բարիս
Եւ նախանձոտ առ ընկերիս,
Քինախընդիր, չարաճըճիս.
Եւ բամբասող միտ ըզըրաբիս։

410 Գ. յայլազգիսն խառնեցան, Տպ. յայլազգին 411 Գ. եւ զչարիսըն փոխ ըզչարութիւն 412 Բ. Ցոռացան 'ւ աւտարացան 412—413 Գ. չիք 413-ից հետո Ա. Տպ. ունեն՝ «Պըրծեցան և զարշեցան ‖ Աղտեղացան և զազրացան» 414 Գ. կամայ 415 Ա. Տպ. զարք Ալշ. չարք, Գ. բանս փոխ դէպք 416 Բ. Մեծ է փոխ Միթէ 416—417 տողերով ավարտվում է «Ցիշատակարանը» Բ. (Երևան 4522) և Գ. (Երևան 8908) ձեռագրերում. այդ տողերը Գ.-ում խմբագրված են այսպես, «Միթէ գթայ տէրն երկնային ‖ 'ւ ողորմեսցի հոգոց նոցին, ամէն» 424 Տպ, գրէի 432 Ա. քրիստոնէից 434—440 Ալշ. չիք 438 Տպ. պղերգ 442 Տպ. 'ւ չիք

Վասն այսորիկ տաժանելիս
Եւ տառապեալ եմք յաշխարհիս,
Մերս խաւարած եկեղեցիս,
Ազգըս ցըրւած յամեն տեղիս։
Բայց գոհութիւն մարդասիրին,
Որ ապրեցաք ի յայս վրշտիս,
Զմեզ ոչ թողեալ ի նեղութիւն,
Այլ փոյթ եհան յանգորութիւն։
Տուք աւրհնութիւն հաւրն անեղին
Եւ միածին բանի նորին,
Այլ և հոգւոյն՝ իւր էակցին։
Փառք և պատիւ ի մէնջ տացին
Երրորդութեանն միակին՝
Հայր և որդի և սուրբ հոգին,
Որ էտ ինձ կար՝ տկար անձին
Եւ զեչն ու զնուն հասոյց ի մին՝
Ռամեալ գանձերս որ ի միջին
Եչն առաջին և Նուն յետին։

[Պատմութիւն արշաւանաց և ասպատակութեանց զաւրաց Լանկ-Թամուրի, ի Գրիգորէ խլաթեցւոյ]

... Էր Թըւականն յաբաբարդեալ
Ամս ութհարեւր՝ հոլով անցեալ,
Երեսուն ու վեց ի նոյն յանկեալ (1387)
Ժամանակաց շատալըծեալ.
Յորում ամի էր սաստկացեալ
Զաւրք Թամուրին ի դուրս եկեալ,
Բազում ոճիրըս գործեցեալ
Եւ շատ արիւն յերկիր հեղեալ։
ԸզՊարսկաստան երկիր կոխեալ
Եւ զՀայաստան ի յոտք տարեալ.
Այն գազանին էր նըմանեալ,
Զոր Դանիէլ սուրբն ասացեալ։
Մինչ ի սահմանս Ամթայ հասեալ,
Զերկիրս ամէն չաւլ արարեալ.
Ապա դարձեալ՝ ի Վան եկեալ,
Զամուր դըղեակըն պաշարեալ,
Վեց ու քսան աւր հըսարեալ,
'Ի ապա ի ձեռս նոցա մատնեալ։
Բազմաց աւրհասրն ժամանեալ
Դուարն մահուամբ քարավիժեալ,
Ոչ մին հազար 'ւ երկու եղեալ,
Այլ քան զերեքն առաւելեալ,

448 Տպ. Մեր 449 Տպ. Ազգս ցրուած

Մինչ մըսադէզըն բարձրացեալ
Եւ որք անկեալ՝ այլ ոչ մեռեալ։
Իսկ և գերեացն ըզԹիւ անցեալ*
Եւ համարոյ գերազանցեալ,
Զորս առեալ և վըտարեալ՝
Ի Սըմըրղանդ քաղաք հասեալ։
Դարձեալ յեւԹներորդ ամին (1394)
Այլ բազմուԹեամբ ի դուրս եկին,
Քաղդէացոց աշխարհն իջին
Եւ զԲարեյոն քաղաքն առին,
Ի Միջագետս արշաւեցին
Եւ շատ աւերս անգ արարին,
ԶԱմիթ քաղաքն երեելին
Առհասարակ կոտորեցին։
Անտի ելին յերկիրս վերին
Եւ զԱւըընկոյ ամուրն առին,
Այլ և ըզբերդն Բագրանին,
Որ անհրնար էր առողին։
Բազմաց զաւրհասըն հասուցին,
Զշատս ի քարանցն ի վայր արկին.
Եւ ըզգըլուխսն զոր հատին
Զայնս մընարա յաւրինեցին.
Այս էր ի Թիւ ուԹհարիւրին
Եւ քառասուն ’ւ երեք ամին (1394)։
Երկիր բոլոր սասանէին
Ի տագնապի ահէ նոցին։
Եւ այնմ աւրէ հըսարեցին
Զամուր դղեակն Երընջակին,
Պատեցին, բոլորեցին
Ամուր պատնէշս կանգնեցին։
Դարձեալ յետ հինգերորդ ամին (1399)
Եւ Թագաւորըն Վըրացին...
Եկեալ ի բերդն Երինջակին,
Ծանր զաւրաւք շատ ’ւ ահագին,
’Ի նշան զորդի Ահմատ ղանին,
Փախոյց զզաւրսն չաղաԹին,
’Ի այլ ամրացոյց զորս ի բերդին։
Զոր և լուեալ Թամուր բէկին,
Կըրկին շարժեալ ի բարկուԹիւն,
Ի քաղաքէն Սամարղանդին
Դարձաւ զաւրաւք ծանր, ահագին,
Բազում փըղաւք՝ ազգ վիԹխարին,
’Ի այլ հընարիւք մեքենային։

* Ձեռագրում՝ «անցին»։

Ի յուԹ հարիւր Հայոց Թըւին
Եւ քառասուն և ուԹ ամին (1399)
Եկեալ աւուրս աշնանային
Մինչ յեղանակն ամառնային,
Քանդեալ կորոյս ըղվըրացին
ԵւԹըն ամիս բոլորովին.
Եւ սըպանելոցըն Թիւ գըտին
Հարիւր հազար՝ այլ աւելին,
Բայց զգերելոցն ըզԹիւ անցին
Եւ ի համար ոչ անկանին,
Թող զոր ձիոցն էին կոխած
Եւ ի քարանցն էին վիժած։*
Եւ այս նըման Իսրայելեանցն,
Որ ի յաւուրս Մակաբայեանցն,
Զոր մարգարէն յառաջ ասաց,
Աստուածախաւսըն գուշակեաց։
Զնետն աստուծոյ արհամբ արբած,
Սուրն ի յարիւնն շաղախած.
Այս ամենայն պըտուղ մեղաց
Եւ անաւրէն գործոց չարեաց,
Զոր սատանայ ի մեզ ազդեաց՝
Սուտ քրիստոնեայքս և խարխալեաց,
Որով արբաք ըստ արժանեաց
Զդառըն բաժակն ի յայլ ազգաց։
Ցետ այսորիկ չարըն խաղաց
ԱնԹիւ զաւրաւքն իւր և գընաց,
Եմուտ սաստիւ ի տունն [Ց]ունաց՝
Ի Մէջերկրեայ սահման Գամրաց,
Մայրաքաղաք Սեբաստիայ.
Սաստիկ հարուած եհաս նըմայ,
Զոր պաշարեալ ըզնայ առին
Եւ նորաձև պաշար տըւին։
Զարս ամենայն ըզքաղաքին
Ըզգլխաւորս երևեցին
Գուբ և խանդակ փոս փորեցին
Եւ կենդանոյն ի ներս արկին.
Զամենեսեան քարկոծեցին,
Շնչոմն իւրեանց և ծածկեցին։
Ո՜, յահագին պատուհասին
Եւ անծանաւԹ, որ ոչ պատմին,
Զի մինչ աւուրըն չորրորդին
Գոռունն գայր անընդային,
Զի ոչ հարիւր կամ հազարին,
Այլ ուԹ հազար գոլ Թիւ նոցին։

---

* Ձեռագրում՝ «Վիժաց»։

## 301

## ՄԱՇՏՈՑ

Երևան 9248

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Երզնկա

189 բ ... Արդ, գրեցաւ աստուածախաւս քնարս, որ կոչի հայր Մաշ-
տոց ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Սիմէոն սուտանուն քա-
հանայի, ի գաւառս Եկեղեաց, ի քաղաքս Եզնկա, ընդ հովանեաւ սրբոյ
Կարապետիս և սուրբ Աստուածածնիս։
Արդ, գրեցաւ սա ի Թվականիս Հայոց ՊՀԱ. (1422), սեպտեմբեր
ամսոյ Ե. (5) աւարտեցաւ, ի հայրապետութեան տեառն տէր Յո-
հաննիսի արքեպիսկոպոսի, զոր աստուած ընդ երկայն աւուրս արաս-
ցէ։ Արդ, աղաչեմ զամենեսեան արտասուալից պաղատանաւք, զի զա-
մենեսեան յիշատակի արժանի առնիջիք. նախ՝ զաստուածազարդ
սուրբ կտակիս զստացաւղ տառիս՝ զերիցակին Թանն, և զՄխիթար
քահանայն, և զաւակն իւրեանց զՍառա-խաթունն, և զամենայն արեան
մերձս նորա՝ զկենդանիս և զհանգուցեալս։ Եւ զառաջնորդ անապա-
190 ա տին զհայր Մարգարէ, որ զաւրինակն շնորհեաց և բազում երա || խ-
տիք ունի առ մեզ, և զտէր Առաքելն, և զտէր Մաթէոսն, որ շատ աշ-
խատեցաւ հետ ինձ։
Ցիշեցէք և զհոգեոր հայրն մեր զՅովաննէս կրաւնաւորն, որ աշխա-
տութեամբ սնոյց և ուսոյց զիս և զծնողսն նորա։ Ընդ նմին զմեղապարտ
և զանարժան գրիչս զՍիմէոն երէցս, և զեղբայրն իմ զԿարապետ սար-
կաւագ, և զծնաւղսն մեր զՍտեփաննոս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և
զՇնովոր, և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիս և զհան-
գուցեալսն ի Քրիստոս։ Ցիշեցէք և զՌըստակէսն և զԽելաւքն, և զա-
ւակն իւրեանց զՄարթախունն*, և զստացաւղ գրոցս զերիցակին
Թանն, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց. իւրոց և եդ ի լուսեղէն
տաճարս՝ ի սուրբ Գէորգս և ի սուրբ Աստուածածինս, յիշատակ իւր
և ծնողաց իւրոց։ Եւ ով ոք զյիշատակեալքս լի սրտիւ յիշէ՝ յիշեսցէ
և զձեզ Քրիստոս յիւր երկնից սուրբ արքայութիւնն, ամէն։ Եւ ով
ոք մի իշխեսցէ ի գրոցէս պարապ Թուղթ կտրել կամ յիշատակարա-
190 բ նէս քերել և այլ անուն գրել։ Եւ ոչ ոք յազգականաց սոցա մի || իշ-
խեսցէ ծախել, կամ գրաւկնել, կամ ի սուրբ Աստուածածնիս գոնէս
հանել. եւ եթէ ի պատահմանէ յայլազգեաց ձեռք անկանի, ով որ գնէ՝
բերէ ի սուրբ աթոռս՝ ի սուրբ Գէորգս։
Այլ և վատութեան գրիս և սղալանաց մի մեղադրէք, զի ի խիստ
դառն ժամանակի գրեցաւ. զի երեկ Աւթմանն ի վերա մեր և դառն աւա-
րեց, և ԺԳ. (13) շաբաթ ի վերա քաղքիս նստաւ և զվաստակն կերցուց,
և ով որ ի ձեռք անկաւ՝ զոմն սպանեց և զոմն ծառա բռնեց և խիստ խսա-
րեց, ապա ի յաստուծոյ (°) և ով որ ի յափ ընկաւ՝ նա բերին ծախեցին. և
հանց խսարեց, որ մոթ հացն ՊՃ. (800) դրամ եղաւ և մոթ աղն ի ՌԲՃ.

* Թերևս աղավաղումն է «Մարթա-Խաթուն» անվան։

(1200) դրամ, և ոնց որ յԱճի անկ եղաւ։ Նայ ողորմեցաւ աստուած, որ
ասաց քաղքին պարոնն, Թէ զամէնքս ի դուրս արէք, զինչ որ մարդ
կայ, որ ազեխ չունի. և զամէնքս ի դուրս արին։ Նայ ողորմութիւնն
աստուծոյ անսպառ էր, որ հանց քաղցրացոյց զԱւթմանին սիրտն, որ
191 ա ով ի դուրս ելաւ, նա մարդ կու դնէր ի հե‖տ, որ կու տանէին՝ ի
շէն աշխարհ հասուցանէին։

Այլ աղաչեմ զձեզ յիշեցէք զԿարապետ քահանայն և զծնաւղսն
իւր, և զԳէորգ ժամակոչն և զծնաւղսն իւր, զսպասաւորք սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգայ զաւրավարիս, և զիս՝ զանարժան գրիչս զՍիմէոն մեղապարտ քահանայս. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Յիշեցէք զՄխիթարիչն, և զերիցակին Թանն, և զՍիռնն, որ հալալ արդեամբք իւրեանց աւգնական եղեն և զժամատունս շինեցին, և զԿարապետ քահանայ, որ յանձն առ և բազում երախտիք ունի, և զայլ մեծ և փոքր, որ աշխատեցան ի հետ. Քրիստոս աստուած Թողցէ զյանցանս նոցա աստ և ի հանդերձեալն. և աստուած Թողցէ զյանցանս Ասպետին, որ շատ աշխատեցաւ ի հետ և զպատերն շ[ի]ն[ե]աց,

Նկ. 11. Մի հատված Սիմէոն գրչի հիշատակարանից

Յիշեցէք զՀայրապետն, և զաւակն իւր զԱմիրպէկն, և զՄարեմ-խաթունն, որ զիպրեզն (*)* և զգրտկալուցն ծածկոցն տուին յիշատակ
191 բ իւ‖րեանց և ծնաւղաց իւրեանց։ Քրիստոս աստուած Թողցէ զյանցանս նոցա աստ և ի հանգերձելումն։

Յիշեցէք զՍտեփաննոսն, որ կէս լիտր կերիոն իլից յամէն տարի...։

Յիշեցէք զՅակոբն և զհամեստ կինն իւր, որ քիմխա շուրջառ և զբոլոր սպասքն դրին յիշատակ իւրեանց...։

* Թերևս կարդալու է՝ «Ջ. (՜) լիտր եգն»։

*Յիշեցէք զտանտիկնաք զգեզիս, որ զատենի շուրջառն գրին յիշատակ...։*

*Յիշեցէք զՍամուէլ քահանայ, որ զաւետարան գնեց...։*

*Յիշեցէք զԹաթէոսն և զգեզիս մեծ և փոքր, որ զճաշոցն առին և եղին յիշատակ իւրեանց...։*

*Յիշեցէք և զՍտեփաննոս քահանայ, որ զպայծառ խորանս կազմեաց... և զգեզիս մեծ և փոքր, որ շատ աշխատեցան, Քրիստոս աստուած ջնջէ զձեռագիր յանցանացն նոցա աստ և ի հանդերձեալն։*

## 302

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*ՄՑՎ 10 (280), հտ. Ա., էջ 114—115*

*Գրիչ՝* Կարապետ
*Վայր՝* Խլաթ

ա

774 ր *... Արդ, աւարտեցաւ աստուածաշունչ գիրքս՝ հին և նոր կտակարանքս՝ ընդ ձեռամբ մեղսամած գրչի* Կարապետի, *ի քաղաքիս որ կոչի* Խըլաթ, *ընդ հովանեաւ ԺԱ. (11) խորանիս, որ է գեղեցկայարմար և բարձրաբերձ և լայնատարած տաճարիս, ի խնդրոյ բարիբարւոյ և փառաւոր վարդապետի* Յովհաննիսի, *որ բազում աշխատութեամբ և յօժար փափաքմամբ և թաղխծեալ անձամբ տըւի զսա գրել ի ժամանակս նեղ և անձուկ, որ կանք փախուցեալ ի յամուրս և ի ծերպս վիմաց ի յահէ անօրինաց, բազում աշխատութեամբ և տառապանօք։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսլեամբ կամ օրինակելով, անյապաղ զաստուած-ողորմին շնորհեցէք ստացողի սորա* Յովհաննէս *վարդապետին, և ծնողաց նորին՝ հօրն* Սահմադինին, *և մաւրն, և ամենայն ազգականաց իւր՝ բարեկամաց և սիրելեաց իւրոց, ամէն...։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան յիշել զանարժան գծողս* զԿարապետ, *որ բազում աշխատութեամբ և տառապանօք հասի յաւարտ սորա, միով աստուած-ողորմիւ յիշել զծնողսն իմ՝ զհայրն իմ* զՅով[հաննէս], *և զմայրն իմ* զԹանկ-Խաթունն, *և զհոգեոր հարքն իմ* զԱնպէտն *և* զԿիրակոս, *զվարդապետն իմ՝ զշնորհալիր կրաւնաւորն* զՊետրոս, *և զամենայն երախդաւորսն մեր, ամէն։*

*Արդ, հիմնեցաւ սուրբ կտակարանքս ի թվին ՊԿԷ. (1418), և աւարտեցաւ ՊՀԱ. (1422)։*

բ

349 ա *... Յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ստացող աստուածաբուխ տառիս՝ զհեզ և զխոնարհամիտ վարդապետն* Յովհաննէս, *և զծնողսն իւր, և զեղբայր* զԹուխթամուր, *և զամենայն ազգայինսն, և զմեղապարտ գծողս* Կարապետ՝ *միով աստուած-ողորմիւ յիշել ի տէր։*

Ծաղկող՝ Մկրտիչ Նաղաշ

Գ

667 բ Զաստուածարեալ և զտիեզերալոյս վարդապետն՝ զստացող աստուածոյշունչ տառիս զՅովաննէս սրբակրօն զրաբունին աղաչեմ յիշել ի տէր, ընդ Նմին և զմեղապարտ նկարիչս՝ զորուպ ծառայ համաւրէն ծառայից աստուծոյ զՄկրտիչ մեղաւք զառածեալս, զի խոնջաքիրտն աշխատանաւք վաստակեցայ ի նկարել տառքս։ Աղաչեմ յիշման արժանի առնել զմերս անարժանութիւն և աստուած յիշողացդ ողորմեսցի։

Դ

777 բ Եւ զմեղաւորս Մկրտիչ սոսկ անուամբ եպիսկոպոս Ամիթ քաղաքի և Մերտընայ, Ուռհայու և Թիլկուբնա, Հինու և Արղնու։ Վայն է պատեչ զիս, յորժամ առնուն զհամարն անտեսութեան։

Ողորմելի գերի Նաղաշ,
Քանի ուտես զաւրըն պըլաշ,
Զանչքդ բաց ու հատր պտշ,
Որ չլինիս որթանցըն ճաշ։

Ցիշեցէք ի Քրիստոս զԹանղրուէրմեշ տղայն,* որ հանդիպեցաւ այսօր աստ։ Ցիշեցէք զմղտսի Մանուտն, որ յամէն օր ինձ Ժ. (10) լաւշ կու բերէր։**

## 303

### ՈՍԿԵՓՈՐԻԿ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երուսաղէմ 1248

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Տաթև

Գրեցաւ ի վանս Ստաթէի, առ ոտս քաջ րաբունապետին մերոյ Մխիթարայ, և յառաջնորդութեան տանս Սիսականայ տէր Ստեփաննոսի՝ որդւոյ պարոն Սմբատին, որ և յայսմ ամի գնացեալ ի Տունն Վրաց, առ մայրն իւր՝ փոխեցաւ ի Քրիստոս... և իշխանութեան պարոն Պէշքենին՝ եղբօր նորին, և Յովհաննէս փակակալին... ի թուին Հայոց՝ ՊՀԱ. (1422), ձեռամբ Թումայի։

## 304

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3713

Գրիչ՝ Առաքել Սիւնեցի
վայր՝ Անգեղակութ

212 ա ... Կատարեցաւ սուրբ և աստուածախաւս աւետարանս ձեռամբ տէր Առաքելոյ Սիւնեաց, յանապատիս Անգեղակութոյ, ի թվիս Հայոց

* «Թանգրիվերմիշ»— Թրք. Աստուածատուր անունն է։ Տպված է աղավաղված, այսպես՝ «զԹանգրուէր Մեշադայն»։
** Տես նաև ՊՂԸ. (1449)-ի թվաշարքում։

*ՊՀԱ. (1422) ամի, ի խնդրոյ սրբասէր և աստուածահաճոյ, կուսակրաւն քահանային՝* Գրիգոր *աբեղային, որ ըստացաւ սուրբ աւետարանս ի հալալ արդեանց իւրոց, ի յիշատակ իւր և ծնօղաց իւրոց։*

*Նկ. 12. Առաքել Սիւնեցու ինքնագիրը։*

*Արդ, որք հանդիպիք սմա [տեսան]ելով և կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զպատուելի քահանայն զտէր* Գրիգոր, *և զծնաւղսն իւր զ*Թագուորշայն, *և զեղբայրսն իւր* [Վ˜]այրամշայն *և* զխտրշայն *և և* | | |

## 305

## ԳՈՎԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ ԱՌԱՔԵԼԻ ԲԱՂԻՇԵՑՒՈՑ

***Երևան 7362 և 101****

*Հեղինակ՝* Առաքել
*վայր՝* Ղազարու վանք

*Ցարմարեցաւ ճառս ի վանքն* Ղազարու, *ձեռամբ ամենամեղ և եղկելի Թշուառական անձին* Առաքել *վարդապետի, ի Թվականիս Հայոց ՊՀԱ. (1422)։*

*. . . Եւ արդ, զոր ի համբաւէ լուեալ և զոր ի գրոց պատմութեանց ընթերցեալ պատուեմք և մեծարեմք զօր յիշատակի նոցա, ապա ևս առաւել պարտիմք գովել և ներփողել զայնոսիկ, որք ականատես եղաք մեզէն նոցա հրեշտակակրօն և բազմօրինակ վարուցն։ Եւ թէ զհամօրէն ընտրեալսն յիշատակօք տօնախմբել արժան է, ապա ևս առաւել զհոգևոր ծնօղսն մեր և զվարդապետսն, որք բանիւք և իմաստութեամբ երկնեալ ծնան զմեզ անխարդախ կաթամբ աստուածաշունչ գրոց, ըստ բանի մեծին Պօղոսի, յորոց և մի ի բազմաց վարդապետաց եկեղեցւոյ և աստուածաբան քարոզողաց սքանչելի այրն աստուծոյ և ախոյանն հաւատոյ, զարդարեալսն ամենայն առաքինութեամբ և լցեալն շնորհօք աստուածային բաբունապետն* Գրիգորիոս Խլաթեցին, *որդի* Տերին, *որ ի վերջին աւուրս քան զառաջինսն գերագոյն երևեցաւ և յերեկոյացեալ ժամու նախնի մշակացն արժանաւորեալ հաւասարեցաւ աստուածատունկ այգիս եկեղեցիս սրբոյ։*

** Այս հիշատակարանի առաջին պարբերությունը գտնում ենք նաև Երևանի № 7465 ձեռագիր Ցայսմաւուրքի 445բ էջում։*

Արդ, ես՝ տարտամեալս մեղօք և զառացեալս աղտեղութեամբ, մտօք յիմարեալ և հոգով || ցնորեալ և մարմնով անսրբութեամբ, անվարժ իմաստութեամբ և անպիտանս եկեղեցւոյ, պղինձ հնչողական և ցնծղայս ղօղանջական, ժանկոտեալս պատրանօք և նսեմացեալս ի գործ խաւարին, անարգս ի մէջ պատուաւորաց և անհմուտս ի կարգս բանասիրաց՝ Առաքեալ պիտականուն վարդապետ, որ չեմ բաւական գովել զամենայն գովութեանց արժանաւորն՝ զքաջ վարդապետն Գրիգորիոս, որ չէ կարօտ [գովութեանց]...։

## 306

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5635

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Բերկրի, Եղիվանք

276 ա ... Արբամաքուր կրաւնաւորն Յոհաննէս, զարհուրելով ի սպառնալեացն և փափաքելով աւետեացն ստացաւ զանարիկ մեծութիւնս և զանկողոպտելի գանձս՝ զսուրբ աւետարանս, յիշատակ բարի իւրն, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն քրիստոսադաւան Ստեփանոսին և մաւրն Աւթին, և բար[ե]պաշտ եղբարցն իւրոց՝ Մովսէսին, Կարապետին և Մարտիրոսին, և եղբաւրորդւոցն՝ նորաբողբոջ պատան[ե]ակացն՝ Յո-
276 բ վանէսին, Կարապետին, || Մկրտչին, Ստեփանոսին և Թովմային, քրիստոսասէր և հաւատարիմ քւերցն՝ Էլտա-Մէլիքին, և աստուածապահ զաւակին իւրոյ՝ Հայրապետին, Սուլտան-խաթունին, Մըրուաթին և Դուխտարին, և հաւրեղբաւրն իմ Ամիրին, և Մարտիրոսին, և մեծ պապուն իւր՝ Գրիգորի, և Գինէ՝ մեծ մաւրն, և հաւրեղբաւրորդւոյն Գրիգորի, և զաւակին իւր Ատովմ<ոն>ին, և հոգևոր հաւրն և վարդապետին իւր Թովմա քահանային, և որդւոցն իւր՝ Յովհաննիսին և Ստեփանոսին, այլ և զերախտաւորն մեր և զխրատ[ատ]ուն՝ զՅովանէս աստուածարտն վարդապետն, որ բազում բարութեանց պատճառ եղև սորին ի յուսումն պէս պէս, և զԱստուածատուր կրաւնաւոր, և զՍտեփանոս հայրապետն, նաև զհոգևոր եղբայրն և զընկերակիցն՝ զՄարտիրոս կուսակրաւն աբեղայն, և զհոգևոր մայրն մեր զՄարթա, և
277 ա զքոյրն իւր զԴովլաթ, և զդստերսն իւր զՀռիփսիմէ և զԱննա, || և զորդիսն իւր զԿիրակոս և զԹովմա, և զհայրն նոցին զԱստուածատուրն, և զՍտեփաննոս, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիս և զհանգուցեալս, յիշեալ լիցի ի գիրն կենդանի, ամէն։

Արդ, ես՝ մեղուցեալ և անարժանս ի կրաւնաւորաց Յոհանէս, ստացա զսուրբ աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց իմոց ի թողութիւն մեղաց և ի բժշկութիւն հոգւոյ իմոյ, զի յոյժ խոցոտեալ եմ ի սատանայէ և ի բազում խաղբից նորին, քանզի սովաւ հասից առ անձկալին իմ Քրիստոս։

277 բ ... Եւ արդ, ես՝ յետինս ի կրաւնաւորաց... Յակոբ սոսկանուն

արեգա, շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի
զսուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց Մեծաց ՊՀԱ. (1422), ի գա-
ւառիս Տարբերունի, որ այժմ կոչի Բերկրի, ի սուրբ ուխտս, որ կոչի
Եղավանք, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսիս և արեամբ ներկեալ
նահատակացն Քրիստոսի՝ սրբոց Վարդանանցն, ի յառաջնորդութիւն
սուրբ ուխտիս՝ Մելքիսէթ հեզահոգի և աստուածաբան վարդապետի
և այլ միեղէն եղբարցս, որ աստ կան ի սպասաւորութիւն սուրբ
ուխտիս։ Նաև զհոգևոր հայրն մեր և զառաջնորդ սուրբ ուխտին տէր
Ցուսկա որդւոյ՝ զերանաշնորհ և զաստուածարուղխն ի հոգւոյն սրբոյ
զՄկրտիչ վարդապետ, և զՅակոբ Խօյեցի հոգևոր եղբայրն իւր, որ
278 ա զաւրինակն ‖ ետուն, տացէ նոցա տէր աստուած զիւր անճառ ողոր-
մութիւնն, ամէն։

... Ընդ նոսին աղաչեմ և յերեսս անկեալ պաղատիմ, յիշման
արժանի առնել զանպիտան գրիչս և զծնաւղսն իմ զՅուսիկ և զՂրէլ,
և զեղբայրն իմ զպարոն Լուսեր, նաև զհոգևոր որդեակս իմ զԳրիգոր
դպիր, որ զպէտս մեր լցուցանէ, և զմիաբանք սուրբ ուխտիս՝ զՍտե-
փանոս կրաւնաւոր, և զՅակոբ մահդասի աբեղայն, և զԽասրով մոնթն,
278 բ ‖ որ սպասաւորէ մեզ ի պէտս տնտեսութեան, և զԴովլաշահ մաճա-
կալն յիշեցէք ի Քրիստոս...։

Այլ և աղաչեմ անմեղադիր լինել խոշորութեան գրիս և սխալա-
նաց, զի անընդունակ եմ արուեստի գրչութեան և բազում մեղաց
ցնորիւք պաշարեալ, այլ ի սիրոյ հարկեալ և սիրով վճարեալ։

Ցիշել աղաչեմ զարժանին յիշատակի զքեռին իմ՝ պատուէլի
քահանայն զՄկրտիչ՝ առաջնորդ քաղաքին Բերկրոյ, որ բազում գութ
և զխնամ ունի առ մեզ, նաև զծաղկեալ զաւակքն իւր զՊետրոս՝
ծաղկող սուրբ աւետարանիս և զԹուման, ծաղկեցուցէ զնոսա տէր
աստուած հանդերձ զաւակաւք և ծնաւղ[աւք] իւրեանց՝ ի բարին
Քրիստոս, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի բարեգութն աստուած զհամապատիւ աստ-
ուածարեալ տանուտեարքն՝ զՇիրինշահն, և զՊարընշահն, և զՋաքա-
րէն, և զորդիքն իւր՝ զՀազարբէկն, զՖռանգն, զԱստմն և զՅովանէսն, և
լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն։*

## 307

## ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրդ. Նոա. 88—69, Արծկէ, Սքանչելագործի վանք

Գերութիւնից ազատող՝ Աստուածատուր
վայր՝ Տկուց վանք

Ես՝ Աստուածատուրս և եղբայրն իմ Յովհաննէս, Թափեցաք
զսուրբ աւետարանս, որ էր գերի... այլասեռաց. և տուաք ի սուրբ
ուխտն՝ ի Տկուց վանքն, ի դուռն սուրբ Անանիայի, յիշատակ մեզ և

* Ձեռագրի 279բ—281բ էջերում կան հետագա ստացողների մի քանի անթվական
ոակավարժեք հիշատակարաններ։

*ծնողացն մերոց* Բաներգեսին *և* Ուլուխաթունին, *զի յառաջն վանացն էր աւետարանս, և մեք այլ յիւր տեղն տուինք, ՊՀԱ. (1422)։*

## 308

### ԱՒԵՏԱՐԱՆ

***Փիրգ. Նոտ. 69, Արծկէ, Սքանչելագործի վանք***

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Վան

... *Սրբամաքուր քահանայն* Յովհաննէս՝ *զարհուրելով ի սպառնալեացն և փափաքելով աւետեացն ստացաւ զնաուիկ մեծութիւնս և զանկողոպտելի գանձս՝ զսուրբ աւետարանս, յիշատակ բարի իւրն, և ծնողացն իւրոց՝ հօրն* Թուլուխին, *մօրն* Մարթային, *եղբօրն* Յովհաննիսին *և* Բաղշայիշին, *և քերց* Խալիմ-խաթունին, Ուսլումին, Էդըլ-Մէլիքին, *և որդւոցն* Սուլթանշահին *և* Էդըլշա *սարկաւագին, և կենակցին* Աթա-Մէլիքին, *և զոքանչին* Ջհան-Մէլիքին, *և մօրքրօջն* Թան-Մէլիքին *և* Ձառուխին։

* Եւ արդ, ես...* Կարապետ *սուտանուն քահանայ, շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց Մեծաց ՊՀԱ. (1422), ի քաղաքս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պօղոսի...։*

*Գարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր* զՄխիթարն... *որ ստացաւ զսուրբ աւետարանս ի յարդար վաստակոց իւրոց ի յառաջին ստացողէն՝ ի* Յովհաննէս *քահանայէն. և ետ ի դուռն սուրբ Վարդանայ, որոյ տէր աստուած զերկնից արքայութիւն տացէ, ամէն։*

## 309

### ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ

***Փիրգ. Նոտ. 68***

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Վան

... *Պատուական կրօնաւորն և բարեսէր աբեղայն* Ատոմ *սիրով ցանկացաւ այսմ աստուածարեալ գանձիս, և ստացաւ զսա յիշատակ բարի իւր, և ծնողաց իւրոց* Պարիշահին *և* Մարթային, *նաև զմիաբանք սուրբ ուխտին՝* Կտցի *սուրբ Խաչին, և սուրբ Կարապետին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Գրիգորին, և սուրբ Հռիփսիմեանցն, զառաջնորդ ուխտին զտէր* Մխիթար *եպիսկոպոսն, և* զԿարապետ *սպասաւոր բանի, և* զՄելքիսէթ *կրօնաւոր, և* զՄկրտիչ *կրօնաւոր, և* զԿարապետ *կրօնաւոր, և* զՍարգիս *կրօնաւոր, և* զՅովհաննէս *կրօնաւոր, և* զՍիմէոն *կրօնաւորն, և* զՅովաննէս *կրօնաւոր, այլ և* զԴաւիթ *կրօնաւոր, հանդերձ ամենայն ընկչօքն, որոց տացէ տէր աստուած հանդիստ արքայութիւն արդարոց։*

*Արդ, գրեցաւ սա ի խնդրոյ* Ատոմ *աբեղային, ձեռամբ յոգնամեղ*

և անարհեստ գրչաց՝ Գրիգոր տրեղայի և Մկրտիչ սուտանուն երիցու և Կարապետի, ի Վան քաղաքի, յամի ՊՀԱ. Թուականիս Հայոց (1422)...։

## 310

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 8423

Գրիչ՝ Սարգիս

ա

171 բ Փառք... որ ետ կարօղութիւն՝ ամենախնամ տէրն և արարիչն Քրիստոս աստուած, մեղապարտ և բիւր հազար քանքարոցն պարտական Սարգիս անուամբ եպիսկոպոս և գործովք Թափօր յամենայն բարութենէ։ Արդ, ես՝ ամենայթշուառ՝ ծրեցի ձեռամբ իմով, յաղագս յիշատակ[ի] հոգոյս իմ և ծնողացն մեր, նախ՝ Սօլթանշին, Մինախաթունին, և եղբաւրն իմ Յովանէս քահանային, Մաթէոսին, և այլ ամենայն արեան մերձաւորաց մերոց, և ինձ՝ հոգւով մեռեալ չարագործիս, բարկացողիս, ըանըասողիս, ամբարհաւաճիս, ապարասանիս, ամբարտաւանիս, գիճագնացիս, կանամբի գարշե[ալ հոտո]տելիս և բուրմամբ աղտեղիս ազգի ազգի, [զոր ո]չ է պարտ ի գիր սուրբս արկանել, բայց պակասութեան գրոյս մի մեղադրէք, վասն աստուծոյ և վասն ահեղ դատաստանին Քրիստոսի Թողութիւն շնորհեցէք մեղապարտ[իս]։

Թվ. ՊՀԱ. (1422) էր, և քրիստոսի փառք յաւիտեանս յա[ւիտենից]։

172 ա Ո՜վ դասք քահանայից և սուրբ հանդիպողք, որ և ղքաջ հով[ու]ապետքն մեր՝ յիշեսջիք ի Քրիստոս զտէր Ստեփանոսն, զտէր Յովանէս, զտէր Սաեփանոս, զտէր Զաքարիայն, և զմիւս Զաքարէն, զտէր Թադէոսն, զտէր Ստեփանոս, զտէր Վանական, զտէր Մարկոսն, զտէր Մարտիրոսքն, զտէր Գրիգորն, զտէր Ալեքսիանոսն, իւրայիւքն, զտէր Կարապետն, զտէր Աստուածատուրն, և զայլն ամենայն ուղղափառ հայրապետքն մեր, որ ի Քրիստոս են հանգուցեալ, ընդ նմին և ինձ՝ եղուկ և եղկելի Սարգիս, ամէն, եղիցի։ Ընդ սոցին զվարժապետքն մեր վասն Գոշայ, Վարդանայ, Ներսեսի, Սարգսի, Յեսայեա, Տիրատրու, Առաքելոյն, Գրիգորի, Յակոբի, Կիրիոնի, Ղազարին, Յովսէփին, Սարգսի, և Սարկաւագի, Սաեփանոսի, Մաղաքիայի, Յովանիսի, Գրիգորի քաջ հռետորի, Մաթէոսի, Յունանու, Բարսղի և այլ ուղղափառ վարդապետացն, որ ի Քրիստոս են հանգուցեալ, զտէր Սարգիս, աղաչեմ յիշել ի տէր...։

բ

171 ա Որպէս դիւրին է նաւավարին յելանելն ի յեզր ծովուն, նոյնպէս եղկելի և գարշելի և պիղծ ըընծեր Սարգսիս՝ ի գիծս գրոցս հասանել։ Գրեցաւ վերջք գրոյս յաւուր համբարձմանս, շատ և անհուն գառնութեամբ և հեծութեամբ, գրչի մատն ա՝ չորացած է, այնոր համար գիրդ ձագուձու է, Թողութիւն շնորհեցէք, ԽԲ. (42) տարի է, որ կու աշխատիմ, բանս իմ՝ [սր]տովս չէ, մերն այդ չափ [էր]։

գ

120 բ [Զմեղս]անիրկ անձն՝ Սարգիս գրիչ, հիվանդ հոգով և մարմնով տկար, փանաքի, զժահահոտ գարշելիս աղաչեմ յիշել ի [տէր]։

դ

132 ա ԶՍաֆարշայն յաղօթս յիշեցէք։

## 311

## ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

Երևան 3874

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի
Վայր՝ Տրապէզ[ոն]

ա

420 ա ... Ազգանազեանս մեծ տումարի
Հայոց Մեծաց Թուականի՝
Երկեակ քառիցըս հարիւրի,
Եւթանց տասանց և միակի (1422)
Աւարտ եղև այսմ տառի,
Ի մեծ քաղաքըս արքունի,
Որ Տրապէզ սա յորջորջի,
Ընդ հովանեաւ սուրբ Տիրամաւր,
Որ Զարխափան սայ անուանի....*
421 ա ... Հոգենորոգ այսմ տառի
Ցոյժ ցանկացա տարփմամբ սրտի
Ղազարս՝ մեղաւք մեռեալ ոգի
Եւ խըխայթեալս յամենայնի։
Ձեռամբ իմով գծագրեցի
Ինձ յիշատակ անջնջելի,
Նաև ծնաւղացն իմ կրկնակի,
Եւ ամենայն ազգատոհմի,
Եւ իմ եղբաւրն հարազատի,
Որ Յէաիլպէկ անուն կոչի,
Նաև եղբաւրն իմ ըստ հոգւոյ
Մելքիսեթեկ կրաւնաւորի,
Եւ ըզկոկաւղ նիւթոյ սորին,
Եւ ըզշնորհաւղն աւրինակի,
Որք հանդիպիք զսա ընթեռնուլ,
Կամ փափագմամբ աւրինակել,
Ցաղաւթըս ձեր յիշատակել
Եւ թողութիւն մեղաց հայցել,
Զի և ձեզ տէրն ողորմեսցի,

* Դուրս ենք թողնում մի ընդարձակ հատված, ուր գովերգվում են Հարանց Վարքի նյութերը։

*Այն որ առատն է ի բարի,*
*Նմա փառք յամենայնի,*
*Այժմ և յանցեալն և յապառնի։*

*Նաև զվերջին ստացող սուրբ գրոց* զՄկրտիչ *գրոց աշակերտն յիշեցէք ի բարի մասին, զի յոյժ եռափափագ սիրով ստացաւ զսա ի հալալ արդեանց ի վայելումն անձին իւրոյ։ Եւ ես՝ եղկելիս* Ղազար, *թէպէտ վասն անձին իմոյ գծեալ էի, այլ յորժամ խնդրեաց եղբայրս մեր՝ ոչ կարացի զխնդիրքն սորա անտես առնել վասն եղբայրական սիրոյն, այլ շնորհեցի նմա զխնդրելին իւր և առի ի նմանէ զգինն, զոր տէր ատտուած վայելել տացէ յամերամս ժամանակաց, ամէն։*

Բ

278 ա *Ձեղկելի գծողկս՝* զՂազար Ղրիմեցի, *յիշեցէք ի մաքրափայլ առաւթս ձեր...։*

## 312

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

*Ալիշան, «Կամենից», էջ 161, Մակլեր, Հանդես հայագիտութեան,* VII
*(հրատարակված է ֆոտո-պատճենը)*

*Վաճառող՝* Սիմէոն
*վայր՝* Ղրի՞մ

*Զվերջին ստացօղ սուրբ աւետարանիս զպարոն* Խութլուպէկն, *յիւր հալալ արդեանցն գնեաց զսուրբ աւետարանս ի* Սիմէոն *աբեղայէս, ի յիշատակ իւրեանն, և իւր կողակցին* Մելիք-Խաթունին, *և իւրեանց ծնողացն։ Որ ոք հանդիպի սուրբ աւետարանիս կարդալով կամ օրինակելով, յիշման առնէք արժանի զվերոգրեալ պր.* Խութլուպէկն *և* զՏաւնակն *վարպետն, որ զայս սուրբ աւետարանս մեզ եբեր, և աստուած զձեզ յիշէ։*

*Ի թվ. ՊՀԱ. (1422), ես* Սիմէոն *աբեղաս՝ եղբայր* Յովանիսի, *ծախեցի սուրբ աւետարանս պր.* Խութլուպէկին։

## 313

## *ՅԱՅՍՄԱԻՈԻՐՔ*

*Երևան 7362*

*Գրիչ՝* Թորոս
*վայր՝* Երուսաղէմ

ա

631 բ *Փառք... որ ետ կարողութիւն տկար և տարտամ անձին և անպիտան գրչի* Թորոս *աբեղի հասանել յաւարտ գրոցս պիտանի, որ աւրըստաւուր սոսկացնէ զոսկերս լսողաց սորա՝ պատմութիւն կարծագոյն տանջանաց և սքանչելի չընաշխարհիկ վարուց սրբոցն, որ*

*սա հաւաքեալ կան։ Որոց սիրատարփ տենչմամբ և եռափափագ ըղձմամբ սրտի ցանկացայ աստուածակոխ քաղաքիս՝ սուրբ յԵրու-*սաղէմաս *և աստուածընկալ սուրբ տնաւրինականացս, և կամաւք և նախախնամութեամբն աստուծոյ ի սուրբ յ*Երուսաղէմս *մեծաւ սիրով և հառաչմամբ անկեալ՝ երկրպագեցի Քրիստոսի և սուրբ անաւրինականաց նորա և դամբարանի սրբոյն Յակոբա, և կացեալ Ռացի յԵրուսաղէմս, ի հոյակապ և ի հռչակաւոր վանքս սրբոյն Յակոբա։ Եւ արդ, ես՝ անպաուղս ի բարեաց, մեղաւորս արդարոց և անկատարս ի կատարելոց, տգէտս ի գիտնականաց և յանյիշելիս ի յիշեցելոցս՝ բազմամեղ, սուտանուն աբեղայ* Թորոս *ես առաւել ցանկացայ* | | | *

Բ

13 բ *Այլ և ստացողաց սուրբ գրոցս* Թորոս *աբեղին,* Ներսէս *սարկաւագին,* Խրիմ-Խաթունին, *և ծնողաց սոցին. այլ ես առաւել Աստուածածնին սուրբ գերեզմանին լուսարարացն՝* Կաֆացի Մարիանեացն, *զի ինձ* Թորոս *գծողիս ի հետ բազում աշխատանս կրեցին, այլև կարգացողաց և լսողաց [յիշեցէք]։*

Գ

97 ա *Որսյ ազատ Թիւքն ողորմի Քրիստոս* Թորոս *անարժան աբեղին, և ծնողաց նորին* Աթսպէկին, *զ*Ամէն-Տիկնայ, *և եղբարցն՝* Յոհանէսին, Ներսէսին, Աւետիքին, *և քուերցն՝* Գուհար-Տիկնայ, Դրիմին, Խաղութին, *եւս առաւել իմ հոգևոր մարցն* Մարանէիցն, *որ բազում աշխատէին ընդ իս, և* Ներսէս *աբեղին, որ զԹուխտս կոկեաց...։*

Դ

4 բ *... Ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս՝* Սանփանոս *հերպետին և ծնօղաց նորին՝* Մարտիրոսին, Գուհար-Տիկնայ։**

---

** Շարունակությունը չի պահպանվել։ Ձեռագրում կան բազմաթիվ մանր հիշատակություններ, որոնցից մի քանիսը մեջ ենք բերում։*

*** Ձեռագրի գրչության տարեթիվը հայտնի չէ, սակայն գրված պետք է լինի Առաքել Բաղիշեցու «Գովասանութիւն սրբոց» (կամ «Մեծի գալստեան ծաղկազարդին») վերնագրով ճառի հորինումից, այսինքն՝ 1422 թվականից հետո։ Ըստ այդմ էլ հիշատակարանները պայմանականորեն տեղադրում ենք 1422-ի թվաշարքում։*





## 314

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

*Երուսաղէմ 2181*

*Գրիչ*՝ Թումայ Սպատկերտեցի
*վայր*՝ Բերդավանք

*Գրեցաւ ի Թու. ՊՀԲ. (1423), ձեռամբ* Թումայի Սպատկերտեցո, *ի գեղՀն* Բերդավանից, *ի յերկիրն* Վայուձոր, *ի յանապատի վանք, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի մերոյ լուսաւորչին և սուրբ վարդապետացն, որ աստ հանգուցեալ կան՝* Տիրատուր *վարդապետն,* Գրիգոր *վարդապետն,* Բարսեղ *վարդապետն, տէր* Սուլտանշէն, *առ ոտս* Յովանէս *րաբունապետին... որ տքնութեամբ և անդադար ընթերցմամբ աշխատի ի գիրս աստուածային հնո և նորո կտակարանաց՝ առայտապէս լիացուցանէ զգրոց տշակերտեալ մանկունս, որ աստ հաւաքեալ կան։*

*Արդ, գրոցս երկու հատորն ի յոնաոիկն* Մակու *[գրեց]աւ, ձեռամբ* Գրիգոր *վարդապետի։ Եւ ես պատմեցից զաղէտ ժամանակիս և զպատուհաս, որ եղև առհասարակ, զի քաղցրութիւն ժամանակի ի դառնութիւն փոխեցաւ, զի ապերախտ եղաք առ երախտաւորն և պարանք առ բազմապարգևն, միշտ մեղուցեալ առ երկայնամիտն, մինչ զի զարդար զցասումն նորա շարժեցաք ի մեզ։ Առաքեաց ի մեզ ըստ մարգարէին զօր իւր մեծ՝ այսինքն զմարախ, և զխառնիճ, որ էր կոնգն, և թեւաւորն՝ խառն ի խուռն ընդ միմեանս։ Զի առաջին տարին ինքն թեւաւորն [եկ՞ն] և սերմանեաց, և ի միւս այլ տարին՝ ի գարնան յեղանակին ընդ խոտոյն ի վեր փչեաց՝ առաւել քան զբոյս, մինչ զի լի եղեւ ի խորութիւն ձորոց և ի լայնութիւն դաշտաց, ի գագաթունս լերանց, էր երկիր առաջի նորա իբրև զդրախտ փափկութեան և վերջ նորա՝ դաշտ ապականութեան, ըստ մարգարէին։ Եկեր զամենայն խոտ և սպառեաց զամենայն վաստակն սերմանեալ, նուազէին անասունք, յքեալ դատարկացան երկրագործք ի վաստակելոյ, խցեալ կալնուին զերդ և զպատուհան ի ներքս լինելոյ նոցա, մինչ զի զերդս պահէին աւելելով կամ մաղ ի վերայ դնելով, և ապա հաց եփէին ի ներքս կամ ուտէին։ Ամենայն ժողովք ջուրց պարզք և բաբեհամք՝ գիշահոտեալ տղմային արիւնատեսիլ իբրև զեգիպտացւոցն լինէր ի ներքս կուտելոյ նոցա։*

*Անբնակ ի մարդոյ և յանասնոյ գեօղք լինէին գնալով նոցա։*

յայլ տեղոջէ յայլ. քակտեցաւ ամենայն միաբանութիւնք, որ հացիւ և կերակրով էին շազկապեալ։

Եւ ապա իմ՝ եկեալ յերկիրս Ռշտունեաց, ի դերահոչակ ուխտն Անճ-նապատ կոչեցեալ, և ոչ տային դադար դրելոյ կամ կարդալոյ, զի ան-կանք ի մէջ ագիտաց և անվարժ և անկրօն կրօնաւորաց։ Եւ չարչարէին զմեզ որպէս զայլազգի. եւ զամենայն անարգ և անպիտան գործ ի յանձն առաք և չկարացաք հաճեցուցանել զանբարեսէր կամս նոցա, զի բա-րիսն(՞) և զչարսն սիրէին, զի էին ինքնահաճք և ինքնահաւանք, ցո-փազրուցք, շաղակրատողք, այլոց տրհամարողք և զինքեանս յարգողք, և այլ զի՞նչ ասացից, զի յոտից մինչև ցգլուխ չիք առողջութիւն։ Երբ ոչ գտաք հանգիստ ոտից մերոց՝ ցրուեցաք յիւրաքանչիւր տե-ղիս՝ վարդապետք և աշակերտք։ Եւ իմ եկեալ առ ծնօղն իմ՝ ի գեղն որ կոչի Բերդավանք. և աստ վճարեցի զգիրքս, ընդ հովանեաւ սուրբ Աս-տուածածնիս մօրս մերոյ։ Եւ ոչ տայ դադար միտքս իմ ինձ, զի կա-միմ դառնալ առ վարդապետն իմ Յակոբ, զի կամի խիստ զուսուցանելն և է վայելչատիպ չափահասակ, բարիոք ալեօք ծաղկեալ, զուարճայ-խօս, առատաբան. արդիւնաւոր և ուսուցանող անձանձրոյթ, որոյ եղի-ցի մասն և վիճակ ժառանգութեան ընդ ամենայն սրբոց ուղղափառ վարդապետաց, ամէն։

Գարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոց օրինակելով, կամ ընթեռնելով, կամ տեսանելով յիշեսջիք զիս՝ զտա-ռապեալս Թումա, և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՄարգարէ և զմայրն զՇնոհվոր, և զեղբայրն իմ զՅովհաննէս, որ ի պատահմանէ չարին անկաւ ի բերդի գոնէն ի վայր և փոխեցաւ յաստեացս ի հանդեր-ձեալն, և զքոյրն իմ զԹանկ-Մէլիք, և զԹագուհի...։

Դարձեալ աղաչեմ զամենեսեան յիշեսջիք... զխուրն* իմ զԱռա-քել, որ անձանձիր աշխատի միշտ ու հանապազ...։

## 315

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Երևան 1587**

**ա**

Գրիչ՝ Յով[աննէս] Անեցի

313 բ Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուաբերութեանս Հայոց ՊՀԲ. (1423), ձեռամբ անմար և փցուն գրչի Յով[աննէս] եպիսկոպոսի Անոյ, ի խնդրոյ հոգելից և շնորհաց աւթարանի՝ աշակերտի քաջ բաբուն-ւոյ Ղազարու և ճըգնազգեաց հարազատի իւրոյ Յովաննու երաժշտա-պետի։ Աղաչեմ զմանկունսդ նորոյ յիշեսջիք ի Քրիստոս զստացող սորին՝ զՅոհ[անն]էս զկուսակրաւն քահանայն՝ զաշակերտ քաջ արանցս, և զիս ընդ նոսին՝ զծրող սորին, և աստուած զձեզ։

* Հավանաբար ցանկացել է ասել՝ «զհիւրն»։

Բ

Ստացող՝ Յոհ[աննէս] քահանայ

344 ա Արդ, ես յետինս ի ծնունդս եկեղեցւոյ և անարգս յամենայնի
Յոհ[աննէ]ս մեղապարտ ոգի, ի մանկութենէ սնեալ և վարժեալ ի
դրան սուրբ Աստուածածնիս Սանահնոյ, յաղագս յիշատակի հոգւոյ
իմոյ ի հալալ ընչից իմոց ետու գրել Յով[աննէ]ս արքեպիսկոպոսի
մականուն Ոսկեփորիկ վերածայնելոյ՝ շնորհազարդի և ճարտար գրչի,
որոյ յիշատակ նորին աւրհնութեամբ եղիցի։ Որ և ես ըստ կարի
տկարութեան իմոյ յուսով անմահին և սիրով հոգւոյն սրբոյ ծաղկե-
344 բ ցի զսա ոսկիճաճանչ զարդուք և զա || նազան գունովք, ի յիշա-
տակ հոգւոյ իմոյ, ծնաւղաց իմոց Վարդանայ և Խոնձի, և բազմերախտ
մաւրաքեռ իմոյ պարոն Ցարխունդէի, և հարազատ եղբարց իմոց Խա-
չատրոյ, Աստուածատրի և Մկրտչի, և քերց իմոց Բաարա-Խաթունի և
Խաթունի՝ փոխեցելոցն ի Քրիստոս, և ի վայելումն անձին եղբաւրորդ-
ւոյ իմոյ Ներսէս կուսակրաւն քահանայի, և եղբօր նորին Վարդանայ
դպրի։ Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք վայելէք
և աւգտիք ի սմանէ ուսանելով կամ գաղափար առնելով, յիշեցէք
ի Քրիստոս զիս՝ զբազմամեղ ստացաւղ և զնկարող տառիս՝ զՅով-
հ[աննէ]ս սուտանուն կրօնաւոր, և զՆերսէս վայելող, հանդերձ ծնօղաւք
և հարազատաւք և ամենայն արեան մերձաւորաւք՝ կենդանեօք և
ննջեցելովք։ Որով յիշողացդ և յուսացելոցս ողորմեսցի Քրիստոս
աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ընդ որս և զտէր Աստուածատուր՝ կազմող և սպասաւոր բանի, և զտէր Մելիքսէթէկ ծաղկող, և զՏէրունական աբեղայ, որ զնիւթ մագաղաթիս շնորհեաց, ամէն, եղիցի, եղիցի։

## 316

## ՄԱՇՏՈՑ

«Թորոս Աղբար» Ա. էջ 233—234, Բ. էջ 338—339
Տիվրիկի ս. Լուսաւորչի վանք

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Այրիվանք-Գառնի

...Աւրհնութեանց աւրհնարեր գիրքս այս Մաշտոց մեզ՝ նուաստ և անպիտանք Սարգիս քահանայ և Դաւիթ ստացաք... յիշատակ ծնողաց մերոց և մեզ։ Սարգիս ծերունի և պատուական քահանայն ի սուրբ ուխտէս Հաւուց-Թառ զԹուղտն պատբաստեաց, և ես՝ անյիշելի Դաւիթ գրեցի զգիրքս...։ Եւ ընծայեցաք զսա ի սուրբ ուխտն Հաւուց-Թառ, ի դուռն սուրբ Կաթողիկէին, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յարութեան, և ամենազաւր սուրբ Ամենափրկչին և այլ սրբոց։ Եւ

եղև գրչութիւն սորա ի Նախադրական սուրբ ուխտն՝ ի մեծն Այրի-վանս, և կատարումն գրոցս՝ յաստուածապահ գիւղաքաղաքս Գառնի, առ դրան սուրբ և հրաշափառ Կաթողիկէիս և այլ սուրբ եկեղեցեացս, ի թվ. ՊՀԲ. (1423), ի հայրապետութեան տեառն Պաւղոսի Գառնեցւոյ՝ սրբազան կաթողիկոսի, և ի վերադիտողութեան սուրբ ուխտիս Հաւու-Թառ՝ հեզահոգի և սրբասէր և մաքրամիտ և մեծազգի արհիապատիւ եպիսկոպոսի տէր Զաքարիայ...։ Յիշեցէք ի սուրբ պատարագն զՍարգիս քահանայն, և զծնողսն նորա զՄեհեւանն և զԱստղիկն, և զիս զբազմամեղ սուտանուն քահանայ զԴաւիթ գրիչ, և զծնողսն իմ՝ զհայրն իմ Վարդան և զմայրն իմ ....։

## 317

## ԱԻՆՏԱՐԱՆ

Ղազախի Ղուլալի գիւղ Մ.Տ.Մ.

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Ի վանս Հերմոնի

...Ի ժամանակս, որ Ըսքանդարն թագաւորեաց Թաւրիզոյ աշխարհիս և զրազումս ի քրիստոնէից կոտորեաց....

## 318

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5114

Գրիչ՝ Թովմայ Մեծոփացի
վայր՝ Մեծոփայ վանք

ա

114 բ Զմտացող լուսազարդ տառիս՝ զՍտեփանոս կրաւնաւորն և զծնաւղսն իւր զՆերսէս, [և զմայրն]՝ զհանգուցեալսն ի Քրիստոս յիշեցէք...։ Եւ եղկելի գրչիս Թովմայի Մեծոփացւոյ, գրեցաւ [ի թուականիս] ՊՀԲ. (1423)։

բ

372 ա ...Արդ, գրեցաւ սա յերկիրս Քաջբերունւոյ, ի սուրբ մեծաստանիս, որ կոչի Մեծոփայ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակովբայ, և սուրբ վարդապետաց գերեզմանացս, ի թվականութեանս Հայոց ՊՀԳ. (1424), ձեռամբ անարհեստ և սխալագիր գրչի Թովմայ խարեղայի,* ի հայրապետութեանն տեառն Պաւղոսի, և

* Բառախաղ է, ստեղծված «աբեղայ» և «խաբեբայ» բառերի լծորդումով։

ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս հոգիազարդ և երանաշնորհ և աշխարհալոյս մեծ բաբունապետիս մերոյ Թովմայ վարդապետի, որ հանապազ խրատ[տ]այ մեզ ի յարուեստ գրչութեանն, Քրիստոս աստուած զերկնից արքայութիւնն պարգևէ իւրն և իւր ննջեցելոցն, ամէն։ Արդ, ի խնդիր ելեալ այսմ աստուածաշունչ կտակիս երանաշնորհ և սրբասէր կրաւնաւորն Ստեփաննոս, որ ետ գրել զսա ի յարդար վաստակոց իւրոց յիշատակ իւր և բարի ծնաւղաց իւրոց՝ հաւրն Ներսէսին և մաւրն՝ հանգուցելոյն ի Քրիստոս....։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի բարին Քրիստոս զվերոյգրեալքսն՝ Ստեփաննոս և զհարազատ եղբայրն իւր զՏէրքսան կրաւնաւորն՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս՝ ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւ[իտեան]։

Այլ և կրկնակի աղաչեմ զամենեսեան, որք պատահիք ի սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք առաջի աստուծոյ զստացող սորա և զիս՝ զանպիտան գրիչս, խոշորութեան և սխալանացս անմեղադիր լերուք, զի կար մեր այս է։

Գ

Ստացող՝ Ատոմ

373 ա Դարձեալ յիշեցէք... զվերջին ստացող սուրբ կտակիս զԱտոմ վարդապետ՝ զքաջն և զարին ի գործս առաքինութեան... որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ բարի հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝ հաւրն Կարապետին և մաւրն Թուխութանգին, կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս ....։*

Դ

Ստացող՝ Աբրահամ

Զվերջին ստացող Շաբակնոցիս յիշեցէք ի Քրիստոս՝ զԱբրահամ
եպիսկոպոսն, որ բարի մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս, և ի կեն-
373 բ դանութիւնն ետ զՇարակնոցս վերըստին նորաւգել, յիշատակ հո‖-
գոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց Սիրունին, և մաւրն,** և եղբաւրն Յովա-
նիսին, և կողակցին իւրոյ Գուլգուլին, և եղբորորդոցն Գուլնադարին, որ
բարի մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս և եթող սուք անմխիթար
ծնաւղաց իւրոց, և Փոլատին, և եղբօր դստերն Թուրվանդին, և քու-
րոջն,** և որդոյ Նորին պարոն Գորգին, և այլ ամենայն արեան մերձաւո-
րացն, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք ամենեցուն, ամէն ....։***

* Ըստ հնագրական տվյալների այս հիշատակարանը պետք է գրված լինի ձեռագրի գրչությունից ընդամենը մի քանի տարի, գուցե մի տասնամյակ միայն հետո։

** Անվան լրացման համար դատարկ տեղ է թողնված։

*** Ըստ հնագրական տվյալների այս հիշատակարանը գրված պետք է լինի ԺԵ. դարի վերջին կամ հաջորդ ԺԶ. դարի սկզբին։

## 319

### ՃԱՇՈՑ

*Փիրղ. Նօա. 72, Վան, Լամզկերտ գիւղ*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Մոկաց երկիր, Սպատ վանք

*...Աւարտեցաւ այս տառ ձեռամբ անարհեստ գրչի* Կարապետի, *ի Թվ. ՊԿԲ. (1423) հայկազեան սեռիս տոմարի և հայրապետութեան տեառն* Դաւթի... *ղանութեան Թիւրքմէն ազգի, որ* Իսքանդար-բէկ *անուն կոչի...։ Գրեցաւ աստուածախօս այս տառ յարքունական յեր-կիրս* Մոկաց, *ի վանքն որ կոչի* Սպատ, *ընդ հովանեաւ Ամենափրկ-չիս, որ* է սրբագործ եկեղեցի, և ձեռնադրողին Քրիստոսի Կարա-պետի, և զօրավարիս քաջ Նահատակի, և այլ հաւաքեալ սրբոց, ի խնդրոյ սրբասէր* Թումա *կրօնաւորին։*

## 320

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5734*

*Հետ. ստացող՝* Աստուածատուր
*վայր՝* Ուլկազում գիւղ

151 բ *Եւ արդ, ես՝ վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ, անպիտան և անար-ժան ծառայս ծառայից աստուծոյ* Աստուածատուր, *ստացայ զսուրբ աւետարանս զայս ի հալալ արդեանց իմոց, և ետու ըզսա ընծայ և նըւէր սուրբ Շմաւոնի առաքելոյ հրաշագործ տաճարիս, յանուանի գեաւղս* Ուլկազում *կոչեցեալ, որպէս զի հանապազ ընթերցցին զսա մանկունք սուրբ եկեղեցոյ։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան զհանդիպողքդ սմա լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք ինձ՝ մեղաւոր և անարժան ստացողիս* Աստուածատրու, *և եղբաւրն իմոյ* Յովանիսի, *և ծնաւղացն մերոց* Աւագ-Պարնի *և* Փոխան-Շահի, *և* Հռիփսիմէի, *և* Նըշխունի, *և կե-նակցին իմոյ* Եղիսաբեթի, *և այլ ամենայն արեան մերձաւորացն մե-րոց, և* Դանիէլ *քահանային, և ծնողաց նորին, որ միջնորդ եղև այսմ գործոյ...։*

*Ի Թուականիս Հայոց ի ՊՀԲ. (1423)։***

---

** Տպված է հուրթ։*

*** Այս տողը վերցված է նույն ստացող Աստուածատուրի 336ա էջում թողած հի-շատակարանից, որը բովանդակությամբ շատ աղքատ է։*

## 321

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 5708*

*Նվիրաբերող՝* Սահակ
*վայր՝* Աղուանից աշխա՞րհ

268 ր ...*Ոմն* Սահակ *անուն մուղտսի ցանկացող եղև. այս սուրբ աւե-տարանիս և ստացաւ զսայ ի հալալ արդեանց իւրոյ՝ յիշատակ հոգոյ և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ* Աբրահամին *և մաւրն իւրոյ* Դաւլաթխաթունին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց...։*

*Ես* Սահակ *միայնակեացս ստացա զսուրբ աւետարանս և իմ սրտի յաւժարութեամբ տուի... իմ ազգականիս տէր* Կարապետ *եկեղեց-պանին և հոգոյ որդոյ իւր* Թումայ *աբեղաին։ Եւ ի հայրապետու-թեան տեառն* Կարապետի *և յաջորդի նորին տեառն* Մատթէոսի, *զոր տէր աստուած պահեսցէ զսայ բարձր փառօք և անսասան կենօք ասա և ի յանդերձելումն, ամէն։ Եւ սուրբ և ուղղափառ եպիսկոպոսացս տէր* Կարապետին, *և տէր* Կիրակոսին, *տէր* Ստեփանոսի[ն], *և տէր* Տի-րատրին, *և* Գալուստ *աղին, և խօճա* Յաշաիշին, *զոր տէր աստուած հաստատուն պահեսցէ զսոսայ ի սէրն աստուածային, ամէն։*

*Աթոռիս վկաութեամբ, և տեառն* Մատթէոսի, *և իւր սուրբ և ուղղափառ եպիսկոպոսացն վկաութեամբ տվի զսուրբ աւետարանս տէր* Կարապետ *եկեղեցպանին։ Այլ ումէք դաւի չկա, ոչ եղբաւր, ոչ ազգականի, այլ աստուծով և տեառն* Մաթէոսի *և իւր սուրբ եպիսկո-պոսացն բանս հաստատ է։ Որք հակառակին այս բանիս զանէծս Կա-յենի և Յուդայի մատնչի և զԱրիոսի առցէ։ Եւ ես հողոյ հաւասար* Մովսէս *եպիսկոպոս, որ զգիրս գրեցի առաջի տեառն* Մաթէոսի *կա-թողիկոսի Հայոց և Աղւանից, վկա եմ այս բանիս. ի Թվաբերու-թեանս Հայոց ՊՀԲ. (1423), ի փառս աստուծոյ, ամէն։*

## 322

### Ճ Ա Շ Ո Ց

*Վենետիկ 1522*

*Նորոգողն է* Յովհաննէս *քահանայ սուրբ Թորոսեցի, ձեռնտուու-թեամբ պարոն* Կիրակոսի, *ի թվ. ՊՀԲ. (1423)։ Սատիկ սով եղև. մի մոթ հացն Պ. (800) դրամ եղև։*

## 323

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4960*

Գրիչ՝ Թումայ

1ր [Ցութհար]իւր Թուականին,
Ցեւթանասուն երկրորդ սկսեալ ամին,
Ի Հայկան ազգի սեռին,
Ի Թորգոմի մեծի զարմին
Ի նեղութեանց ժամանակին,
Զոր այլազգիքն նեղէին.
Զքրիստոնեայք նախատէին,
Զեկեղեցիոն քակէին,
Եւ ըզհիմունսն շարժէին,
Քտհանայք նստեալ լային,
Եւ ժողովուրդք գումարէին,
Եւ այսպէս է՞ր հանդիպին,
Վասն մեղացն, որ գործէին,
Որ բազմացեալ էր առ նոսին
Որպէս զջուրս հեղեղատին։
Որպէս և ես կամ ի նմին,
Զգայարանաւքս տասնեսին,
Բազում չարիք որ գործեցին,
Զայրի հոգիս կողոպտեցին,
Վէրս ի վերայ սորա եդին,
Եւ կիսամահ թողեալ գնացին,
Մինթէ գթա տէրն ամենին,
Նորոգեսցէ զրկեալ այրին,
Մխիթարն՝ հայր Հռիփսիմին,
Որ յետոյ եկեալ նա ի մտին,
Եւ զղջացեալ ըստ անառակին,
Զոր և գործեաց կրսեր որդին,
Զոր հեռացեալ եղև նմին,
Եւ տար աշխարհ որպէս պատմին,
Զինչս վատնեաց զհայրենին,
Եւ սովամահ լինէր հացին,
Եւ ոչ ոք էր որ տայր նմին,
Եւ նայ ցանկայր ի յեղջիւրին,
Զոր անբան հոզքն* ուտէին.
Ցետոյ դարձեալ առ հայրենին
Անկեալ ի գիրկս իւր ստեղծաւղին,

---

* Իմա «խոզքն»։

Թէ հայր, մեղա քեզ ի յերկինս,
Եւ գթացեալ հայրն առ նմին,
Ի ձեռն նորա ետ զմատանին,
Ջեզն եզեն զպարարակին,
Եգիտ զմեռեալն զիւր որդին։
Նոյնպէս գտեալ այն Հռիփսիմին,
Անուանակից սուրբ նախատակին,
Յաշխատանաց իւրոց չնչին,
Ի յարծաթոյ ժանկահարին,
Ստացաւ զգանձս աստուածային,
Ի յիշատակ հոգւոյ նմին,
Զոր ետ ի դուռն սուրբ [Ատոմ]ին
Ի վանքն | | |* ի ձեռն ընտրեալ կրօնաւորին,
Սրբասնեալ Ստեփաննոսին,
Եւ զՄխիթար հայր սոցին,
Յիշել արժէ յեկեղեցին,
Եւ զհայրազատ որդիք սորին,
ԶԱտոմ և զՎարդան ժառանգ նմին,
Եւ զնախապետ՝ Թոռն նորին,
Եւ որք յետոյ նորա լինին,
Զոր արժանի լինել նոցին։
Եւ որք ընթեռնուն զսայ յեկեղեցին,
Յայնժամ յիշեն զգծող սորին,
Զտառապեալ անձն ի բարին,
Զթումայ անարժանին,
Զմեզաւք ծածկեալն ի մէջ տղմին...։

## 324

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 4819**

304 բ ...Արդ, գրեցաւ յիշատակարանս սուրբ աւետարանիս ի դրան
սուրբ Աստուածածնիս, որ կոչի Քաւ և Քաւարան, ձեռամբ յոգնամեղ
և անարհեստ գրչի, ի թվին ՊՀԲ. (1423) հայկազեան սեռիս տումարի,
ի հայրապետութեան տեառն Դաւթի, ի թագաւորութեան Հայոց ազ-
գիս պարոյնաց, ի խնդրոյ աստուածասէր և պատուական կրաւնա-
ւորի Յովանէս քահան[այ]ի, որ գնեաց զսուրբ աւետարանս ի հալալ
305 ա վաստակոց իւրոց... || ...ի ՅԾ. (350) թանկայ, ի ձեռաց անաւրինաց...։

Եւ ինքն ամենագութն աստուած, որ հատուցանողն է ամենե-
ցուն ձեզ ողորմեսցի և... այնոցիկ, որ աւգնական եղեն ի գին աւե-
տարանիս...։

---

* Մեկ բառ քերված է։

## 325

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 2829**

Գրիչ.

278 բ *Ի թվականութեանս Հայոց ՊՀԲ. (1423), ի հայրապետութեան տեառն Պաւղոսի, և ի յառաջնորդութեան հրոչակաւոր և աստուածապահ քաղաքիս՝ արի և քաջ րաբունապետիս Մատթէոս վարդապետի, որ է ժառանգ և աթոռակալ և աջորդ գլխոյն համայնի Հայոց տեառն տէր Պաւղոսի կաթողիկոս[ի] ամենայն Հայոց։*

*Արդ, ի յայս ժամանակիս այր ոմն բարեպաշտ և հաւատարիմ, համեստ և պարկեշտ, որոյ անուն Խաւճզա, որ է կենակից հանդիսաւոր, անուանի և պատուելի մեծ խաւճային պարոն Ամիրին, որ յայսմ ամի րարիոք քաղաքավարութեամբ հանգեաւ խաղաղութեամբ և փոխեցաւ ի յոյսն ամենեցուն Քրիստոս...։ Արդ, ստացաւ զսա իբրև զհոգեոր գանձ և անշիջանելի լապտեր և ամենագով պարգև՝ պատճառ փրկութեան և առաջնորդ երկնաչու ճանապարհին։ Եւ ընծայեաց զսա Խաւճզա-Խաթուն ամենաւրհնեալ զաւրեղ զաւրավարին սրբոյն Սարգսի եկեղեցւոյս, և մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սրբոյն Սարգսի՝ ոչ վաճառելով, ոչ գրաւկնելով և ոչ գողանալով։ Եթէ ոք յանգրքնեսցի անզգամութեամբ և խորհեսցի հանել զսա ի դրանէ սրբոյն Սարգսի՝ մեր մեղացն պարտական լիցի, և նզովեալ եղիցի յաստուծոյ և ի զաւրեղ զաւրականէն իւրոյ, և ի սուրբ աւետարանչացն, ամէն...։*

## 326

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՒԹԱՆԵՑՈՒՆՑ ԹՂԹՈՑՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ

**Երևան 1408**

*Թերին լրացնող՝* Սիմէոն

234 ա *Կատարեցաւ մեկնութիւնս եւթանեցունց թղթոցն կաթողիկ[էից] աւարտեալ ի մեծէն Աթանասէ պայծառ և գեղեցիկ տեսութեամբ, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, ի թվիս Հայոց ՊՀԲ. (1423), զպակասն գրելով։*

*Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ լուսատեսակ կտակիս, յիշեսջիք յաւժար կամաւք և սրտի մտաւք զհոգացեալս ի վերջին ծայրս աւուրց, մաշեալ և ապականեալ բազմապատիկ և սաստիկ մեղաւք զիս՝ զՍիմէոն վարդապետ բիւրապատիկ պարտական յամենայն տաղանդաց և քանքարաց...։*

## 327

## ՇԱՐԱԿՆՈՑ

ՄՑՀ հա. Բ. 10, էջ 50

Գրիչ՝ Սողոմոն

84 ...Գրեցաւ սայ ձեռամբ յոգնամեղ և փծուն գրչի Սողոմոնի, ի թվականութեան Հայոց ՊՀԲ. (1423)։ Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա՝ մեղաց թողութիւն խնդրեցէք բազմամեղ և անիմաստ քահանայի Սողոմոնի, և եղբարց, և ծնողաց, և ամենայն զարմի հայցեմք, զի տէր ողորմեսցի։ Եւ Աստուածատուր քահանայի, որ զաւրինակն շնորհեաց տէր Յիսուս ողորմեսցի։

Գարձեալ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք պատահիք սմա, անմեղադիր լերուք | | | * անիմաստ և տխմար գրչի և սղալանաց սորայ, զի յոյժ տատանեալ և խեղագար էի մտաւքս ի դառն և ի մահաթոյն ժամանակիս։

Գարձեալ, աղաչեմ ըզձեզ յիշեցէք զվարդապետն իմ ըզԳրիգոր ճգնաւորն՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և ով որ զմեզ յիշէ՝ ի [բա]րին՝ յիշեալ լիցի յիւր արքայութիւնն, ամէն։

## 328

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 7019

Գրիչ՝ Գրիգոր

104 ր ... Յամի թուականութեանս Հայոց ՊՀԲ. (1423) գրեցաւ գիրքըս այս աղօթական եռամեծին սըրոյն Գրիգորի Նարեկացւոյն և վանից վանականի և Հայոց փիլիսոփայի։ Գրեցաւ ձեռամբ Եզնկացւոյ, և Գրիգորի Խլաթեցւոյ, և իմովս մեղապարտի տխիղծ մատամբս, և յետինս ի բանասիրաց և տրուպս ի բանաստեղծաց, և ի խնդրողաց բանին Յիսուսի հսկող անուանեալ հոմանուն Գրիգորի, և իբօք որոշեալ և արթուն թմրեալ, զոր և աղաչեմ զաստուածասէր պատահօղսդ ընթեռնելով և կամ ընդօրինակելով յիշել ի տէր, և թողութիւն յանցանաց մերոց հայցել, այլև զստացօղ սուրբ կտակիս Կիրակոս կրօնաւորն և զծնօղն յիշել առաջի գենման գառինն, և վերջի զստացօղ մահդասի պատուելի Սահակ աղան,** ի հպիլն յիշեցէք զստացօղսն, հանդերձ իւրայնովք։

* Թերված է եղել մի փոքր բառ, ըստ իմաստի թերևս՝ «ինձ»։

** «Սահակ աղայի» անունից նույն այս ձեռագրով մի այլ հիշատակարան էլ գրված է նախորդ 104ա էջի վրա։ Այնտեղ պատմվում է, որ 1801 թվականին «Վանայ հեծեալն գնաց ի Մահմուտի, ի վերոյ Աւտի աղին, նա փախեաւ գնաց Խոյ, գիւք [իմայ գոյք] նորին աւարի և թախթան արարին»։ Այդ ժամանակ գերվում է նաև սույն ձեռագիրը։ Մի քանի տարի անց՝ 1800 թվականին Հէքիմպաշոնց Մահդասի Սահակ աղան գե-

## 329

## ՇԱՐԱԿՆՈՑ

Х. Кучук-Иоаннесов. Древния армянския рукописи из Крыма*

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ Կաֆայ

Եւ արդ, ես նուաստ ծառայս ի ծառայիցդ ճշմարիտ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի տէր Ստեփանոս՝ սպասաւոր բանի, յետինըս ի բանասիրացս, որ ի գաւառս Վրաց, ծննդեամբ յԱխալցխայոյ, փծուն գրիչ և մոլորեալ հովիւ, ի վաղուց հետէ ցանկայի տեսանել աշխարհն Հոռմոց՝ վանորայքն, արեղայքն և աշխարհականքն։ Եւ արդ, եկեալ մտի յաստուածապահ քաղաքն Կաֆայ, և հանդիպեցայ մեծիմաստ արքեպիսկոպոսին տէր Մատթէոսի՝ աշակերտի մեծի հռետորին Գրիգորի. աւժանդակութեամբ նորա գտի զառաքինի աբեղայն զՔրիստոսատուրն՝ գրիչ, ծաղկող և կազմող, և տուեալ նմա զարդիւնս իմ՝ ցանկացայ այսմ եղանակաւոր տառիս, ի վայելումն անձին իմոյ և ի յիշատակ նախնեացն իմոց։

Եւ արդ, գրեցաւ յաշխարհս Հոռմոց, որ ասի Ղրիմ, ի մեծահռչակ և փառաւոր քաղաքն Կաֆայ, ընդ հովանեաւ սրբոյն Աննայի և այլ բազում սրբոց, ի կաթողիկոսութեանն տէր Պաւղոսի, և յեպիսկոպոսութեան հանճարեղ և իմաստուն հռետորի Մատթէոսի վարդապետի, ի թուականութեանն Հայոց ՊՀԲ. (1423)։

Եւ ես վատնողս տէրունական գանձուց և թագուցողս տաղանդաց տէր Ստեփանոս, յերկիր անկեալ աղաչեմ զսրբամաքուր դասս պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա տեսանելով և օգտիք ի սմանէ կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի սուրբ և ի մաքուր յաղօթս ձեր զստացող սորա զտէր Ստեփանոս, նաև զվաստակաւոր, զիմաստուն և զփառաւոր ուսուցիչն մեր՝ զհանգուցեալ վարդապետն Յակոբ, զարքեպիսկոպոսն տէր Ներսէս, զտէր Յակոբ՝ վանահայր մեծահռչակ ուխտին Հաղբատայ, և զդաստիարակն մեր՝ զՎարդան աբեղայ,զկենակիցն և զհայրն բարերարին իմոյ պարոն Յովհաննէսի որդւոյ պարոն Քուրդամիրի, զմարմնաւոր ծնողսն իմ աղա Կիրակոս և Կուլ-Մէլիք խաթուն, աղա Մուրադ և Շահ-խութլու**, զհայրն իմ պարոն

---

րութիւնից ազատում է, նորոգել է տալիս ձեռագիրը, և հին հիշատակարանի տվյալների օգտագործմամբ կազմում վերը բերված հիշատակարանը։

Այսպիսով, 1423 թվականի մասին տվյալներ ունեցող սույն հիշատակարանը խմբագրված է 1800 թվականին։

* Оттиск из № 47 „Известий" Таврической Ученой Архивной Комиссии, էջ 1—3։ Տպված է ռուսերեն թարգմանությամբ, չունենալով բնագիրը՝ ռուսերենից կրկին անգամ թարգմանում ենք հայերեն, աշխատելով հարազատ մնալ հիշատակարանների լեզվին և ոճին։

** Սրանք, անշուշտ, ստացող տեր Ստեփանոսի հոր և մոր ծնողներն են, այսինքն՝ պապն ու տատը՝ հոր և մոր կողմից։

Մարտիրոս և զմայրն իմ Շնաւոր, զեղբայրն պարոն Յովհաննիսի զպսակեալն վկայական մահուամբ ի Միջագետս. զհօրեղբայրն՝ պարոն Յակոր, զհարսն իմ Նուկզար-խաթունն, զփեսայն պարոն Ղազար, զքոյրն իմ Դեսպինա-խաթունն, զքեռին պարոն Գրիգոր, և զամենայն արեան մերձաւորս և ազգականս իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս, որոց փրրկեսցէ Քրիստոս աստուած ի միւսանգամ գալստեանն իւրում, ամէն։

Նաև... անարժան գրիչս, ծաղկողս և կազմողս՝ զՔրիստոսատուր, և զծնողսն իմ...։





## 330

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երուսաղէմ 1941

Գերութիւնից ազատող՝ խոջա Գորգ

...Եւ յայսմ ամի, որ Թվականն Հայոց էր ՊՀԳ. (1424), վասն ծովացեալ մեղաց մերոց եկն Սքանդարն յերկիրն Ռշտունեաց բազում հեծելօք, և զՎանայ բերդս խաւրեաց, և շատ աւեր էած, զոր սպանմամբ և զոր գերութեամբ և զոր այրելով։ Եւ զեկեղեցիքն կործանեցին, և զգրեանքն գերի վարեցին և բերին ի քաղաքն Սղերտ, զոր և տեսեալ հաւատարիմ և աստուածասէր տանուտէրն խոջա Գորգ, և փեսայն խոջա Բաղշաիշ, և կենակիցն Ղրիմ-խաթուն, և ազատեցին ի գերութենէ զսուրբ աւետարանս...։ Եւ ետուն ի գին նորա ՌՇ. (1500) դր[ամ] մերտնցի, և ետուն կրկին ի սուրբ ուխտն | | |* յիշատակ հոգոյ իւրեանց և ծնողաց իւրեանց Բադեղ ին(՞) և Թավրէզ-Մէլիքին, Մըմրարաքշին և էլխաթունին, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

## 331

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1303

Հետ. ստացող՝ Կիրակոս

ա

44 բ Ի Թվաբերութեանս Հայոց ՊՀԳ. (1424) Սկանդար ղանն զՎանա
բերթն էառ, և տանուտէր առիւծն էր, և բազում քրիստոնէք հալածական
եղան ի տար աշխարհ. նոյնպէս ես՝ Կիրակոսս շատ նեղութեան
հանդիպեցայ վասն գրոցս։ Արդ, աղաչեմ զամէնէսեան, որք ոգաիք ի
սմանէ յիշեցէք ի Քրիստոս աստուած զԿիրակոս ստացող գրոցս, և
45 ա զծնօղսն իմ՝ զհայրն իմ Մարտիրոս, ‖ և զմայրն իմ զԱղութ, և զեղբարքն
իմ, և զվարդապետն իմ զԹումա փիլիսոփա Վարագեցի, և
զծնաւղսն իւր զհայրն Ջաքարա, և զամենայն արեան մերձաւորս իւր,
զի զգրոց գինս նա է տվէր, տացէ նմա տէր աստուած փոխարէն
զանմահ կեանքն, ամէն։

Արդ, և ես՝ Կիրակոս աբեղայ, անձնական օձս եղեռնաին, յերեսս անկեալ աղաչեմ զժրաժան մեղուստ ի հովիւս ծաղ[կ]անց բու-

* Անունը եղծված է։

րասաանաց աստուածային տառից, յիշման արժանի արարէք և ձրի ողորմութիւն Քրիստոսի տուք մեզ, և ձեզ յիշողացդ լիցի մասն ընդ մեզ, ամէն։

Բ

284 բ Ես Կ[իրակոս | | | *գիրս [գնեցի | | | ի Գր[իգո՞ր] արեղայէ, յիշատակ ինձ, և ծնօղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց, և այնոցիկ, որք երախտիք ունին ի վերա մեր, թէ հոգևոր, թէ մարմնաւոր։ Որք հանդիպիք սմա տեսանելով, կամ օրինակելով, կամ ուսանելով, յիշեցէք ի Քրիստոս աստուած | | | * և զծնօղսն իմ, և զհոգևոր հայրն իմ զԹումա փիլիսոփա Վարագեցի, և զծնօղսն իւր....։

Ապա հետ իմ մահուան առ ով որ գիրք[ս լինի, ի]նձ** Ժ. (10) պատարագ առնէ, [կատարողն]** ուրհնեալ եղիցի։

## 332

## ԱՐԾԱՐԱՆ

Երևան 4435

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Սանահին

...Արդ, ականջալուր եղեալ աւետարանական հրամանիս, որ
315 ա ասէ՝ Գանձեցէք || ձեզ գանձ յերկինս, ուր ոչ գող մերձենա և ոչ ցեց
ապականէ, երիցս երանեալ երջանիկս այս, երրակի մասամբ առաքինութեան հոգւոյ բարգաւաճեալ, սպիտակացեալ ալեաւք և լուսափայլեալ հոգւով, ի տիս համբակաց մաքուր կուսութեամբ սնեալ սրբասէր քահանայս Մատթէոս, յԱրարատեան գաւառէ, սնընդեամբ ի բարձրագիտակ յականաւոր և ի գերահռչակ սուրբ ուխտէն Հայոց-Թառոյ, առ որ մեծաւ փափագմամբ ցանկացող եղեալ այսմ աստուածաշունչ կտակի և աւետարանի...։ Եւ ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց, [հաւրն իւրոյ Խաղաղութեն, և փոխեցելոյն ի Քրիստոս Ըռատի, եղբաւր իւրոյ Մելքիսեդեկի]***, գանձ անկողոպտելի, պաշար և առաջնորդ երկնաչու ճանապարհին, և փունջ մի անուշահոտ բազմերանկ ծաղկանց առ ի յընծայս ամենասուրբ երրորդութեանն՝ հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ։
315 բ Արդ, եղև գրաւ գրչու || թեան սորա ի շրջագայութեան հայկազեան տումարի ՊՀԳ. թուի (1424), յամի որում եղև սաստիկ մահտարաժամ, առ ի խրատ մեղաց մերոց։ Ի թագաւորութեանն Վրաց Ալէքսանդրեա, և ի բռնակալութեան տանս Հայոց Թուրքման Սքանդարի, և մեզ թագաւորելոյ՝ Քրիստոսի աստուծոյ, ի հայրապետութեան տեառն Պաւղոսի: Ցաստուածապահ գաւառիս Լաւռոյ, ի յերկ-

* Քերված է։
** Նորոգման ժամանակ այս բառերի վրա թուղթ է փակցվել։
*** Փակագծերի մեջ առնված հատվածը գրված է այլ ձեռագրով։

նահանգէտ, մեծարգոյ և ի գերահռչակ ուխտի Սանահին վերաձայնե-
լոյ, ի դրան մաւր լուսոյ սուրբ Աստուածածնիս և հրաշափառ կա-
թողիկէ Ամենափրկիչ սուրբ տաճարիս և աստուածընկալ սուրբ Նշա-
նացս։ Ձեռամբ ամենամեղ և փցուն գրչացս՝ Ղազար վարդապետի՝
առաջնորդի սուրբ ուխտիս, և նորին հարազատի Յովանէս վարդա-
պետի։ Վասն որո յերես անկեալ աղաչեմք զամենեսեան, որք լու-
սաւորիք սովաւ կարդալով կամ գաղափար առնելով, յիշեցէք ի Քրիս-
տոս զստացաւղ տառիս զարժանապատիւ կուսակրօն քահանայն Մա-
թէոս, հանդերձ ամենայն արեան մերձաւորաւք, և զնորաբողբոջ զեղ-
316 ա բօրորդի նորին զՈւմեկն՝ զվայելող սուրբ աւետարանիս։ ‖ Ընդ նոսին
և զսնընդակից զըստ հոգւոյ հարազատք նորին՝ զսրբասէր քահա-
նայսն զպարոն-տէր Յովանէս, և զմեծ Յովանէս, և զտէր Սարգիս, և
զԳրիգոր, և զայլ միաբանեալսն սիրով ընդ նմա յիշեցէք ի Քրիստոս։

Այլ և զճիռն աւրհնութեան, զիշխանն իշխանաց զպարոն Ջալալի, և զպարոն և ծաղկեալ զաւակաց նոցա։ եղիցի յիշատակ մասին աւրհնութեան։

Դարձեալ, ի ծունկս անկեալ աղաչեմք մայրամած դիմօք զընաւ դասքդ պաշտաւնէից, յիշեցէք ի Քրիստոս զթարմատար գրիչս՝ զՂազար վարդապետ, և զՅովանէս վարդապետ, և զտէր Կիրակոս կազմող, և զանպիտանս յամենայնի զՅոհանէս, որ յոյժ աշխատեցաք ի գիր և ի ծաղիկ և ի համարաբրառսն, և զծնօղսն մեր ամենայն արեան մերձաւորօք, ասելով ի խորոց սրտէ, թէ՝ Տէր աստուած, ողորմեայ նոցա։ Այլ և սղալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի այս էր կար մեր ի ժամ ծերութեան....։

Ցիշատակեալքդ յիշատակարանի աստ զյիշատակողս մի մոռանայք։*

## 333

## ԱՒԵՏԱՐԱՆ

### Երևան 1833

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Կիւրղի վանք

ա

...Արդ, ես՝ նուաստ հողս Գրիգորս, ծոյլս և անարժանս ի կրաւնաւորս, և շնորհիւն աստուծոյ և ողորմութեամբ նորին գրեցի զսուրբ

* Ձեռագրի սկզբից և վերջից կան մեկական թերթ երկաթագիր մագաղաթյա պահպանակներ (ըստ երևույթին Պատարագամատույցից), որոնք հնագրական տվյալներով գրված պետք է լինեն հավանաբար Ժ․ դարում։ Վերջում գտնվող թերթի ա․ էջի վրա կա բարձրորակ մի մանրանկար, որի ներկերը, ցավոք, թափված են, նկարը խունացած ու եղծված է։ Էջի մեջտեղում նկարված է Քրիստոսը նստած ավանակի վրա, հետևից երևում են նրա ուղեկիցների եղծված պատկերները․ առաջից 3 դիմավորողներ, որոնք հանդերձանք են փռում Քրիստոսի ճանապարհին։ Ավանակի մեծությունը, գլխից մինչև պոչ, 15 սմ է, իսկ գլխից մինչև գետին՝ 13 սմ։ Քրիստոսը նստած դիրքով նկարված է 11 սմ բարձրությամբ, լուսապսակը ոսկեգույն է։ Նկարը մեծ հետաքրքրություն է ներկայացնում որպես հայ մանրանկարչության մեզ հասած հնագույն նմուշներից մեկը։

և զկենսունակ աւետարանս ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ և ի զուարճութիւն մանկանց նորին։

391 ա Բայց գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊՀԳ. (1424), ի սուրբ և գերահռչակ անապատս որ կոչի Կիւրղի վանք, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին, և սուրբ Լուսաւորչին, և սուրբ Յովհաննու, և բազմահտւաք սուրբ Նշանացս, որ աստ։

Արդ, աղաչեմ ըզձեզ մանկունք նորոյ Սիոնի, որք հանդիպիք այս սուրբ և աւետաքարոզ աւետարանիս՝ կարդայք, աւգտիք և աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփցուն և զխոշոր գրչակս զԳրիգոր, և յանդգնութեանս իմոյ ոչ մեղադրել, զի յաւժարութիւն և փափագ սրտիս մոռացումն եղև տխմարութեանս....*

Բ

391 բ Ես՝ [պարո՞ն] Ամիրպէկս՝ Շահրիարին որդին, որ տուի Ծ. (50) դրամ ի յաւետարանին գինն՝ իմ հոգւոյս, և իմ հաւրն հոգւոյն, և իմ մաւրն հոգւոյն։ Աստուած մնացական առնէ զիւր տղայքն՝ զԿոնանն և զԾանիպէկն:

Ես՝ պարոն Կարապետս, որ տուի Ծ. (50) դրամ իմ հոգւոյս և իմ [կող]ակցին, և իմ Նը[նջե]ցելոցն, աստուած դասակից և պսակակից առնէ սրբոց մարտիրոսացն, ամէն։

Ես՝ Հիւրմէլիքս, որ տուի իմ հոգւոյս Ծ. (50) դրամ։

[Ես]՝ խոճա Շամհա...՞ր տուի իմ հոգ[ւոյն և ի]մ ծնաւղաց Ծ. (50) դրամ։

Ես՝ Թուխթանիս, որ տուի իմ հոգոյս և իմ ծնաւղացն Խ. (40) դրամ։

Ես՝ Կիրա-խաթունս, որ տուի իմ հոգւոյ և իմ ծնաւղացն Լ. (30) գրամ։

Ես՝ Ալէքսանոսս որ տուի իմ հոգւոյ 'ւ իմ ծնաւղացն [Ծ. գրամ]** աստուած մնացական առնէ զիւր որդիքն։***

Գ

392 բ Արդ, ո՛վ դասք լուսերամ քահանայք և սրբասէր ժողովուրդք, որք հանդիպիք այսմ սուրբ աւետարանիս կարդալով կամ տեսանելով, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր ըզվերջին ստացող սուրբ աւետարանիս·

* Հիշատակարանի շարունակությունը ոտանավոր է, գրիչը փառաբանում է Քրիստոսին ձեռագրի ընդօրինակության ավարտման առթիվ, և այնուհետև գրում.

Այլ յիշատակ սայ եղիցի
Եւ բարեխաւս առ տէր լիցի,
Թէ տէր Յիսուս ողորմեսցի
Ինձ, և նախնեաց, և ուսուցչի
Եւ ամենայն ոք ընթերցի
Եւ կամ գնող սորա լիցի...»։

** «Ծ. դրամ» բառերը գրված են այլ ձեռագրով Նախադասության վերջում։

*** Ըստ հնագրական տվյալների նվիրաբերման այս արձանագրությունը գրված պետք է լինի անմիջապես ձեռագրի գրությունից հետո, թերևս, հենց նույն Գրիգոր գրչի ձեռքով։

*զՊաւղոս սրբասէր քահանայն, որ եռափափաք սրտիւ և տենչմամբ հոգւով գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ յընչից իմոց և արդար վաստակոց յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և զաւակաց իմոց, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։*

*Եւ դարձեալ, յիշեցէք եղբայրն իմ զԹադէոս կուսակրօն կրաւ-ն[աւ]որն։ Յիշեցէք զերիցկինն զՄարթաՆ, որ ետ զերկու ապարան-*

393 ա *ջանն ի գին սուրբ աւետարանիս։ Եւ դարձեալ, յիշեցէք զՄաՆու[redacted]-շակՆ մաՖ, որ ետ ի գին սուրբ աւետարանիս ֆլորի մի։ Եւ դարձեալ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր սուրբ քահանայք, սուրբ* հայրապետք և սուրբ վարդապետք միով ողորմիս ասելով և հայր մեր յերկինս կարդալով, յիշեցէք զծնաւղսն իմ զԻշխաՆՆ, և զմայրն իմ բզխոՆդ, և զեղբայրն իմ զԱլէքսաՆոսՆ, և զորդայն իւր ըզԲէկՆ, և զամենայն արեան մերձաւորսն միաբան, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

*Յիշեցէք յաղաւթս ձեր զՄարիամՆ, որ ետ Ժ. (10) կանգուն կտաւ ի գին սուրբ աւետարանիս։ Դարձեալ յիշեցէք զՄխիթարՆ, որ ետ ի գին սուրբ աւետարանիս ոչխար մի, աստուած ողորմի իրենց հոգւոյն և տայ զերկնից արքայութիւնն, ամէն։***

## 334

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

***Երևան 8173***

ա

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Տաթև

*Աստուածունակ բան ցանկալի,*
*Վարժող մտաց և բաղձալի,*
*Կրթող զմարմին նա և զհոգի,*
*Հանող ի լոյսն անըստու[ե՛ր]ի*
*Որ ոք ըղձմամբ սմա փափաքի,*
*Զի ասէ գանձ անգլխելի,*
*Որ յարաժամ փարթամացի*
340 ա *Յաշխատողէն անհատելի,*
*Որ յաւիտեան ոչ պակասի,*
*Զոր ժողովեալ Գրիգորի,*
*Հայաստանեաց հռետորի,*
*Արի և քաջ մերոյ պետի*
*Եւ Սիսաքեանս նահանգի։*
*Բանքս այս քաղցր, խորխախ մեղուի,*
*Ի քիմս ուղիղ գաւ[ան]ողի,*
*Իսկ սայ սրեալ սուր երկսայրի*

* *Բնագրում՝ սուրք։*
** *Գրված պետք է լինի ԺԵ. դարի կեսերին։*

Ընդդէմ ամէն հերձուածողի,
Որ ազգ ազգ հերձիք ի տէր խօսի,
Նայ և կարկիչ պիղծ բերանի
Եւ բարաքար ի ճակատի՝
Որք հաւանի Քաղկեդոնի
Եւ հայհոյողք են Քրիստոսի։
Իսկ դուք՝ մանկունք սուրբ Սիոնի,
Պայծառամիտք և հրաշալի,
Որք ընթեռնուք զբան կտակի
Եւ զամբարեալս յայս մատենի,
Ինձ ողորմել՛ անարժանի՝
Փցուն գրչի Կարապետի:

Արդ, գրեցաւ սա ի վանքս Տա/թևի, ի դրունս սուրբ Աստուածածնին, և սուրբ առաքելոյն Եւստաթէի, և սուրբ Լուսաւորչին, և առ ոտս մեծ րաբունապետին և տիեզերալոյս վարդապետին Մխիթարա, ի թվականութեանս Հայոց ՊՀԳ. (1424)։

Արդ, որք հանդիպիք այսմ տառիս տեսանելով կամ աւրինակելով, յիշեսջիք սրտի մտօք ի մաքրափայլ աղօթս ձեր զանարժան հոգս՝ զԿարապետ սուտանուն երէցս, և զծնօղսն իմ՝ զՄկրտիչ քահանայն, և զԵղիսաբէթ մայրն իմ, և զայլ ամենայն մերձաւորսն իմ, նաև զՅակոբ կուսակրօն ճգնաւորն և փիլիսոփայն՝ զուսուցիչն իմ և զիրատ[տա]ուն և զերախտաւորն, և զամենայն արեան մերձաւորսն նորա՝ զկենդանիս և զհանգուցեալս ի Քրիստոս։ Այլ և զերախտաւոր հոգևոր եղբայրն իմ զԹումայ Կաֆացի՝ զիմաստուն և զհանճարեղ, սիրող բանի և արժանապատիւ քահանայ Քրիստոսի, որ ամենայն գիտութեամբ և զաւրութեամբ աւգնական և ձեռնտու եղև ինձ, զի աւրինակն շնորհեաց ուրախութեամբ և սրտի մտօք, և շատ աշխատեցաւ ի սմայ, զի զառաջի տետր ցանկին գրեաց, և զամենայն երկաթագիր որ կայ ի գիրքս, ի յառաջմէ մինչև ի վերջքն գրեաց, այլ և զկարմիր և զսև թանաքն ի յամենայն ժամս պատրաստեաց. խնդրեցէք ի սուրբ հոգոյն բոլորով սրտիւ, զի պատրաստ և արժան լիցի երանաւետ ձայնին Քրիստոսի և պատրաստեալ տեզոյ հանգըստեան արդարոցն։ Այլև զկուսակրաւն նորընծայ քահանայն Թորոս կոչեցեալ, որ յոյժ աշխատեցաւ և զթուխտս կոկեաց, որ և մասն և բաժին լիցի նմայ ընդ ամենայն վարգապետաց և քահանայից, որք կարդան զսա կամ օրինակեն, ուսանին և ուսուցանեն աղօթիւք ձերովք։ Այլ և զխոնարհամիտ և զհեզահոգի սարկաւագունքն, զհարազատ եղբայրքն զՍարգիս և զԵղիայ, որ յոյժ աշխատ եղեն ի հաց, ի սպաս և ի ջուր պատրաստելն, ի թոնիր և ի ճրագ վառելն, որ և վառեալ լապտերօք սուրբ առագաստին արժանասցին։

Այլ և զՍարգիս ծերունի միա[յ]նակեացն, որ և նա շատ օգնական եղև և պանդխտակից մեզ, զի ընդ սուրբ ծերոցն դասեսցի։ Եւ աստուած յիշողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի։ Գարձեալ, յերես անկեալ աղաչեմ զսուրբ ընթերցողսդ, զի անմեղադիր լինիք

վատութեան և սխալանաց գրիս, զի կար մեր այսչափ էր, և դուք ասրհ-նիք յաստուծոյ։

Բ

Ծաղկող՝ Թումայ Կաֆացի

Ո՜վ, մանկունք սուրբ Սիոն[ի]
Եւ վայելողք այսմ կտակի,
Զիս, որ ակար եմ ի բարին,
Երագամիտ եմ ի չարին
Զ[Թումայ]* անարժան արե[ղայ], որ զծաղկագրէր** հանեցի, յիշեցէք յաղօթս ձեր, ով սուրբ ընդերձօղք։***

## 335

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղէմ 1635

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Հերմոնի վանք

Գրեցաւ ի թվ. ՊՀԳ. (1424), ձեռամբ անարհեստ Գրիգորի աբեղայիս, ի գաւառս Եղեգեաց, ի վանս Հերմոնի, ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ և սուրբ Սահակայ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տիեզերալոյս հոեաոր Յովհաննէս վարդապետի։

## 336

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5114

Գրիչ՝ Թովմայ
վայր՝ Մեծոփայ վանք

372 ա Փառք... որ ետ զաւրութիւն իմոյ տկարութեանս հասանել ի յաւարտ այսմ լուսափայլ շարագրեալ Շարակնոցիս, զոր եդեալ և հաստատեալ է սուրբ հայրապետացն և վարդապետացն սրբոց, ի պայծառութիւն սրբոց և ի մանկանց սուրբ եկեղեցւոյ։

Արդ, գրեցաւ սա ի յերկիրս Քաջբերունեաց, ի սուրբ մենաստանիս, որ կոչի Մեծոփայ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբայ, և սուրբ վարդապետաց գերեզմանացս, ի թվականութեանս Հայոց ՊՀԳ. (1424), ձեռամբ անարհեստ և սխալագիր գրչի Թովմայ խաբեղայի, ի հայրապետութեան տեառն Պաւղոսի, և ի յառաջն[որդ]ութեան սուրբ ուխտիս հոգիազարդ և երանաշնորհ և

* Անունը ջնջված է, վերականգնում ենք գլխավոր հիշատակարանի տվյալների համաձայն, ըստ որոց Թումայ Կաֆացին, օգնել է գրչին, գրել է «երկաթագիր» տառերը, պատրաստել է թանաքը՝ կարմիր, սև և այլն։

** Բնագրում գրված է հապավումով՝ «զծկգրեր»։

*** Հիշատակագրությունը գրված է 339 բ էջի ներքին լուսանցքում, կարմիր թանաքով։

աշխարհալոյս մեծ րաբունապետիս մերոյ Թովմայ վարդապետի, որ հանապազ խրատ [տ]այ մեզ ի յարուեստ գրչութեանն. Քրիստոս
372 բ աստուած զերկնից արքայութիւնն պարգեւէ ‖ իւրն և իւր ննջեցելոցն, ամէն։

Արդ, ի խնդիր ելեալ այսմ աստուածաշունչ կտակիս երանաշնորհ և որբասէր կրաւնաւորն Ստեփաննոս, որ ետ գրել զսա ի յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւր և բարի ծնաւղաց իւրոց՝ հաւրն Ներսէսին և մաւրն* հանգուցելոյն ի Քրիստոս....

Դարձեալ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ յիշեցէք ի բարին Քրիստոս զվերոյգրեալքսն Ստեփաննոս և զհարազատ եղբայրն իւր զկլեքսան կրաւնաւորն՝ զհանգուցեալն ի Քրիստոս. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւ[իտեանս]։ Այլ և կրկնակի աղաչեմ զամենեսեան, որք պատահիք ի սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք առաջի աստուծոյ զստացող սորա, և զիս զանպիտան գրիչս. խոշորութեան և սխալանացս
373 բ անմեղադիր լե ‖ րուք, զի կար մեր այս է։

337

ՇԱՐԱԿՆՈՑ

Շուշի Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Բերկրի, Եղեվանք

ա

333 բ ...Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս ի թվին Հայոց Մեծաց ՊՀԳ. (1424), ձեռամբ ախմար և սխալագիր խելահեղ անպիտան գրողի՝ սուտանուն կրաւնաւորի Յակոբի, ի խնդրոյ պատուական և որբասէր կրաւնաւորի Յովաննէսի, յիշատակ բարի նմա եղիցի. Ի նոհանգիս Տաբբերունի, որ այժմ Բերկրի կոչի, ի սուրբ և ի հրեշտակաձեմ յանտապատիս Եղեվանք, ընդ հովանեաւ Նախավկայ սուրբ Ստեփանոսի և սրբոց Վարգանացս արեամբ ներկեալ բազմութիւն նշխարացս, ի յառաջնորդութիւն բաբէմիտ Մելիքսէթ վարդապետի...։

Յիշեցէք ...Յովաննէս մաքրամիտ աբեղայն, և ծնաւղաց իւրոց՝ սրբասէր Տերուն** քահանայի, մաւրն*** Արղուն-Մելիքի, և խանկայ իւրոյ Խութլու-Մելիքի, և եղբարց իւրոց Թումա քահանայի՝ կոչեցելոյ ի Քրիստոս, Վարդանի, Ստեփաննոսի և Կիրակոսի, և քուերցն Թան-Մելիքի, Խաթուն-Մելիքի, և Մամախաթունի, Մեսրովպի, Մկրտչի, և Կարապետին, և Մարտիրոսի... նաև զհոգևոր որդեակս իմ՝ զԳրիգոր դպիր, որ բազում աշխատանք ունի ի տուն տալ խաչելոյն(՞)։

* Անվան լրացման համար տեղ է բաց թողնված։
** Մեքենագրված է «Ծերունի», ուղղում ենք՝ «Տերուն»։
*** Մեքենագրված է «հաւրն»։



24—21

Բ

304 ր Ի յութհարիւր Հայոց թվի
ութանասուն և երեքի
Ի նահանգիս Արբերունի,
որ Բերկրի այժմ կոչի,
Ի լեռնայարտ անապատիս,
որ Եղէվանք սա* անուանի,
Ձեռամբ մերով գծագրեցաք,
եղբաւր մերոյ Յովանէսի
Սա յիշատակ սմա լիցի**
և ծնաւղացն իւրոյ բարի։

338

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 8188

Գրիչ՝ Ղազար
Վայր՝ Սըղգայ գիւղ

386 ա Փառք ...որ ետ կարողութիւն տկար մարմնոյ և տարտամ հոգոյ՝ մեղսասէր և բազմավէր անձին Ղազար մեղուցելոյս հասանել յաւարտ այսմ գանձարանի, յամի ՊՀԳ. (1424) թըւականի մերումս տումարի, որ գրեցաւ յանուանի գեաւղս որ կոչի Սըղգայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոց, որ աստ կան հաւաքեալ, ի խնդրոյ ժրաջան և գովելի սրբակրաւն աբեղային Յովանէսի, որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց և յարդար վաստակոց, ի վայելումն անձին իւրոյ աստի կենացս և յետ ատեացս՝ յիշատակ իւրն, և ծնողաց իւրոց՝ հաւրն Կիրակոսին և մաւրն Բաղդատին, [և եղբօրն]
386 բ ‖ Մկր[ա]չին՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և միւս եղբօրն Կիրակոսին, և զհաւր փոխանն իւր Սարգիսն, և մեծ պապն իւր զՓօլատն, և զիւր կենակիցն զԱննայ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն առ Քրիստոս։ Ընդ նոսին և զիս՝ զանյիշելի և բազմավէր հիւանդ զՂազար գրիչս, հանդերձ ծնողօքն և ամենայն ազգականաւքն իմովք՝ կենդանեաւքն և հանգուցելովքն առ Քրիստոս։

Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ աւգտութեամբ յիշեցէք ի մէտս բարիս և ի պատկանաւոր խնդրուածս զստացող սորա զՅովանէսս աբեղայ և զանյարմար գրող սորա զՂազար։ Եւ խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի շատ եղ ու մուտ և զրոյց անաւգուտ մարդկան ձանձրացուցանէին զիս։

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զհանդիպողքդ սորա, որ լաւ [խնա]մով պահէք զգիրքս և առանց շորի | | | հանապազ զմատս
387 ա չթրքո ‖ տեն ու զթուղթն վայրապար շրջմրըջեն, և որ յայս թղթե-

* Մեքենագրված է «Հռավանդ...առ»(՞)։
** Մեքենագրված է «Մալեցի» փխ «սմա լիցի»։

*րոյս կորէ՝ նայ աստուած զնա ի կենաց կորէ, և որ խնամով պահէ և զարդուք՝ նայ աստուած զհոգի նորա զարդարէ և արքայութեանն արժանաւոր առնէ, ե Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։*

*Ո՜վ եղբարք, վկայ է աստուած, որ այս այն գրիչն է, որ յառաջին եմ սկսել, մէկ հետ է կորած, գանձ ու տաղ ու խաղն՝ մէկ գրչի։*

Բ

205 ա *Ո՜հ, ո՜հ, Ամիրի բաւթն եկաւ,*
*Մեզ տրտմութիւն հանդիպեցաւ*
*Ի յայսմ աւուր, որ նա մեռաւ։*

## 339

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Լվովի համալսարան,* Cod. arm. 52,
*ՀԱ. 1937, սյուն. 121—122*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Ամասիա

238 ա *...Արդ, անգ ելեալ աւարտեցաւ սուրբ երգարանս, որ է յարմարեալ սուրբ վարդապետաց, որ կոչի գանձարան և տաղարան, ե է զարդ եկեղեցւոյ և պայծառութիւն քահանայից ե ժողովրդեան, ի վայելումն շնորհազարդ և առաքելաշնորհ արհիեպիսկոպոսին տէր* Մխիթարին՝ *վերադիտողի մայրաքաղաքիս* Ամասիոյ *և իւր վիճակին, ի յիշատակ իւր, ե ծնողաց իւրում՝ հաւրն իւր* Աւետիք *քահանային, և մաւրն իւրոյ* Կիրա-խաթ[ուն]ին, *և երկու քերցն իւրոց, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան... յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զվերոյասացեալ զտէր* Մխիթար *արհիեպիսկոպոսն և զծնողսն իւր, որ ստացաւ զսա ի հալալ արգեան[ց] իւրոց՝ ի վայելումն անձին և հոգևոր զաւակին իւրոյ՝ դեռարոյս սարկ[աւագ]ին* Սիմէոնին...: *Արդ, գրեցաւ սա ի հայրապետութեան Հայոց տեառն տէր* Պաղդաի, *և եպիսկոպոսութեան տէր* Մխիթարի, *ի թվ. Հայոց Մեծաց ՊՀԳ. (1424)...։ Ընդ նմին և զիս՝ զանպիտան գրչակս* զՅոհաննէս *սուտ քահանայն աղաչեմ յիշել ի ձեր սուրբ աղաւթք, ամէն։*

## 340

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երևան 3588*

*Գրիչ՝* Յովհաննէս Սուրբ-Թորոսեցի

132 ա *Տէր աստուած, ողորմեա ստացողի գրոցս* Մարտիրոս *վարդապետի, և ծնողաց, և եղբարց իւրոց, և ամենայն արեան մերձօրաց։ Ընդ նմին և գրողի սորայ՝* Յոհաննէս *աբեղի, և ծնողի իւր, և ամենայն արեան մերձօրի, և որ ասէ ամէն։ Գրեցաւ ձեռամբ յոգնամեղ գրչի* Յոհաննէս *աբեղի* Սուրբ-Թորոսեցոյ, *ի գուռն և ի գերեզմանս սուրբ*

Լուսօրչի, և սուրբ Փրկչիս հովանեաւ, և ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին։ Ի հայրապետութեան Մկրտիչ տրեզի Սէրոբեցոյ, ի վայելումն Մարտիրոս վարդապետի, և յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Գրեցաւ ի Թվականիս ՊՀԳ. (1424), ի յօգոստոս Ը. (8),*

## 341

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 2167

Գրիչ՝ Մկրտիչ Ղրիմեցի
վայր՝ Երուսաղէմ

320 ա . . . Արդ, գրեցաւ Քարոզգիրքս հաւաքեալ, զոր արարեալ է սուրբ և տիեզերալոյս վարդապետին Գրիգորի, որ և եղէ ես անպիտան և անիմաստ. մեղօք լցեալ Մկրտիչ սուտանուն աբեղայս Ղրիմեցի ի յԵրուսաղէմ՝ Փրկչի վանացս փակակալ, և զհարազատ եղբայրն իմ հեզահոգի՝ զՏրատուր աբեղան, և զՄարուգէ փիլիսոփայն, և զԳրիգոր միայնակեցն, և զայլ ամենայն միաբանքս Փրկչիս։ Զի փափաքմամբ սիրով սկսայ և խիստ շտապով գրեցի, զի օրինակն չին ի տալ,** և ձմեռն էր, Թուխթն քամ և Թանաքն աւեր, և յաւժարութիւնս սրտիս մոռանալ ետ զպակասութիւնն. Արդ, աղաչեմ, զի անմեղադիր լինիք տկարութեանս և Թողութիւն մեղաց հայցեցէք որք կարդայք կամ օրինակէք։ Արդ, գրեցաւ սա ի Թվականիս Հայոց ՊՀԳ. (1424), և [ի] սուրբ քաղաքս Երուսաղէմ, և ի Փրկչի վանքս։

Բ

Աղաչեմ զքեզ, վարդապետ, մի մոռանար զիս ի քո պատարագն, աստուծոյ սիրուն համար.***

## 342

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՁՎ 150 (1313), հտ. Ա., էջ 645

Հետ. ստացող՝ Ղազարոս

216 բ Ես պրն. Ղազարոս՝ որդի Ամիր-Գրիգորի, որ առի սուրբ աւետարանըս յիմ հալալ արդեանցս, որ տվի յիր տէրն, յիշատակ ինձ և կենակցին իմոյ Անլի-Խաթունին, և հարազատ որդոյ իմոյ պրն. Թորոսու, և Ամիր-Գրիգորի, և աստուածատուր զաւակին իմոյ, և մաւրն իմոյ Մարիանէի՝ առփոխեցեալն ի Քրիստոս, և հայրն իմ Ամիր-Գրիգորն՝ առփոխեալն ի Քրիստոս։ Որք ընթեռնուք զսուրբ աւետարանս յիշեսջիք ի սուրբ

* Ձեռագրի 10 բ, 35 բ, 123 ա, 157 բ և 167 ա էջերում պահպանվել են Յովաննէս գրչի կողմից գրված հիշատակագրությունները, որոնցում նա խնդրում է հիշել ձեռագրի ստացող Մկրտչին և իրեն։
** Իմա «չէին տալիս»։
*** Գրված է 51 բ—52 ա էջերի ներքին լուսանցքում։

մաքրափայլ յաղաւթս ձեր և զծնաւղսն մեր, և դուք յիշեալ եղիցիք ի միուս անգամ գալըստեանն, ամէն։

Թվին. ՊՀԳ. (1424)․․․։

## 343

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 351—352

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Երուսաղէմ

. . . Արդ, գրեցաւ սուրբ տառս ի թվին Հայոց ՊՀԳ. (1424), ի հայրապետութեան տեառն տէր Պաւղոսի, զոր աջն անեղին և բազուկն հզաւրին անսասանելի և անդրդուելի պահեսցէ զաթոռ հայրապետական, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս Երուսաղէմայ տէր Եսայիա և տէր Մարտիրոսի, և փակակալի՝ Գրիգորիս փիլիսոփայի։ Այլ և աղաչեմ չլինել մեղադիր խոշորութեան և սխալանաց և անարհեստութեան սորա, զի ըստ կարի իմոյ յոյժ աշխատեցայ ի սմա և գրեցի ի ստոյգ և յընտիր աւրինակէ, զի որ օգտիք ի սմանէ կամ կարդայք կամ աւրինակէք, յիշեսջիք... զփծուն գրիչս զՅովհաննէս լոկ անուն աբեղա, և զծնողս իմ, և զամենայն արեան մերձաւորն իմ զհանգուցեալ. ընդ նմին՝ զրաբունի վարդապետքս մեր՝ զհեզահոգի Արիստակէս, և զՄելքիսէթ, և զՅակոբ ճգնաւոր աբեղայ, և զՅովհաննէս վարդապետ աբեղայ, որ ի յորդորելն աւգնական եղէն և ի խազելն, և զկուսակրաւն աբեղայ զՍիմէոն Մելաինցի, որ ծաղկեաց, և զթղթի կոկողսն, և զպատուելի եղբայրս մեր զՆնովք քահանայ, զսիրելի ըստ հոգւոյ եղբայրս մեր զԱմինատինն և զծնողս իւր, և ըստ հոգւոյ մայրերս մեր, որ սպասաւորքն մեզ ըստ պիտոյից մարմնոյ...։

Եւ արդ, ես՝ Յովհաննէս աբեղայս եդի զգիրք յիշատակ ի սուրբ Փրկիչս, յիշատակ ինձ և ամենայն արեան մերձաւորաց իմոց։ Եւ զդէմս իմ յերկիր եգեալ պաղատիմ սպասաւորաց սուրբ Փրկչի լուսազարդ տաճարիս, և սուրբ կափարիչ վիմիս, և սուրբ բանտիս, որ զգիրքս լաւ պահէք և խնամով պահէք և դուք այլ արժանաւորիք մասին ժառանգութեան սրբոցն ի լոյս...։

## 344

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 2077

Գրիչ՝ Յոհանէս

313 ա Եւ ի ներգևեալ և ի չանարգի (՞) անձնէ իմէ՝ Յոհանիսէ խնդրողէ բանի, որ ետ կարողութիւն հասանել գործաւորութեամբ ի յաւարտ սորին։ Արդ, յիշման արժանի արարէք զանպիտանս, աղաչեմ, նաև զծնօղսն մեր հոգևոր և մարմնաւոր։ Գրեցաւ ի Թուականիս ՊՃՀԳ. (1424)։





## 345

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5542*

*Գրիչ՝* Թումայ Մինասենց
*վայր՝* Աղթամար

ա

238բ *... Եւ արդ, ես ունայնս և թափուրս յամենայն բարեաց, մե-*
*ղաւոր և անարժան ծառայս ծառայից աստուծոյ՝ սուտանուն արեղա*
Թումայ*...կատարեցի զսա յաստուածախնամ կղզիս* Աղթամար, *ընդ*
*հովանեաւ գերահռչակ սուրբ Խաչի, և սուրբ Աստուածածնի, և այլ*
*բազմահաւաք սրբոցս, որ աստ կան բազմեալ, ի հայրապետութեան*
*տեառն* Դաւթի, *և ի թվականութեան հայկազեանս տումարի յՊՀԴ.*
*(1425), ի յամենեւին չար և ի դառն և ի նեղութեան ժամանակի,*
*յորում ամի բոլոր աշխարհս Հայոց ի յառ և ի յաւարի, ի սուր և ի*
*գերութիւն մատնեցաւ վասն ծովացեալ մեղաց իմոց, ի ձեռս անաւ-*
*րէն և անիծեալ ազգին նետողաց, վասն զի այս բոլոր տարի մ'է, որ*
239ա *չար բռնաւորն ամիրզա* Սքանդարն՝ *տէրն* Թավրիզոյ՝ ‖ *ազգաւ թուրք,*
*զամիրապետն* Ոստան *քաղաքի՝ զսուլտան* Ահմատն *ըմբռնեալ է և*
*երկաթի կապանաւք ի յ*Ալընջոյ *բերդն ի բանտի է եդեալ, խընդ-*
*րելով ի նմանէ զանառիկ ամրոցս նորա. և զերկիրս Հայոց՝ զ*Աղբակ,
*և զ*Քարքաճ, *և զ*Ոստանայ *երկիրս, մինչ ի* Բաղէշ *անմարդաբնակ արա-*
*րեալ։ Եւ բնակիչք աշխարհիս մերկ և բոկ և սովալըլուկ տարաշ-*
*խարհիկ եղեալ, և ոմանք յաստուածախնամ կղզիս անկեալ ա[պաւին]ե-*
*լով յաստուած և յամենայաղթ զաւրութիւն սուրբ Խաչիս ազատե-*
*ցան ի գերութենէ չար բռնաւորին։*
*Դարձեալ պատմեցից և այլ ևս աղէտ և կըսկիծ արժանի արտա-*
*սուաց, որ եկն եհաս ազգիս քրիստոնէից։ Վասն զի* Աւթման-բէկն՝
*տէրն* Ամթայ, *ջատագով եղեալ մերոյ իշխանացս, և եկեալ բազում*
*զաւրաւք, և զերկիրն* Արճիշոյ *և զ*Արծկոյ *բնաջինջ գերի վարեալ և*
239բ *սրոյ ճարակ արարեալ, ի տաւնի գա ‖ լըստեան | | | աստուծոյ։*
*Աւա՜ղ ...դառնութեան ժամանակիս, որ մեք պատահեցաք, վասն զի*
*աշխարհս մեր աւերակ, և սեղանք և դրունք եկեղեցեաց մերոց սա-*
*պալեալ, և սպասք սրբութեանցն գերի վարեալ, և աւրհներգութիւնքն*
*աստուծոյ լռեալ ի բոլոր երկիրս մեր, միայն* խոյակապ *սուրբ Խաչս*
*է* Ցուցեալ *իբր զհզաւր թագաւոր՝ անսասան և անպարտելի, որ և աջ*

աներին աստուծոյ հրեղէն պարիսպ եղիցի սմա՝ պահելով առանց փորձանաց ի պարծանս ամենայն քրիստոնէից։

Արդ, ի յայսմ դառնութեան ժամանակի գծագրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ անարհեստ գրչի Թումայի, վասն որոյ աղաչեմ զհանդիպողսդ ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք ինձ՝ մեղուցելոյս Թումայի, և ծնաւղացն իմոց՝ Սիմէոնի և Արղունի, և հաւրեղբաւրորդւոյն իմոյ Մկրտիչ կրաւնաւորի՝ ծաղկողի սորին, և ծնաւղաց նորին, և քուերցն իմոց, և ազգայնոցն ամենայնի։ Այլ և այնո || ցիկ, որ ձե-
240 ա ռընտու և աւգնական եղեն մեզ կոկելով զնիւթ սորա, և որք յանձնեցին զինքեանս ի մեզ յիշատակել յաղաւթս՝ կենդանեացն և հանգուցելոցն։ Որոց տէր աստուած՝ տուողն բարեաց ամենեցուն, առհասարակ, պարգևեսցէ զանսպառ ողորմութիւնն իւր և զերկնից արքայութիւնն՝ ստացողի սորին Հաթունին*, և ծնաւղաց նորին՝ Յակոբին և Գուլ-Մէլէքին, և մեղաւոր Թումա գրչիս, և ծնաւղացն իմոց՝ ազգայնաւքն [հանդերձ]։ Եւ որ յիշէ զմեզ սրտի մտաւք և աստուած-ողորմի ասասցէ մեզ, և ինքն արժանասցի ողորմութեանն աստուծոյ յաւրհնութեանն պահու, ամէն, ամէն։

Այլ և զնորաբողբոջ տղայն զՀէրապեա սարկաւագն՝ զքուերորդին իմ պահեսցէ Քրիստոս աստուած յամենայն արկածից չարին և ողորմեսցի սմին, ամէն։

Ապա վա՜յ ամենայն աշխարհովս ի դառնութեան ժամանակիս, զի հէրու զմահն ու կըսկիծն տեսաք և այս տարի զգերեացն...։

Բ

Աւա՜ղ, աւա՜ղ և հազար աւա՜ղ դառնութեանս, որ ի յայսմ աւուր աշխարհս մեր ի յաւար և ի գերութիւն մատնեցաւ զաւրացն Թուրքաց, ի յամսեանն տրէ ի Ի. (20), ի տաւնի սուրբ Լուսաւորչի։ Ով պատահէ գրոյս մեզ աստուած ողորմի ասէ։**

## 346

## ՄԱՇՏՈՑ

Ն. Ջուղա 429. Մ. Տ. Մ.

Վայր՝ Սխգայոյ վանք, մերձ ի Վան

Քրիստոս աստուած ... ողորմեա բարեպաշտ տանուտրոջն Յովանէսին և ծնողաց նորին՝ Որդորուն և Յաւմար-Մէլիքին, և որդոյն Ատոմուն,

* 240 բ—241 ա էջերում Հաթունի և նրա մերձավորների մասին կան սակավարժեք մանրամասնություններ. հայտնվում է, որ նա «յետ մահուան առն իւրոյ Առաքելին ստացաւ զսուրբ աւետարանս»։ Ձեռագրում կան նաև գրչի և հետագա ստացողների այլ հիշատակագրություններ, որոնցից որոշ հետաքրքրություն է ներկայացնում հետագա ստացող Կարապետի հիշատակագրության սորև բերվող հատվածը. «Ես՝ Կարապետս գնեցի զաւետարանս և տուի Կիրակոս աբեղայի, յիշատակ մեզ և մեր ծնողացն...։ Աստուած ողորմի Մկրտչին, Գաւրկէն, որ երեք թանկա երետ, որ կոստերն զուգեցին...»։ (էջ 181 ա)։
** Գրված է 236 ա—237 ա էջերի ներքին լուսանցքներում, մանր տառերով։

որ զսուրբ գիրքս թափեաց ի յանօրինաց, յորժամ էառ Իսկանդար ամիրզային զՎանն, և դարձոյց ի դուռն Մխգայոյ վանաց սուրբ Աստուածածնին։ Եւ դուք՝ միաբանք սուրբ ուխտին, յամէն տարի երկու ժամ առնէք անխափան. ի թվ. ՊՀԴ. (1425)։

## 347

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Երևան 4041

Գերութիւնից ազատող՝ Խոջայ Աստուածատուր

253 ա Ես խօջայ Աստուածատուրս՝ որդի խօջայ Ամիրմուլք մահդասուն գնեցի զՆարեկացիս ի գերութենէ Թուրքմանին, յայն տարին որ զՎանայ բերդն առին ի քրդուն Սքանդար ամիրզէն, ի ՊՀԴ. (1425) ամին։ Եւ շատ աւերութիւն արարին, և զսրբութիւնսն զամէն գերի առին, և հանդիպեցաւ այս Նարեկացիս, որ ի Վերի Վարագայ բերին, և գնեցի զսա ի հալալ արդեանց իմոց և ետու ի սուրբ ուխտն Վերի Վարագ, ուր եղեալն էր, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ մահդասի Ամիրմլքին և Մաըր-Մէլեքին, և կենակցին իմոյ Խաթուն-Մէլեքին, և ծաղկեալ զաւակացն իմոց Միրաքին, Կարապետին և Յովանեսին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, ամէն, եղիցի. և զեղբայրն իմ զԱմիրումէան, և զփեսայն իմ զէւատաշայն յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ յերկնային արքայութիւնն, ամէն, եղիցի։

## 348

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Փիրզ. Նոտ. 77—78 և Նշխարք (№ 4515), էջ 128, Բաղէշ

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Հիզան

...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ անիմաստ գրչի Կարապետի, ի դառն և ի վշտացեալ ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց անօրէն Իսքանդարն ըմբոնեաց զամիրայն մեր զսուլթան Անմառն, և եկեալ բազում զօրօք ի վերայ մեր, և յիսուն օր խսարեաց զանառիկ դղեակս Վան, և ոչ կարաց առնուլ զսա. և սուտ երդմամբ գնացեալ ի Դարէժ, և ի գարնանային աւուրսն առաքեաց զզօրս և գերեաց և աւերեաց զերկիրն Ըռշտունեաց: Եւ մեր փախստական եղեալ՝ եկաք ի Հիզան, և եղև կատարումն սորա աստ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Սարգսի զօրավարին, և Գէորգայ քաջ նահատակի, ի թուականիս Հայոց ՊՀԴ. (1425)։ Յիշեսջիք...ստացող սուրբ աւետարանիս զՍարգիս, որ գնեաց զսուրբ աւետարանս և ետ...ի դուռն Ալանդոյ սուրբ Նշանին, ձեռամբ Թադէոս կրօնաւորին։

## 349

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նոտ. 78—79, Վան, Հոգոց վանք*

*Հետ. ստացող՝* Կարապետ
*վայր՝* Արգելան վանք

*Զվերջին ստացող սուրբ աւետարանիս զԿարապետ կրօնաւորն, նաև զՄկրտիչ քահանայն, որ խնամ տարաւ սուրբ աւետարանիս՝ ի* Վանայ *բերդն ի* Սքանտարի *հասարն [յիշեցէք]...։*

*Գրեցաւ ի Թվ. ՊՀԴ. (1425), ի վանս* Արգելան*։ Զմեղաւոր վարդապետս* Մկրտիչ *յիշել աղաչեմ։*

## 350

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 4876*

*Գրիչ՝* Յակոբ*
*վայր՝* Խառաբաստի վանք

519 ր *Եւ ի յամի Թըւականիս Հայոց ՊՀԴ. (1425)։ Եւ եկ[ի]ն ի վերա երկրին արիւնակեր գազանքն՝ զօրքն* Օրմանին *և հեծեալքն* Ըռօշկանին, *և առ և գերի արարին զերկիրս՝ զորս և կարացին, և շատոց արիւն հեղին։ Ընդ որս և զմեծ րաբունապետն մեր և զլուսաւորիչն հոգոց և մարմնոց մերոց նահատակեցին ի վանքն* Ցիպնա, *յաւուր պենդէկոստէի կիրակէին, և անբուժելի կսկիծ հասուցին ամենայն երկրի, ևս առաւել մեղուցեալ անձին գծողի և խաւարեալ աչաց* Յակոբի:

*Որ էր ինձ հայր գովելի***
*Եւ պարծանաց րաբունի՝*
*Արեանառու մեր ազգի,*
*Եւ հօրեղբայր գծողի։*

*Լալով գոչեմ ողբալի*
*Կոծ և եղուկ իմ սրտի,*
*Զի ջահն մեծ պանծալի*
*Այսօր շիջաւ ի յերկրի։*

*Եղուկ անձինս եղկելի,*
*Վայ իմ աչացս, որ տեսի*
*Զմեծ վարդապետն իմ բարի*
*Ներկեալ արեամբ ի յերկրի։****

---

* *Ձեռագիրն ընդօրինակված է 1477 թվականին Յովսէփ և Գրիգոր գրիչների կողմից։ Յակոբ գրչի այս հիշատակարանը, հավանաբար, գրիչներն ընդօրինակել են գաղափար օրինակից*

** *Խոսքը Գրիգոր Խլաթեցու մասին է։*

*** *Շարունակությամբ գրիչ Յակոբը, որն եղել է Առաքել Բաղիշեցու նոտարը (տես Հ. Աճառյան, «Հայոց անձնանունների բառարան», հա. Գ, էջ 503—504), մեջ է բերում*

*Գորովագութ ձայն կականի*
*Աղաղակեմ արտասուալի,*
*Շարժեմ ի կոծ զազգս Արամի,*
*ԶԱսքանազեան Հայկայ տոհմի։*

*Բարունք համայն, որ յաշխարհի,*
*Լուցէք զՀայոցս եկեղեցի,*
*Որ մերկացաւ յանկարծակի*
*Զլոյսն պայծառ յաշտանակի։*

*Ինձ վայ՚ւ եղուկ՝ անմար գրչի,*
*Յակոբ անուն՝ գծող բանի,*
*Հոգոյ ծնունդ հօրն մեծի՝*
*Քաջ րաբունոյն իմ Գրիգորի:*

*Գանձ մերկացայ ես՝ եղկելի,*
*Որ արտասուաց եմ արժանի,*
*Զրաբունապետն իմ բաղձալի,*
*Որ և Գրիգոր անուն կոչի։*

*Ոչ հանդուրժեմ այսմ աղետի,*
*Այլ յօրինեմ կոծ սխրալի,*
*Քանզի տեսի զհայրն բարի*
*Ներկեալ արեամբ այսօր յերկրի։*

*Բապաղ ոգիս մեղօք ի լի,*
*Զունիմ իմաստ բանականի,*
*Զինչ ասիցեմ ես արժանի*
*Մեծ րաբունոյն իմ Գրիգորի:*

*Վարդապետաց էր ցանկալի*
*Խրատիչ քանոն ամենայնի,*
*Վարդ անթառամ յեկեղեցի*
*Հոտով լըցեալ զտունըս Արամի։*

*Արթուն անունն այն ըղձալի*
*Գրիգորիոսն երանելի,*
*Արեգական նման յերկրի*
*Լուսաւորէր զեկեղեցի։*

*Բամից Հայոց, որ յաշխարհի,*
*Լուսաւորիչ էր նա յայտնի,*
*Մեղուցելոց մարդկան ազգի՝*
*Մաքրիչ մեղաց ամենայնի։*

---

*Բաղիշեցու հորինած ողբը Գրիգոր Խլաթեցու նահատակության առթիվ։ «Հայոց նոր վկաների» հրատարակիչները, սխալմամբ, նույնացրել են այս Յակոբին նշանավոր տոմարագետ Յակոբ Ղրիմեցու հետ (տես «Հայոց նոր վկաները», գիտական հրատարակություն, 1903, էջ 274)։*

Դրախտ բազմազան պտղով ի լի,
Անուշահամ անծախելի,
Սուրբ վարդապետն հոգելի
Գրիգորիոս, որդին Տերի:

Անձամբ առնէր զգործս բարի,
Նման փրկչին տեառն Յիսուսի,
Եւ քարոզէր ամենայնի,
Խափանեցաւ այսօր յերկրի։

Պատուէր զվկայսն Քրիստոսի,
Եւ յօրինէր ճառ ցանկալի,
Վկայասէրն բաղձալի,
Անւանակից նախնոյն մեծի։

Եհաս անանցն պսակի,
Որում ցանկայր տենչմամբ սրտի,
Բարունապետըն հրաշալի՝
Սպանեալ ձեռամբ անօրինի։

Տանըս Հայոց՝ գերեալ ազգի,
Էած կըսկիծ անբերելի
Ամենագով հայրն բարի
Գրիգորիոսն Բզնունի:

Ի նեղութեան ժամանակի
Էր օգնական ամենայնի,
Միշտ կերակրող էր աղքատի,
Զգեցուցանող մարմնոյ մերկի։

Նման նախնոյն այն Ներսէսի՝
Եղբօր մեծին տէր Գրիգորի,
Նոր զարգարեաց զեկեղեցի
Դանձ և տաղիւ բազմազունի։

Յոյժ քաղցրըրախօս էր աղքատի,
Հեզ և խոնարհ յամենայնի,
Ոչ էր սիրող նա արծաթի,
Ունէր զպատուէրն Քրիստոսի։

Արթուն հըսկօղ անձանձրալի,
Պատուող տօնիցն տէրունի;
Հանգոյն Մաշտոցին Մեսրոպի
Եւ Գրիգորին Լուսաւորչի։

Ռետին բաշխէր մարդկան ազգի,
Զբանս գրոց պատուիրանի,
Մատամբ իւրով անխոնջելի
Դպիր վերին տեառն արքայի։

Այսօր եթող զմեզ որբ յերկրի
Ամենագութ հայրն բարի,
Հաւասարեալ երկնից գնդի,
Ժառանգ անանցն պսակի։

520 բ Քուրձ ըզ || գեցիր եկեղեցի,
Այրի եղեր յանկարծակի,
Փեսայն բարձաւ քո ի միջի,
Ցառագաստէ քում խորանի։

Եկեալ հասին վաղվաղակի
Ազգըն մարաց, որ քուրթ կոչի,
Սպանին զհայրն ցանկալի
Ի Ցիպնավանքն երեւելի։

Լուսոյ ծնունդք աւագանի
Դուռն ողբացէք զյանցս աղետի,
Խաւարեցաւ լոյսն տրփենի,
Զահն շիջաւ Նոր Սիոնի։

Էհաս ինձ սուգ անբուժելի,
Լալով գոչեմ անլռելի
Զի խրատատուն իմ ըղձալի
Այսօր թողեալ զիս ամայի։

Նոր ձայն երգեմ ի յատենի,
Ներբողական ի չափ տաղի,
Առ քեզ խօսիմ հայր բաբունի,
Միթէ հոգիս մխիթարի։

Ո՜վ ցանկալիդ ամենայնի,
Բաբունապետ Հայոց ազգի,
Մտօք մաքուր, պայծառ հոգի,
Մարթնովղ կոյս 'ւ առաքինի,

Բոտեալ սիրոյն Քրիստոսի,
Հովիւըդ քաջ նորին հօտի,
Վանիչ գայլոյն իմանալի
Եւ արածող ի գալարի։

Իմաստութիւնն հօր յերկրի
Զքեզ զարդարեաց իւրըն տեղի՝
Ցոբս և հոգով հայրն հանգչի,
Երրորդութիւնն անտրոհելի։

Նաւ ի ծովու այսմ աշխարհի
Ուռկան մեծին այն, որ | | | ի,
Որ որսացէր զծնունդս ախտի
Հանէր ի կեանս, որ մահ չունի։

Աղբիւր Ջրոյն այն կենդանի
 Բղխեալ հոգւովս Քրիստոսի,
 Որ ծարաւեալ մարդկան ազգի
 Միշտ արբուցէր անսպառելի.

Շնորհազարդ տանն Յիսուսի
 Դու գանձապետ իմաստիւք լի,
 Միշտ բաշխէիր, յեկեղեցի
 Զգանձ հին և նոր կտակարանի,

Ամենիմաստ գլուխ բարի,
 Խոնարհեցար ի տապանի,
 Ակն պայծառ առատալի
 Ծածկեալ հողով այսօր յերկրի։

Կարօտելոցն աղաղակի
 Ունկդ՝ որ լըսօղ էր ամենի,
 Խափանեցար յանկարծակի,
 Թողեր մեզ սուգ անբուժելի։

Եւ երգարանդ հոգոյն մեծի,
 Որ միշտ հընչէր յեկեղեցի,
 Խըցեալ սըբով անօրինի,
 Որ խօսակից էր աղքատի։

Բամից որբոց և տնանկի
 Աջդ, որ շնորհէր տուրս ամէնի՝
 Կապեալ եգաւ իսկ ի շիրմի,
 Որ միշտ գրէր զբանս տէրունի։

Տարակուսիմ յամենայնի,
 Քանզի չունիմ իմաստ բանի
 Զքեզ ներբողել ըստ արժանի,
 Երախտաւոր հայր հոգելի։

Էին տացուք փառք ի յերկրի
 Հօր և հոգւոյն ընդ միածնի
 Որ դասակցեաց Ճրաբուն սեռի
 Այսօր զքեզ տէր բաբունի։*

Արդ, աղաչեմ զամենեսան, որք հանդիպիք այսմ տառի տեսու-
թեամբ կամ ածդտուԹեամբ իւիք, զվերոյասացեալըս | | |

* Ոտանավոր ողբի քառյակների սկզբնատառերով հոգվում են՝ «Գրիգոր վարդապե-
տին յԱռաքելէ նորին աշակերտէ» բառերը։

## 351

### ԳԱՆՁ ԹԷՈԴՈՐՈՍԻ ՎԿԱՅԻ

Երևան 8908

3ա Գանձս գրեցաւ ըստ պատշաճին
Թէոդորոս քաջ վկային.
Երգեաց ըզսայ քաջ րաբունին
Տէր Առաքել Բաղիշեցին
Վասն խնդրոյ իւր վարպետին՝
Ծերենց Գրիգոր վարդապետին։*

Ասա թէ ձայն ունիս յոճին
Հանց, որ ժողովքըդ հաւանին.
Եթէ հրմուտ չես դու սըմին՝
Նա մի ձըգտիր յանհասելին,
Որ չի լըսիս բանս գըժուարին,
Հանց, որ գըժար գայ քո սըրտին։

## 352

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑՒՈՅ ԵՒ ԺՈՂՈՎԱԾՈՒ ԱՅԼՈՑ ԳՐՈՑ

Երևան 1114

ա

Գրիչ՝ Սանեփանոս
վայր՝ Զագավանք

102բ Փառք ... որ ետ հասանել ինձ՝ յախմար և սխալագիր գրչիս Սանեփանոս անուամբ և ձևով միայն կրօնաւոր կոչեցելոյ յաւարտ տումարական մեկնութեանս, ի յուրախութիւն ուսումնասիրաց անձանց և ի պահել անսխալ զլրումն տօնից տէրունականաց՝ զատիկն և զայլն։

Արդ, գրեցաւ սա յաստուածաբնակ սուրբ ուխտս, որ կոչի Զագավանք, ընդ հովանեաւ սուրբ Գետարգելիս, և սուրբ Սարգսիս՝ Կուրանց կոչեցեալ, և սուրբ աջոյս Կիրակոսի և այլ սրբոցս, որք կան հաւաքեալ։ Գրեցաւ գիրքս ի թվականիս Հայոց ՊՀԴ. (1425), ի խնդրոյ հօր վանիցս Գաւթի և նորին աշակերտի Սարգիսի կրօնաւորի և փակակալի, որ ստացան զսայ յիշատակ իւրեանց և ծնօղաց իւրեանց, զի վասն բազում պատճառի ստանայ մարդ զգիրս և տայ գրել։ զի մեք ապականացու և մահկանացու գոլով ոչ նոյնպէս կանք, Յամք, որ-

* Նախորդ հիշատակարանի ավյալով Գրիգոր Ծերենցը նահատակվել է 1425 թվականի մայիսին, հետևաբար Թէոդորոս վկայի մասին իր գանձը Առաքել Բաղիշեցին գրած պետք է լինի մինչ այդ։

պէս ասէ մարգարէն՝ Պանդուխտ և անցաւոր եմք, որպէս ամենայն հարքն մեր, ստանամք զգիրքս, զի անապական կենացն արժանի լիցուք շնորհօքն Քրիստոսի, զի ասէ մարգարէն՝ Երանի, որ ունիցի զա-
103 ա ւակ ի Սիոն և ընդան || եակ իցեն նորա յԵրուսաղէմ։

Արդ, գրեցաւ յառաջնորդութեան* ազգիս Հայոց տեառն Պաւղոսի, և յարհիեպիսկոպոսութեան մեծ նահանգիս Արարադեան տէր Յոհանէսի՝ նորընծայ ընդունակ նոր շնորհացն Քրիստոսի, զի է ընդունող գեր ի վերոյ տուողէն անընդմէջաբար և բաշխող կարօտելոց անձանց միջնորդութեամբ, զոր տէր աստուած պահեսցէ երկար ամօք յամենայն փորձութենէ՝ հարազատ եղբօրօքն իւրովք, ամէն։ Եւ ի բռնակալութեան Սքանդարին, որդոյ Ուսուփին Թուրքմեան, երկրորդ Աշրաֆ ազգիս Հայոց և աւերող եկեղեցեաց, և ի պարոնութեան երկրիս Փիր-Ղաիպի և Աւդուլի՝ թոռանց Սահաթի։ Արդ, աղաչեմ, որք հանդիպիք յայսմ տառիս ուսանելով, կամ ուսուցանելով, կամ ընդօրինակելով յիշեցէք զվերոյգրեալդ՝ զտէր Յոհանէս, և զԴաւիթ, զՍարգիս փակակալ, և զայլ մի[ա]բանք տեղոյս, զի բազում երախտաւորք են մեզ ի պէտս հոգևորի և մարմնաւորի, զոր ոչ կարեմ ընդ գրով արկանել զերախտիս սոցա։ Ընդ նմին և զիս՝ զանարժանս, զհեղգս ի բարին և զ<գ>արիացեալս ի չարն՝ արժանի առնէք յիշելոյ միով աստուած-ողորմայիւ...։

Բ

Ստացող՝ Սարգիս

116 բ Զստացաւղ սուրբ գրոցս զՍարգիս մեռեալ ոգով աղաչեմ յիշել ի տէր հոգևոր և մարմնաւոր ծնողաւք մերովք։ Այլ և զկապողք սորա զԹոմա և զՆերսէս յիշեցէք ի Քրիստոս։

Գ

Գրիչ՝ Մաթէոս**

Զմեղուցեալ գրիչ զՄաթէոս աղաչեմ յիշել ի տէր։ Թվ. ՊՀԸ. (1429)։***

* Բառի վերևում, նույն ձեռագրով, գրված է՝ «ի հայրապետութեան», որ, անշուշտ, ավելի ճիշտ է։

** Մաթէոսը ձեռագրի մի փոքր մասի (էջ 111 ա—116 բ) գրիչն է։

*** Ձեռագրի կիսախորանները, լուսանցազարդերը և գլխատառերը նկարված են գրությունից շատ հետո՝ 1577 թվականին, այդ մասին ծաղկողը 27 բ էջում թողել է համառոտ մի հիշատակագրություն։ «Ծաղկելոյ ժամանակս թիւն Հայոց Ռ. ու ԻԶ. (1577) էր, ժամանակս ձըմըռն էր, Թողոյթիւն արէք, խիստ անբախտ ժամանակ էր»։

Ձեռագրի 11 ա էջում կա նաև անթվական մի հիշատակարան գրված հետագա ստացողներից մեկի՝ Գրիգոր Բաղիշեցու կողմից. «Արդ՝ ես մեղաւք լցեալ ի ծնունդս եկեղեցոյ պիտակ անուն Գրիգոր վարդապետ Բաղիշեցի, ըստացայ զգիրքս զայս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ Ամիրաղին [և] Հռիփսիմին, և եղբաւրն իմոյ Պալասարին, քւերն իմոյ Եփրոսինեին, և մեծ պապուն իմոյ՝ Էգիլցային: Արդ, որք հանդիպիք սմա տեսանելով յիշեցէք զիս՝ զԳրիգոր վարդապետս, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ»։

Ըստ հնագրական տվյալների հիշատակարանը գրված պետք է լինի կամ ԺԵ. դարի վերջերին, և կամ էլ՝ ԺԶ. դարի ընթացքում։

## 353

## ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱՌԳԻՐՔ

**Երևան 530**

Գրիչ՝ Ստեփաննոս Վարագեցի
վայր՝ Զագավանք

116 բ Փառք... որ ետ զաւրութիւն և կարողութիւն տկար և մեղա-
պարտ և անարժան ծառայիս իւրոյ հասանել ի կատարումն սակաւ և
փոքր քաղուածոյս գրոցն, որ կոչի Քերական։
Արդ, գրեցաւ սայ ի սուրբ ուխտս, որ կոչի Զագավանք, ընդ հո-
վանեաւ սուրբ Նշանիս, որ կոչի Գետարգել, և սուրբ եկեղեցեացս, որ
կոչի[ն] սուրբ Գէորգ և սուրբ Կարապետ, և սուրբ զաւրավարիս և մեծ
վկայիս և նահատ[ակ]իս Քրիստոսի՝ սրբոյս Սարգսի և որդոյ նորա
սուրբ Մարտիրոսի։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք սմա կարդալով կամ
աւրինակելով յիշեսցիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զեր-
ջանիկ բաբունապետն զտէր Առաքել կոչեցեալ՝ զհանգուցեալն ի Քրիս-
տոս, որ բազում աշխատութեամբ արար զքաղուածոյս Քերականիս յի-
շատակ իւրն և ծնաւղաց իւրոց, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։
Այլ և յիշեսցիք ի սուրբ յաղաւթս ձեր զկենդանի նահատակն՝ զՍար-
գիս վարդապետն՝ զառաջնորդ սուրբ ուխտիս, զբազմերախտ հայրն
117 ա մեր, որ յետ աստուծոյ նախախնամութեանն բազում կե || րպիւ նա-
խախնամէ զմեզ հոգևոր և մարմնաւոր բարութեամբ, այլ և զինչ աւ-
րինակ և խնդրեմք՝ աննախանձաբար պարգևէ մեզ, նոյնպէս և զայս
աւրինակս շնորհեաց։ Վասն որոյ խնդրեմք յաստուծոյ՝ յամենառատ
պարգևողէն, զի տացէ նմայ յիւր առատ պարգևացն զհոգևորն և զմարմ-
նաւորն յայսմ աշխարհիս ընդ երկայն աւուրս, և յետ աստեացս զան-
ճառական պարգևքն և զմնացական բարիքն պարգևեսցէ նմայ, և
ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց, ամէն։ Եւ յայսմ
կենցաղումս փրկեսցէ զնայ յերևելի և յաներևոյթ թշնամոյն, և ի
հոգևոր և ի մարմնաւոր որոգայթից զերծուսցէ զնայ, և պահեսցէ զնայ
խաղաղական կենաւք պարագայց ամաւք, և յետ աստեացս ելանե-
ոյ* զանսպառ բարիքն ժառանգել տայ նմայ։
Այլ և յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանար-
ժան և զանպիտան ծառայս աստուծոյ զՍտեփաննոս Վարագեցիս**
զգրոց աշակերտս, զմեղաւորս և զ[յ]անցաւորս ի յամենայնի՝ զստա-
117 բ ցող և զփցուն գրիչս... || և զծնաւղսն իմ, և զեղբարսն, և զամենայն
արեան մերձաւորսն և զերախտաւորսն մեր՝ զհոգևորս և զմարմնաւորս...։

* Բնագրում՝ «ելանեանելոյս»։

** Նախորդ հիշատակարանի գրիչն է, ըստ այդմ անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր։

## 354

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

«Միսական», էջ 326*

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Ագուլիս

[Գրեցաւ] յեպիսկոպոսութեան տեառն Տէրունականի, զոր գրիչն գովութեամբ կոչէ սուրբ և երանեալ, զի ի նեղ և յետին ժամանակիս առաջնորդ և լուսաւորիչ է եկեղեցւոյ, և քաղցելոց կերակրիչ, և աղքատաց մխիթարիչ, գերեաց ազատիչ և ամենեցուն սփոփիչ։ Իսկ վարդապետ տեղւոյն ըստ այնր վկայութեան էր քաջ և արդիւնական բաբունապետ և հոգևոր հայր և վարժապետ Յակոբ։ Յիշին և միաբանք Յակոբ աբեղայ, Բարսեղ շնորհալի գրագիր, Յոհաննէս եկեղեցպան, Ստեփանոս, նայր վանացն, յեղբայրական կարգէ՝ Սատոն և Մկրտիչ, որ զարդիւնքս հասարակաց կու ժողովէ յեշտեմարանս, և տնտեսս Յառուխ, որ կու սպասաւորէ միաբանիցս և այլն։ Իսկ գրողն է Մատթէոս վարդապետ՝ եղբայր Խաչատրոյ քահանայի, որ և յիշէ զկարևոր քաղաքական անցս ինչ ժամանակին, զմահ [Գարա]-Եուսուֆ բռնաւորի, և զթագաւորել որդւոյ նորին Սկանդարի. որ զի յոյժ ողորմած էր ազգիս Հայոց, եւս առաւել մեր գեղիս Ագուլեաց, իւր խաս արար, և մէկ տարի Թարխան արար։ Ծանուցանէ ևս զի էին յայնմ ժամանակի առաջնորդք աստուածապահ գեղոյս աղա Գէորգ, ըռաիս Սանր-Բէկ, և տանուտէր Էգիլշայ, որ բարեպաշտութեամբն իւրեանց տածող և խնամածու էին Ագուլեաց, և հայր որբոց և այրեաց։ Պատմէ և արկած ինչ. Յայսմ ամի որ թիւն Հայոց ՊՀԴ. (1425) էր զմեր աշակերտի եղբայրըն գետ տարաւ և անյայտ արար, և անմխիթար սուգ եղև ծնողաց իւրոց և մեզ՝ յոյժ դառնութիւն, որ չէ եղել հայնց դառն կսկիծ՝ որ եղև յանկարծակի, որ տղային անունն Յետղմուրշայ էր, զոր տէր աստուած իւր տեսուն և երկնից արքայութեանն արժանի արասցէ, ամէն։

## 355

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երևան 2144

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Տաթև

463 բ ...Եւ արդ, գրեցաւ սայ ձեռամբ ախմար և փցուն գրչի Կարապետ բանի խնդրողի ... ի թվականութեանս Հայոց ՊՀԳ. (1425), ի սուրբ

---

* Ղ. Ալիշանը վերապատմում է հիշատակարանի բովանդակությունը, երբեմն բնագրից հարազատորեն մեջ բերելով որոշ արտահայտություններ ու նախադասություններ։ Ալիշանի վերապատմած հատվածները տալիս ենք շեղագրով, իսկ հիշատակարանից անաղարտորեն բերված հատվածները՝ սովորական գրով։

ուխտս Տաթևի, առ դրան սուրբ տաճարացս տիրամաւր Աստուածածնի, և Ստաթէի սուրբ առաքելոյն, և սուրբ Գրիգորին, առ ոտս մեծ բաբունապետին Մխիթարա: Արդ, որք հանդիպիք այսմ տառիս տեսանելով կամ աւրինակելով, յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զսուտանուն քահանա զԿարապետ, և զհայրն իմ զՄկրաիչ քահանայն, և զմայրն իմ զՕղիսարեթ՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, և զայլ ամենայն մերձաւորսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս։ Այլև զգոովագութ հոգևոր հայրն իմ՝ զբարերարն և զյոժ երախտաւորն՝ զանյաղթ փիլիսոփայն և զխարանազգեաց ճգնաւորն զՅակոբ կուսակրաւն աբեղայն, որ առաջնորդ եղև ինձ ի յամենայն բարիս ոչ միայն բանիւ, այլ և գործով, որոյ փոխարէնն ոչ է ի մէնջ և յայսմ աշխարհիս, այլ յաստուծոյ ի հանդերձեալն։ Այլ և զհամշիրակ և զմիաշունչ զհայրն իմ հոգևոր և զեղբայրն գթաւոր զԹումա քահանայն՝ զաշակերտն և սիրողն բանին Յիսուսի, որ զաւրինակն շնորհեաց և զցանկ գրոցս և զամենայն երկաթագիր որ ի սմա՝ [մա]կագրեաց, և ինձ աւգնական և յորդորող եղև, հանապազ ակն ի վարձահատոյցն ունելով՝ ի Քրիստոս,

463 բ որ ասաց՝ Որում արարէք ի փոքրկանցս՝ ինձ արարէք։ Այլև զգեոա || բոյս կուսակրաւն քահանայն զԹորոս՝ զխաչաչարչար մշակն և զկենդանի նահատակն, որ յոյժ չարչարեցաւ և զԹուխթն կոկեաց, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։ Այլ և զաւագ սարգաւ[ագ]ունս՝ զերկոսին եղբարսն՝ զՕղիայն և զՍարգիսն, որ և նոքա յոյժ աշխատեցան ի սպաս առնելն, և ի ջուր բերելն, և ի ճրագ վառելն, զի վառեալ լապտերօք Քրիստոսի հանդիպեսցին։ Այլ և զծերունի հայրն իմ զՍարգիս միայնակեցն, որ է պանդղտակից մեզ և սպասաւոր և բազում կերպիւ օգն[ակ]ան՝ ի բարի մտաց մի մոռանայք...։ Գարձեալ, յերես անկեալ աղաչեմ զհեզութիւնդ ձեր անմեղադիր լինել սխալանաց և վատութեան գրիս, զի յոյժ կ[ար]օտութիւն ունէի սուրբ գրոցս, և բազում աշխատութեամբ այս չափ կարողացայ...։

## 356

## ԱԻԵՏԱՐԱՆ

Տ. Պալեան, «Ձեռագիրք Կեսարիոյ վիճակին», № 4, «Լոյս» շաբաթաթերթ, 1905 թ., էջ 518—519

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Բերկրի

Փառք...որ ետ կարողութիւն տկար բնաւորութեան մերոյ հասանել ի վերջ սուրբ աւետարանիս...ի խնդրոյ աստուածապատիւ և քրիստոսափափաք սրբասէր աբեղային Մարտիրոսին և հարազատ եղբաւրն նորին Մխիթարին, որ յաւժար կամաւք և առատ սրտիւ ստացան զսա ի հալալ արդեանց իւրեանց...։

Արդ, գրեցաւ սա ի լուսազարդ և գեղեցկայեգց աստուածընկալ և քրիստոսաբընակ անապատիս տէր Յուսկայ որդւոյ, ի գաւառիս

Թերկրոյ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցեացս՝ սուրբ մաւրս լուսոյ տիրամաւր Աստուածածնի կուսին, և սուրբ Կարապետին, և սուրբ Ցաբութեանս, և սուրբ Գերեզմանաց, և սուրբ տէր Ցուսկան որդւոյ Ստեփաննոս վարդապետի։ Ընդ որս և ես՝ անպիտանս ի մանկանց եկեղեցւոյ սուտանուն կրաւնաւորս Յակոբ, անուամբ միայն և ոչ գործով գծող գրոյս, որ սակաւ ինչ տաժանմամբ երկոց գրեցի ի դէմք քարտիսիս, պաղատանս ձեզ ընծայեմ յիշել և զմեզ, և զհոգեոր և զմարմնաւոր ծնաւղքն մեր, զերջանիկ և զերա[նա]շնորհ քարոզքն կենաց՝ զարժանիքն յիշման զերախտաւոր հարքն մեր զՄկրտիչ վարդապետ զառաջնորդ սուրբ ուխտիս և զՄելիքսեթ վարդապետն, որ բազում բարութեանց մեզ պատճառ եղեն. և զայլ ամենայն միաբանք սուրբ ուխտիս՝ վարդապետաւք և կրաւնաւորաւք, ընդ սարկաւագունս և միայնակեցաւնք, և այլ գործաւորք, որք աշխատին առ հասարակ ի դուռն սուրբ եկեղեցւոյս, ընդ ԽԸ. (48) ոգի, որ և պահեսցէ Քրիստոս աստուած անվորձ։

Գրեցաւ քարոզութիւն սուրբ աւետարանիս... ի Թուականութեան ՊՀԴ. (1425), և ընծայեցաք տիրամաւր Աստուածածնին ի վանս Խառաբաստայ, զոր տէր աստուած վայելել տացէ յամենայն ժամանակի ի դուռն սուրբ Աստուածածնին, ամէն։

## 357

## Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

Երևան 1616

Վայր՝ Արծկէ, Առբեճիկ գիւղ

328 բ ...Արդ, կատարեցաւ հոգելից մատեանս ի Թվականիս Հայոց ՊՀԴ. (1425), ի յընտիր աւրինակէ, ի յերկիրս Արծկու, ի գ[ե]աւղս Առբեճկուս, ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչիս և սուրբ Գէորգեայ զաւրավարիս։

## 358

## Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

Երևան 2523

Կազմող՝ Սարգիս
վայր՝ Հիզան

232 բ Ո՛վ լոյսերամից դասք, որք հանդիպիք լուսափայլ մարգարտաշար ափիս ժողովեալ բազում անգին ակունք ուսումնասիրաց, թէ կարդալով, թէ աւրինակելով, թէ աւկ[տ]ելով, յիշման արժանի արարէք զՍարգիս քահանայ, և զծնաւղս իւր, և զամենայն արեան մերձօորսն, և լի բերանով ասէք զտէր ողորմեայն, և ինքն, որ առատն է ի տուրսն և զաւարթ ի բաշխելն՝ տայ յամենունակ մառանէն յիշողացդ և յիշեցելոցս միահամուռ զիւր պարգեքն և զարքայութիւնն, ամէն։

Կազմեցաւ վերըստին գիրքս այս ի Հիզան քաղաք, ի թվական. ՊՀԴ. (1425)։*

359

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ

Փիրդ. Նոտ. 78, Տարօն, Առաքելոց վանք

Գրիչ՝ Թովմայ
վայր՝ Բարի-Ձորի վանք, (Հիզան)

Արդ, ես վերջինս խնդրող բանի,
Որ եմ տրուպ յամենայնի,
Փափագանօք զտառս գրեցի
Նեղ և անձուկ ժամանակի,
Ընդ հովանեաւ Աստուածածնի,
Որ Բարի-Ձոր անուն կոչի,
Ի թուականիս ութհարիւրի
Եօթանասուն և չորս ամի (1425)
Ձեռամբ ... Թովմայի։

360

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5955

Գրիչ՝ Վարդան.
վայր՝ Մոկաց երկիր, Սպատ ուխտ.

ա

329 բ ... Աւարտեցաւ վարդափըթիթ անուշաձայն և երգարան սուրբ Շարակնոցս ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի՝ Վարդան ունայն աբեղայի, ի խնդրոյ սրբասէր և ժրաջան Յոհանէս քահանայի, ի թւականութիւն Հայոց ՊՀԴ. ի հայկազեան սեռիս տումարի (1425), ի դառն և նեղ ժամանակիս, որ բազում մորմոք և տրտմութիւն եկն ի վերայ մարդկաց, որք կոտորեցան անմեղ գառինք վասն ծովացեալ մեղաց իմոց։ Գրեցաւ երգաբանող սուրբ Շարակնոցս ի յերկիրս Մոկաց, ի սուրբ ուխտս որ կոչի Սպատ, ընդ հովանեաւ Ամենափրկչի, և սուրբ Աստուածածնի, և սրբոյն Կարապետի, և յայլ միաբան եղբարց իմոց, որ աստ կան բնակեալ և կան ի սպասու սուրբ ուխտիս, զոր աացէ տացայ աստուած զիւր ողորմութիւնն, ամէն։

330 ա Արդ, ես՝ Յոհանէս քահանայս ցանկացայ աստուածային բուրաս-

* Ձեռագիրն ընդօրինակված է 1425 թվականից տասնամյակներ առաջ, հավանաբար ԺԴ. դարի կեսերին։ Գրչից պահպանվել է միայն մի փոքրիկ հիշատակագրություն, ուր ասված է. «Ո՛վ հայր պատուական, սղալանաց բանից մի մեղադրել, զի շտապով գրեցաւ. և յորժամ առցես զգիրս զայս ի սուրբ ձեռին քո, Թողութիւն մեղաց խնդրեա ի Քրիստոսէ սակաւ գծաւղիս՝ Գրիգորիսի մեղապարտի, և իմոց ննջեցելոցն» (էջ 222 ա)։

տանիս փափագմամբ սրտիւ, ետու գրել զՇարակնոցս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն Թադէոս քահանայի և մօրն իմ Շուշանայ և կնոջն Միսայի, և զաւակացն Գորգկայ, և Շուշանա, և Արղունի, և ամենայն արեան մերձաւորաց իմոց։

Արդ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ օրինակելով՝ լի սրտիւ և բոլոր հաւատով աստուած-ողորմի ասացէք Թադէոս բարէսէր քահանային, և որդւոյն իւր Յոհանէսի, և քւերցն Նազխաթունի և Մինայի, և քւերորդոյն Սարգսի՝ քաղցր և անուշատիպ մանգան, որպէս զծաղիկ նոնենեաց հարեալ ի կարկտէ, և բազում տրտմութիւն և սուք եբեր ի վերայ ծնօղաց և սիրելեաց իւրոց, զոր տէր աստուած գասեսցէ զսոքա ընդ սուրբ քահանայիցն և սրբոց մարտիրոսացն, ամէն։ Ի սոյն ժամու անպիտանս ի մանգանց եկեղեցոյ և բազմավէրս
330 բ ի սուրբ կարգաւորաց՝ փծուն գրիչս Վարդան անուն, յերեսս ան ‖ գեալ աղաչեմք յով որք հանդիպիք սմա՝ անմեղադիր լերուք խոշորութեանց և սղալանաց սորա . . .։

Ծաղկող՝ Յոհանէս

Բ

330 բ Հոգով վառեալ ի սէր նոցին
Եւ ետ ծաղկել զծաղիկ սորին,
Զոր ե պա[յ]ծառ յո[յ]ժ երեւին,
Քան զայլ գրոցս, որ հոչակին։
'Ի իւսեմ Յոհանէս քահանայի զտէր ողորմի,
Հանդերձ ծնօղօք իւր և զարմի,
Եւս և որդոցն իւր գեղեցկի,
Որ իւր անուն Ստեփանոս կոչ[ի]
Հա[յ]ցել աւուրս* երկարելի։
Ո՜վ, վեհագոյն եղբարք բարի,
Մանկունք վերին Նոր Սիոնի,

Յովանէս ծաղկող աբեղայս, որ անու<ան>ամբ եմ աբեղա և գործօքս խաբիբա, ո՜, ո՜հ, ո՜հ, զՈվանէս մականուն Լենկանց,

Առ ոտս անգեալ արտասուայլի,
Զձեզ աղաչեմ յար ըղղձալի,
Ցիշել բանիւ տէր ողորմի
Զմեզ, մերայնովք հանդերձ ծնօղի։
Լերուք և ինձ քաղցուք բարի,
Առնել յիշման զՈվանէս արժանի
Ի մեղսամակորդս յոյժ եղկելի,
Վա[տ]թարս մեղաւք ի լի։

---

*) Բնագրում՝ ըսուրս։

## 361

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4007**

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Խարնոց գիւղ

630 ...Եւ արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց՝ սուտանուն գրչակս Յոհաննէս... ըստ իմում տկարութեանս գրեցի զսա՝ զսուրբ աւետարանս, ի գեաւղս որ կոչի Խարնոց, ընդ հովանեաւ սուրբ Քրիստափորի։ Եւ արդ, յայսքան և յայսպիսի բարէվայելուչ և մեծափառ սրբ-
631 ոցս գումար բարէխաւս աշխարհի || և ապաւէն ապաստանի քաւութիւն մեղուցելոց, զոր գիմեալ մեծաւ յուսով բարի արմատոյ շառաւեղն՝ կատարեալն հաւատով և գործով բարեաց Սիմէոնն կամեցաւ ըստանալ զաստուածախաւս սուրբ աւետարանս և ետ ի դուռն սուրբ Թաչիս, և թէ ոք ծախ առնէ՝ ի վերա բանն, զոր տէրն հրամայեաց Յուդայի և Կայենի՝ հանդչի ի վերա նորա և այլն ամէն, ուր լալ աչացըն իցէ և կրճել ատամանց...։

632 ... Եւ արդ, ես՝ Սիմէոնն և Մինայ, ետու գրել զսուրբ աւետարանս յիշատակ ծնաւղաց մերոց և ամենայն արեան մերձաւորացն, որ և ինձ մասն ընդ նոսին լիցի, ամէն։

Ի ութ* հարիւր Հայոց թուին
՚Ի եւթանասուն չորս** յաւելուածին (1425),
Գառն և ի նեղ ժամանակի,
Ի հայրապետութիւնն Հայոց տէր Դաւթի,
Ի ղանութիւն Թավրիզոյ՝ Ըսքանդարի,
Որ աւար էառ զաշխարհն Հեքարի:
Որ և կրկին զաղերսալին
Ձեզ առաջի արկեալ բանին,
Ձերեսս դնեմ ձեզ ի մոխրին,
Յիշել յաղաւթս՝ զվերայգրելին՝
ԶՅովաննէս ու զՇնոնոր,
633 Զփոխեցեա || լքն յերկինս՝ զՍիմէոնն
Ու զՄինա՝ զհոգով արին,
Զթղթի կոկաւղն,*** որ ի կարգին,
Ամէն արեան մերձաւորին...։
Եւ ծնաւղացն իմ ըստ մարմնի,
Որ Մարտիրոս անուն կոչի,
Եւ հաւրեղբարն Յովանի,

---

* Բնագրում՝ «Ը» (8)։
** Բնագրում՝ «ՀԴ» (74)։
*** Նույն թղթի կոկողի մասին 228 էջի հիշատակագրության մեջ ասված է՝ «Ծէշեցէք ի Քրիստոս զԱռաքել փոքր երէց, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս և ի հոգս եկաց...»։

Որ փոխեցան նոքա ի բարի։
Կարճեալ աւուրք են և ոչ լի,
Մեզ սուգ առաւ անպատմելի
Եւ այլ բազում քրիստոնէի,
Զի ոչ գտայ նոցա նմանի,
Այլ և բնաւ յո[յ]ժ եմ հեռի,
Վասն այսորիկ յամենայնի
Ոչ կայ հանգիստ մեզ յաշխարհ[ի],
Եւ զհաւրեղբայրն իմ զկալ ի մարմնի՝
Մկրտիչ կրաւնաւորի,
Որ քան զծնաւղ էր աւելի,
Շատ աշխատանք առ իս ունի,
Տէրն է վկայ ամենայնի։
Նոյնպէս և ձեզ այնպէս չափ[ի],
Որպէս և դուք մեզ ամէնի։*

## 362

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Փերգ. Նոտ. 79—80, Վան

Հետ. ստացող՝ Աւետիք
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Կապոսի վանք

...Տարտամս և տառապեալս ոգւով՝ Աւետիք աշակերտ բանի, ի Դարանաղեաց գաւառէ, ի վաղուց հետէ փափագեալ ըղձայի այսմ վայելուչ... աստուածաշունչ հին և նոր կտակարանացս։ Իսկ ի վախճանել հոգելից և տիեզերահռչակ մեծ բաբունապետին իմոյ և վարժապետին (Գէորգեայ)՝ ժառանգեաց զսա եղբօրորդի նորին Եզեկիէլ սարկաւագ, և կամեցեալ նորա վաճառել, որ և ես անձեռնհաս էի և անարժան. կամակցութեամբ և օժանդակութեամբ բազմերախտ հօրս իմոյ հոգևորի տէր Սահակ կորովամիտ բանասիրի և երաժշտապետի... [որ] տեսեալ զտենչանս իմ առ այս անգին մարգարիտս՝ օգնական եղեալ յորդորեաց զմեզ։ Որ և վաճառեալ զամենայն ինչս մեր, զոր ունէաք ի նախնեաց և յազգականաց, և խնդութեամբ ստացաք զայս լուսատու մարգարիտս և զաստուածային գանձս։

* Համանման բովանդակությամբ մի այլ ոտանավոր հիշատակարան էլ գրել է Թո[illegible]կել է 299 էջի վրա։ Այնտեղ նա խնդրում է, հիշել նաև իր ամուսնուն.

«Եւ ամուսնին իմ՝ Նաւասարի,
Որ փոխեցաւ ինքն ի բարի...»։

Հայտնում է նաև, որ իր հայրն ու հորեղբայրը մահացել են չորս տարի առաջ.

«Զորբորդն եմուա ի յայս ամի,
Որ փոխեցան իւրեանք ի բարի,
Սուգ մեզ թողին անանցելի...»։

Արդ, որք ժառանգէք զսա յետ մեր՝ ողորմելով մեղուցեալ ոգւոյս, ողորմութիւն հայցեցէք ի Քրիստոսէ և յիշման արժանի արարէք ի բարին։ Մանաւանդ զերջանիկ վարժապետն իմ զԳէորգ լուսաւոր հոգին, և զուսուցիչն իմ զտէր Սահակ, և զարետմը Նահատակեալ հայրն իւր զՍեղբեսարոս քահանայն։

Եւ ստացաք զամենագով աստուածաշունչս ի թուականիս Հայոց ՊՀԴ. (1425), ի դառն և ի դժնեայ ժամանակիս, զի մեծ պատուհաս պատահեցաւ Եկեղեաց գաւառիս, քանզի ի նոյն ամի յորում փոխեցաւ առ Քրիստոս հռչակելի բաբունապետն մեր Գէորգ՝ եկն տէրն Ամքայ ի վերայ Եզնկիս, և ... հրդեհեաց զգեղաւանսն առհասարակ և զվանօրայս, ընդ որ և հռչակելի մենաստանս մեր Կապոսու վանքս հրդեհեալ աւերեցաւ։ Եւ երեք ամ ի խսար պահեաց զքաղաքն, և առեալ ապա խաղաղացոյց, և խնամօքն աստուծոյ սկիզբն եղև շինութեան գաւառիս։ Որ և մեք, ողորմութեամբն աստուծոյ նորոգեցաք զսուրբ անապատս պայծառ շինուածով՝ առաւել քան զառաջինն, զժամատունըն, և զխցերն, և զտնտեսատունն, և զայլ ամենայն շինուածսն, որ և խնամօք բարերարին աստուծոյ մնասցէ սա անխախտ ի վայելումն սրբազան կրօնաւորաց և յիշատակ մեզ՝ անարժանիցս և ամենայն աշխատաւորաց ի սմա, ամէն։

## 363

## ՃԱՇՈՑ

Վենետիկ 630, «Այրարատ», էջ 322, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Եզնկայ

Ես՝ Յովանէս երէց Սելաեցի գրեցի զսուրբ գիրքս և ծաղկեցի և կազմեցի վասն սուրբ կաթողիկէին, ի քաղաքս Եզնկայ:

Ստացող՝ Պանտալեոն, և եղբայրն Ներսէս քահանայք, և [միւս] եղբայրն Յովհաննէս ոսկերիչ. ի ժամանակս Օթման պակին օգնականութեամբ Դէմիրնա-խաթունին և Եաղուբ աղային, որ եղբօր հօրն որդի պարոն Խութլուշին և պարոն Սուլէմանին:

Ի թվ. Հայոց ՊՀԴ. (1425)։

## 364

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղէմ 1617*

Վայր՝ Համշեն, Քոշանեց վանք

[Ընդօրինակված է ՊՀԴ. (1425) թվին], ի խնդրոյ պարոնաց պարոն Դաւթի, ի դրան սուրբ Աստուածածնի, որ կոչի Քոշանեց վանք,

* Ձեռագրի սկզբի մասը, ուր գտնվում են Գր. Տաթևացու քարոզները, ընդօրինակված է 1422 թվականին, «ի խնդրոյ պարոնաց պարոն Առաքելին»։ Վերջին մասը առասպելախառն մի պատմություն է «Վասն թագաւորելոյ Թէոդոսի» խորագրով։

ի գաւառն Համշինու, ի հայրապետութեան տէր Պօղոսի և ի թագաւորութեան Սքանտար պակին, ի պարոնութեան պարոն Դաւթին։*

## 365

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՎ 108 (1400), հա. Ա, էջ 485 – 486

ա Հետ. ստացող՝ էվաչայ

299 ա ...Սոյն կերպիւ և ձևով եղեալ շնորընկալ ի հոգոյն այր աստուածայկոչ և արժանավոր՝ պարոն էվաչաս, որ գնեցի ես զայս սուրբ ավետարանս իմ հալալ արդեանցս, որ այլոց իրք մ' աւգնութիւն չի կայ, գնեցի սայ՝ յաւգնութիւն ինձ և իմ տան և տղայոց։ Եւ ետու զայս սուրբ ավետարանս ի վերի սուրբ Աստուածածին, ի տէր Վարդընայ յեկեղեցին՝ զաւակ ի Սիոն և ընդանի յԵրուսաղէմ, յիշատակ ինձ պր. Յեւաչիս, և իմ հաւրն Խաչերեսին, և իմ մաւրն Մելիքին, և ի[մ] մաւրն (°) Խէր-Խաթունին, և իմ կողակցին Շնոֆոր-Խաթունին, և իմ նորայրող[րոջ] զաւակին Յովանէսին, և իմ քուրոչն Դիլշաա-Խաթ[ունին], և իմ փես[այ] պր. Մուսեխին, և իւր զոտերն** Լալ-Խաթ[ունին], և Խոյանդին, և Գորքին՝ յաստուած փոխեցելոյն, և ի Քրիստոս աստուած հանգուցեալն իմ եղբաւրն Խարըշին, և իմ որդոյն Խարըշին, և Յովանէսին, և Դովլաթին, և զամենայն ազգատոհ[մ]ն իմ առհասարակ ի Քրիստոս հանգ[ուց]եալ. և զՏաիլ-Մէլիքն և զԽարշայս յիշեցէք՝ իմ հոգոյ որդի է...։

Ո՛վ եղբարք, ով ոք իշխանութիւն չունի, ազւսէ (°) իմ ազգէ, կամ այլոց ազգէ, որ աւէ կամ իմն է, կամ տվէք, կամ ով ոք ծախէ կամ գրավկանէ՝ չունի հրամանք ի Քրիստոսէ. զի իմ հալալ արդ[ե]անցս գնել եմ և տվել սուրբ Աստուածածնին ողբ,*** իշխեցողն սուրբ Աստուածածինն է. ով որ դաւի անաւղ լինենայ, նայ ունենայ զանէծքն սուրբ աստուածածնին և զտիրասպան քահանայից, և զմասն Յուդայի, և զանէծքն զԿայենի, և ՅԺԸ (318) հայրապետացն առցէ, կամ ջնջելով, կամ թուղթս կտրելով՝ անիծած կեն[այ] ի սուրբ աւե-

* Ձեռագրում այս նույն պարոն Դավթի անունով կա մի ուշագրավ գրություն, որ բերում ենք ստորև.

«Յանուն աստուծոյ և սուրբ Նիկոլաոսի՝ պարոն Դաւիթ, յառաջն գուն զայս ուխտէ աստուծոյ, որ ճամփորթ համար լաւ լինաս ու զճամփորթի ապրանքն հանց պահես՝ որպէս զաստուծոյ տված հոգիդ, ով որ լինա՝ թէ քրիստոնեա և թէ այլազգ, առ քեզ ավանդ։ Եւ զինչ քեզ ես Շամօադինս ավանդ գնեմ՝ զայն առնուս, այլ աւելի տամահութիւն չլինայ։ Վրայ այս բանիս գրէ մօտ ի Սպեռու տէրն, որ բեռն բեռ բանէ, թամղալիթ՝ թամղալիթ, իլման՝ իլմայ, խուրճին՝ խուրճի, պոզչան՝ պողչայ. Եւ բեռին տալիքն ընդ սազվաթ ընդ ամեն խարճ, մինչև Բասենու սինօռն՝ զան որ պիտ առնուն՝ զան յիստակ գրեն, որ [թա]-մահ և ստութիւն չլինայ ի մէջն»։

** Տպագրում «զաւերն»։

*** Իմա՝ «վակուֆ»—եկեղեցուն նվիրված անշարժ կալվածք, գույք։

տարանէս. կատարողքն աւրհնեալ լինին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Գրեցաւ թվին Հայոց ՊՀԴ. (1425), սեկտէ[մ]բերի Բ. (2)։

Բ

191 Քրիստոս աստուած քո սուրբ չարչարանացդ բարեխաւսութեամբ ողորմեայ պր. Յեւատչիս, և իմ ծնողացն. ով զմեզ յիշէ՝ Քրիստոս զինքն յիշէ յիւր արքայութիւն։

Եւ զիս յիշեայ, ով սուրբ ընթերցող, զանարժան զԱլէքսանոս քահանայս և զՄկրտիչ քահանայս, որ մենք այ[լ] հանդիպեցաք, որ պր. Էվաչան զաւետարանս գնեց...։

## 366

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երեւան 2063

Յիշատակարան վերջին ստացողիս

351ա Արդ, ես՝ վերջինս մեղօք լցեալ
Եւ ի բարեաց թափուր մնացեալ
Զձեզ աղաչեմ յերես անգեալ
Զսուրբ քահանայդ, որ հանդիպեալ,
Ձեր սուրբ յաղօթսդ ըզմեզ յիշեալ,
Արտի մտօք բարին խնդրեալ,
Ի յարարչէն, որ փոյթ ի տալ՝
Ստեփանոսիս մեղօք լցեալ,
Զի ես վաղուց 'ի ցանկացեալ
Եւ սուրբ գրոց կարօտ մնացեալ,
Տէրն իմ Յիսուս յիս գթացեալ
Եւ զիմ փափաքս կատարեալ,
Տեսի սուրբ գիրքս զարդարեալ
Անգին ակամբ մարգարտաշար,
Ազուր, զմրուխտ ու ակն գոհար,
Լոյս համասփիւռ և կառավար,
Սա բուրաստան արփիափայլ,
Անմահական պտղօք լցեալ,
Ի սուրբ հոգւոյն շնորհիւ լցեալ՝
Անմահական հոտ մեզ բուրեալ,
Մարգարէիւքն է հաստատեալ
'Ի առաքելօքն է ամրացեալ,
Հայրապետացն է ճոխաբառ
Եւ բաբունեացն ջահ ի վառ,
Իմաստասէրքն են զարմացեալ,
Թէ անչափ շնոր[հքն, ո]ր աստ հեղեալ,

*Հերձուածողքն են կարկամեալ*
*Եւ բանսարկուն տարէկուսեալ։*
*Արդ, ես մեղօքս յերես անկեալ*
*Ձձեզ աղաչեմ արտասուաբար*
*Ընթերցողքդ և գրողքդ հաւասար,*
*Որք հանդիպիք աստ ի կարդալ,*
*Թէ ուսանելով, թէ աւրինակել՝*
*Ի սուրբ յաղօթս ըզմեզ յիշել,*
*Ի սուրբ սրտէ զտէրն աղաչել,*
*Ի փորձանաց զմեզ պահել։*

*Այլ և զծնօղքն մեր զ*Հայրապետ *քահանայ և զ*Նազխաթունն*՝ փոխեցեալքն ի Քրիստոս, և զհայրազատ եղբայրն մեր զ*Սարգիս *քահանայ, և զտիրասնունդ որդիքն իւր զ*Մարտիրոս, զՀայրապետ, զՅովանէս, զՄելքսեդ *սարկաւագ և զ*Շլուկն, *նաև զդեռաբոյս որդին մեր զ*Գրիգոր, *և զ*Յոհանիսիկն, *և զմայրիկն իւր՝ զփոխեցեալք ի Քրիստոս, զի արարիչն աստուած հանգչի ի հոգիս նոցա, և զամենայն արեան մերձաւորքն, նաև զամենայն քրիստոնեա, այլ և զքվերգուստրն մեր և զմայրն։ Յիշեցէք ի Քրիստոս զխոճա* Մաթէոսն, *և զ*Ուենոսն, *և զ*Ավբանբէկն, *որ աւգնական եղեն գնոյն և զ*Եւայ-խաթունն*՝ զքվերգուստրն մեր, որ յօժար կամօք աւգնական եղև, նաև երախտաւորքն մեր, և ուսուցողքն մեր. հոգևոր և մարմնոր ծնօղքն իմ յիշեցէք ի Քրիստոս և լի սրտիւ ասացէք զաստուած-ողորմին, և ինքն որ տէրն է տէրանց և աստուածն աստուածոց՝ Յիսուս Քրիստոս, յորժամ նստի [ի դատաստան], առհասարակ, ողորմեսցի յիշելոցդ և յիշելոցս, և ասէ՝ Եկայք օրհնեալք։*

*Թվ. ՊՀԴ. (1425 ) գնեցօ։*

## 367

## ՔԱՐՈԶԳԻՐՔ

*ՀԱ, 1892, էջ 83, Ճեմարան Աբեևլեան լեզուաց, 3,* Cod. Arm. III. 5. 3.

*Հետ. ստացող՝* Դանիէլ

*Այլ և զվերջին ստացող սուրբ մատենիս զ*Դանիէլ *պիտակ աշակերտ և զկուսակրաւն աբեղայ, և զծնաւղսն իւր զհայրն իւր զ*Պլտուխ*՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զմայրն իւր* Զըմրուխտ-խաթունն *և զեղբարսն իւր զ*Մարգարէ *կուսակրաւն աբեղա, և զ*Խոըրշահն, *և զ*Թումայն. *այլ և ըստ հոգոյ զծնաւղսն իւր՝ զտէր* Յովաննէս *քաջիմաստ քահանա և զբազմերախտ հայր իւր ըստ հոգոյ զ*Բարաքշայ, *և զամուսինն իւր զ*Թամար-խաթունն, *և զայլ ամենայն երախտաւորսն իւր հոգևոր և մարմնաւոր՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ով ոք [որ] տե[ս]անէք, կամ ընթեռնուք, կամ [ընդօր]ինակէք, զի խիստ փ[ափա]ք[ա]նաւք էա[ռ] զգիրքս [յ]ի[շա]տակ իւրն և ծնաւղացն, և յամենայն*

արեան մերձաւորաց. յիշեցէք յամենայն սրտի մտաւք, և աստուած զձեզ յիշէ, և սխալանաց ձերոց ներեսցէ, և զԾկայքն ձեզ լսելի արասցէ։

Եւ զՇմաւոն յետնեալս յամենայնի,
Որ զյիշատակս գրեցի,
Դու զիս յիշեա միշտ ի բարի,
Ո՜վ ցանկալի եղբայր իմ նազելի,
Զի արգեալ ես դու ամէն լեզուի,
Եւ բարգաւաճեալ ի հանդիսի՝
Սուրբ Դանիէլ, որ քո անունդ է մարգարէ
Ցիրաւաբարն Շուշանի,
Դու ընկալցիս պսակ անթառամելի
Եւ մասն մի մեզ անգանի,
Որպէս կնոջն այն այլազգի,
Որ ի փշրանաց տեառն կերակրի։
Դնեցաւ գիրքս ի Թվ. ՊՀԴ. (1425)։





## 368

### ՇԱՐԱԿՆՈՑ

*ՄՑՀ, հտ. Ա. Թ, էջ 27*

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Հերմոնի վանք

437 *...Կարաւղութեամբն աստուծոյ սկսայ և շնորհիւ նորին աւարտեցի տկար և ախմար մտաւք և անձամբ, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ տիրեալ էր աշխարհիս Հայոց ազգն հագարու Թուրքման և զամենայն աշխարհս ի սուր, ի սով և ի գերութիւն մաշեաց, որ ոչ ուստէք ունէաք մխիթարութիւն, բայց միայն զՔրիստոս և զնոցին անսուտ խոստմունքն։*

*Արդ, գրեցաւ գիրքս ի գաւառիս* Եղեգեաց, *ի վանքս Հերմոնի, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին և սուրբ Յակոբայ՝ կենաց բարեխաւսին, ի լաւ և յընտիր աւրինակէ Խլկցի, ձեռամբ* Յակոբ *մեղսամակարդ անձին և սուտ անուամբ քահանայի, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի թուականութեան հայկազեան տոմարի ՊՀԵ. (1426). ...*

## 36

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5418*

Գրիչ՝ Ստեփանոս

*...Եւ արդ, ես՝ անարժանս ի մանգունս եկեղեցոյ* Ստեփանոս
291բ *գրիչս... || գրեցի զսուրբ աւետարանս ի յիշատակ եղբաւրն իմոյ* Կարապետ *քահանային, որ և ինձ մասն ընդ նմին լիցի, և ծնողացն մերոց, և ամենայն արեան մերձաւորացն մերոց, այլ և զաշխարհական եղբայրս մեր* զՅովանէս, *որ և սա փափաքէր սուրբ աւետարանիս աւարտման, աղաչեմ յիշել զնայ, և զկողակիցն իւր* զՍանդուխտ, *և զդեռաբոյս զաւակն իւրեանց* զՄկրտիչ, *զոր պահեսցէ Քրիստոս աստուած յերկար ամաւք և բազում ժամանակաւք, և զհանգուցեալ քուրիկն իմ* զԱնայ։

*Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թվականիս Հայոց ՊՀԵ. (1426)։*

*Ի դառն և ի նեղ ժամանակիս,*
*Ի զաւնութիւն* Սքանդար *թաթարիս,*
*Որ աղաղակ մեր և չարիս*

Ասգարարեալ անուրինիս,
Ըստ նախագրեալ մարգարէիս,
Ըզկծեցոյց զմեզ յաշխարհիս։
Շատ թագաւորք և խրոխտալիս,
Տէր քաղաքաց մեծագունից,
Զտունս Հայոց զերթ զանապատ արար, գերիս,
Միայն չեմուտ ի յայս տեղիս,
Բայց դողացոյց զամենեսին,
Եւ ուր եհաս ոտքն չարին,
Սրոյ ճարակ ետ զնոսին։
Ոմանք սովով մեռանէին,
Եւ այլք սրով կոտորէին։
291 ա Այլ ոչ գրով [ըմն]ս ճառի
Եւ ոչ բանիւ լեզուաւ պատմի։
Ի յայսմ ամի նեղ և դառին.
Եղև գրումն այսմ տառին,
Որ և կրկին զաղերսալին,
Զեզ առաջի արկեալ բանին,
Զերեսս գնեմ ձեզ ի մոխրին,
Յիշել յաղաւթս զվերագրելին՝
ԶԿարապետն՝ փոխեալ յերկին,
Եւ զեղկելի եղբայրս Նորին,
Զհայրն և զմայրն, որ ըստ մարմին,
Ամէն արեան մերձաւորին,
Ընդ նոսին և իմս կցորդեսցին
Սրտահառաչ ձայնիւ ուժգին,
Ունկն դնելով խոնարհագին
Զձեզ աղաչեմ լսել և զիմն,
Որպես և մեծ վարդապ[ետին]
| | | *ցաւակից եղև չարին,
Այն կռամով թագաւորին,
Որ առ նմայ ներողութիւն | | | **
Եւ ծնաւղացն իմ | | |
Եւ իմ եղբաւրն | | |
Էր քահանայ | | |
Անկեղծ ասեմ ըզ | | |,
Որ փոխեցաւ նայ ի յ | | |
Կարճեալ աւուրքն ի | | |

* 5—6 տառի չափ տեղ՝ պատռված։

** 291 էջի Բ. սյունակի վրա նորոգման ժամանակ, վերևից մինչև միջին մասը, թուղթ են փակցրել։ Առաջին 8 տողերից կարդացվում են միայն անորոշ բառեր (դրանք չենք բերում), իսկ այնուհետև, մինչև 15-րդ տողը, անընթեռնելի են մնում միայն որոշ բառեր, որ ցույց ենք տալիս երեք ուղղահայաց գծիկներով։

Մեղ սուգ տուաւ անպատ[մելի],
Այլ և բազում քրիստոնէի,
Զի ոչ գտայ նորայ նմանի,
Այլ և ընաւ յոյժ եմ հեռի,
Վասն այնորիկ յամենայնի
Ոչ կայ հանգիստ մեզ յոշխարհի։

Բ

1 բ Ես անարժանս յամենայնի
ԸՍտեփանոս մեղօք ի լի
Ստացող սուրբ մարգարտի,
Որ է անգին և անթերի,
Մաքուր անձանց յոյժ պիտանի,
Ակն ունելով տեառն և փրկչի,
Տալ ինձ փոխան զանանց բարի.
Թէպէտ որ չեմ ես արժանի
Գրիլ ի սուրբ գիրս մա[տե]նի,
Եւ զեղբայրն իմ ըստ մարմնի,
Որ [Հայր]ապետ անուն կոչի,
Որ փոխեցաւ նա ի բարի,
[Աղաչմն]ս ձեզ ի հողի
Ցիշման առնել մեզ արժանի։*

## 370

## ՄԱՇՏՈՑ

Երևան 5568**

Գրիչ՝ Պետրոս
վայր՝ Բերկրոյ գաւառ, Յեղեվանք

106 բ ...Զի զորաւրինակ նաւ, որ ի բռնութենէ հողմոյ և ի սաստկութենէ ալեաց ծովուն տրտմեալ տարակուսեալ լինի, և ի խնամոցն աստուծոյ յանկարծակի հողմն շնչէ յաջողակի և զնաւն ի նաւահանգիստն հասուցանէ՝ յոյժ ուրախութիւն է։ Նոյնպես և ինձ՝ տկարութեանս՝

Հանդիպեալ վերջին գծիս
Ի յուրախութենէ սրտիս
Զստեղծիչն աւրհնեմ զգոյիս,

* Գրված է Մատթէոս ավետարանիչի մանրանկարից ներքև՝ լուսանցքում։ Նման ոտանավոր հիշատակագրություններ Ստեփաննոս գրիչը թողել է նաև 81 բ, 135 բ և 223 բ էջերի վրա, Մարկոս, Ղուկաս և Յովհաննէս ավետարանիչների մանրանկարներին կից։

** Ողջ ձեռագիրը, բացի վերջին տերից, կրկնագիր է։ Շատ թերթերի վրա պարզ կերպով նկատվում են ջնջված գրերի հետքերը։ Ջնջված տեքստը, որ գրված է բոլորձև երկաթագրով, հավանորեն Ժ. դարում, ըստ երևույթին, նույնպես եղել է Մաշտոց։

Զգեղեցկութիւնս զճաոխս,
Զանհասութիւն զբանիս,
Զարմանազան սքանչելիս,
Որ կայ ծրեալ ի շարիս,
Նիւթ և մելան գղթորիս,
Թուղին է արջասպն աւղթեցիս.
Գոյն սպիտակ քարաիղիս
Թանգ գնեցի ես՝ գերիս,
Վասն շտապոյն իմ սրտիս,
Զգիրքն կարգի զՆիւսացիս,
Գժուարալուր խոր բանիս.

Նկ. 13. Մի հատված Պետրոս գրչի հիշատակարանից

Ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեցէք ի Քրիստոս աստուած զգծողս զՊետրոս կրօնաւոր և զծնողսն մեր՝ զհայրն զՅովաննէս, և զմայրն Շամ-
107 ա շայ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զեղբարքն իմ զԿարապետ, և զԱտոմ, ‖ և զկրսեր սարկաւագն զՄկրտիչն, և զկանայքն նոցա՝ զԹամար, և զդեռաբոյս ծաղիկք՝ զՄարտիրոս պատանեակ, և զՄարթայ, զմիւս զՆըշխուն, և զաւակ նոցա՝ զՅովաննէս պատանեակ և զամենայն արեան մերձաւորսն մեր, և զուսուցիչքն մեր և զխրատիչքն և զերախտաւորքն, և որ յիշէ զմեզ առ աստուած՝ յիշեալ լիցի և ինքն առ Քրիստոս աստուած։

Գրեցաւ ի Թվական Հայոց ՊՀԵ. (1426), ի գաւառիս Բերկրոյ, ի
յանապատիս Յեղեվանք, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոս Նախա-
վկայիս, և սուրբ Գրիգոր Լուսաւորչիս, և սուրբ Նշխարացս Վարդա-
նանցն։ Ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Ստեփաննոս կրօնաւորս
Դպղենց կոչեցեալ՝ բարի և հեզահոգի, ի ղանութեան Սքանդար ամիր-
զի, որ է որդի Ուսուֆի, զի այս երեք ամ է, որ յամէն տարի գայ, և
աւար և գերի արար զաշխարհն մեր՝ զՎան և զՈստան, և ապա առ-
եալ զամուրն զՎան, և մեք փախըստական եղաք ամենեքեան առհա-
սարակ՝ հայրապետք և վարդապետք, կրօնաւորք և քահանայք, տա-
նուտէրք և տանտիկնայք, ի յաւտար աշխարհ շրջ ‖ եցանք և ի դըռ-
107 բ նէդուռն աւտարացանք, և այս ամենայն եկն ի վեր[այ] մեր վասն
ծովացեալ մեղաց մերոց, փառք աստուծոյ ամէն։

## 371

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղէմ 1582

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Թադէոս Առաքեալի վանք

...Գրեցաւ...ի Թվին Հայոց ՊՀԵ. (1426), ի մայրաքաղաքի որ այժմ Դավրէժ կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարին, զի անգ սկսայ և փոքր ինչ գրեցի, և եկեալ առ ոտս սուրբ առաքելոյն Թադէոսի՝ աւարտեցի, ի սոյն ամի որում էառ Ըսքանդար անուն ոմն բռնաւոր՝ որդի Ղարա-Ուսուֆին՝ զանառիկ բերդն Մակուայ, և զերկաբնակ ազգն ախթարմայից տարագիր և տարաշխարհ արար ի վերայ երկրի, և կատարեցաւ բան տեառն, զի չարքն չարեաւ կորիցեն և զայգին ետ այլոց մշակաց։

Որ և ես՝ նուաստից նուաստս և տրուպս ամենայնի Գրիգոր անձն եղկելի՝ գծող սմին, ի վաղուց հետէ փափաքէի շինութեան առաքելական սուրբ աթոռոյս մերոյ և ոչ տայրին Թոյլ նախասացեալ ներհակքն՝ բնակիչքն Մակվայ: Որ և կրկին վայ եկն ի վերայ նոցա ի յԱրտազ գաւառէ, և ետ շխ Բայազիթ ոմն այլազգոյ։ Եւ զոր յառաջասացեալ չարքըն բարձեալ էին ի դրանէ սուրբ Առաքելոյս և տարեալ Թասպութեամբ և նախանձու, սա դարձեալ ի տեղի իւր երեր մեծաւ յաւժարութեամբ և հնազանդութեան սիրով՝ զդուռն եկեղեցոյս, և զմեծ զանկակն, և զգերան ժամատանս, և այլ ամենայն ափաթ (*) և զողորմութիւն, զոր ի մարդապաշտ անիծեալ յազգէն յայն ոչ տեսաք ամենևին, զոր սա արար, որ և ըստ հնազանդութեան իւրոյ զհատուցումըն ի մարմնաւորս առցէ՝ զառողջութիւն և զդաւլաթ։

## 372

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրզ. Նօտ. 81, Վանի նահանգի Ալիւր գիւղ

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Մերտին մայրաքաղաք

...Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Կիրակոսի անարժան գրչի, ի դառն և ի նեղ ժամանակի, ի մայրաքաղաքս Մերտին, ընդ հովանեաւ Գէորգեայ զօրավարին, ի հայրապետութեան տեառն Պօղոսի, և յեպիսկոպոսութեան տէր Աբրահամին, յիշխանութեան ազգին նետողաց ամիրղայ Սքանտարին, և ի Մերտնայ իշխանութեանս՝ ամիր Նասրին, և ի թուականութեանս Հայոց ՊՀԵ. (1426)։

## 373

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՑ

Երևան 6262

Գրիչ՝ Գասպար Համբեցի
վայր՝ Կիպրոս

175 բ Հով[ու]ապետ բարի՝ Քրիստոս աստուած մեր, որ եկիր ի խնդիր
մոլորեալ ոչխարին, խնդրեայ և զիս զմոլորեալս՝ զստացող գրոցս զՄար-
կոս եպիսկոպոսն, և զծնաւղն իւր, և զմերձ ազգայ<կայ>ինքն, և
զամենայն արեան մերձաւորն, և ինձ գրագրիս՝ Համթեցի Գասպար երի-
ցուն, և ծնաւղացն իմոց, և վարպետիս<իս> իմ Սասըեցի Առաքել
աշակերտին, և ամենայն նախնեաց նոցայ, մեզ՝ կարդացողաց և ձեզ
լսողաց, և որ ողորմին ասէ՝ աստուած ողորմեսցի իւրն և ծնաւղացն
176 ա իւր || ոյ, ամէն։

Ի յայս ժամանակի ի թվականութեանս ՊՀԵ. (1426), ի վարդավառին կիրակի, Մսրայ սուլթանն զԿիպրոս էառ և զբաղում քրիստոնեայս գերի էառ, որ էին ոգիք Ր. (5000), զկոտորեալսն ո՞ թու<ով>է, ոհ, վա՜յ է զիս։*

## 374

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 1584

Գրիչ՝ Յովհաննէս եպիսկոպոս Անոյ
վայր՝ յանապատ դղեակս Թմոք

Թվ. ՊՀԵ. (1426), ի Մալխաս և յանաւիկ դղեակս Թմոք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ձեռամբ մեղապարտ գրչի Անոյ եպիսկո-

---

* Մանր և անարժեք հիշատակագրություններ կան աշխատության համարյա բոլոր գլուխներից հետո։ Այս ձեռագիրն ուշագրավ է, որպես նոր գրություն ունեցող հնագույն ձեռագրերից մեկը։

պոսին տէր Յովհաննիսի, ի խնդրոյ մաքրամիտ և սրբասէր կրօնաւորի ... տէր Աստուածատրոյ, ի լաւ և յընտիր աւրինակէն մեծ և քաջ քարտուղարին Սիսոյ Գրիգոր դպրի՝ մականուն խուլ կոչեցելոյ։ [Ծաղկող է Յովհաննէս կրօնաւոր]։

## 375

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

«Արցախ», էջ 78

Գրիչ՝ Յովհաննէս եպիսկոպոս Անւոյ

Զստացող սուրբ գրոցս զՍիմէոն րաբունի՝ զաշակերտ մեծին Գրիգորի, և զանիմաստ ծրող սորին՝ զՅովհաննէս եպիսկոպոս Անւոյ, աղաչեմ զձեզ դասք լուսերամից յիշման առնել զմեզ արժանի...։*

## 376

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Երուսաղէմ 1225

Թովմա Մեծոփեցի

ա

Գիրք Մեծոփու վանաց սուրբ Աստուածածնին։ Լաւ պահողն և ընթերցողն աւրհնի յաստուծոյ և յամենայն սրբոց։ Ընդ առաջին աշխատողացն յիշել աղաչեմ զպիտակ անուն վարդապետս Թովմա:

բ

ՊՀԵ. (1426) Թվին դասիւ կարդացի հետ Վարդանայ մեկնչին,** և զարմանալի տեսայ զմիտք սորին։ Քրիստոս աստուած ողորմի Թովմա վարդապետին և իւր ծնողացն։

## 377

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4807

Հետ. ստացող՝ Ուսթայ Էվազշայ
վայր՝ Վառնիշատ գիւղ

1ա Քրիստոս աստուած ... քաղցրութեամբ հայեաց ի հոգի վերջին ստացողի սուրբ աւետարանիս Յէվազշին, և յիւր ծնողացն՝ ուսթայ Ամիր-Սարգսին և Ուսլուն-խաթունին, և ի յեղբարցն Ստեփաննոսին, և Յովանի[սին, և] Խաչատրուն, և մեծ հարսին Գուլ-Մէ[լէ]քին, և զաւա-

* Անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք նույն Յովհաննէս եպիսկոպոսի 1426 թվականի հիշատակարանների շարքում։
** Խոսքը Վարդան Արևելցու «Մեկնութիւն երգոց երգոյն» աշխատության մասին է։

կացն [Ստա]թմիշին, և Յովսէփին, և Բաղշայիշին, և ի յայլ ամենայն ազգականացն...։ Գնեցաւ սուրբ աւետարանս ի թվ. ՊՀԵ. (1426)...։

Զսակաւ գծողս զԿարապետ անարժան քահանայ և զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, և Քրիստոս աստուած ձեզ և մեզ և զստացողացն և աշխատողացն ողորմեսցի, ամէն։

Բ

195 ա ...Արդ, ի վերջին դարուս և յերեկոացեալ ժամանակիս ես՝ Էվաղշայ ի յՄստան քաղաքէ, ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ ինչից իմոց, յիշատակ ինձ, և ծնօղացն իմ՝ հաւրն իմ Ամիր-Սարգիսի, և մաւրն իմ Ուսուլ-Խաթունին, և եղբարցն իմ Ստեփանոսին, և Յովանեսին, և Խոջկէն, և հանգուցեալ քուրոջն իմ Շար-Մէլէքի և եղբաւրորդոցն իմ Սուաթմշին և Յուսէփին, որ յայսմ ամի փոխեցան առ Քրիստոս՝ յոյսն ամենեցուն։ Եւ եդի զսա ի դրան սուրբ Եղիշէ վարդապետին, ի գօղն որ Վառնիշատ կոչի...։

Ընդ նմին և զիս՝ զսակաւ գծողս զԿարապետս, որ լի եմ մեղօք և անառակ վարուք ի մէջ մարդկան, հայցեմ ի ձէնջ, որ խնդրէք ի Քրիստոսէ զթողութիւն բազում յանցանաց իմոց...։

195 բ Ես Էվաղշայ ստացայ զսուրբ աւետարանս յիշա ‖ տակ ինձ և նախնեացն իմոց, ի թվաբերութիւնս Հայոց ՊՀԵ. (1526)։ Եւ ով ոք հեռացուցանէ զսա ի դրանէ սուրբ եկեղեցոյս ի մերոց և յաւտարաց՝ մասն զՅուդային առցէ, ամէն։ Եւ խնամ տարողքն աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն...։*

378

ԺԱՇՈՑ

Երևան 4553

Հետ. ստացողներ՝ Անտոն և Սիմէոն

247 բ Արդ, աղաչեմ զամենեսեան ահասարակ յիշեսջիք... զվերջին ստացողք սորա՝ սուրբ ընթերցուածիս... սրբասէր քահանայն զտէր Անտոնն, և զքարիհասակ եղբաւրորդին իւր և զիմաստուն և զքարեսէր քահանայն զտէր Սիմէոնն, որ կանգնեցան և աւգնական եղեն և յորդորեցին զքեզ Պոասաբենացս ժողովուրդն՝ զմեծ և զփոքր, զայր և զկին, և բազում բարեաց առաջնորդք եղեն, ես առաւել այս գրոցս և այլ բազում բարեաց։

Արդ, որք հանդիպիք սմա յիշեսջիք յաղաւթս ձեր զպարոն Ներսէսն և զկողակիցն իւր զՍիրմայ-Խաթունն, որ ետուն ի գրոցս գինն ՃԾ. (150) դրամ, և զպարոն Գրիգորն, որ ետ ԲՃ. (200) դրամ։ Եւ ստացան զսա ի հալալ ընչից իւրեանց և ետուն յիշատակ ի գեղ

* Շարունակությյան մեջ կրկին ու նորից խնդրում են հիշել ստացողին և նրա ազգականներին։ Էվաղշան այստեղ կոչվում է Հուսթայ։

Պռաստինքս, *ի դուռն սուրբ Գէորգեա յիշատակ իւրեանց և ծնողաց և ամենայն արեան մերձաւորաց...։*

*Եւ զ*Սամուէլ *աբ[եղայ], որ զգիրքս ծախեցի, ով սուրբ քահանայք, զգիրքս խնամով պահեցէք և լաթով բոնեցէք, և ի յահու ժամանակ շուտով փախուցէք։ Եւ ոչ ոք ունի իշխանութիւն յազգականաց սոցա, որ զգիրքս կամ ծախէ, կամ դրաւկնէ, կամ ի սուրբ Գէորգեա դռանէս հանէ, կամ զյիշատակարանս քերէ...։*

*Գնեցաւ գիրքս Գծ. (400) [դրամաւ],* ի թվին Հայոց ՊՀԵ. (1426) մայիս ամսոյ ԺԷ. (17), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։*

## 379

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վրաց Թանգարան 23*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աղթամար

289 ա *...Հաւատարիմ և բարեսէր տանուտէրն* Յովաննէս *և կենակիցն իւր* Շնաճուր *... ստացան զսուրբ աւետարանս անջինջ յիշատակ իւրեանց, և ծնողաց իւրեանց՝* Աւետիսին *և* Դիմաթին, Սարգսին *և* Մելիք-խաթունին, *և ամենայն արեան մերձաւորաց...:*

289 բ *...Արդ, գրեցաւ սուրբ ‖ աւետարանս ի կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր* Դաւթի, *և ի թուին Հայոց ՊՀԵ. (1426), ձեռամբ* Թումայի *սուտանուն կրաւնաւորի։ Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք ի ստոյգ և յընտիր աւրինակէ՝ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ։*

*Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող սորա** զվերոյ յիշեցեալն* զՅովաննէսն *և*
290 ա զՇնաճուրն, *և բոլոր հաւատով ‖ և սերտ սիրով աստուած-ողորմի ասացէք...։ Ընդ նոսին և զանպիտան* Թումայ *գրիչ, և զծնողքն իմ* զԿարապետ *քահանայ, և* զԴումէլիք, *և զեղբայրն իմ և զուսուցիչն* զԴանիէլ *քահանայ, որ ծաղկեաց և կազմեաց, և զշնորհալի սարկաւագն* զԶաքարայ՝ *որդի նորին, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս և մեզ եթող սուգ անմխիթարելի, և զքոյրքն մեր, և զհաւրեղբայրն մեր* զԶաքարայ *փիլիսոփայն՝ զհանգուցեալն ի Քրիստոս և զամենայն ազգականքն մեր՝ զկենդանիք և զննջեցեալք...։*

---

* *Բառը քերված է։*
** *Շարունակությունը՝ այլ ձեռագրով։*

## 380

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 231*

*Յանուն հեա. ստացող՝* Մշցի Առաքելի

252 բ *Արդ, աղաչեմ զձեզ եղբարք, որ ով զգիրքս կարդայ՝ նայ յիշէ* զՄշցի Առաքելն *ի մաքրափայլ յաղաւթս իւր, որ գնեաց զգիրքս և ազատ[ե]աց ի յանաւրինաց գերութիւնէ, ի թվ. Հ[այո]ց ՊՀԵ. (1426)։ Աղաչեմ զձեզ, որ աստուած-ողորմի ասէք իւր ծնաւղացն և ննջեցելեաց հոգոյն...։*

## 381

### ՃԱՌԸՆՏԻՐ

*ՄՅՎ 201 (1014), հա. Բ., 06*

Ոմն այցելու

132 բ *Ես՝ ծառա աստուծոյ, եկի ի սուրբ Ովանէս վանքն*, ի թվ. Հայոց ՊՀԵ. (1426), ի ապրիլ Զ. (6), ո[ւ]րբաթ, ուր աւետեաց Աստուածածնի։*

---

** Մերտին քաղաքի սուրբ Յովանէս, որ «մականուն Թվին կոչի» մենաստանի մասին է։*



ՊՀԶ  1427

## 382

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՂՈՒԿԱՍՈՒ, ՍԱՐԳՍԻ ԿՈՒՆՏԻ

*Երևան 5591*

*Ծմբագրող՝* Թովմա Մեծոփեցի
*վայր՝* Մեծոփայ վանք

*Այլ և ես՝ վերջինս և մեղապարտս ի ծնունդս եկեղեցւոյ, տրուպըս բանասիրաց և անարժանս ի կարգաւորաց, սոսկանուն վարդապետս* Թովմա, *յերեսս անկեալ արտասուալիր դիմաւք հողս և մոխիր սուրբ գարշապարաց ձերոց, աղերսեմ ի խորոց սրտէ, մանաւանդ*
240 բ *աստուածաբան վարդապետաց ուղղափառութեան, և գրոց աշակերտեալ || անձանցդ մաքրութեան, և քրիստոսակիր մանկանցդ Նորոյս Սիովնի քահանայիցդ լրման, որք հանդիպիք նորընծայ աստուածաքարոզ սուրբ աւետարանիս Ղուկասու մեկնութեան, ընթերցմամբ դասիւ կամ աւրինակելով և կամ սակս մասին սմին պատահէք տեսութեամբ՝ յիշեսջիք և զիմս աշխատութիւն, որ ի վերջին ժամանակի զգիրս զայս գտի և ետու ի ձեռս վարժապետաց և բաբունապետացդ հայկազեանս սեռի՝ դաս ասել սմաւ և զաշակերտեալսն ի հոգի և ի մարմին մխիթարել։ Եւ թողութիւն հայցել ի տեառնէ բազմադիմի և բազմատեսակ յանցանաց մերոց, մանաւանդ հոգևոր և մարմնաւոր ծնողաց մերոց՝ կենդանեաց և հանգուցելոց՝* Մատթէոս *կրօնաւորին, և ծնողաց նորին, և հոգևոր և մարմնաւոր հարազատաց մերոց, և ամենայն երախտաւորաց և արեան մերձաւորաց։ Եւս առաւել յիշատակ եղիցի սա վարժապետացն մերոց և հոգևոր հարցն և ուսուցչացն՝* Գրիգորի *մեծի հռետորին, և* Սարգիս *վարդապետին, և* Վարդանայ *վարդապետին, և* Յոհաննէս *վարդապետին, և ամենայն վարդապետաց ուղղափառաց...։*

*Աղաչեմ զերջանիկ գաղափարաւղսդ, որք աւրինակէք զդիրս զայս՝ զսակաւ յիշատակս այսոցիկ գրեսջիք, զի գիտասցեն վերջինքն, թէ յումէ գտեալ եղև, զի և դուք գրեսջիք ի գիր յաւիտենական կենացն դպրութեան, ամէն։*

*Եւ պարտ է գիտել, թէ զճարդ գտեալ եղև մեկնութիւն աւետարանիս։*

*Հարկեցին զմեզ եղբարքն զմեկնիչն տէր* Իգնատիոսի *դաս ասել։ Եւ մեք սկսաք ըստ տկարիմաց մտաց մերոց բան-բան լուծանել, և տեսաք, զի ոչ էր առեալ զբնագիրն ի ներս՝ ըստ կարգի մեկնութեանն բանի։ Մտաւք և բանիւ տրտնջէաք, որպէս սովորութիւն է*

ազգիս մեր։ Եւ ի նոյն աւուրսն եկն եհաս տաւն ծննդեան Քրիստոսի
աստուծոյ մերոյ։ Ելեալ գնացաք ի գեօղ մի կոչեցեալ Ասպիսրճակ։
Մտաք յեկեղեցին և գտաք ի խորանին՝ ձգեալ անպիտան ի մէջ մոխ-
րակուտին։ Առեալ տեսաք և գոհացաք զաստուծոյ, զի վասն առատա-
241 ա տուր պարգեացն և ձրի ‖ շնորհացն զհասարակաց զշահն և զօգուտն ոչ
արգելէ ողորմած և մարդասէրն աստուած ի յանարժան վարդապե-
տացս Եւ վասն դառն և չար ժամանակիս Թշուառութեան Ը. (8) ամ
ի մէջ անցաւ, և ոչ կարացաք գրել։ Իսկ յորժամ բարերարն աստուած
սակաւ ինչ անդորրութիւն ետ՝ ի ՊՀԶ. (1427) Թվականիս, կամաւքն
աստուծոյ սակաւ ինչ ես գրեցի, և զբոլորն գրել ետու հոգևոր որդոց
իմոց՝ Թովմայ գրագրի և Յովաննէս գրոց աշակերտի։ Զոր խնդրեմք
ի Քրիստոսէ պահել զսոսա անվնաս և անսասան կենաւք մինչ ի խո-
րին ծերութիւն։ Եւ Թողութիւն մեղաց արասցէ Քրիստոս աստուած
ծնողացն նոցին և ամենայն արեան մերձաւորացն ի միասին։

Բայց սկիզբն անկեալ էր, մինչև «յամսեանն վեցերորդի» զնա-
խերգան Ի;Բաախոսին եդի, և զցանդ խորանացն նոր եդի, զի դիւ-
րագիւտ և առձեռն պատրաստ ուսումնասիրացն եղիցի։

Այլ սխալանացն անմեղադիր լինել աղաչեմ, զի էր ինչ որ ջըն-
ջեալ էր և էր ինչ որ գրիչն սխալեալ էր, զի ՄԾ. և Լ. (230) ամաց
էր*։ Եւ յոյժ աշխատութեամբ ի յաւարտ ածաք։

Իսկ դու, սուրբ եղբայր, զսխալն ուղղեա, զի և դու մասն բարեաց
ի տեառնէ ընկալցիս և վիճակի սրբոցն ի լոյս արժանի լինիցիս՝ հան-
դերձ ծնողաւք և ամենայն արեան մերձաւորօք, ամէն, եղիցի։

Այլ և զհոգևոր և զմարմնաւոր հարազատքն մեր՝ զՄկրաիչ վար-
դապետն, և զՅովհաննէս քահանայն, և զպարոն Գորգի-Մելիքն, և զՅո-
վանէս, և զԱրիստակէս, և զԱմիր-Մելիքն, և զՍօլթանշա, և զհայրն իմ
զՍտեփանոս, և զմայրն իմ՝ զհանգուցեալքն ի Քրիստոս, աղաչեմ յի-
շել ի տէր....։ Վասն զի սոքա հանգուցանեն զմեզ ի վշտաց անաւ-
րինաց և ի դառնաբարոյից՝ անհնազանդ և անսէր հոգևոր կրօնաւո-
րական եղբարց։

Գրեցաւ աստուածային կտակս ի սուրբ ուխտս Աստուածածնի,
որ այժմ Մեծոփայ վանք անուանի, ի գաւառս Քաջբերունեաց։ Եւ աւ-
րինակն առաջին գրեալ էր ի սուրբ ուխտն Եղէվարդու, ի գուռն սըր-
բոյ եկեղեցոյն Թէոդորոսի, որ էր գրեալ յառաջին օրինակէն ձեռամբ
աշակերտաց սուրբ վարդապետին Սարգսի՝ Դաւթի և Ներսէսի՝ յոյժ
սխալ։ Քրիստոս աստուած ողորմի հոգոց նոցին, ամէն։

* Ուրեմն զասծ ձեռագիրն ընդօրինակված է եղել 1427-ից 230 տարի առաջ, այն է
1197 Թվականին։

# 383

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 1419

### ա

Ստացող՝ Թովմա Մեծոփեցի
վայր՝ Մեծոփայ վանք

81 ա ...Այլ և զհոգևոր հարազատն իմ զՄկրտիչ վարդապետն, որ զգիրքս երեր յԵրուսաղէմայ բազում աշխատութեամբ, և հասոյց յաստուածաընակ ուխտս Աստուածածնի, որ այժմ Մեծոփայ վանք անուանակոչի։ Եւ ես մեղապարտս և վերջինս ի [ման]կունս եկեղեցւոյ՝ դասիւ զգիրս ի դուրս եհի ի ՊՀԶ. (1427) թվականի, ի դառն և չար ժամանակի, որ սէրն աստուածային պակասեցաւ ի մարդկանէ և ի սոսկանուն կարգաւորէ, վասն այնորիկ աւերեցաւ աշխարհս ամէն ի անաւրէն Թուրքմանէն. և Զ. (6) տարի է, որ պատարագ չէ եղել ի ծովու բոլորս ամէն։ Արդ, աղաչեմք [զեղբարքդ"] ամէն՝ մեզ թողութիւն հայցել...։

### բ

Ստացող՝ Մկրտիչ Մեծոփավանեցի

201 բ Արդ, յերեսս անկեալ պաղատիմ քրիստոսակիր մանկանցդ սրբոյն Սիովնի, յիշեսջիք առաջի անմահ գառինն Յիսուսի Քրիստոսի զպիտականուն վարդապետս Մկրտիչ, և զծնօղքն իմ զՆահապետ, և զեղբարքն իմ՝ զհանգուցեալքն ի Քրիստոս՝ զԱրթուխշա և զխենկիկ, և զմիւս եղբայրն Յովանէս, և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանի և զհանգուցեալ, որ ստացայ զսա ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և բազում ահիւ և դողութեամբ ի տեղս հասուցի, վասն այն յուսոյն, որ գիրս ի դաստուն մտանէ և ի վարդապետաց և ի գրոց աշակերտաց ձեռն Յեսայ։

Եւ դուք, որ առօղքդ էք պարզև<որ>ացս հոգևոր, տուք մեզ ձրի զառատ ողորմութիւն հօրն մեր երկնաւոր։ Աստուած ողորմի Մկրտիչ վարդապետին, և իւր ծնօղացն, և վարդապետացն երախտաւոր...։

Այլ և զհոգևոր հարազատն իմ զԹովմա վարդապետն յիշել [աղաչեմ], ամէն։

ՊՀԴ. (1425) թվականին հանգեաւ նահատակութեամբ Գրիգոր վարդապետն Ծերենց ի Քրիստոս, հոգոյ գալստեան կիրակէին, և ի միւս ամի ՊՀԵ. (1426)՝ Յակոբ վարդապետն Ղրիմեցի, հինգշ[աբթ]ի, օր համբարձմանն, Ժ. (10) պակաս քան զվարդապետին, ի փառս աստուծոյ, ամէն։

գ

262 ա Ընդ առաջին աշխատողացն յիշեսջիք և զվերջին ստացողս՝ զմեղապարտս ի մանկունս եկեղեցւոյ՝ զՄկրտիչ վարդապետս Մեծոփայվանեցի, և զհոգևոր և զմարմնաւոր ծնօղքն իմ, որ ստացա զսուրբ գիրս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և բազում աշխատութեամբ բերի ի տեղս հասուցի։ Նա և զհարազատն իմ զԹովմա վարդապետն, որ դասիւ զգիրս ի դուրս ելաւ և զեղբարքս մխիթարեաց...։

ՊՀԵ. (1426) գրեցաւ։

384

ԺԱՄԱԳԻՐՔ

Վիեն. 428, Տաշ. Ցուց., էջ 880

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Մեծոփայ վանք

ա

155 ա—156 ա | | | հասա]րակաց աղաւթից քրիստոնէից, ի թուականութեանս մեր ՊՀԶ. (1427) ամին, ի յերկիրս Քաջբերունոյ, ի սուրբ մենաստանիս որ կոչի Մեծոփայ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակովբիս, և սուրբ վարդապետաց գերեզմանաց, առ ոտս տիեզերալոյս և քաջ րաբունապետիս Թումա վարդապետիս, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Ղազար սարկաւագի։ Արդ, որք հանդիպիք սմա յիշեցէք ի Քրիստոս զանարժան գրիչս զՂազար, և զհոգևոր հայրն իմ՝ զարհիական գլուխն զտէր Յովհաննէս եպիսկոպոսն՝ վերատեսուչ երկրիս Քաջբերունոյ, և զհոգևոր հայրն իւր զԹումա վարդապետն, որ զգիրս ուսոյց և աւր ըստ աւրէ յորդորէ զմեզ և զամենայն եղբարք, զի ի յայս ամի զտեսիլ Յովհաննու աւետարանչին յայտնեաց մեզ դասիւ | | |*

Այլ և կրկին կենաւք, աղաչեմ յիշել ի տէր զհոգևոր հայրն իմ զվերոյասացեալդ զտէր Յովհաննէս եպիսկոպոսն, և զերախտաւոր հայրն իմ զՅովաննէս կուսակրաւն քահանայն՝ զփոխեցեալն ի Քրիստոս...։

բ

141 բ Տէր Յիսուս... կնքեա զտեղի հանգստեան, մանաւանդ զհոգի և զմարմին աստուածապատիւ հոգևոր հաւր մերոյ տէր Յովհաննէս եպիսկոպոսին, և զհոգևոր հաւրն իւրոյ զԹումա րաբունապետին։

* Ձեռագրից թերթ է ընկել։

## 385

## ՑԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4873

Գրիչ՝ Սարգիս եպիսկոպոս
վայր՝ Կոթիփորոյ վանք (Ընկուզագամ)

365 բ ...Գարգեաւք և առատ ողորմութեամբն աստուծոյ բարերարին ցանկացող եղեալ բաղձանօք հոգևոր սիրոյ տէր Սարգիս եպիսկոպոս սոսկանուն և թափօվր ի յամենայն բարեգործութենէ և սեւերես կամ դիմօք և պատառող ցանկոյն աստուծոյ, որ և ցանկացօղ եղէ ի բազում ժամանակաց մինչև ցայժմ, զոր տէր պատրաստեաց զփափագս մեր յայսմ հոգևոր գանձիս, որ է յիշատակ անջնջելի հոգւոյս մեր ի տանն աստուծոյ....։

366 ա Արդ, ես՝ ամէնմեղ հոգով մեռեալ և մարմնով մոլորեալ, ի հոգս աշխարհիս և պատրանք մեծութեան, ե ի յաստուծոյ սեւերես և յիմ արհնողէն մահրում, և ի մարգկանէ ամաւթով՝ Սարգիս սոսկանուն եպիսկոպոս և գործովք թափաւոր ի յամենայն բարութենէ, ցանկապատառս, որ և ստացայ զսա ինձ՝ անջնջելի յիշատակ մեզ, և մեր ծնողացն, և ամենայն արեան մերձաւորաց։ Փափագ ուն[է]ի ի տղայութենէ յայս սուրբ նշխարացս և չգտանէի. Ի. (20) ամ շուրջ եկի՝ աւրինակ չըտային, լալով և պաղատ[ան]աւք հայցեցի ի յամենայնկարող փրկչէն, և տէր եցոյց բազմամեղիս զկարաւտ ծարաւոյս։ Սատանայ հանց կապել էր, ընդ որ գնացի՝ դուռն փակեցօ ի յիմ գարշելի և յառակ չարեացն իմ, յամենայն ժամ գոհութիւն ստեղծողին, որ ետուր ինձ ողորմութիւն։ Սատանայ հանց հակառակեցաւ, որ (ետու) ԲՌ. (2000) դ[ահե]կ[ան] ու զթուղթն ու զամէն նիւթ, ու չգրեցին այնիբաւն։ Մեք էաք Հ. (70) ամեայ, գրչի մատն չոր էր և աչքս վատայտես, անճար էաք, և ուխտեալ էաք աստուծոյ, վստահացաք ի ձեր ողորմութենէն և մասնակից եղաք ձեր սրբութեանդ, որ մէկ տէր-ողորմայիւ յիշէք ի տէր աստուած զբազմաբիծ գարշելիս՝ Սարգիս չեպիսկոպոս, աղաչեմ յիշել ի աէր, և աստուած զինքն յիշէ, և նայ զմեզ, և զբարեմիտ հոգի ծնողքն մեր, որ հանգուցեալ կան ... Նախ հաւրն մեր պարոն Սաւ[լ]թանշին, և մաւրն՝ Մինա-խաթունին, և եղբարցըն, և քուերացն, և եղբաւրն մեր ըստ՟հոգոյ՝ Յովանէս քահանային, և զաւակին՝ Կարապետ կրօնաւորին, որ զօրինակն շնորհեաց, աստուած բազում վարձս տացէ նմա, և տէր Առաքելին, և այլ հոգևոր հաւրն մեր պարոն Տիրիկին, Խուանդին, Թանկաուխին և մեր ամենայն ազգականացն, մինչև ի քառասուն պորտն, ամէն։ Դարձեալ, զհոգիայբուխ և զարփիայշնորհ, զհոգելիցս և զեղբայրս՝ զտէր Սիմէոն ճգնաւորն, աստուած զինքն յամենայն ճգնաւորաց մասնակից արասցէ, ի վերին Երուսաղէմ գասեսցէ, ամ[էն], այլև զեղբայրն ճգնաւորին՝ զՄաթէոս քահանայն, յիւր լուսոյն և տեսոյն արժանի արասցէ, ամէն, նաև զկենակիցն իւր զՆայն-Տիկինն..., և զիւր զաւակսն զՄելքիսեդեկն պահեսցէ մինչև ի խորին ծերութեան անսայթաք...հանդերձ

դստրաւն Նուր-Ջահանիւն, ամէն։ Այլև զհանգուցեալն... զպարոն Դա-
նիէլն, և զեղբայր սոցայ՝ զմիայնայկեացն և զխորին ծերնն, զնոր Ընն-
ջեցեալն, որ և այժմ հանգեաւ՝ զտէր Յովիէլ, և զաշխարհի կարօտածս՝
366 բ զԲարսեղն, || [որ] և տղայ հասակաւ ի Քրիստոս փոխեցաւ, յի-
շատակ նորա աւրհնութեամբ, եղիցի, ամէն։

...Պաղատանաւք հայցեմք ի սուրբ հանդիպողացդ, որ զԻգնատիոս վարդապետն, և զՅորդանան, և զԵրեմիայն յաղաւթս յիշէք, որ բազում աշխատեալ են վասն մեր՝ կերակրելով և յամենայն կողմանց, աստուած զսոսայ կերակրէ, ամէն։ Այլ և բազկատարած խնդրեմք ի յամենայն լեզուաց՝ աւրհնեալ է աստուած, յաղագս քաջ և արի, ժրաջան զսուրբ վարդապետքն մեր յիշեսջիք ի մաքրայշփայլ յաղաւթս ձեր. Նախ՝ Գոշա, Վանականա, Վարդանա, Նէրսեսի, Յեսսայիայ, Տիրայարսւ, Բարսղի, Գրիգորի, Ծերունի, Կիրակոսի, Գրիգորի, Յովսէփի, Յակոբի, Մաղաքիայի, Յոհանիսի, Սարգսի, Վարդանի, Գրիգորի՝ քաջ և արի հռետորի, Գէորգեայ, Յակոբին, Մաթէոսի և այլ ամենայն համաւրէն վարդապետացն, որ ի ստեղծմանէն յաշխարհիս մինչև ցայսօր հանգուցեալ կան...։ Որ և զհոգևոր հայրապետքն մեր յիշեսջիք տերամբ ի տէր՝ զկաթողիկոսքն, որ և հանգուցեալ կան՝ զտէր Ստեփաննոս, զտէր Ներսէս, զտէր Մեսրովբ, զտեր Ստեփաննոս, զտէր Յովաննէս, զտէր Զաքարիայ, և զմիւս Զաքարայ, զտէր Թադէոս, զտէր Թէորոս, զտէր Ստեփաննոս, զտէր Կարապետ, զտէր Գրիգոր, զտէր Վանական, զտէր Ալէքսիանոս, զտէր Կարապետ, զտէր Նիկողայոս, զտէր Կարապետ, զտէր անուն տէր Սարգսի(*), զտէր Յովանէս, տէր Առաքել, զտէր Սարգսիս, որ զգիրքըս գրեցի, զՄաթէոս քահանայ, զԹանկսուզ, զպարոն Ամիրազիզն, զՋանազիզն, զՀազարմարդն և զայլն ամենայն, որ և յառաջին կիւրակէ են հանգուցեալ և այլ պիտի հանգչին ի Քրիստոս աստուած...։

Վասն աստուծոյ թողութիւն արարէք խոշորութեան գրոյդ և սխալանաց, անտրտունջ ուղղեցէք զպակասութիւն գրոյդ, քանզի ջան և կար մեր այս է. վասն աստուծոյ և վասն ահեղ դատաստանին Քրիստոսի մի արհամարհէք, ձեր խոնչդ ու աստուած վկայ է. որ ԻԱ. (21) տարի է, որ գրչի ծայրն ու մազ չեմ տեսուլ, ու ձեռս կու դո-
ղայ, վասն աստուծոյ մի մեղադրէք...։
367 ա Ի թուիս Հայոց ՊՀԶ. (1427), յահկի ի Բ. (2), ի տեղիս որ
աւարտեցաւ՝ ի Կոթիփորոյ վանքս, որ կոչի Ընկուզայգամ, ընդ հո-
վան<ու>եաւ սուրբ Աստուածածնիս, քանզի պահեսցէ զձեզ և զմեզ,
ամէն։

Թողութիւն արարէք վասն սիրոյն Քրիստոսի, ձանձրացուցի զհանդիպողքդ. և զկարդացողք աւրհնի յաստուծոյ և յամենայն սրբոց և ի մէ[ն]ջ, ամէն։

ԶՅովանէսն ու զՍարգիս յիշէք, որ մեզ ջուր են բեր[ել], զՄարտիրոսն, որ մեզ մեղր է տուել, աստուած զիւր քաղցրութիւնն նմա տացէ, ամէն։

386

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՎՑ. 91 (942), հա. Ա., էջ 413—414

Գրիչ՝ Գրիգոր Արծկեցի
վայր՝ Շամբի-Ձոր գաւառ, Մաղարդայ վանք

ա

13 ա ... Կատարեցի զսուրբ աւետարանս ...ես՝ իմով տկարացեալ բնութեամբս, բազմամեղ և անարժան սուտանուն կրաւնաւոր Գրիգոր գաւառաւ Արծկեցի, որ մականուամբ Էլմէլիքենց կոչիմ. գրեցի զսա ի խնդրոյ Դանիէլի կրաւնաւորի՝ աշակերտ բանի, և ստացողի հօր ուրեմն բանասէր և աստուածահաճոյ Աբրահամին, յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց։

Ես Աբրահամս...ետու գրել զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց և յարդար վաստակոց իմոց, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, և ետու զսա հոգևոր որդւոյն իմոյ տէր Դանիէլի աշակերտ բանի, որոյ տէր աստուած վայելել տացէ իւր և հոգևոր որդւոյն իմոյ | | | ,* ամէն։

Արդ, գրեցաւ և աւարտեցաւ քրիստոսախօս աւետարանս ի գաւառիս Շամբի-Ձորոյ, ի մենաստանիս՝ որ մականուամբ Մաղարդա վանք կոչի, ընդ հովանեաւ քրիստոսահիմն և առաքելաշնորհ սուրբ խորանացս՝ սուրբ Աստուածածնի, և սրբոյն Ստեփաննոսի նախավկայի, և սրբոյն Գէորգեայ զօրավարին, որ կառուցեալ կան ի հարաւակողմանէ, հանդէպ Երասխ գետոյ։ Ի թագաւորութեանն Իսքանդարին՝ Յուսուֆոյ որդւոյ, և յաթոռակալութիւնն կիլիկեցւոց՝ տեառն տէր Պօղոսի, և ի թըւականութեանն Հայոց ՊՀԶ. (1427), ձեռամբ անարհեստ գրչի Գրիգորի: Գրեցաւ ի լաւ և յընտիր աւրինակէ, և ունի զհամաբարբառքն չորեցունց աւետարանացն՝ ըստ իւրաքանչիւր թըւոցն, և զտասն խորանացն զկարմիր գիրն՝ ըստ իւրաքանչիւրոցն։ Եւ եթէ սղխալ կամ այլայլումն ունի՝ ի յօրինակէ է, և ոչ ի գրչէս, քանզի խնդրողն զայս կամեցաւ և ես գրեցի զստոյգն զօրինակիս։ Եւ եթէ գրչութեան արուեստին կամ գրադարձութեանն, շեշտին, և ըրդին, և պարուկին, և այլ ռոգանութեանցն՝ անմեղադիր լերուք, զի ի ծըրողէս է՝ ըստ տկարիմաց տեսութեան իմոյ. և զիս զանարժանս և զփանաքիս ի գրչաց յիշեսջիք ի մաքրափայլ և յերկնաթռիչ յաղաւթս ձեր, և զծնողսն՝ զԷլմէլիք և զԳոհար, և զքարտիս կոկոզս զՄինաս քըւերորդին իմ , և զվերոյգրեալսդ ի սմա՝ զԱբրահամ, և զայլ արեան մերձաւորսն ...։

բ

247 ա Ես՝ Դանիէլ աշակերտ բանի՝ ետու գրել զսուրբ աւետարանս՝ յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Պողո, և մաւրն իմոյ

* Մի բառ քերված է։

Ջմրուխտի, և 'էրէց եղբարց իմոց Թումի և տէր Մարգարին, և հարազատ եղբաւրն իմ Խոըբշի, և կուսակրաւն որդոյ իմս Առաքելին, և զանարժան գրիչս յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր...։

Գ

Նպաստող՝ Աբրահամ

247 ա Ես՝ աղաւաշ Աբրահամս հոգով տկար, դարձոյց զիս ի մոլորեալ ճանապարհէ տէր Դանիէլ՝ աշակերտ բանի։ Եւ ետու Թղթո գին Խ. (40) դրամ զլիճպաղի, էաո և բազում ընչաւք և աշխատանաւք կատարեաց զսուրբ աւետարանս ուղիղ սրտիւք և ուղափառ հաւատով, զոր և աստուած վայելել տացէ իւր և արեան մերձաւորաց իւրոց, ամէն։

## 387

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4019

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Տաթև

Ա

574 ... Ցանգ ելեալ աւարտեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Սարգսի, ի դերահոչակ և սուրբ ուխտիս Եւսաաթէի, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս, և սուրբ Աստուածածնիս։ և սուրբ Լուսաւորչիս, և այլ համաւրէն սրբոցս. առ ի յիշատակ հոգելից հաւրն իմ Թադէոսի, և բազմերախտ և արտասուալից մաւրն իմ էլմին, վասն բազում երախտեացն, զոր ունին ի վերա իմ սակաւ մի փոխարէն հատուցանելոյ, զի եղիցի սայ պատճառ բարեաց և ի փրր-
575 կութիւն հոգ || ոց նոցա, ամէն։

Ո՜վ մանկունք սուրբ ե[կե]ղեցոյ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք աստ, յիշեցէք զհոգևոր վարդապետն իմ Զեկիէլ, նայ և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ Թադէոս, և զմայրն իմ էլմայ,* և զսնուցիչ մամն իմ Ազիզ, և զեղբայրքն իմ զԲախտիյար, զՄաճրիյար, զԳրիգոր, զԱղութայ, և զքոյրն իմ Խովանդ, և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիսն և զհանգուցեալսն։ Դարձեալ աղաչեմ և առ ոտս ձեր անկեալ պաղատիմ, յիշեցէք և զիս՝ զՍարգիս անարհեստ գրողս միով տէրողորմայիւ...։

Ի Թվիս Հայոց ՊՀԶ. (1427)։

Բ

161 Արդ, աղաչեմ զձեզ, ով մանգունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք աստ, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զհոգևոր մայրն իմ Ուլուխաթունն, որ զԹուխթս գնեց, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

---

* 22-րդ էջի վրա, Հիսուսի և Մարիամի նկարներից ցած, կանգնած դիրքով նկարված են Թադէոսի, էլմայի և գրիչ Սարգսի պորտրեները։ Կենտրոնում կանգնած է Սարգիսը կրոնավորի զգեստով, աջ ձեռքով կրծքին է սեղմել ավետարանը, ձախով բռնել է մետաղյա մի խաչ, աջ կողմում Թադէոսն է՝ ձեռքերը պարզած դեպի կենտրոն, իսկ ձախ կողմում՝ գրչի մայր էլման։

Գ

432 *Աղաչեմ յիշել յաղաւթս ձեր զհաւատարիմ աբեղայն* Մովսէս, *որ զթուղթս կոկեց։*

Դ

*Ծաղկող*՝ Ղազար

162 *Ո՜վ եղբայրք, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք աստ, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զհոգևոր վարդպետն իմ* Շմաւոն. *և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ* Խնդիր *և զմայրն իմ* Խոնդիկ, *և զիս՝ ղանպիտանս* Ղազար *անարհեստ ծաղկաւղ սորայ...։*

388

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

***Փիրդ. Նոտ. 82—83, Արապկիր***

*Գրիչ*՝ Յովհաննէս
*վայր*՝ Հիզան, ի վանս Գամաղիէլի

*...Արդ, կատարեցաւ աստուածախօս և տիեզերաքարոզ սուրբ աւետարանս ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ* Հաւփսիմին, *յիշատակ իւրն և ծնողաց իւրոց՝ հօրն* Սադոնին *և մօրն* Թան-խաթունին*...։*

*Եւ արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց, սուտանուն գրչակս* Յոհաննէս, *որ անուամբս եմ և եթ և ոչ արդեամբք... ըստ իմում տկարութեանս գրեցի զսա՝ զսուրբ աւետարանս, ի վանքս որ կոչի* Գամաղիէլ, *ընդ հովանեաւ սուրբ առաքելոյն Գամաղիէլի և ամենայն սրբոց, որ աստ՝ շուրջ զմեօք բնակեալ կան։ Ի յառաջնորդութիւն վանացս րաբունւոյս մերոյ* Ներսէս *բանախնդրի, և յեպիսկոպոսաց մերոց՝ տէր* Ստեփաննոսի, *և տէր* Վարդանի, *և տէր* Դաւթի, *զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ, և ի յայլ միեղէն եղբարցս՝* Պօղոսուն, Ստեփաննոսին, Դաւթին, Յովաննիսին, Սարգսին, Մխիթարին, Յովսէփին, *և տնտես* Մխիթարին, *զոր տէր աստուած պահեսցէ զսոսա խաղաղական կենօք մինչև ի խորին ծերութեան, ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՊՀԶ. (1427), ի ղանութիւն...* Սքանտարին, *և մերոյս քուրդ ամիրիս* Դուռուաին:

389

## *ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ*

***Գալեմք. Ցուց. Միւնխենի 6, էջ 20***

*Գրիչ*՝ Զաքարիայ
*վայր*՝ Ուրծայ վանք

*Փառք... որ ետ կարողութիւն տկար ոգոյ և տարտամ մարմնոյ* Զաքարիայի *փծուն գրչի հասանել յաւարտումն այսմ հոգենորոգ և բազմափթիթ աստուածային բուրաստանիս։ Արդ, գրեցաւ վիրկական*

սուրբ խորհուրդ և մեղսաքաւիչ պատարագիս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբիս, ի վանս որ կոչի Ուրծայ*, առ ոտն վարժապետիս մերոյ Սարգսի, և այլ միեղէն եղբարցս, որ աստ են հաւաքեալ ի թվականութեանս Հայոց ՊՀԶ. (1427)։

Արդ, յիշեսջիք ի մաքրափայլ և յերկնաթռիչ յաղաւթս ձեր զստացող սորա զՆերսէս սրբամիտ և կուսակրաւն քահանայ, որ բազում փափաքանաւք և տենչմամբ սրտիւ խնդիր եղեալ վարգափթիթ և աստուածային պատարագացս, և եկեալ հանդիպեցաւ ի սուրբ ուխտ առաքելոցս Անդրէի և Մաթէի, և գտեալ զփափաքելին իւր՝ մեծ ուրախացաւ։ Եւ բազում աշխատութեամբ և մեծ ջանիւ ետ գրել ի հալալ ընչից իւրոց, յիշատակ բարի իւր, և ծնաւղաց իւրոց հանգուցելոցն ի Քրիստոս՝ հաւրն Սարգսի և մաւրն Շնոհվորի, և եղբարցն իւրոց Թումայի և Շահանշահի, և քուերցն, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոցն, ամէն։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան... յիշեսջիք ի ժամ սուրբ պատարագին զվերոյգրեալքս ի սմա՝ զՆերսէս քահանայ, և զիւրքըն ամէն, նաև զՍարգիս Զագավանեցի, որ զգլխագիրն գրեաց, նաև զյաւրինակին տվաւղն, և որ զսակաւ յիշատակարանս գրեաց՝ զՅովանէս, և զծնողսն իւր...։

## 390

## ՃԱՇՈՑ

Փիրգ. Նոտ. 83, Վան, Հայկավանք

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Սխգայ գիւղ

...Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... Մարտիրոս սուտանուն քահանայ, տեսի զսէր և զփափագ սոցա՝ զԹումայի և զԱբրահամու, և ըստ իմում տկար անձամբս յանձն առի, և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի... ի թուականիս Հայոց ՊՀԶ. (1427)։ Եւ գրեցաւ սա ի գեաւղս Սխգայ, ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչիս և սուրբ Աստուածածնի։

## 391

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Ա. էջ 65, Փիրգ. Նոտ. 81—82,
Ամասիոյ ս. Աստուածածին եկեղեցի

Հետ. ստացող՝ Սահակ
վայր՝ Ղաղալայ գիւղաքաղաք

Ի թվ. ՊՀԶ. (1427), ի հայրապետութեան տէր Պաւղոսի և յեպիսկոպոսութեան տէր Մխիթարայ Ամասիոյ փիճակին, աստուածասէր և բարեպաշտ քրիստոնեայս մղտեցի Սահակս գնեց զսուրբ աւետա-

* Ուրծայ վանքը՝ համանուն գավառի մէջ՝ գտնվում է Սյունիքի արևմտյան կողմում։

բանս ի յԱստուածատուր քահանայէն ԻԴ. (24) փլոբի, ի յիւր հալալ յընչիցն և ի յարդար վաստակոցն, և ետ ի Ղարալու եկեղեցին՝ ի սուրբ Սարգիս, յիշատակ իւր և ծնողացն՝ հաւրն Գառնուկին և մաւրն Ուստիանէ, և մի ոք իշխեսցէ յափշտակել զաւետարանս կամ ի քահանայից, կամ ի սարկաւագաց, կամ ի ժողովրդոց, կամ գողանալով, կամ տիրելով, այլ կացցէ ի հրճուանս սուրբ եկեղեցւոյս ի գիւղաքաղաքիս ի Ղաղալայ՝ ի սուրբ Սարգիսն։ Եւ որ ոք յանդգնի հանելոյ զսա ի սուրբ եկեղեցւոյս՝ նա այնպիսին անիծիւք լիցի և բանադրանաւք ի սուրբ հայրապետացն և ի սուրբ եկեղեցւոյս, և որ ոք կարդայ կամ աւրինակէ աստուած-ողորմի ասէ մղտեցի Սանակին, և ամենայն արեան մերձաւորաց, և կարդացողաց, և լաւ պահողաց։

## 392

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՆԵՐՍԻՍԻ

Երևան 3429

Հետ. ստացող՝ Թորոս Ասլիպակենց
վայր՝ Մուլիվոն

103 ա Ո՛վ գրայգէտք, որ գիր գիտէք ու կու կարդայք, նայ զմեզավորս յիշեցէք՝ զԹորոս պարոն Ասիլպակենցս, և մեղաց թողութիւն խնդրեցէք, և աստուած զձերն թողու, ամէն։

Ի թվին ՊՃՀԶ. (1427) ի հոգտեմպերն ամիսն ԻԸ. (28), կիրակի, մտաք ի Մուլիվոն՝ ես Թորոսս, իմ որդաւքն ու տընաւվ, ու իմ մայրն, ու իմ աղբերն Գրիգորն ի հետս եկաք յառ Մաթիկ պապէն ու յառ իր որդիքն, և [որ] զմեզ յիշէ՝ աստուած զինք յիշէ ի բարին։

## 393

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Վենետիկ 131, Մ.Տ.Մ.

Մ. Աւգերեան, Լիակատար վարք սրբոց, ԺԱ. էջ ՀԴ—ՀԵ

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի
վայր՝ Տրապիզոն

...Կարգեալ եղեւ բովանդակ տօնք սոցա աշխատութեամբ տէր Իսրայէլի, ի խնդրոյ Ջալալ-Դաւլայի տեառն Խաչենոյ, հրամանաւ Վանական վարդապետի և հաբաղատին տէր Իսրայելի Գրիգորոյ, զի նոքա հրամայեցին նմա, հայելով ի համբերութիւն և ի հնարիմաց գիտութիւն նորա, զի ջանս եդեալ գտցէ զօր նահատակութեան սրբոցն, որ գրեալ կայ ի լիակատար պատմութիւն նոցա, համառօտելով նմա զսքանչելի կատարումն սոցա։ Եդ ըստ այլ կարգի և զԱյսմաւուրս, զոր միաշունչ եղեալ անսղալ զտարին կատարեն։ Բայց ոմանք յանգէտս եղեալ հակառակին այսպիսի գեղեցիկ և սքանչելի ընթերցմանց, որ յամենայն օր զլսելիս մեր զարհուրեցուցանեն և դողումն ցաւագին տան անձանց մերոց, և ճանաչել իմանամք, թէ այնպիսեացն է ար-

քայութիւնն աստուծոյ, և զայս զմտաւ ածեալ՝ խորհիմք, թէ մեզ զի՞նչ լինիցի՝ ծուլիցս և հեղգացելոցս։

...[Գրեցաւ] ի թվ. ՊՀԶ. (1427), ի յանապատս Տրապիզոնու, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս և սուրբ Յովհաննէսիս... ձեռամբ Ղազարի Ղրիմեցոյ...։

394

ՃԱՇՈՑ

Վենետիկ 1613

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի
վայր՝ Պոնտոս քաղաք

...Արդ, գրեցաւ սա ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչի Ղազարի Ղրիմեցոյ,* ընդ հովանեաւ սուրբ և փառաւոր գերեզմանին լուսաւորչին մերոյ Գրիգորի, ի խնդրոյ... պարոն Վարդանայ և ամուսնոյն իւրոյ Մամախաթունի...։ Եդին ի դրան սուրբ Աւքսենտիս, [զոր հիմնարկեալ է Մելիտէ քահանայն], որ է Պոնտոս քաղաքիս, յիշատակ... հաւրն Պարոնին, և մաւրն Դովլաթ-խաթունին, հարազատ եղբաւրն իւրոյ Յազիզբէկին...։ Յիշեցէք... զառաջնորդն սուրբ ուխտիս... զՄարտիրոս վարդապետն և զՄկրտիչ հայրպետն, այլ և զկոկոզք Նիւթիս՝ զԱրբնամն և զՅովանէս...։

395

ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 4452

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի

ա

103 ա Գրեցաւ աստուածաշունչ բուրաստանս, որ կոչի Քարոզգիրք, ձեռամբ յոգնամեղ խըխայթեալ մեղօք ոգո Ղազար աբեղի Ղրիմեցոյ**, ի խնդրոյ պատուական և գովելի իմաստայեղ գրոց աշակերտի [Մարտիրոսի]***։

Արդ, աղաչեմ զհանդիպողսդ, յորժամ ճաշակէք ի քաղցրորակ պտղոյ սորա, յիշեսջիք սրտի մտօք զվերոյասացեալ ստացող սորա [զՄարտիրոս] գրոց աշակերտն, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց։

Նաև զեղկելի ծրօղ սորա զՂազար աբեղայս աղաչեմ յիշել ի բա-

---

* Նախորդ հիշատակարանի գրիչն է։ Ըստ այդմ էլ անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք նրան կից, 1427-ի թվաշարքում։

** Նախորդ հիշատակարանի նման տեղադրում ենք 1427-ի թվաշարքում, նույն Ղազար Ղրիմեցու թվական ունեցող հիշատակարանին առընթեր։

*** Ստացողի անունը, և՛ այստեղ, և՛ մյուս հիշատակագրության մեջ խնամքով քերված է։ Առաջարկվող անունը հնարավոր եղավ վերծանել քերվածի հազիվ նկատելի հետքով։

րի մասին, և ծնօղսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն, և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Այլ և սխալանացս և խոշորութեան գրոյս անմեղադիր լինել աղաչեմ, զի կար իմ այս չափ էր, զի անհմուտ էի արհեստիս, և թէ մեղադրէք՝ այն ձեր հրամանք է և մեր արժանք։

Բ

Գրիչ՝ Յոհանէս

21 ա Տէր աստուած, ողորմեա ստացողի սորա [Մաքաիրոսի գրոց աշակերտի], և ծնօղի իւր, և ամենայն արեան մերձօորի, և գրօղի սորա Յոհանէս աբեղի, և ծնողի իւր, բարեխօսութեամբ աստուածածնին և իւր, որ ամէն ասէ, ամէն, հազար։

Գ

130 ա Ո՛հ, զգրող սորա զՅոհաննէս մեղօոր աբեղաս և զծնողս իմ աղաչեմ յիշել...։

## 396

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ

Փիրղ. Նոտ. 82, Մարզուան, ի վանս Զարխափան Աստուածածնի

Գրիչ՝ Տիրատուր և Վարդան
վայր՝ Երուսաղէմ

...Գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊՀԶ. (1427), ի կաթողիկոսութեան տեառն Պօղոսի, և յեպիսկոպոսութեանս Երուսաղէմայ՝ տէր Մարաիրոսի: Տէր աստուած ողորմեա ստացողի գրոյս Մկրաիչ աբեղային, որ է լուսարար սուրբ Յարութեան տաճարին և սուրբ Գողգոթայիս, և գծողաց սուրբ տառիս՝ Տիրատուր և Վարդան աբեղայիցս։ Յիշեցէք զՆղիսաբեդ հաւատաւորն, որ յոյժ երախտաւոր է մեզ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ:

## 397

## ՔԱՂՈՒԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 5133

Գրիչ՝ Թորոս
վայր՝ Երուսաղէմ

Ա

58 ա Ո՛վ տեարք, աղաչեմ յիշել ի սուրբ յաղօթս ձեր զհեզահոգի վարդապետն Մել[ք]իսէդ, որ ետ գրել զսայ յիշատակ իւր և ծնօղաց իւրոց և ի վայելումն անձին իւրոյ։ Ընդ նմին աղաչեմ յիշել յա-

*զօթս զոչ արժան գրիչս՝ զ*Թորոսս *սուտանուն աբեղայ, և զծնօղս իմ, և զերախտաւորս, և անմեղադիր լերուք, զի չէի հմուտ արուեստիս։*

*Գրեցաւ ի սուրբ և յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *ի վանքս սուրբ Յակոբայ, ի Թվ. ՊՀԶ. (1427)։*

Բ

Գրիչ՝ Վարդան

10 բ *Զ*Մելքիսէդ *հեզահոգի վարդապետն և զ*Վարդան *սուտանուն աբեղայ, աղաչեմ յիշել ի տէր։*

Գ

152 բ *Զբազմամեղ անձնս զ*Վարդան *պիտականուն և զհեզահոգի կուսակրօն վարդապետն զ*Մելքիսէդ *յիշել մաղթեմ սիրողացդ բանի, ամէն։*

Գրիչ՝ Գէորգ

Դ

194 ա *Զանարժան գծող սորա և զանարհեստ* Գէորգ *երէցս՝ միայն անուամբ և ոչ գործօք, աղաչեմ զձեզ, ով սուրբ ընթերցողք տեառն հրամանի, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր...։*

Ե

152 բ *Յիշեսջիք զ*Մկրտիչ *աբեղայն՝ սիրող բանի՝ զլուսաբար սուրբ Յարութեանն, որ զօրինակն շնորհեաց, և աստուած զձեզ յիշէ, ամէն...։*

*Գրեցաւ գիրս ի մէջ սուրբ Յարութեանս։ Անմեղադիր լերուք խոշորութեան գրիս և սղալանացն, զի շտապով գրէի։*

Զ

58 ա *Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Մելքիսեթ *վարդապետն, որ ետ գրել սա յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, ի վայելումն անձանց տէր* Եսայուն *և տէր* Դանիէլին, *ով որ այս գրոցս հակառակի ծախելով կամ գողանալով՝ նայ անիծեալ է յամենայն սրբոց։*

398

**ՃԱՇՈՑ**

**Երևան 4977**

Կազմող՝ Վարդան

149 բ *Զկազմող սուրբ գրոցս զպանտուխտեալ և զվշտացեալ անձս՝ զ*Վարդան *սուտանուն սարկաւաք աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, ով սուրբ ընթերցողք։ Կազմեցաւ ի Թվ. Հայոց ՊՀԶ. (1427)։*

ՌԵԾ. ՌԵԾ. Ս. Ս. ԲՌԵԾ. ԲՌԵԾ. Բ. Բ. Ս. Ս. ԲԾ. ԲԾ. Ս. Ս. ԳԾ.

*ԲՃԾ. ԲՃԾ. Ս. Ս. ԳԺ. Ժ. Ժ. ԲՌ. ԲՌ. ԵՌ.։**
*Եթէ գպիր ես դու կարդա, թէ չէ՝ վզիտ տուր ու հաղայ։***

## 399

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նստ. 84, Երզնկայ, Տոխայ վանք*

*Հետ ստացող՝* Ղազար

...*Ես՝* Ղազար, *որդի* ՍտեփաննոսԻՆ, *ի* ՎերԻՆ-ԹլկաՆէՆ, *գնեցի զսուրբ աւետարանս և եդի յիշատակ ի դուռն սուրբ զինաւորին՝ սըր-բոյն Սարգսի... Թվ. ՊՀԶ. (1427)։*

---

* Գումարագիր ծածկագրով կարդացվում է՝ «Վարդան այշայ ի ար» հավանաբար ցանկացել է գրել՝ «Վարդանս յիշեայ ի տէր»։ Ս նշանը կես է նշանակում, ուրեմն Ս+Ս հավասար է մեկի, այսինքն՝ Ա-ի։

** Ձեռագիրն ըստ հնագրական տվյալների գրված պետք է լինի շուրջ մեկ հարյուրամյակ Վարդան կազմողի հիշատակարանից առաջ՝ ԺԴ. դարի առաջին կեսին։ Ձեռագրի 99 ր էջում պահպանվել է առաջին ստացողի հիշատակարանը, ուր գրված է՝ «Զստացող այսմ աստուածախաւս սրբոյ մատենիս՝ զպատուէլի հայրն՝ զվանական կոյս կրաւնաւոր քահանայն զՅաքարիաս յիշեսջիք ի բարին Քրիստոս, հանգերձ ծընողիւք և եղբարբք, ի հաշտութիւն հոգւոյ և ի թողութիւն մեղանց . . .»։

## 400

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6324

Գրիչ՝ Թումայ Մինասենց
վայր՝ Աղթամար

ա

...Արդ, այսմ ... մարգարտիս ցանկացող եղեալ ... պատուական
և սրբասէր կրաւնաւորն Աբրահամ, ստացաւ զսուրբ աւետարանս ...
296 բ յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Վարդա-
նայ և մաւրն իւրոյ Խութլուխն, որպէս զի հանապազ ընթերցցին զսա
մանկունք եկեղեցւոյ և զաստուած-ողորմին աննախանձ կամաւք
ասասցեն նոցա։ Եւ ես՝ մեղուցեալ և անարժան ծառայս ծառայիցդ
աստուծոյ Թումա, անուամբ և եթ միայն աբեղայ և ոչ գործով, տեսի
զփափագ սորա և զսէրն զոր ունէր առ հոգեորսն, և իմով անկատար
գիտութեամբս և տկար հոգւով և անարժան մարմնով յանձն առի զսա՝
վըստահանալով ի ներողութիւնն աստուծոյ. Եւ ամենակարող զաւ-
րութեամբ նորին կատարեցի զսա յաստուծով նախախնամեալ կղզիս
297 ա Աղթամար, ընդ հովանեաւ գըմբէթյարկ և երկնանման սուրբ Խաչին
և սուրբ ‖ Աստուածածնին, և այլ բազմահաւաք սրբոց նշխարացս, որ
աստ կան հաւաքեալ։

Ի հայրապետութեան տեառն Դաւթի, և ի զանութեան ազգին
նետողաց ամիրզա Սքանդարին՝ Թուրք ազգաւ, որ և տիրեաց աշխար-
հիս մերում և էառ բռնութեամբ զանառիկ ամրոցք աշխարհիս մե-
րոյ, այս է՝ զանմատչելիս և զանկոխս ոտից թշնամեաց և զտեղիս
ապաստանի բոլոր աշխարհացս՝ զկղզիս Աղթամարայ, և զանառիկ ամ-
րոցս և զմայրաքաղաքս երկրիս զՈստան, և զպարանոցատանջն զԱմուկ,
և մինչ ի Հէշտա և ի Նըւան՝ զբոլոր աշխարհս բռնակալեաց ընդ ձե-
ռամբ իւրով և ընդ իշխանութեամբ։ Եւ բազում և անթիւ չարիս և
դառնութիւնս անասելիս և անպատմելիս լեզուաց անցոյց ընդ աշ-
խարհս մեր, զոր ոչ կարեմ մի ըստ միոջէ ընդ գրով արկանել զաւէր
297 բ աշ ‖ խարհիս մերոյ և [կործա]նումն բնակչաց սորին։ Վասն զի այս
Ժ. (10) ամ է, որ մըրրիկ բարկութեանն աստուծոյ ի յաշխարհիս մերում
յաճախագոյն երեեցաւ վասն ծովացեալ մեղաց իմոց։

Եւ պատմեցից ձեզ զգլխաւորսն կարճ ի կարճոյ բանիւ, զոր
տեսաք աչաւք մերովք, զի առ յապա եկեալքդ, լսելով զաղէտս մեր,
երկնչելով յաստուծոյ՝ դադարեսջիք ի մեղաց ձերոց։

Ի յՊ. և ի ԿԸ. թվականին (1419) եկն մարախ սաստիկ, ըստ անչափութեան աւազոյ ծովու, բայց ի յաւուրս հնձոցն եկն, և իրք մի կերաւ զվաստակն և իրք մնաց, և ձգեաց զսերմ իւր յերկիր. և միւս այլ տարին ձագն ելաւ և խիստ աւէր էած։ Բայց յաստուծոյ խնամոցն ի գութ շարժեալ իշխան աշխարհիս մերոյ Ամիր-էզդինն՝ առաքեաց մարդ և երեր ջուր, և հաւ եկն զկնի ջրոյն, և սատակեաց զմարախն, և ազատեցաւ երկիրս։

298 ա Իսկ ի յՊՀ. (1421) թվին շարժեցաւ թագաւորն Արեելից ամիրզա Շաղռուխն՝ անթիւ հեծելով, և սատակեցաւ Ղարայ-Ուսուֆն՝ տէրն Թավրիզոյ իւրով մահուամբ, և որդին նորա ամիրզա Սքանդարն՝ մարտ պատերազմ ի եդեալ ընդ Ջաղաթային, կոտորեալ եղև ի Նմանէ. և սատակեցան սպռնմամբ բազումք ի զաւրաց նոցա, և ինքն մազապուրծ փախեաւ ի ձեռաց նոցա։ Իսկ թագաւորն Արեելից առեալ զամենայն աւար և անրաւ բարիս ի զաւրուն թուրքաց՝ դարձեաւ յաշխարհն իւր, և մնաց թաղթն անտէր։ Ապա վերըստին դարձաւ Սքանդարն ի Թավրէզ և տիրեաց նմա, և ժողովեաց բազում զաւրս։ Եւ միւս այլ տարին եկն բազում զաւրաւք ի վերայ Խըլաթայ, և բազում անձինք քրիստոնէից ի գե-
298 բ րութիւն վարեցան ի ձեռաց նոցա, և բազումք սրոյ ճա || [րակ եղեն | | |
Սքանդ]արն* եկն | | | ել․․․] ի | | |
յերկիրս մեր [և՞ խ]աղաղութեամբ [ա գ|նաց ի Թավ[րէզ], տանելով ընդ իւր զգերիսն։

Նկ. 14. Թումայ Մինասենցի ինքնագիրը

Իսկ ի յՊՀԲ. (1423) թվին գնաց նոյն Սքանդարն բազում զաւրաւք ի վերայ Ավրեյոյ, և էառ զնա։ Եւ իշխան աշխարհիս մերոյ գնացեալ առ նա բազում ընձայիւք ի գործ պատերազմին, և նա գեղ մահու արքուցեալ իշխանին մերոյ Մէլիք-Մահմադին՝ սպան զնա, և անհնարին սուգ և անմխիթար տրտմութիւն եհաս աշխարհիս մերոյ։

Եւ ի սոյն ամի եկն սաստիկ մահ տարաժամ ի յաշխարհս մեր և մնաց Բ. (2) տարի ի բոլոր ծովուս, և բազում տունք աւերեցան և ծնաւղք անզաւակ մնացին։

Իսկ ի յՊՀԳ. (1424) թվին կոչեաց նոյն Սքանդարն՝ զտէրն Ոստանայ զսուլտան Ահմատն և զտէրն Բաղիշոյ զՇըմըզդինն խարանաւք

* Էջի ձախ եզրը կտրված է, մի քանի բառեր թերի են վերծանվում։

299 ա առ ինքն || և կալաւ զերկոսինն։ Ջհանշահն սպան ի Խլաթ, և ինքն յան-
դուգն յարձակմամբ և լի դառնութեամբ և անթիւ զաւրաւք եկեալ
նըստաւ ի վերայ անառիկ ամրոցին Վանայ, ընդ իւր ունելով երկա-
թի կապանաւք զսուլտան Ահմատն։ Եւ զերկիրս մեր ի յառ և յաւար
և ի գերութիւն տուեալ Բ. (2) տարի, զոր ոչ է բաւական քարտէզս
գրով ընդունել յինքեան զաւէր աշխարհիս մերոյ. և [զնեղու]թիւնն,
զոր կրեցաք մարմնով և վշտացաք հոգով ի կղզիս Աղթամար։

Իսկ ի յՊՀԳ. (1425) թվին էառ ամիրզա Սքանդարն զՎան և զայլ
բերդորայքն, և մըլքեց զաշխարհս մեր։ Եւ միւս այլ տարին գնաց ի
վերայ Բաղիշոյ։ Եւ այս Գ. (3) տարի է, որ Բաղէշ ի խըսար է, և
զվերջքն աստուած գիտէ։

Իսկ ի յՊՀԶ. (1427) թվին էառ նոյն Սքանդարն զանառիկ բերթն
299 բ Մակուայ ի ձեռաց քրիստո || [նէից | | | և անմխի]թար կըս[կիծ-ե]-
հաս բոլոր ազգացս քրիստոնէից, զի բոլոր աշխարհացս այն մին
բերթն միայն էր մնացեալ ի ձեռս քրիստոնէից. և այն ես առաւ ի
մէնջ։

Արդ, այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց. եւ
այսքան բաւական է առ այս։

Եւ արդ, ես՝ վերջինս ի ծնունդս եկեղեցոյ և առաջինս ի
դասս մեղաւորաց, ամենամեղ և յանցաւոր ծառայս ծառայից աս-
տուծոյ Աբրահամ սոսկանուն աբեղայս, յայսպիսում դառնութեան ժա-
մանակի ցանկացաւղ եղէ այսմ աստուածունակ և աստուածախաւս
կտակիս...։* Ստացայ զսա ի հալալ արդեանց իմոց, և ետու զսա ըն-
ծայ և նըւէր ի մեծ և ի հռչակաւոր ուխտս Պատրկի վանք կոչեցեալ,
որ կայ հանդէպ Ոստան քաղաքի, ի դուռն սուրբ Աստուածածնին և
սուրբ Գէորգ զաւրավարին։ Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զհան-
դիպողքդ սմա տեսութեամբ, կամ կարդալով և կամ աւրինակելով,
լի բերանով և բոլորախաւս լեզուաւ և ուղիղ մտաւք աստուած-ողոր-
300 ա մի ասացէք ինձ՝ մեղաւոր կրաւնաւորիս Աբրա || համու, և ծնաւղացն
իմոց Վարդանա և Խութլուի, և այլ ամենայն արեան մերձաւորացն
մերոց՝ կենդանեաց և հանգուցելոցն։ Դարձեալ, յերես անկեալ աղա-
չեմ զսրբութիւնդ ձեր յիշել ի Քրիստոս զպասաւորք սուրբ եկեղեց-
ւոյս, որք վայելողք են սուրբ աւետարանիս՝ զքաջ և զարիաբան,
զսրբազան և զուղղադաւան վարդապետն մեր զՅովաննէս և զԱստուա-
ծատուր վարդապետն | | |** զՄարտիրոս և զՅովանէս, զՅովսէփ և
զԱստուածատուր, զՄկրտիչ և զՎարդան, զԿարապետ և զՍտեփանոս,
զՎարդան և զԱտոմ միայնակեացն։ Այլ և զխրատիչքն մեր և զուսու-
ցիչքն և զառհասարակ երախտաւորքն, որք ընդ հովանեաւ սուրբ
301 բ եկեղեցեացս հանգուցեալ կան, որք յառաջ քան՝ զմեզ, զորս | | | ***

* Բաց ենք թողնում մեկնելու էջ, ուր գովաբանվում է ավետարանը և արվում են աստվածաբանական դատողություններ։

** Չորս տեղ մաշված և անընթեռնելի։

*** Երեք տող՝ անընթեռնելի։

ան]ժամանա[կեայ փոխ]եցան յաշխարհէս՝ զԹումա վարդապետն, և
զՍարգիս սրբակրաւն աբեղայն, զՍտեփաննոս հեզահոգի վանից հայրն,
և զՅովանէս, և զՄարգարէ, և զՄկրտիչ, զՅովաննէս, և զՍտեփաննոս
զՄարտիրոս, զԶաքարիայ, և զՅովանէս, և զՎարդան, և զայլ առհասա-
րակ ննջեցեալսն ի դուռն սուրբ եկեղեցացս, վասն որոյ աղաչեմ զձեզ
ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասել ամենեցուն առհասարակ յիշե-
լոցս ի սմա՝ կենդանեացս և հանգուցելոցսն։

Եւ արդ, ես՝ ունայնս և Թափուրս յամենայն հոգևոր բարեմաս-
նութեանց, անկարգս ի կարգաւորաց և անյիշելիս ի գրչաց, անուամբ
միայն աբեղայս Թումայ յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր յիշ-
302ա ման արժանի առնել և զիմ անարժանու || Թիւնս և Թողութիւն մեզաց
խնդրել ի Քրիստոսէ ինձ, և ծնաւղացն իմոց Սիմէոնի և Արղունի, և
քուերցն իմոց, և ամենայն արեան մերձաւորացն, այլ և երախ-
տաւոր քեռոյն իմոյ և ուսուցչին Թումա միայնակեցին, և հարեղ-
բաւրն իմոյ ՎարդանէՆ, և որդոյ նորա Մկրտիչ կրօնաւորին՝ հանգու-
ցելոցն ի Քրիստոս, և նորաբողբոջ քուերորդւոյն իմոյ Հայրապետ
կրաւնաւորի, որ աւգնական և ձեռնտու եղև [սմա՝ կո]կելով զնիւ[Թ
Թղ Թիս]. . .։

Այլ և խոշոր և անյարմար գրոյս և անարհեստ ծաղկիս, աղաչեմ
302բ [անմեղադիր լինել | | | . . . ։ Գծագրեցաւ և աւարտեցաւ սուրբ աւե-
տարանս ի յՊ. և յՀէ. (1428) Թվականին, և ընծայեցաւ ի դուռն Պա-
ղբկայ վանից սուրբ Աստուածածնին և սուրբ Գէորգ զաւրավարին։
Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ տաճարացս գո-
ղանալով, կամ ծախելով և կամ գրաւելով։ Եւ ով յանդրգնի և հանէ՝
պատիժ պատուհասի կրեսցէ ի Քրիստոսէ, ընդ Կայենի և ընդ Յու-
դայի և ընդ խաչահանացն, ամէն,*

Բ

141բ Ո՜վ կրաւնաւորք և կարգակիցք,
Ծգնաւորաց հանդիսակիցք,
Սուրբ կուսանացն դասակիցք,
Եւ անմարմնոցն հանդիսակիցք,
Որք հանդիպիք այս մատենիս,
Աստուածախաւս սուրբ կտակիս՝
ԸզԱբրահամ մեղաւք գերիս,
Կարգիւ պատուեալ, գործովք յոռիս,

* Այս ընդարձակ ու բովանդակալից հիշատակարանը Ղ. Փիրղալեմյանը իրավամբ համարել է «Տարեգրություն», բայց ամբողջական հրատարակելու փոխարեն՝ըստ առանձին տարեթվերի բաժանել է հատվածների ու ցրել իր «Նոտարք Հայոց»-ի տարբեր թվականների տակ՝ սկսած ՊԿԹ. (1410)-ից մինչև ՊՀԷ. (1428) թվականը։

Փիրղալեմյանի ընդօրինակությունից օգտվելով, հիշատակարանն ամբողջությամբ հրատարակել է Գ. Աղանյանը «Դիւան Հայոց Պատմութեան» ժողովածուի Ժ. հատորում (Թիֆլիս, 1912, էջ 1—5)։ Այդ հրատարակության մեջ կան որոշ հատվածների հապավումներ ու կրճատումներ։

*Ցաղաւթս ձեր միշտ յիշեսջիք.*
*Եւ զողորմին բարբառեսջիք,*
*Ցորժամ սիրով միաբանիք*
*'Ի յԱստուածածնի գուռնա կանգնիք։*
*Իմ աչքս ի ձեզ է հանապազ,*
*Զի իմ գործել մեղք աննուազ,*
*Դուք կարգալով զայս հանապազ*
*Զհոգիս հանէք ի սրբոց դասն։*
142 ա *Այլ և զԹումայ՝ գերեալ մտաւք*
*Եւ զանպիտան հոգիս տիաւք*
*Մաղթեմ յիշել սրտի մտաւք,*
*Սեռն սիրով, բարի կամաւք։*
*Զտէր-ողորմայն լի արտասուաւք*
*Ողորմագին պաղատանաւք՝*
*Ինձ առձայնել սրտի մտաւք,*
*Եւ ձեզ լիցի կրկին չափաւք։*

*Զկնի Ռ. և ԳԾ. և ՂԷ. (1397) ամի համբառնալոյ փրկչին* գծագրեցաւ սուրբ աւետարանս։***

## 401

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4156**

Գրիչ՝ Մելքիսեթ Բաղիշցի
վայր՝ Արճէշ

258 ա *...Արգ, գրեցաւ սուրբ աւ̃ետարանս ի քաղաքս ի Բաղէշ՝ կէսն։ Եւ ի յայնմ աւուր մեղքն մեր բազմացաւ, և աստուած մեզ բարկացաւ և առաքեաց ի վերայ մեր զպարոն Սքանդարն, զոր եկեալ պաշարեաց զքաղաքն մեր, և բազում չարիս գործեաց ի քաղաքն մեր և յերկիրն։ Շատ աստուածարնակ վանորայս աւերեաց և բազում ժամատեղս խափանեաց։ Զոր մեզ փախստական լեալ, ի բազում տեղիս ի շուրջ եկեալ, և շատ վիշտս կրեալ մեզ ի բազում մեղաց մերոց, և ոչ գտեալ մեզ հանգիստ։ Այլ յետո գԹացեալ արարիչն աստուած և առաջնորդեալ մեզ հասոյց զմեզ ի յերկիրս Քաջբերունի: Զոր եկեալ բնակեալ մեր ի քաղաքիս Արճէշ, և եղև աւարտումն սորա աստ, առ ոտս*

---

* *Այստեղ ևս նշված է ձեռագրի գրության 1428 Թվականը։ Այսպես՝ ըստ ավետարանի Քրիստոսը, երբ, խաչվել և համբարձվել է 33 տարեկան հասակում (ուստի քրիստոնեական Թվարկության 33 Թվականին)։ Ուրեմն 1397 Թվականին պետք է ավելացնել Քրիստոսի տարիքը (33 տարի), ստացվում է 1430 Թվականը՝ ըստ հայկական Թվարկության, որը համապատասխանում է այժմ կիրառվող Թվարկության 1428 Թվականին։*

** *Ձեռագրի վերջում կան մի քանի ուշագրավ կալվածագրեր Վարգ-Պատրիկի վանքին անշարժ կալվածքներ նվիրաբերելու մասին։*

սուրբ Ծիրանաւոր Աստուածածնիս և աստուածաբնակ վանորէիցս՝
Մեծափու սուրբ Աստուածածնիս և Արծւաբեր սուրբ Աստուածածնիս,
ի մէջ հեռաւոր և քաջ րաբունապետացն՝ Թումա վարդապետի և Կա-
րապետ վարդապետի, ընդ հովանեաւ գմբեթաձև և գերազարդ հինգ-
խորանացս Կաթողիկէ եկեղեցույս՝ սուրբ Աստուածածնիս, սուրբ Յո-
վ[աննէսի]. սուրբ Ստեփանոսի և սուրբ Յակոբայ։ Ի հայրապետութեանն
258 բ Հայոց տեառն Պօղոսի, ի մեծ թուիս Հայոց ՊՀԷ. (1428), ձեռամբ
սուտանուն քահանայի Մելքիսէթ Բաղիշցոյ։ Եւ իմ անընդունակ գոլով
յարուեստս գրչութեան և բազում մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ
ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում
աշխատանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք, ի սաոյք և յընտիր
աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ։ Արդ,
որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս,
որք պատահիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ յիշեսջիք յաղաւթս
ձեր զստացող սորա զվերոյ յիշեցեալն ի սմա [զՅակոբ կրաւնաւորն,
և զՅոհանէս, և զԹումէն],* և բոլոր հաւատով և սերտ սրտիւ աստուած-
ողորմի ասացէք, և աստուած ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի առհասա-
րակ, ամէն։ Ընդ նոսին և զանպիտան գրիչս զՄելքիսէթ, և զծնողքն
իմ զՅակոբ քահանայ, և զմայրն իմ զԱխաթունն՝ զհանգուցեալն ի Քրիս-
տոս, և զկենակիցն մեր, և դարձեալ զհաւրեղբայրն իմ զպարոն Աշ-
խարբէկն, և զկենակիցն իւր, և զաւակքն իւր՝ զհանգուցեալքն ի Քրիս-
տոս, և զբարի յիշատակն իւր զՅոհանէսն։
259 ա Եւ դարձեալ, զքոյրն իմ զՇահանդուխտն, և զքեռին իմ՝ զպա-
տուական քահանայն զԿարապետ, և զկենակիցն իւր, և զուսուցիչքն
մեր և զխրատատուքն, որք հետ մեզ աշխատել են, և զամենայն ազ-
գականքն մեր՝ զկենդանիքն և զհանգուցեալքն ի Քրիստոս...։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան սխալանացն և խո-
շորութեան ծաղկին և գրին անմեղադիր լինել, զի այս էր կար մեր։

Բ

Եղբարք, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ աւե-
տարանիս և այս | | | յիշես]ջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս
ձեր զանարժան քահանայս զՄելքիսէթ, և բո ] | | այս չա]փ էր կար
մեր, զի վարդպեաի չենք ծառայել և ոչ այլ հանել, այլ ինձ սէր
գո | | |**

* Փակագծի մեջ առնված հատվածը գրված է հետո՝ այլ ձեռագրով։
** Հիշատակագրությունը գրված է երեք տողով. տողերի ձախ կեսը գտնվում է 3 բ էջի առաջին լուսանցքի վրա, իսկ դրա շարունակությունը (աջ կեսը) գտնվելիս է եղել այժմ բացակայող հաջորդ էջի առաջին լուսանցքի վրա։ Այսպիսով, հիշատակագրությունը կիսով չափ թերի է։

## 402

### ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ

Փիրգ. Նոտ. 89—90, Վան, Հայկավանք

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Մեծոփայ վանք

...Ի թուաբերութեանս Հայոց ՊՀԷ. (1428) թուականին գրեցաւ գիրքս սոսկացուցիչ, ի հայրապետութեան տեառն Պօղոսի, և յաշխարհակալութեան շահ Իսքանտարին, որ ունէր զթաղթն և բազում աշխարհ, ի Սօլթանիոյ մինչ ի Մէրտին, և զայս միջոցս զամէն ի ձեռին ունէր։ Եւ զի տղայ էր և չոր գլուխ՝ շատ աւեր եբեր Քրդստանաց, և սպանեց զպարնէքն, և շատ աւար տարաւ և դերի՝ վասն ծովացեալ մեղաց մերոց։ Եւ յայսմ ամի հոգեգալստեան ծնկահար ձիւն եբեկ։

Արդ, այս չար ժամանակիս կրօնաւոր ոմն աբեղայ Սարգիս անուն ետ զգիրս ի գրել և ինքն փոխեցաւ առ Քրիստոս...։ Եւ ես՝ սուտանուն Յոհաննէս, յանձն առի և շնորհօք Քրիստոսի աւարտ հանի։ Գրեցաւ գիրքս լուսազարդ ի վանքս Մեծոփայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Ցակոբիս, և առ ոտն մեծ րաբունապետի Թումայ վարդապետի՝ պարոն Գօրգու աղբեր, և տէր Յոհանիսի, զոր տէր աստուած պահեսցէ զնոսա ի խաղաղութեան ամրածածուկ աջովն իւրով և բարձր ի գլուխ։

## 403

### ՃԱՌԸՆՏԻՐ—ՏՕՆԱԿԱՆ

Վիեն. 224. Տաշ. Ցուց. էջ 583

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Կողուց վանք

ա

431 ա-431 բ Փառք... որ ետ մեզ կարողութիւն հասանել ի յետի գիծ ոսկիփոր աւանականիս յաստուածարնակ ուխտս որ կոչի Կալուց վանք, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, եւ սուրբ Նշանացն Քրիստոսի։ Ցառաջնորդութիւն երջանիկ... մեծ րաբունապետին Յակովբայ: Ի խնդրոյ հաւատարիմ եւ աստուածասէր տանուտիրոջն պարոն Մկրտչին, որ մեծաւ փափագանօք... ետ գրել զսա յիշատակ իւր, եւ ծնողաց իւրոց՝ Սալաթելին եւ տիկին Մելեքին, եղբարցն՝ կենդանւոյն Ստեփանոսի, եւ փոխեցելոցն առ Քրիստոս Սահակին եւ Գէորգ սարկաւագին, եւ կնոջն՝ Նունուֆար-խաթունին, եւ որդւոյն Յոհանէս սարկաւագին։

Եւ ես՝ ամենամեղ եւ սխալամիտ գծողս Կարապետ աբեղայս տեռի զփափագ սորա եւ տկար անձամբ ի գրել սկսայ։

...Արդ, գրեցաւ սա ձեռամբ նոյն անմար Կարապետի եւ անպիտան գրչի, յամի ՊՀԷ. թըւականի մերումս տումարի (1428)։ Ցաշխարհակալութիւն եւ ի տիրութիւն թախտին Իսքանդար իմիրզին, որ տիրեաց Պարսից եւ Բաբելացւոց, Հայոց եւ Միջագետաց Ասորւոց, յԱրա–

բաթեան տանէն Հայոց՝ մինչ յԵզնկայն, ի Մերդին, ի Բաղդատ, ի Սուլթանիայ, եւ ի Գանձակ շահաստանն Թաւրէզ, եւ մինչ ի մեծ գետն Քուռ: Զայս ամենայն ի բռին ունէր Իսքանդար խմիր[զ]այն։

Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւգտութեամբ ինչ իւիք՝ յիշեցէք ի միտս բարիս եւ ի հայցուածս պատկանաւորս՝ զստացող սորա զՄկրտիչ* հաւատարիմ տանուտէրն ... քանզի ստացաւ զսա իւր զաւակ հոգւոյ եւ յիշատակ բարի յեկեղեցի ...։

Արդ, աղաչեմ զամենեսեան [յիշեցէք] յաղօթս ձեր՝ զբազմամեղ գրիչս Կարապետ, եւ զծնաւղսն իմ զԽաչատուր եւ զԱղբրաց, եւ զեղբարքն՝ զԱւետիս սրբասնունդ եւ բարեմիտ աբեղայ, որ պայծառ է իբրեւ զջահ ի մէջ եկեղեցւոյ, եւ զԹումայ քահանայ, այլ եւ զվարպետն իմ զԹումայ կրօնաւոր, եւ զծնողսն իւր զԱբրահամ եւ զՀերիք-Տիկին, ամէն։ Այլ եւ զհոգեւոր հայրս մեր զՄելքէսէթ առաջնորդ սուրբ ուխտիս ...։ Այլ եւ յիշեցէք ի Քրիստոս զհոգեւոր եղբարքս իմ՝ զԱնդրիաս սրբասնունդ կրօնաւոր՝ զեղբայր մեծ հռետորին Յակովբայ, ... եւ զաշակերտքն իւրեանց՝ զՅովհանէս գրոց աշակերտ եւ զՅոհանէս Ղազարոսենց, զՄխիթար եւ զՄարտիրոս, զՀայրապետ եւ զՄարտիրոս, զԴանիէլ փակակալն եւ զՆերսէս փիլիսոփայն, զՄկրտիչ եւ զԹումաս, եւ զայլ միաբանք վանացս՝ զսարկաւագ եւ զաշխարհական՝ զմեծ եւ զփոքր, որ կան ի դուռն սուրբ Լուսաւորչին։ Ո՛վ կարդացողք եւ լսողք, վասն եղբայրսիրութեան գրեցաք, որ ի կարդալն չձանձրանայք ...։

Բ

Վայր՝ Արծկէ

432 ա Ընդ նմին եւ աստուած-ողորմի ասացէք Յոհանիսին, Եղիին եւ Իկտիշ մամուն, զի գիրքս բոլոր ի յԱրծկէ գրեցաւ, զի փախած էաք ի քրդուն, եւ ի սոցա տունն հանգչաք, Քրիստոս յիւրեանց հոգին հանգչի, ամէն։**

## 404

## ՔԱՂՈՒԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

Ալիշան, Հայկարան

Գրիչ՝ Ստեփանոս

Գրիչ Ստեփանոս, որդի պարոն Մկրտչի և Մլքէ-խաթունի, եղբայր Աբրահամի և Սարգսի, ի քաղաքիս | | | ան,*** ի հայրապետութեան տեառն Պաւղոսի և յԱղթամարայ Դաւթի, ի խանութեան Սքանդարի, ի Թշուառ և ի չար ժամանակիս, որ եղև Թանկութիւն սաստիկ, որ մի բեռ հացն է Ռ. (1000) դրամ։

---

* Վրան գրված՝ «զՆերեմիան»։

** Ձեռագրում կան նաև բազմաթիվ մանր հիշատակագրություններ, որոնցում հիշվում են նաև «քարտես կոկողներ» Թումայ աբեղան (էջ 100 ա), Աւետիս կրօնաւորը (էջ 100 ա) և Ղազար սարկաւագը (էջ 341 բ)։

*** Հավանաբար եղել է «Ոստան»։

## 405

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 0401*

*Գրիչ՝* Մովսէս Անկեղակութեցի
*վայր՝* Անկեղակութ

240 բ *Փառք . . . որ ետ կարողութիւն անարժան և ապուշ գրչի* Մովսէ-
սիս Անկեղակութեցոյ *հասանել ի վերջին գիտութեան աստուածաբան
սուրբ աւետարանիս . . . ։*

*Այսմ մեծ երանութիւն փափաքեալ հոգով ոՌ երկիւղած քրիս-*
250ա *տոնեայ* Տաշ *անուն, և ստացաւ ի սուրբ աւետար* [|անս| *հալալ ար-
դեանց իւրեանց, վասն զի ոչ ունէր զաւակ մարմնոյ, յոյս եդեալ ի
սուրբ աւետարանս ըստ [խո]ստմանն տեառն, եթէ՝ Ես եղեց նմայ ուս-
տերս և դստերս . . . ։*

*Արդ, ես՝ անարժանս* Տաշ *ստացայ զսուրբ աւետարանս յիշատակ
հոգոյ իմոյ և ծնողաց իմոց։ Եւ յետոյ իմ սրտիս յաւժարութեամբ*
Հայրապետին *յազգէ յազգ և ինձ յիշատակ յաւիտեանն։ Եւ յայժմ յե-
րես անկեալ դառն արտաս[ու]աւք, աղաչեմք հանդիպաւղ սուրբ աւե-
տարանիս յիշել ի սուրբ աղաւթս ձեր զիս և զծնաւղս իմ . . . ։*

250 բ *Գրեցաւ աստուածահոս քառաբուղխ [ջռւ]րս, աստուածախաւս
հրամանս, ի թվկայութիւնս ՌՀԷ. (1428), ի հոչակաւոր գեղս* Անկե-
ղակութ. *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի ղանութիւն* Սքան-
դար *միրզին, և յիշխանութիւնն* Բէշկ[են]ին, *և տանըտրութիւնն* Շա-
պանին: *Վասն որոյ և ես՝ մեռեալս հոգով և նեղեալս ի բազմադիմի
հէնից չարին՝ հեծեծեալ աղէտիւ և տգնաթաղիծ մաղթանաւք, հայ-
ցեմք ի մանկանց սուրբ կաթուղիկէի յիշել ի մաքրափայլ յաղաւթս
ձեր զ*Մովսէս *անարհեստ գրիչս, և զծնողս իմ* զՄխիթար, *և զյուսու-
ցիչն իմ* զՍանփանոս, *և զեղբայրն իմ* զՆերսէս, *և զայլ ամենայն մեր-
ձաւորն իմ ի Քրիստոս, և իբրև կաթիլ մի ի դուլէ ձերոյդ կենեղուտ
լեառնէ կարկաջահոս իջմամբ ցաւղելով ի մեր պապքեալ և տոչորեալ
հոգի՝ զովացուցել զծարաւ տագնապի խորշակահարս հայցողի* Մով-
սէսի, *որ և զարժանն և եթ, զանիմանալին յեղական սեռից զանպա-
տում և զանճառ ուրախութիւն առնոյք փոխարէն ամենառատ պար-
գևողէն։*

## 406

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Արարատ», 1911, էջ 567, «Ազուլիս և շրջակայք», № 23*

*Գրիչ՝* Եղիայ Հաղրուղեցի
*վայր՝* Ճգնաւորի Քար

342 բ *. . . Ցանգ ելեալ աւարտեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ յոգնա-
մեղ և փցուն գրչի* Եղիայի, *որ անուամբ կոչիմ աբեղայ և ոչ գոր-
ծով, աշխարհաւ յ*Աղվանից, *և տեղեաւ* Դիզակեցի, *և գեղաւ* Հադրուդեցի։

Դրեցաւ սուրբ մատեանս ի յանապատիս որ կոչի Ճգնաւորի քար, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, որ է մաւտ* ի քաղաքս Եղեգիս. ընկերակից մեր տէր Սարգիս կուսակրաւն և ճգնազգաց | | | ընդիս քահանտյիս | | | է պատճառ մեզ հանգստեան այսմ դառն ժամանակիս. անփորձ և անսասան պահեսցէ զսա Քրիստոս աստուած յայսմ կենցաղիս և յետ աստեացս ընդ ճշմարիտ քահանայիցն լիցի դասակից և պսակակից։

Դարձեալ, աղաչեմ զձեզ զծնօղսն իմ ըստ մարմնոյ՝ զհայրն իմ զՄէսար, և զեղբայրն իմ զՋէսար, և զամենայն արեան մերձաւորս իմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ ի բարին, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զձեզ հանդիպողք սորին՝ զվարպետն իմ զտէր Յաքանաս յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր և զմեղսապարտ գրիչս, որ յետ սակաւ ժամանակաց ձեռս իմ հողանայ և մաղթանք իմ առ ձեզ մնայ...։

Ի թվիս Հայոց ՊՀԷ. (1428)։

407

ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 73, սյուն. 135—136, ԲՑՎ 252, Վանի Ցայնկոյսներաց եկեղեցի

Հետ. ստացող՝ Պետրոս Եղեգեցի

Կամաւն ամենակալին աստուծոյ ես՝ տէր Պետրոս արհեպիսկոպոս (Եղեգեցի), վերադիտող այսմ Նահանգի, իմ կամաւ և յաւժարութեամբ զիմ աւետարանս, որ բերի յՆրուսաղէմայ, ստացուած հալալ արդեանց իմոց՝ ավի իմ սանամայր պարոն Սէթի-Խաթունին** և իւր աստուածատուր զաւակացն՝ կենաց բարեխօս և քաւիչ յանցանաց, որ քանի կենդանի է՝ յամէն տարի Բ. (2) պատարագ տայ առնել մեզ, և երկու ոչխար մատաղ՝ անխափան։

Աստուած շնորհաւոր առնէ պարընացն զսուրբ աւետարանս՝ անջինջ յիշատակ հոգոց նոցա այժմ և յապագայն և յետ մահու, և բարեխօս առաջի զենման անմահին։

Հաստատ է կտակս կամաւն աստուծոյ։

Դրեցաւ յիշատակս ձեռամբ պիտակ պետի Յովանիսի, առ դրան սուրբ Աստուածածնիս, և Գէորգեայ զօրավարիս, և սուրբ Ստեփանոսիս, ի թվաբերութեան հայկազեան տոմարի ՊՀԷ. (1428)։ Աստուած շորհաւոր առնէ, ամէն։

* Տպված է՝ «որ եմուտ»։
** ԼՑՎ՝ «Սիթի-Խաթունին»։

## 408

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 5211*

*Գրիչ՝* Մանաւէլ
*Վայր՝* Աղուանք, Շուշու գիւղ

ա

359 բ ...*Արդ, գրեցաւ աստուածագիծ սուրբ աւետարանս ձեռամբ*
*[յ]ոգնամեղ և ապիկար գրչի տէր* Մանաւէլի,* *ի Թվականութեանս*
*Հայոց* ՊՀԷ. *(1428), ի յաշխարհիս* Աղուանից, *ի վիճակս* Ամարասայ, *ի*
360 ա *գեղս* Շուշու *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի կա-*
*թողիկոսութեան տէր* Յոհանիսի, *զոր տէր Յիսուս պահեսցէ երկար*
*ամաւք, ամէն, և ի բռնակալութեանն* Ըսքանդարին, *որ է Թորգոմա-*
*ծին և չարչարող քրիստոնէից, և յոյսն աստուած է։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ աւետարա-*
*նիս, յիշեցէք զիս՝ զտառատիպ գրողս զտէր* Մանաւէլ, *և զծնողսն իմ,*
*և զամենայն ազգայինսն իմ, և աստուած, որ առատն է ի տուրս պար-*
*գևաց, ողորմեսցի մեզ և ձեզ, ամէն, և որ յիշէ յիշեալ լիցի առաջի*
*Քրիստոսի, ամէն։*

բ

Ալէքսիանոս եպիսկոպոս Ամարասայ

10 բ *Տէր* Մանուէլայ *գր[ե]անքն բաժանեցին, աւետարանք անկաւ ի*
Մեսրոբ: *Ես՝ տէր* Ալեքսիանոս *գրեցի, որ* Մեսրոպայ *հախ ելաւ, ապ-*
*րանք* Մեսրոպայ *ելաւ և իւր որդոյն* | | |** *ոչ ով ուժ չանի կալըս-*
*տան*** *պահի, քանի որ կենդանի է, ոչ ով ուժ չանի։* Մկրտչայ *աս-*
*տուած-ողորմի ասէ և իւր ննջեցելոցն։*

գ

*Կամաւ ամենակալին աստուծոյ. յորժամ որ տէր* Մանուէլ *վախ-*
*ճանեցաւ՝ գրեա<եա>նքն բաժանեցին տէր* Մանուէլայ *եղբարքն։ Դ.*
*(4) եղբարքն էին տէր* Մանուէլայ՝ [Մեսրոպ],**** Խոջազիզի, Մկրտիչ *և*
Մարտիրոս՝ Ջանազիզայ *որդի։*

*Ես աէր* Ալեքսանոս՝ *եմ եպիսկոպոս* Ամարասայ, *և յիշատակ տէր*

---

* *Բնագրում՝ «Մաւանէլ»։*

** *Մեսրոպի որդու անունը ջնջված է։*

*** *Սույն բառի երկրորդ տառը լավ չի երեւում, կարելի է կարդալ նաև «ու» և այլն, սակայն կարծում ենք, որ մեր առաջարկածը («կալըստան») ճիշտ է, և պետք է նշանակի այստեղ՝ «կալ մեջ առնել», «սեփականել»։*

**** *Եղբայրներից Մեսրոպի անունը ջնջված է, վերականգնում ենք նախորդ հիշատակագրության տվյալով։*

Մանուէլայ, և որդի նորա Կոստանդիանոսի. և որդւոյ որդի Ոյիսի* և այլոց։**

## 409

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Երնջակ», էջ 253

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Ամարասայ վիճակ, Քթիսոյ վանք

ա

...Գրեցաւ աւետարանս ի Թվ. Հայոց ՊՀԷ. (1428), ձեռամբ մեղապարտ գրչի տէր Մանուէլի, ի վիճակս Ամարասայ, ի վանքս Քթիսոյ, ի դառն և անբարի ժամանակիս, որ Թորգոմացի ազգն տիրեն աշխարհի, և ամենեքեան ի մեծ վշտի կան, և ազատութիւն տեառն կամքն է։

Արդ, աղաչեմ զհանդիպողք կենաց բարբարողիս, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զտէր Մանուէլ մեղաւոր հոգս, և ըզծնօղսն իմ, և զամենայն երախտաւորս ի յաշխարհի...։

բ

Ստացող՝ Մելքիսէդ

Ես նուաստ Մելքիսէդ աբեղայ, որդի Ասադայ, ետու գրել զաւետարանս ձեռամբ տէր Մանուէլա, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Ասադայ, և մաւրն իմոյ, և եղբարցն իմոց, և ամենայն ազգականաց և արեան մերձաւորաց...։ Ով որ կարել ջանայ զյիշատակարանս՝ նզովեալ լիցի ՅԺԸ. (318) հայրապետացն, մասն և բաժին զՅուդային առցէ, ամէն։

## 410

## ՄԱՇՏՈՑ

Երևան 3456

Գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Խութ գաւառ, Քեռւու գիւղաքաղաք

ա

204բ ...Գրեցաւ սուրբ տառս, որ Մաշտոց անուանի*** ձեռամբ անարժան փծուն և անմար գրչի Մելքիսէթ քահանայի, ի գաւառիս, որ Խութ կոչի, ի գեւղաքաղաքս, որ Քեռւու անուանի,**** առ ոտս սուրբ

* Բնագրում մեծ դժվարությամբ կարդացվում է «դրի ոյիսի»։ Ենթադրաբար սրբագրում ենք՝ «որդի Ոյիսի»։

** Հիշատակարանի վերջին նախադասության իմաստը մութ է մնում։

*** Բնագրում՝ «անուանուան»։

**** Բնագրում՝ «անուանանի»։

անապատի գլխոյն մեծին Թադէոսի, որոյ անուն Վանդիր կոչի, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի 'ւ որդւոյ նորա Մարտիրոսի և սրբւոյն Շամօնի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա ուսմամբ՝ կար-
205 ա դալով, աւրինա ‖ կելով կամ հարենցի, յիշեսջիք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր զՍիմէոն քահանայ, և զծնաւղսն իւր՝ ըղհայրն Ուզբէկ* և զմայրն իւր ըզԽմչայն*, և զեղբայրքն իւր, և զորդիքն, և զԱյմելէքն, որ ստացաւ գիրքս*, և զամենայն արեան մերձաւորքն, և լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք Ամելէքին* և ծնողաց իւրոց, որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց և ի յարդար վաստակոց, զոր տէր աստուած վայելել տացէ՝ երկար ամաւք մինչև ի խորին ծերութիւն, ամէն։ Այլ և զմեղուցեալ գրիչս զՄելքիսէթ քահանայ, և զհայրն իմ զՅակոբ քահանայ, և զմայրն իմ զԱխաթունն, և զամենայն
205 բ արեան մերձաւո ‖ րքն մեր յիշեցէք․․․։

Ի թվկ. Հայոց ՊՀԷ. (1428), ի յարեգ ամսո ԺԶ. (16), ի յունիս ի ԺԸ. (18), հրորտից ի Է. (7) գրեցաւ յիշատակարանս։

Բ

Աւաղ հազար յէս քնի զահմաթէս։
Աւախ հազար ի յայս քնո զահմաթէս։**

## 411

## ՄԱՇՏՈՑ

Երևան 6050

Գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Խութ գաւառ, Քեռու գիւղաքաղաք

ա

․․․Գրեցաւ սայ ի գաւառիս, որ Խութ կոչի, ի գեւղս, որ Քեռու անուանի, ‖ առ ոտս սրբոյն Վանդրի՝ գլխոյն մեծին Թադէոսի, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրայվարի և որդոյ նորա Մարտիրոսի և սրբոյն Շամաւնի։ Արդ աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա ուսմամբ, կարդալով, օրինակելով կամ հարեանցի՝ յիշեսջիք ի Քրիստոս զՅովանէս կրաւնաւորն, և զծնողսն իւր՝ զհայրն զէնկիպէկն, և զմայրն զՇնոֆորն, և զամենայն արեան մերձաւորքն իւր․․․։ Որոյ տէր աստուած վաելել տացէ իւրն և եղբօրորդոյն իւրո Սիմէոն քահանային, մինչ ի խորին ծերութիւն խաղաղական կենաւք, և ինքն զփողարէնն յաստուծոյ առցէ ի միւսանգամ գալստեան հազարապատիկ և բիւրապատիկ, և ընդ սրբոցն դասեսցի ամէն, եղիցի։

* Գրված է այլ թանաքով ու ձեռագրով։
** Գրված են 13 ա և 63 ա էջերի ներքին լուսանցքներում։

Բ

142 բ Զստացող սուրբ գրոցս զՅովանէս կրաւնաւորն յիշեսջիք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք ծնօղացն իւրոց։ Եւ գարձեալ ինձ՝ մեղայպարտ և փծուն գրչիս Մելքիսէթ դպրիս* թողութիւն խնդրեցէք ինձ և ծնաւղացն իմոց ի Քրիստոսէ աստուծոյ, և աստուած զձեր գործեցեալ մեղքն թողու, ամէն։ Դարձեալ յիշեսջիք զԿարապետն ի Քրիստոս, որ քաղցրութեամբ զկաւկիչն էրէտ։

Գ

24 ա Խոշորութեան անմեղադիր լեր [եղբայր], զի աւուրքս ցուրտ։

Դ

37 ա Ո՞վ սուրբ ընթերձողք, խոշորութեան անմեղադիր լինիք, զի աւուրքս այս խիստ դառն հանդիպաւ ինձ յիմ մեղացն։

Ե

58 ա Խոշորութեան անմեղադիր [լեր] և զՄելքիսէթ դպիր առ աստուած յիշեա։

Զ

62 ա Եթէ յոճ չնստի քեզ գիրս՝ նա պատճառն այն է եղբայր, որ ձիթի տակն էր, և ճրագն լուս պակաս։

Է

89 ա Եւ կարդա, և զանպիտան Մելքիսէթս առ տէր յիշեա, և խոշորութեան գրիս անմեղադիր լեր, քանզի գիշերն գրեցաւ՝ ի ճրագն, քանզի ցորեկն պզտիկ էր, և ցնորն շատ, և սիրտս խոցած յեղբաւրէ։

Ը

126 ա Եղբարք, որք հանդիպիք սմա յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՅովանէս կրաւնաւորն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց։

Թ

132 ա Խոշորութեան անմեղադիր լեր, ո՜վ եղբայր, զի գիշերն եմ գրեր՝ ի ճրագն, յամէն գիշեր Ը. (8) թուխթ և ցորեկն՝ երկու թուխթ կամ երեք։

Ժ

162 ա Ա՜յ ախ, սիրտ խոց և միտք մոլոր, զթուն մայր և սիրուն եղբայր կորուսած։

---

* Նախորդ հիշատակարանի գրիչ Մելքիսէթն է, ըստ այդմ էլ այս անթվական հիշատակարանը տեղադրում ենք նույն գրչի 1428 թվականին գրած հիշատակարանին առընթեր։

412

ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ. 90, Վան

Գրիչ՝ Մարգարէ
վայր՝ յերկիրս Բուխտանից

ա

...Արդ, կատարեցաւ.... աւետարանս ի խնդրոյ պատուական և աստուածասէր քահանայիս Խաչատրոյ... հօրն Թումայ քահանային, և մօրն Հռիփսիմին, և կենակցին իւրոյ Սաւարքային...։ Եւ արդ, ես՝ ունայնացեալս ի գործոց բարեաց... Մարգարէ փանաքի գրիչս...։ Արդ, աւարտեցաւ աւետարանս յերկիրս Բուխտանից, ընդ հովանեաւ սրբոյ Սարգսի զօրավարիս, ի թվիս Հայոց ՊՀԷ. (1428)։

Ո՜վ եղբարք իմ սիրելիք, ի յաւուրս յայսմիկ խիստ արամութիւն հանդիպեցաւ մեզ, զի հարկեոր և պատուական սանուաէրն, որում անուն էր Մարտիրոս, որ զօրինակն մեզ շնորհեաց... այսօր նահատակեցաւ։ Քրիստոս աստուած դասակից արասցէ զՄարտիրոսն ընդ սրբոց մարտիրոսաց և զուրախութեան ձայն՝ լսել տացէ նմա՝ Թէ եկ բարի ծառայ և հաւատարիմ, մուտ յուրախութիւն տեառն քո՝ ընդ երջանկին սրբոյն Ստեփաննոսի, ամէն։

բ

Զստացող սուրբ աւետարանիս զԽաչատուր քահանայն...և կենակցին իւրոյ Սաւարքային,... ես առաւել զհոգևոր հայրապետն մեր զԹումայ եպիսկոպոսն, և զծնօղսն իւր՝ զՊօղոս քահանայն և զՄարեմն, և զեղբայրն զԱտոմ քահանայն, և զքոյրն զՈսկին [յիշեցէք]...։

413

ՑԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 5972

Գրիչ
վայր՝ Ս. Կարապետի վանք, Մո՞ւշ

Ի յութ հարիւր Հայոց թվի
Եւթանասուն և եւթնեկի (1428),
Ի քսանվեց* ամսո հոռի,
Ի ի տասնիննի** յունվարի
Վճարեցաւ երգ սքրբալի,
Զոր ասացեալ տէր Ներսէսի
Կըլայեցո և Տարսոնի.

* Բնագրում՝ «ԻԶ» (26)։
** Բնագրում՝ «ԻԹ-ն» (29)։

Ի յիշատակ Ամիր-Սարգսի
Եւ ծընաւղաց իւրոց բարի·
Որ և աղաչեմք զտէրն ամեն[ի]
Գահել ամբողջ յայսմ աշխարհի
Զինքն իւրոյաւքն հաւաստի,
Երկար կենաւք լինել յերկրի։
Եւ յելանելն իւրում յաստի,
374 բ Ընդ || իշխանացըն պըսակ[ի]
[Ար]րահամու և ընդ Դաւթ[ի]
[Եւ] այլ սըրբոց հարցըն նախ[նի],
Զի ետ գրել ըղձմամբ սրտի
Զստ, որ Յիսուս Որդի ասի·
Զի յորժամ գա տէրն ամենի,
Նստի յաթոռն դատաստանի,
Յայնժամ տացէ սմա տեղի՝
Յեդեմ դըրախտ ընդ հայրենի,
Եւ ես մեռեալ մեղաւք ի լի,
Որ անըզգայ եմ ի բարի,
Շատ մի բաներ կայր ի մտի,
Որ շարէի յայս նափորտի,
Բայց ոք չըկար յայսըմ վայրի,
Որ միտ դնի [ի]մում բանի,
Եւ ես աւտար այս գաւառի
Ի դըրան սըբոյ Կարապետի
Դարձեալ ըզ | | |

## 414

## ԳԱՆՁԱՐԱՆ

Նխվկայ 187/24, Մ. Տ. Ա.

Գրիչ՝ Մխիթար

182 բ Աւետիս աբեղայն ի Նկարենոյ վանիցն, բազում աշխատութեամբ շրջեալ ի գերափրկանք ճանապարհ, հանդիպեցաւ ի սուրբ ուխտս Նախավկայս, հանգեաւ խաղաղութեամբ առ Քրիստոս ի Թվ. ՊՀԷ. (1428), ահկի ամսոյ Է. (7)։

## 415

## ՀՈՒՇՄՈՒՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՐՈՏՆԵՑՒՈՅ

Վենետիկ 525

Գրիչ՝ Թադէոս Ավրամենց
վայր՝ Կաֆայ

Սկսեալ ի ՊՀԷ. (1428) ամի, նոյեմբերի Լ. (30) օրն, քանզի յայսմ աւուր սկիզբն արար մեծ վարդապետս և քաջ հռետորս և արին տէր

Սարգիս դաս տալ և ուսուցանել... մեզ եղբարցս՝ տէր Թորոսին և տէր Սիմէոնին և ինձ՝ յետնեալ փանաքոյս Թադէոսի, որ զլուծմունքն փոխեցի՝ զամէն աւուր զդասն միայն։ Եւ ուշիկք և հանդարտ կարդացաք զԳորփիւրն և զԱրիստոտէլն, և ի հոկտեմբեր ամսոյն վճարեցաք, քանզի երբեմն-երբեմն խափան պատահէր ի պատճառէ իմեքէ։*

## 416

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Ալիշան, Հայկաբան (Փարիզ)*

Գրիչ՝ Քրիստոսատուր։
վայր՝ Կաֆա

215 ա ...Գրեցաւ Խազտետրս ի թուականութեան Հայոց ԳՀԷ. (1428)։ և ի հայրապետութեան տեառն Կոստընդեա, ի յաշխարհս Հոռոմոց, ի մայրաքաղաքս ի Կաֆայ, ընդ հովանեաւ և յառ ոտն սրբոյն Անտոնի անապատականին, յեպիսկոպոսութեան Յովսէփոս Գաղատացւոյ, և ի վարդապետութեան Սարգիս վարդապետի, որ է առաջնորդ սուրբ ուխտիս և ուսուցիչ մեր, ձեռամբ Քրիստոսատուրի մեղապարտ կրաւնաւորի։**

Արդ, այժմ եղանակաւոր տառիս ցանկացող եղեալ եռափափագ սիրով Աւետիք կուսակրաւն աբեղայն զսա ետ ինձ գրել՝ Քրիստոսատուր անարժան գրչի, յիշատակ հոգւոյ իւրոյ, ի լաւ և յընտիր օրինակէ, որ կոչի Առաքելցի...։

---

* Թադէոս Ավրամենցի մյուս հիշատակարանը Սարգիս վարդապետի դասախոսությունների մասին, որ նա կարդացել է Կաֆայից ոչ հեռու գտնվող ս. Անտոնի վանքում, տես 1429-ի թվաշարքում։

** Գրչի ծնողներն են Սիմոն և Անճա-խաթուն, եղբայրք՝ Գրիգոր և Խաչատուր։



ՊՀԸ 1429

## 417

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Փարիզ 33, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Գառնոյ գաւառ, Մանուչլի անապատ

100 Արդ, յանգ ելեալ աւարտեցաւ հոգիաբուխ Մանրուսմունս, որ կոչի տետր, ի գաւառս Գառնոյ, ի յանապատս, որ կոչի Մանուչլի. որ է ի սիրտ լերինս Այրիվանուց, յորում բազմեալ կայ գեղարդն աստուածամուխ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանսսիս, և սուրբ ճգնաւորաց սուրբ գերեզմանացս, ի յառաջնորդութեան սուրբ մենարանիս Ստեփանոս միայնակեցիս, ի հայրապետութեան մեծ աթոռոյն տէր Թէոդոր Կոստանդնի (*)։ Ի յայսմ ամի եկն չաղաթէն արևելից՝ ի Սամարղանդայ՝ Շահռուխ անուն, որդի Լանգ-Թամուրին, բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք, և էառ զԳաւրէժ քաղաք, և զԹուրքման ազգն աւառ էառ և զբազումս գերի վարեաց։ Բայց զայս միայն էր բարութիւն, զի սպանումն և արիւն ոչ արար և զԹուրքման ազգն ցիրուցան արար ընդ երեսս երկրի։ Եւ ազգս քրիստոնէից փախստական ի ծերպ և ի ծակ մտած և ի յիւրեանց բնակութենէն ելած։ Եւ փախուցեալ Թուրքմանն՝ Թալանեաց զաշխարհս Հայոց. զհաց և զգինի հանին և մեծ աւերութիւն ածին աշխարհիս, և ի խիստ վտանգի կայ ազգս, ահ ու երկիւղն պատել է, կու վախեն, թէ զամէն ազգս գերի վարեն յորժամ գարնանէ, բայց նա, որ զընութիւնս ազատեաց ի ծառայութենէն սատանայի՝ նա ազատէ։

Արդ, գրեցաւ սա ի Թվականութեանս Հայոց ՊՀԸ. (1429)-ն ձեռամբ յոգնամեղ և փցուն վարդապետիս Գրիգորի, ի դառն և յանբարի ժամանակի, զոր փախստական եկաք ի յանապատս, և ամիս երկու մնացաք ի տեղ։ Եւ մենարանիս հայրն իւր միաբանաւք ծառայութիւն ոչ սակաւ արարին, զի բազում աշխատանք կրեցին ի վերայ մեր և խնդրեցին զայս Մանրուսմունքս, և թէպէտ դառն էաք ի ներքին սատանայի հնարիցն և յարտաքին, ի զանազան փորձանաց, բայց սէրն հարկեց զմեզ և սկսաք աւգնականութեամբն աստուծոյ և կատարեցաք։

Արգ, աղաչեմ զուսանողքդ և աւրինակողք յիշեցէք ի Քրիստոս աստուած զՍտեփանոս միայնակեցն և զծնողսն իւր, և զՍտեփանոս աբեղայն և զծնողսն, և զայլ մի[եղէն] եղբարքս, զԱռաքել կրաւնաւորն, և զԱնտոն ճգնաւորն յիշեցէք, ընդ սոցին և զերախտաւոր ուսուցիչն իմ զԳէորգ վարդապետն... և զիս անարժան գծողս Գրիգոր վարդապետս,

ղծնողս իմ զՕվանէս կրաւնաւորն, զորգիացեալս իմ... և վասն խոշորութեան և սղալանաց անմեղադիր լերուք, զի ժամանակս ցայս չափս կատարեաց...։

418

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 987

Հեա. ստացող՝ Աւագ

ա

234ա Զվերջին ստացող սուրբ աւետարանիս՝ զԱւագս, և զծնաւղսն իմ զՇնոհաւոր և զԹղթիկ, և զամենայն արեան մերձաւորսն իմ յիշեցէք ի Քրիստոս, որ ես՝ Աւագս ի հալալ ընչից իմոց ստացայ զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնօղաց իմոց, և ի վայելումն դեռաբոյս պատանեկին՝ եղբօրորդւոյն իմոյ Սարգսին, զոր տէր աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս։ Աղուբ շայն գերի կու տանէր, ես Աւաքս Թափեցի։

Բ

213բ Ցանուն աստուծոյ ես՝ Բեշկէն, որդի մեծի իշխանին Սմպա[տա]յ, տեսի զաւետարանս, որ բազում ժամանակ ի մեր երկիրս էր ու գնել էր Տանծիկանց Աւագն։ Երեկ Թումայ երէց Սիւնայվանից, թէ այս մեր եկեղեցոյն է, Սիւնեվանից թալան է տարել, ու երդումն կերաւ։ Ես Բեշքէն, որդի պարոն Սմպատին տուի մեզ արեշատութեան ու մեր նախ[ն]եացն յիշատակ ի Սիւնեց վանիցն, որ Սիւնիվանք ասեն։

Ես Յովհանէս վարդայ[պ]ետ, որ զգիրս գրեցի, վկայ եմ. Ես Յովանէս եկեղեցայպան Վաղադնոյ [վա]նացն վկայ եմ։ Ես Դիլանճի՝ որդի Լեշին վկայ [եմ], ես Պաշաքաթ՝ որդի Էլէկ[ս]անին Լոռեցի վկայ եմ, ես Էլաուր՝ որդի Փալիկին վկայ եմ, ես Ափղազ՝ որդի Սեթիկայ, որ մեր հայրն ու հաւրեղբայրն Աւաքն գնել էր, մեք էլ յետ տուինք, մեք ենք Դաւայքարու տէր՝ տուինք ի յեկեղեցին Սիւնէվանից, ոչ ում խաւսք, ու զրոյց չկայ, աստուած շնհաւոր առնէ։

Ամիս արեգ, Թուական Հայոց ՊՀԸ. (1429)։

Դաւայքարն պատժաւք լինի ։

419

## ՄԱՇՏՈՑ

Երևան 1028

Կազմող՝ Սարգիս
վայր՝ Յաղրճին

Ես մեղայպարտ Սարգիս սարկաւարքս, որ կազմեցի Մաշտոցս յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի հայրապետութեանն տէր Մխիթար

եպիսկոպոսի՝ հոգևոր հաւրն իմ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որ կոչի Յաղրձին, ի թվ. Հայոց ՊՀԸ. (1429). ի մարտ ամսոյն Ե. (5):*

## 420

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 7740**

Վայր՝ Սուլթանիա՞

391ա Սոյն սուրբ աւետարանս է յիշատակ պարոն Հնդուշահին, և կենակցին իւրոյ խաթուն** Մամաչային, և զաւակացն՝ Սաֆար-Մելիքին, պարոն Մելիքշահին, և եղբարցն պարոն Խարշահին, պարոն Թուրանշահին, պարոն Թուրկանշահին, պարոն Ամիրշահին, որ թափել են զսուրբ աւետարանս ի ճղաթայէ, հալալ արդեամբ իւրեանց։

391բ Այժմ դիպող ժամանակիս կաւանդ[ին] վերոյգրեալ պարոնայքս ի սուրբ Սարգիս, ի յաթոռ եկեղեցին, յիշատակ իւրեանց և ծնողացն։ Ի թվ. Հայոց ի ՊՀԸ. (1429), աւգոստոսի ամսոյ ԻԳ. (23), զի կացցէ սա յիշատակ անջնջելի ի ներհակացն։ Ով ոք ոչ ունի իշխանութիւն զսուրբ աւետարանս կամ գրաւելով, կամ ծախելով, կամ այլ բազում պատճառաւ։ Ազատ է, ազատ է։ Որ ոք յանդգնեսցի դրուատելոյս մեր զպատիժն առցէ զԿայենի, զՅուդայի և զխաչահանուացն, և պարտական լիցի [մր]եան ազգականաց մերոց առաջի Յիսուսի Քրիստոսի մեծ հրապարակին. և ով ոք զանարժանքս յիշման արժանի արասցէ, և ինքն յիշեալ լիցի ի մարանաթային Քրիստոսի աստուծոյ՝ աւրհնելոյն յաւիտենից յաւիտեանս, ամէն։ Եւ նոյն շնորհօք սուրբ աւետաբանիս Ա. (1) շուրջառ ծիրանի աթլաս, զի կացցէ յիշատակ ի սուրբ Սարգիս եկեղեցին՝ վերոյգրեալ բանադր[ան]աւք և դաշամբքն, ամէն։

## 421

## ՄԱՇՏՈՑ

**ԲՑՎ 287**

Գրիչ՝ Յովանէս
վայր, Թուխ գիւղ

Փառք... որ ետ կարողութիւն սղալամիտ և մեղսապարտ Յովանիսիս և հասոյց ի յաւարտ Մաշթոցիս...։ Աստուած-ողորմի ասացէք Խանում-Խաթունին, որ ետ զսա գրել ի հալալ վաստակոց իւրոց...։

---

* Ձեռագիրը հայերեն լեզվով պահպանված հնագույն Մաշտոցներից է, գրված 1298 թվականին։

** Այս բառը ձեռագրում հապավված է այսպես՝ «մխթ» (՞)։ Առաջարկված վերծանությունը երկբայական է։

Գրեցաւ սա Թվականիս Հայոց ՊՀԸ. (1429) ամին, ի յերկիրն | | | ընդ հովանեաւ սուրբ] Աստուածածնին և Իղբուզ* վկային | | | ի գեաւղս, որ կոչի Թուխ...:

422

ՄԱՇՏՈՑ

Փիրդ. նոտ. 91—92, կամախ, Աւագ վանք

Գրիչ՝ Գրիգոր Տիւրիկեցի
վայր՝ Եկեղեաց գաւառ, ի գերեզմանի
Լուսաւորչիս, յուխաս Ջորենաճգիսա

Ի Թուականութեանս Հայոց ՊՀԸ. (1429), յիշխանութեան Աւթ-մաճ պակին, որ գրեցաւ բոլոր Մաշտոցս ձեռամբ Գրիգորի անիմաստ գրչի Տիւրիկեցւոյ: **

423

ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. նոտ. 91, Մարմեա գյուղ

Վայր՝ Կարբի

... Արդ գրեցաւ սա ի գիւղաքաղաքս Կարբի, ընդ հովանեաւ Աստուածածնին և այլ սուրբ եկեղեցեացս, յամի ՊՀԸ. (1429) Թուականիս մերում։

424

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղէմ 1631

Գրիչ՝ Թադէոս Ավրամենց
վայր՝ Կաֆա

... Մեկնեալ մեծի և անյաղթ փիլիսոփայի Դաւթայ և լուծեալ ի մեծ հռետորէ Յոհաննու Որոտնեցոյ և ի լուսաւոր բաբունապետէ Գրիգորիսէ եռամեծէ։ Եւ զմնացեալն զայս յիմաստասիրական գրոց խնդրեալ մեր ի բաբեսէր վարդապետէն մեր՝ ի տէր Սարգիս քաջ

* Տես՝ «Ցիզտիբուզա» վկայի, որ նահատակվել է Զ. դարում։

** Սույն հիշատակարանը Փիրդալեմյանը (ավելի ճիշտ Աբսեն վրդ. Թոխմախյանը, որի ընդօրինակությունից օգտվել է Փիրդալեմյանը) կցել է նույն ձեռագրի մեջ եղած նվիրաբերական երկու տետրին, որոնք գրանցվել են Ցագուպ-բեկի (1478—90) իշխանության տարիներին, ուստի անմիջական առնչություն հիշատակարանի հետ չեն կարող ունենալ։

բարունոյ՝ առ ի կարդալ, և նա խոնարհեալ յաղաչանս մեր աշխատեցաւ ընդ մեզ, և կարդացաք՝ երկու աւուրն մին ճառ կարդալով, և այնպէս օր ըստ օրէ դրելով հոգ ի մտի ունէի մի ինչ բան դժուարիմաց ծածուկ և անյայտ մնացէ։* Վասն որոյ ի լուսանցքն ի դասէն իմացեալս դրոշմեցի, ի վանս մենաստանի մեծի սրբոյն Անտոնի անապատականի, առընթեր մեծի մայրաքաղաքի Կաֆայի, յաշխարհս Հոռոմաց Գազարիա կոչեցելոյ, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և յեպիսկոպոսութեան նահանգիս մեր Կաֆայի և Ղրըմի տէր Կարապետի սրբասիրի, և ի վարդապետութեան տէր Սարգիս քաջ հռետորի՝ մերոյ վարժապետի...։ Յիշեցէք զանարժան Թադէոս Ավրամենց կոչեցելոյ...։**

## 425

### ՇԱՐԱԿՆՈՑ

Փարիզ 132, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ Կաֆայ

133ա ... Գրեցաւ Շարակնոցս ի թվին Հայոց ՊՀԸ. (1429) ամի, ձեռամբ ապիկար և անմար գրչի Քրիստոսատուր կրաւնաւոր քահանայի, ի խնդրոյ եղբաւր մերում Մարտիրոս կուսակրաւն քահանայի, ի վայելումն անձին իւրոյ։ Արդ, եղև սկիզբն և զրաւ եղանակաւոր տառիս յաշխարհս Հոռոմաց, ի վանս սուրբ Անտոնին, առընթեր Կաֆայ... քաղաքին, առաջնորդութեամբ վանացս մեծի վարդապետի և քաջ բաբունոյ տեառն Սարգսի, ի հայրապետութիւն տեառն Կոստանդինեա և ի նուիրակութեան տէր Կարապետի։

Արդ, որք հանդիպիք ի սմայ յիշեսցէք զվերագրեալն զՄարտիրոս կրաւնաւոր քահանայն, և զծնաւղսն իւր՝ զհանգուցեալսն Ասելն և զմայրն իւր, զՍտեփանոս էրէցն, և զքոյրն իւր զՁիմաթ-խաթունն, և զփեսայն իւր զպարոն Փիլիպոսն, և զամենայն ազգայինս նորա։ Եւ զիս՝ զանպիտան գրիչս, զծաղկաւղս, և զկազմաւղս զՔրիստոսատուր մեղապարտ աբեղայս, և զհեզն՝ իմոյ սնուցեալն զԱւքսէնդ կրաւնաւոր քահանայն, որ մադաղաթն տողեաց։***

* Խոսքը վերաբերում է ժողովածուի վերջին աշխատությանը, որ է. «Լուծմունք Պերիարմենիասի Յովհաննու Որոտնեցւոյ»։

** Մ. Տեր-Մովսիսյանը հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակվել է ՊՀԸ-ՊՁԲ. (1429—1433) թվականների ընթացքում։

*** Մ. Տեր-Մովսիսյանի մեքենագիր ցուցակում այս բառը գրված է «տողղրեց» սխալ ձևով։





## 426

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

Նխվկայ 187/24 Մ. Տ. Ա.

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Մաղարդի վանք

342 Փառք… որ ետ կարողութիւն արկար մարմնոյ և տարտամ հոգոյ Մխիթար սուտանուն աբեղի հասանել յաւարտ այսմ գանձարանի յամի ՊՀԹ. (1430) թըւականի մերումս տումարի, որ գրեցաւ սայ ի վայելուչ տեղս, որ կոչի Մաղարդի վանս, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոս նախավկայիս և այլ սուրբ Նշխարացս, ի յառաջնորդութիւն աէր Աւագի և Յակոբ վարդապետի, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ Շահռուղ ղանն էրեկ, բազում աւեր էած աշխարհիս մեր, և ղհայոց ազգս գերեց և փորձութիւն ձգեց, վասն բազում մեղաց իմոց։ Վա՜յ ինձ հազար բերան, որ տեսի աչաւք իմ զՔրիստոսի արեամբ գնեալ ժողովուրդս ի ձեռն տաճկաց գերի, մերկ և քաղցած ի ծառայութիւն անաւրինաց։

Արդ, ես մեղուցեալ ոգի մեռեալ անձն Մխիթար գրիչս, որ եմ աբեղայ՝ ձևովս միայն և ոչ գործով, ցանկացայ և փափագ եղէ այս սուրբ գանձուցս և անմահական պտղոյս, և բազում աշխատութեամբ գրեցի զսա ի վայելումն անձին իմոյ աստի կենացս, և յետ աստեացս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւր իմոյ Ամիր-Ասաթին, և մաւր իմ Հասրաթոյն, և եղբարց իմ, և ամենայն արեան մերձաւորաց իմոց…։

Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ աւգտութեամբ, յիշեցէք ի միտս բարիս և ի պատկանաւոր խնդրուածս | | ¦ զպատուական վարդապետն մեր զՅակոբ, որպէս արեգակն լուսաւորէ զտեղիքս մեր, զոր և Քրիստոս աստուած | | |

Բ

129 ա Ցիշեա յաղաւթս ձեր զեղկելիս՝ զխոցեալ ոգիս Մխիթարիս, վա՜ ինձ։

## 427

### Ա Ի Ե Տ Ա Ր Ա Ն

Լ8Վ 73, նյուն. 133—134, Վանի Ցայնկոյսներ եկեղեցի

Նորոգող և կազմող՝ Սաեփանոս

… Արդ, կազմեցաւ և թերին լցաւ…ի թվաբերութեանս Հայոց ՊՀԹ. (1430)։

Զոր ստացեալ էր զսա տէր Պետրոս Եղեգեցի*
Ի դռանն արքունի և ի գերեզման Քրիստոսի,
Ի վայելումն անձին իւրո նահատակի,
Որ ի հոգսն մաշի վասն Երուսաղէմի,
ԵւԹն անգամ յերԹեւեկի,
Նաև եղբօրորդոյն Ստեփաննոսի
Սուտանուն կրաւնաւորի։
Եւ ի յահէ չարին Շահրուխի,
Որ աւար էառ զաշխարհս Հայկազնի։
Սա պահեստի եղեալ ի վիմի,
Եւ ըղխեալ վտակ Ջրի,
Եւ տապալեաց զմշտահոսան աղբիւրս կենդանի։

Արդ, արք հանդիպիք սմա՝ անմեղադիր լերուք սղալանաց և Թերութեան, որ ի սմա, զի յոյժ ուերեալ էր։ Այլ ևս յիշեսջիք ի սուրբ յերկնաԹոիչ յաղաւԹս ձեր զստացաւղ սորին զաէր Պետրոս և զամենայն արեան մերձաւորս, և զիս՝ զանարժան Ստեփաննոս և զծնողս մեր, և որ յիշէ յիշեալ լիցի և նա յաւուրն աներեկի և յաջակողմեան դասին բազմի, ամէն

428

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4827

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Խօսրովավանք

287 բ ... Այլ և արդ, գրեցաւ սուրբ աւետարանս աստուածախաւս ձեռամբ անարժան և ախմար գրչի Վարդանի: Եւ իմ՝ անընդել գոլով յարուեստ գրչուԹեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմա, գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանօք և բազում տրտմուԹեամբ։ Ե․ է ի մեծ Թուականիս Հայոց ՊՀԹ. (1430), ի կաԹողիկոսուԹեան Հայոց Աղթամարեցւոյ տեառն Դաւթի՝ եղբօր տեառն Զաքարիայի, որ վկայական տրեամբ կատարեցաւ և պսակեցաւ ի Քրիստոսէ ընդ ամենայն սուրբս։ Ի սուրբ ուխտս, որ կոչի Հօսրովավանք, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Ճօսրովային սուրբ Նշանիս և Աստուածածնիս, և առաջնորդ սուրբ ուխտիս՝ Մկրտիչ քահանային և այլ միաբան եղ-
288 ա բարցս, որ աստ կան հաւաքեալ || աղաչեմ յիշել ի աէր աստուած։

* Պետրոս եպիսկոպոս Եղեգեցու հիշատակարանը, տես 1428-ի Թվականքում։

Քանզի ստացաւ զսուրբ աւետարանս պատուական և սրբասէր կրօնաւորն Սաեփանոս*, ետ դրել յիշատակ իւրն և ծն[աւղ]ացն իւրոյ՝ հաւրն Թումայի, և մօրն Շնոռորի, և պաբուն Խոցդեղի, և եղբաւրն Աստուածատրոյ, և Մկրտիչ քահանային, և Ղազարին, և ծնաւղացն իւրեանց Հէրապետ քահանային, և Յոնանէսին, և ամենայն արեան մերձաւորացն իւրեանց, ամէն։ Եւ կացցէ սա ընդ իշխանութեամբ տաճարի սուրբ Նշանիս։ Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս՝ յիշեսջիք ի Քրիստոս աստուած զՄամաաիկին ապաշխարողն, և զծնաւղսն իւր՝ զՅովսէփն և զԵղիսաբէթն, և զեղբարքն զԱստուածատուրն և զԱնտոնն, և զեղբօրորդին զՅոհանէս դեռաբոսիկն, և զզաւակս իւր զԽոսրովն և զԹագուհին, և զհօրեղբայրն Թովմաս, և զորդին իւր զԱռաքելն, և զամենայն արեան մերձաւորս, և աստուած-ողորմի ասացէք լի բերանաւ և զուարթառատ սրտիւ սոցա, ամէն, և զՅովաննէսն, որ զօրինակն ետ։



Նկ. 15. Ձեռագրի ստացող Ստեփանոս կրոնավորը

Ցերես անկեալ աղաչեմ և արտասուալից պաղատանօք զդէմս
288 բ առ ձեզ ուղա | · | | ես, ով ձիւնք պտշտաւ‖նեայք. յիշման արժանի
զեղկելիս և զմեղուցեալ փծուն գրիչս զՎարդան ունայն աբեղայս...
և զհայրն իմ զՍամուէլ քահանայ, և զմայրն իմ Մինայ, զԹումէն, և
զՏիրանցն՝ զհոգևոր ծնօղքն իմ. և զամենայն արեան մերձաւորսն,
ամէն,

... Ի դառն ժամանակի, աւա՜խ, զայնքան դառնութիւն դժնդակութեանս, զի վասն մեղաց իմոց, թէ ինչ երբէք ի վերայ այնքան քրիստոնէից, ո՛հ։

* Ցա էջի վրա, կրոնավորի հագուստով, նկարված է Ստեփանոսը (տես նկ. 15)։

## 429

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 2666**

*Գերութիւնից ազատող՝* Շատիպէկ

276 բ ... *Ի թուականութեանս Հայկազեան տումարի ՊՀԹ. (1430)-երորդի, յունուարի ԻԹ. (29), բերին զսուրբ աւետարանս այլազգիքն գերի, զոր լուեալ ոմն քաջահաւատ և բարիանուն պարոն* Շատիպէկ *և ստացօ զսա ի հալալ ընչից իւրոց ... և եդ ի սուրբ Կիրակոս՝ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ պարոն* Յալինախին, *և մաւրն* Արզունխաթունին, *և ի Քրիստոս փոխեցեալ զաւակին* Ալինախին։

*Արդ, վասն Դ. (4) պատճառի գնեաց զսա. մի՝ զի զպակասութիւն տաճարին լրցուսցէ, և երկու՝ զի ծնաւղաց իւրոց յիշատակ լիցի, և Գ.՝ զի զաւակաց իւրոց յերկար կեանք խնդրեսցի, և Դ.՝ զի աստուածային կամքըն քաղցրասցի իւրենն և կենակցին իւրու Արդ, որք աւկտիք ի սմանէ, կամ աւրինակէք և կամ վաեյէք ի սուրբ Կիրակոս՝ յիշեցէք յաղաւթս ձեր, զպարոն* Յալինախն *և* զԱրզուն-Խաթուն:

276 ա *Հրաման ունիք ի Քրիստոսէ, որ յորժամ կարդան* ‖ * *զայս յիշատակարանս՝ ա[մեն] մարդ մէկ մէկ ծունր դնէ ու Գ. Գ. աստուած ողորմի ասէ, զի ձեզ խիստ հեշտ է և նոցա կարիք է։ Ընդ նմին յիշեցէք զպարոն* Շատիպէկն, *և զկենակիցն իւր* զԱւղուլ-Խաթունն, *և ծաղկեալ զաւակացն պարոն* Սարթախն, *և զպարոն* Ցախուրշան, *և զ*Կուլամիրն *և զքոյրն* Մարիամ-Խաթուն, *և զորդին իւր* Սովիատինն, *և զեղբայրն իւր* զԱմիրպէկն, *ամենին [առ]հասարակ արեշատութիւն և յերկար կեանք խնդրեցէք...։*

*Արդ, ով որ զայս սուրբ աւետարանս գողանա կամ ծախէ՝ յանդիմանեսցի մոլար ժողովոյն Մահամետի, և որ յանդգնի՝ զպատիժն Յուդայի առցէ և զխաչահանուացն, և որք լսէք ի միտ առէք և մի պարսաւէք։*

## 430

## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

**ԼՑՎ, 659 Փիրղ. Նոա. 95**

*Գրիչ և խմբագրող՝* Թադէոս Ավրամենց
*վայր՝* Կաֆայ

*Փառք... որ շնորհեաց անպիտան և աղկաղկ և անարժան ծառայիս տեսանել զաւարտումն շնորհազարդ գրոցս սուրբ Հարանց Վարուց, զոր ի հերուն հետէ ցանկացեալ կարաւտանայի տենչմամբ մեծաւ գրել, ժողովել, ամբարել զերանելեացն և զամէն երջանկացն վարս սուրբս և գերաշխարհիկս, անմարմնոցն նմանս, և զբանս լուսաւոր հոգևորական խրատուց նոցա, որ քաղցր է ի քիմս ճաշակո-*

* *Թերթը այժմ շրջված է, սկզբից պետք է կարդալ 276բ էջը, ապա՝ 276 ա։*

գացն զսա առաւել քան զմեղու խորիսխ ե զռետին, և գիտէ լուսաւորել, նորոգել և կենսագործել, ե զի հանդիմանիչ ևս է և կշտամբիչ ե յայտնիչ անզղջայ գնացելոց։

Արդ, նայելով ի գործս քննայոյզ ծուլացելոցս և անիմաստ շաւղաց մոլելոյս և անտէրունջ ընթացելոցս, ըղձմամբ մեծաւ փափաքեցայ գրել և արձանացուցանել ե առ իս պահել և ունել յար և հանապազ ինձ կշտամբիչ և յանդիմանիչ և յայտնիչ խորհրդոց՝ մաքուր կարծեցելոյս։ Եւ դարձեալ, մխիթարիչ և սփոփիչ և տածիչ ախմարացեալ յիմարացելոյս, ե ինձ հայր խնամակալ և գութածնօղական, և խրատ անխարդախ զսա վարկանելով սիրեցի գրգալով ի վերայ սորա։ Զի գոնէ միայն ի լուր աստուածազարդ բանից խրատուց սուրբ հարց երկնանման կրաւնից գործոց նոցին գիտութիւն զիմ անդէպ և կարծելի միայն գնացեալս, ամաչեցուցեալս գլխակորեալ՝ զգլուխս յերկիր հայեցուսցեն։

Եւ արդ, այսպէս սկսայ զսա ջերմեռանդն սիրով և յուսով, որ տայն առ ամենայնի առատապէս ու ոչ նախատէ՝ հասուցանել յաւարտ սորա, այլ յոյժ տառապանաւք ե աշխատութեամբ զաւրհանապազ զլաւագոյնն ընտրելով և զճշմարտագոյնսն խուզելով և համառաւտն թողեալ զկատարեալ պատմութեան հետևելով ժողովեցի, բրդեցի օրինակք ոչ սակաւ, որչափ ձեռնհաս եղէ գտանել։ Եւ թէ ի մինն սխալ գտանիւր ի գրչաց կամ աւրինակաց ե համառաւտել զնա իմանայի, նա զիւրաքանչիւր աւրինակքն առընթեր բերելով՝ գտանէի զնոյն բանն ոչ վկայելով միմեանց, այլ ի նոցանէ խնդրելով զընտրելագոյնսն, և զհաճելին ի նոցունց առեալ գրէի յարմարեալ և կատարեալ բան զճշմարտագոյնսն շարադրելով։ Այլ ի հասանել պատմութեան կամաւոր աղքատին սրբոյն Ալէքսիանոսի, տարակուսեալ արգելայ, քանզի այլ և այլ պատմէին աւրինակքն զնմանէ, ոմանք ի Կոստանդնուպաւլիս լեալ ասէին և ոմանք՝ ի Հռովմայ։ Եւ այլն երկոտասան ամի ի դուռն ծնողաց ասէին, և կէսք՝ երկոտասան օր, և այլն Է. (7) ամ, և այլք զԵրուսաղէմ տեսեալ ասէին զնա, և կէսք Եդեսիայ միայն, այլ[ք] ոչ ուրէք գնացեալ։ Այսպէս ամենայն պատմութիւն այլևայլ էին գրեալ, մինչ հարկ եղև և ի յունաց բերել աւրինակ ի ձեռն բարեկամաց և ոչ շատանալ միով, այլ մինչ վկայեսցեն և նոքա միմեանց։

Եւ այսպիսի սիրով աշխատեալ գտի զայն, որ միմեանց վկայեցին ե գրեցի զճշմարտագոյնն՝ զլաւն և զանսխալն։ Այսպէս և զամենայն արարի, այլ ոչ զսրբոյն Ալէքսիանոսին աշխատեցայ։ Եւ բազում վարք և բան աւելի եդի ի սմա, զայն՝ որ ոչ գոյր ի մեծի աւրինակն։

Արդ, ամենայն գլխոյն վերջքն, որ կարմիր ]ի· խաչագլուխ կա ի լուսանցքն ներքին՝ այն այլ գրոց աւրինակեալ է, իսկ ի կողմանէ լուսանցքին կարմիր նշան և թուխ կռագլուխ խաչ. բազմեալն՝ այն պիտանի և աւգտակար նշանաւոր բանք են, և եդի նշան առ ի փոյթ գըտանել զայնպիսի և ախորժագոյնսն։ Եւ ի վճար մեծ աւրինակին յի-

շատակարանս եդեալ սկսայ և զայլն, որ ոչ գոյին ի մեծ աւրինակն։ Եւ որչափ կարող եղէ հաւաքեցի և զայնոսիկ նմանապէս պաշտելով զընտիրն և զճշմարտագոյնսն խնդրելով գրել։

Իսկ աւարտ սորա եղև ի թվին ամաց յելանելոյ ի դրախտէն Ադամայ ի ՑՈԼ. (6630) ամի ըստ Մեծ Հային տոմարական արհեստին, և դարձեալ յԱդամայ ի ՑՊԾԵ. (6855) ամի հինգհարիւրեկին, որ է Ճասայ իմաստասիրին, որ ի յԱղէքսանդրիայն ժողովին, և սա է բուն թվական կիկլոնին. և դարձեալ յԱդամայ ՑՉԺԱ, (6711) ամի ըստ Անանիա վարդապետին Շիրակայնո, և ի ծննդենէ կենարար փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ի ՌՆԼԲ. (1432) ամի, իսկ ըստ Հոռվմայեցոց ՌՆԼ. (1430) ամի, և թվին Հայոց ըստ արեթական տոմարի ՊՀԹ. (1430) ամի, յօգոստոս ամսոյ ԻԵ. (25), օրն երեքշաբթի, յաշխարհս Հոնաց և Գազարիայ կոչեցելոյ, յերկիրն Սուղդաքայ, ի մայրաքաղաքս Կաֆայիս, մենաստանիս, որ յանուն մեծի ճգնաւորին սրբոյն Անտոնի, և ընդ հովանեաւ նորին արժանաւոր աղօթիցն, և յառաջնորդութեան սորին վանից մեծի երջանիկ րաբունապետի Սարգիս լուսաւոր վարդապետի՝ արթուն և ժիր մշակի, որ զաւերս զայս և զամալացեալս, որ մուրալով էին կերակուր ընակչաց սորա՝ նորոգեաց շինելով, և յօրինեաց զբոլոր պակասութիւն սորա, և զարգարեաց եղբարբք և պայծառ ժամատեղաւ, և հաստատեաց մտաւք և արդեամբք, զոր ընդ երկայն աւուրս արասցէ տէր աստուած զսա բազմամեայ ժամանակաւք տևել մնալ առ մեզ։ Իսկ ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ աստուածասէր իմաստուն խաղաղասիրի և ի նուիրակութեան և եպիսկոպոսութեան տէր Կարապետի՝ սրբասնունդ և խոհեմի, ձեռամբ անարժան և պիտակ անուն կրաւնաւորի Թադէոսի Ավրամենց, ի վայելումն ծառաւելոյս և կշտամբող մխիթարիչ վտարանդելոյս, և յիշատակ յետ իմոյ ելանելոյն յաշխարհէս կամողաց զսա ջերմեռանդ սիրով զսա կարդալ, իսկ ձանձրացեալացս լսել զսա առիթ կամելով լինել և նոցա հաղորդել ընդ երջանկացն, կարդալով և ի միտ առնելով՝ զարդարացի կենդանակիր պատկերաւք և ծաղկաւք ոսկով, զի գոնէ ի սիրոյ պայծառութեան ծաղկանց և պատկերաց կարդալ ձեռնարկեսցեն։

Եւ դարձեալ և զանուանս սրբոց յայտնիչ՝ կարմրադեզով արարի, մի՝ զի յորդորիչ լիցին կարդացողացն, որք ոչ սիրով, և երկրորդ՝ զի նման նմա լինել ակն ունիմք մեք, բայց նոքա յամենայն անւանց երկրաւորաց՝ անուն տէրունական կարմրադեղով, սոյնպէս և սրբոցն անուանք երանե[լե]ացն դասուց նմանեցան նմա կարմըրադեղովն և որպէս և նայն։

## 431

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6403*

*Նուիրատու՝* Հեղինէ
*վայր՝* Սուրբ–Թորոս գիւղ

ա

183 բ *Աստուած ողորմի* խուպիարին *դստերն* Հեղինէ, *որ էառ․ այս աւետարանս յիշատակ իւր հոգուն և իւր ծնողացն, ամէն. և ետ յիշատակ ի գուղն* Սուրբ–Թորոս, *ի դուռն սուրբ Աստուածածնի, ի ձեռն տէր* Ղուկասին, *հայրապետնութիւն տէր* Մելքիսեթին, *թիւ* [Պ]*ՀԹ*.(1430)։ Որք հանդիպիք՝ ողորմին ասէք, ամէն։ Աստուած-ողորմի* Ախիկին՝ *կենդանի հոգուն, որ սապապ եղաւ յա*[յ]*ս բանիս.***

բ

281 բ *Ես* Հեղինաս *գնեցի սուրբ աւետարանս հալալ արդեանց իմոց, եդի յիշատակ ի գիւղն* Սուրբ–Թորոս, *ի դուռն սուրբ Աստուածածնին, ի ձեռն տէր* Ղուկասին, *ոչ ոք չունի իշխանութիւն հանել այս գիւղէն կամ տէր* Ղուկասի *ձեռացն....։*

## 432

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ՄՑՀ, հա. Ա. 32, էջ 70—71*

*Հետ. ստացող՝* Ստեփանոս

814 *Արդ, ես* [*յետինս*] *ի մանկունս եկեղեցոյ տէր* Ստեփանոսս *ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդ*[*ե*]*անց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ* Սիմէոնի, *և մաւրն իմ* Աղէկի։ *Ով որ հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, զինչ կերպ որ իցէ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զտէր* Ստեփանոս *քահանայն և զծնաւղսն իւր....։*
*Ի թվ. ՊՀԹ. (1430)։*

---

* *Հարյուրավոր թվանշանը ջնջված է։ Հնագրական տվյալներով ձեռագիրը գրված պետք է լինի ԺԵ. դարում, ուստի ջնջված թվանշանը, որոշ կասկածներով, վերականգնում ենք՝ Պ. (800)։*

** *Համանման բովանդակությամբ մի հիշատակագրություն էլ կա ձեռագրի 281բ էջում։*





433

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6430*

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ամիթ

ա

299 բ *... Արդ, գրեցաւ և աւարտեցաւ սուրբ աւետարանս ի գաւառս Մի-*
*ջագետաց, յԱմիթ մայրաքաղաքի, ընդ հովանաւ սուրբ Թէոդորոսի զի-*
*նաւորի, և ամենասրբուհի կուսին Մարիամու Աստուածածնին, և*
*սուրբ Կարապետին Յովաննու, և Գէորգեայ զաւրավարին: Ի հայրա-*
*պետութիւն տեառն* Կոստանդի Վահկեցոյ, *և ի վերադիտողութեան*
Ամիթ *շահաստանի տէր* Մկրտչի *աստուածաբան վարդապետի և արք-*
*եպիսկոպոսի ամենայն Միջագետաց և երեսփոխանի կաթողիկոսի ամե-*
*նայն Հայաստանեայց և մինչ ի ծայրս արևելեան իշխեցողի, և ի*
*թագաւորութեանն ամենայն Միջագետացս պարոնաց պարոնին, որ*
*կոչի շահ* Աւթման Պահատուր, *ի թվ. Հայկազանս տումարի ՊԶ.*
300 ա *(1431)- ‖ երրորդի:*

*Յորում ամի բացան պատուհանք հենից բարկութեանն աստուծոյ*
*և մերկացաւ սուրն վաղակաւոր յազդերէ իւրմէ, և վասն ծովացեալ մե-*
*ղաց մերոց սուր պատուհասին աստուծոյ տարածեցաւ՝ տարաժամ*
*մահ ընդ ամենայն երկիր, և առաւել ևս բարկութիւնն աստուծոյ տե-*
*ղեաց յԱմիթ մայրաքաղաքի, և ի սպառ կոտորեաց զամենեսեան առհա-*
*սարակ, առաւել քան զանդրանկածախն Եգիպտոսի, որպէս յանապա-*
*տին՝ զԻսրայէլ և յաւուրս Դաւթի՝ զկոտորումն ՀԵ. (75) հազարացն,*
*զի անկաւ ի ժողովրդենէն ՋՌ. (6000) արանց միայն, զորս ի թիւ*
*արկան, թող զանհամարսն, և զայն, որ արտաքոյ քաղաքին՝ ի գա-*
*ւառսն և ի գեաւղսն. որ և զբազում աւանս անմարդաբնակ արար,*
300 բ *մինչ զի ‖ չորքոտանիքն յամայի շրջէին և ամենայն հայրենիք կո-*
*ղոպուտ եղեն յարքունիսն:*

*Եւ արդ, ոչ ոք կարէ ընդ գրով արկանել կամ լեզուաւ ճառել զաղէտս կսկծանաց և զողբս տարակուսանաց և զհառաչանս սրտից և զկոծս տարակուսանաց, զոր գործեցան ի միջի մերում, զի բարկութիւնն աստուածային էր և սաստիկ էր հրամանն. կենարարն մահու մատնեաց և ով էր որ ապրեցուցանէր, քաղցր բնութիւն աստուծոյ դառնացեալ էր, և ով ոք էր որ ապրեցուցանէր կամ ողորմէր քաղցրութեամբ, զի բարձաւ նախախնամութիւնն բարերար բնութեանն և հասին մեզ ահեղ վրէժխնդրութիւն դատաստանին աստուծոյ, և կոտ-*

301 ա բեաց յանխնա սաստիկ հար || ուածով և արար լալագին զբազումս ի մարդկանէ, զի եղև ամենայն տիրտ խոցեալ ի սրոյն առաւծոյ· և աչք ամենեցուն յաղբերս արտասուաց, յամենայն ուրեք ողբ հառաչանաց և յամենայն տուն կոծս տարակուսանաց, լալումն որբոց և ողաղակ այրեաց, կըսկիծ ծերոց և մանկատուոց ման-կամեա մարց, յամենայն լեզուէ վայ և յամենայն բերանոյ. աղա-ղաւանք։ Որ և ի սոյն սաստիկ հարուածոց, տարաժամ մահուամբ յաստու-ւած փոխեցաւ բարէպաշտ և աստուածասէր քրիստոնեայն Կարապետ և դեռաբողբոջ զաւակքն իւր՝ զՅովանէսն և Յիսէն* և Սադաթն, և անմ-



Նկ. 16. Ստացող մահդասի Ցագիցի վաղամեռիկ թոռներ՝
Ցիսէն և Ցովանէսը

խիթար սուգ թողին բարեպաշտաւն մաւր իւրեանց՝ մահդասի Յազի-
301 բ զին, որ ծեր անձամբ մնաց || իբրև 'զբու յաւերակի միայնացեալ՝ լալագին աչաւք և խոցեալ սրտիւ, անմխիթար յամենայն կողմանց, վերջացեալ ի զաւակաց և յազգականաց, վասն որոյ ի միտ ածեալ

* Ցովանէսի և Ցիսէի պատկերները, կանգնած դիրքով, նկարված են 8ա էջի վրա։ Նրանց հագուստներն ու գլխարկները ուշագրավ են և ունեն կենցաղագրական նշանակություն (տես նկ. 16)։

զբանն աստուածային, Թէ՝ Երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն. և ցան-
կացող եղև անկողոպուտ գանձիս աստուածային, և ըստացաւ զսուրբ
աւետարանս յիշատակ բարի որդոյն իւրոյ Կարապետի, և զաւակաց
նորա Յովանիսին, և Յիսէին, և Սադաթին, և հաւր նորայ՝ Վահրամ
երիցու, և եղբարց նորին Աբրահամուն և Մուսէսին, և որ[դ]ոց նոցին
Յորդանին, և Վասլին, Սարգսին և ամենայն արեանառու ազգականաց
նոցին, յիշատակ յաւիտենական կենաց ի կեանս յաւիտենական,
302ա վասն որոյ աղաչեմք զա‖մենեսեան,* որք անդիպիք սմա կարդալով,
կամ օրինակելով, կամ տեսանելով, կամ լսելով զյիշատ[ակ]ութիւն
վերագրելոցն ի սմա՝ յիշեսջիք ի մաքրափայլ և յերկնաթռիչ սուրբ
յաղօթս ձեր զՎահրամ քահանայ, և զորդի նորա զԿարապետ, և զզա-
ւակսն Կարապետին զ[Յ]ովանէսն, և զՅիսէն, և զՍադաթն, և զազգայինս
նոցա զԱբրահամն և զՄովսէսն, և զորդիս նոցա՝ զՈրդանանն, և զՎա-
սիլն, և զամենայն արեան մերձաւորս նոցայ, և զՄարիամն։ Եւ առա-
ւել ևս զբարէպաշտ և զաստուածասէր մայր Կարապետին՝ զմահդասի
Յազիզն յիշեցէք ի Քրիստոս, որ բարո պատճառ եղև և ինքն ստացաւ
302բ զսուրբ աւետարանս ի բաղում աշխատանաց իւրոց, ‖ և զամենայն
ծախք սորայ լի սրտիւ և միամտութեամբ արարեալ և բոլոր հաւատով
տուեալ, որպէս Թէ ի ձեռս Քրիստոսի ընձայեալ, զի ի Քրիստոսէ
առցէ զփոխարէնն աստ և ի հանդերձելումն՝ զարքայութիւնն երկնից։
Եւ ընծայեաց զսուրբ աւետարանս նուէրք սուրբ Թորոս զաւրավա-
րին և ամենասուրբ կուսին Մարիամու աստուածածնի, զի կացցէ
սուրբ աւետարանս յիշատակ անջնջելի ի տաճար սրբոյն Թորոսի, ի
սորին յաւիտենի, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ աւետա-
րանս ի դրանէ սորայ...։
303բ ...Այլ և յիշեցէք ի Քրիստոս զամենայն հաւատացեալ ննջե-
ցեալսն և առաւել զայնոսիկ, որք ի սոյն ամի տարաժամ մահուամբ ի
Քրիստոս փոխեցան՝ զսրբասէր քահանայքն և զաստուածապաշտ տանու-
տեարքն, զգեղեցիկ երիտասարդքն և զբարետեսիլ մանկունքն, զբա-
րեմիտ կանայքն և զշքեղատեսիլ նորահարսունքն, որք ի սուր տեառն
մաշեցան և ի բարկութենէ աստուածասաստ պատուհասին, որպէս
զծաղիկ նոնենեաց հաբեալ ի կարկտէ և յանխնա կոտորեցան ողոր-
մաբար։ Վասն որոյ յիշեցէք ի Քրիստոս զամենայն ննջեցեալսն, որք
յԱմթայ ժողովրդենէն ի սոյն ամի փոխեցան...։
Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զայնոսիկ, որք աշխատանք ունին
ի սուրբ աւետարանս, որ շատ և որ սակաւ, զԹղԹին կոկողքն, և զայնո-
սիկ, որք զգրագիրն ծառայեցին և սպասաւորեցին, և զայնոսիկ, որք
կամակից եղեն, որ զայս սուրբ աւետարանս ստացաք և ընծաեցաք
սուրբ Թորոս զաւրավարին։
Այլ և յիշեցէք ի Քրիստոս զայսոսիկ, որք յամենայն տաւնի և
304բ ուրբը ‖ զատկի ընԹեռնուն զյիշատակարան աւետարանիս։ Եւ որ
առատն է ի տուրս բարեաց, ողորմեսցի ամենեցուն առհասարակ՝ յի-

* Բնագրում՝ «զամենեսնեան»։

*շողացդ և յիշեցելոցս ի սմայ, և տացէ իւրաքանչիւրոցն վարձս ըստ վաստակոց աստ և ի հանդերձեալն յաւիտենիւ յաւիտեանս, ամէն և եղիցի։*

*Գարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զքաջ քարտուղարն զԳրիգոր գրագիր, որ գրեաց զսա յ[ը]նդիր աւրինակէ։ Այլ և զԱբրահամ վարպետ, որ ղարղարեաց զսա ծաղկով և ամենայն տնաւրինականաւք և կազմեաց, և զայնոսիկ, որք աշխատեցան ի գործառութիւն սորայ, որ աւարտեցաւ սուրբ աւետարանս, որոց ամենեցուն յամենայնի ողորմեսցի տէրն ամենայնի, ամէն և եղիցի։*

Բ

97 բ *Տէր աստուած…*
*Ողորմեա ստացողի սորին,*
*Այլ և յոռի, վըծուն գրըչին,*
*Որ վեց տառիւ անունս կոչին,*
*Գիմ՝ առաջին և ըՐէն՝ յետին,*
*Որ համարով վերաբերին՝*
*Տասն հազար բոլորովին*
*Եւ վեցհարիւր քսան ու վեցին։**

Գ

16 ա *Ո՜վ պատուական եղբայր ծաղկող,*
*Խոհեմ, ճարտար և [սրբա]գրաւղ*
*Ջվասն էրդ անթիւ չատագրելով*
*Մի մեղադրեր դու ին[ձ | | |*
*Դու զաւրացեալ ես սուրբ հոգով,*
*Զթերին լնուս վերին տր | | |*
*[Ե՞ս] աւրինակ չուն'ի լաւով,*
*Որ գըրէի զդա համա[րով]։*

## 434

## ԱՒԵՏԱՐԱՆ

*ՄՑՎ 154 (52), հտ. Ա., էջ 662—664*

*Գրիչ՝* Ղազար
*վայր՝* Երզնկայ

194 ա *…Գրեցաւ տառս աստուածայինս և տիեզերտքարոզ սուրբ աւետարանս ձեռամբ անարժան սուտանուն աբեղայի՝* Ղազարի *փցուն գրչի։ Արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքս* Երզընկաս՝ *առ դրան սրբոյն Ստե-*

** Գրչի անունը, ինչպես երևում է նաև գլխավոր հիշատակարանից՝ Գրիգոր է։ Եվ իրոք, «Գրիգոր» անունը կազմող տառերի թվական արժեքների գումարը հավասար է 10,626-ի (Գ=3, Ր=5000, Ի=20, Գ=3, Ո=600, Ր=5000)։*

փաննոսի նախավկայի, ի թուականութիւնս Հայոց ՊԶ. (1431) եղև աւարտ սուրբ աւետարանիս աստուածախաւս կտակիս։

Արդ, ի յայսմ դառն՝ ի նեղ և նուրբ ժամանակիս, որ զաւրացեալ են հաքարացիք ի վերայ քրիստոնէից, որ կոչի Թուրքիման, և յոյժ նեղին հաւատացեալ քրիստոնէք ի վերայ աշխարհիս։

Ցայսմ նեղ ժամանակիս ցանկացող եղեալ աստուածասէր և բարեհաւատ և բարեմիտ կին ոմն, որ կոչի անուն նորա Մեծ-խաթուն, յոյժ փափա[գա]նաւք և ըղձմամբ սիրով և անչափելի յուսով ետ գրել զաստուածախաւսակ սուրբ աւետարանս անջնջելի յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Անդրիասի, և մաւրն իւրոյ Աւագ-Տիկնա, և ամուսնոյն իւրոյ Ամիր-Դաւթին, և եղբաւրն իւրոյ Կարապետին, և Կապուտին, և քերցն իւրոյ Էլխաթունին, Ուսլուին, և Շնոֆորին, և քեռեցն իւրոց՝ Կիրակոսին, Ղազարին և Աստուածատրին, և ամենայն ազգականաց և արեան մերձաւորաց, ի լուսաւորութիւն հոգոց և մարմնոց...։

Նաև զգրող սորա զՂազարս՝ յետնեալս յամենայն կարգաւորաց, և զծնաւղսն իմ յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ, և սխալանաց սորա մի մեղադրէք, զի կար մեր այս էր...։

## 435

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

Երևան 944

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Էրէզ անապատ

ա

11 բ Ցիշեցէք զՄկրտիչ աւագերէցն, և զիւր որդին զՅոհաննէս աւագերէցն, և զփոխեցեալն առ Քրիստոս զՅովաննէսն, որ մականուն Թաթար կոչի, և յիշեցէք զՇնոֆորն, որ զգիրքս գրել ետ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց պարոն Աստուածատրին, և ամենայն զարմից իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն, Եւ զիս զՅովանէս աբեղաքս՝ զմեղաւք լցեալս, և զծնաւղսն մեր յիշեցէք ի բարին...։

բ

36 բ Զողորմելի գծողս յիշեցէք՝ զՅովանէս աբեղաս, և զծնաւղսն իմ զՍարգիս քահանայ, և զմայրն զՄանանն: Եւ յիշեցէք զվանիս հայրապետս՝ զՍտեփաննոս աբեղայս, որ ի Թխտիս կոկելն կաշխատի և զահմաթ կու քաշէ։ Ցիշեցէք զՇ[նո]ֆորն, որ զգիրքս գրել կու տա, և զիւր տղայքն՝ զփոխեցեալն առ Քրիստոս զԱստուածայտուրն և զԱլամ-խաթունն, և զիւրեանց հայրն՝ զփոխեցեալն առ Քրիստոս Յովաննէսն, և յիշելոցդ ողորմեսցի, ամէն։

Գ

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Էրէզ անապատ

231 բ ... Արդ, աստուածային կանոնքս, որ վառն գեղեցիկ բանիցն
կոչի Ոսկէփոր, ի լաւ և յընտիր աւրինակէ և վատթար գծողէ գրեցաւ սայ
յանապատիս, որ կոչի Էրէզ, ի գուոս սուրբ Աստուածածնին։ Թվ.
ՊԶ. (1431) գրեցաւ սայ։ Արդ, որք աւգտիք կամ աւրինակէք յիշեցէք
զգծողս սորա և զծնաւղսն և զեղբարսն և զամենայն երախտաւորսն մեր,
ևս առաւել յիշեսջիք զհոգևոր հայրն մեր զտէր Յովանէսն, որ նայ
այլ շատ աշխատեցաւ ի գիրս և փոխեցաւ յանանց ի կեանս։ Ցիշեսց-
ջիք և զայժմուս առաջնորդս զտէր Սաեփանոս՝ զհոգևոր հայրս մեր,
յիշեսջիք և զդասս կրաւնաւորաց, որ աստ կան հաւաքեալ... և զո-
ղորմելի գծողս զՂազար աբեղայս, և զհայրն իմ զԱմիշան, զմարիկն
իմ, սարգաւարք եղբայրն իմ, որ փոխեցաւ առ Քրիստոս, և զմիւս
232 ա եղբայր իմ || զԱստուածատուրն, և զամենայն ազգատոհմս մեր յիշե-
ցէք ի բարին, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն։

Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք զՄկրտիչ աւագերէցն, և զիւր որդին զՅոհանէս աւագերէցն, և զփոխեցեալ առ Քրիստոս զՅովանէսն, որ մականուն Թաթար կոչի։ Եւ յիշեցէք զՇնոֆորն, որ զգիրքս գրել երետ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց պարոն Աստուածատրին, և մաւրն էլթի-խաթունին, զաւակաց իւրեանց Աստուածատրին, և Յալսմ-խաթունին, և եղբաւր իւրոյ, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։ Եւ զիս՝ զՂազար աբեղայս զմեղաւք լցեալս, և զծնաւղսն մեր յիշեցէք ի բարին...։

Դ

96 բ Եւ ես՝ յերեսս անկեալ ողորմելի և անարուեստ գծողս Ղազարս,
մեղաւք լցեալս և սրտովս խոցեալս՝ աղաչեմ յիշեցէք զիս, և զնախ-
նիքն մեր, և զհայրիկն իմ զԱմիշան, և զմայրն իմ Խէր-խաթունն, և
զհարազատ եղբարքն իմ զԱստուածատուրն, և զփոխեալ եղբարն Շա-
հինշայ սարգաւագ յիշեցէք...։

## 436

## ԱՌԱՔԵԼ ՇՆՈՐՀԱԼԻՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍԱՑԵԱԼ
## ԳՈՎԵՍՏ ՈՏԱՆԱՒՈՐ Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ

Երևան 7465

Հեղինակ՝ Առաքել Բաղիշեցի

311 ա Յարմարեցաւ ճառ ծնընդեան և յայտնութեանն Քրիստոսի աս-
տուծոյ մերոյ և գովեստ Տիրամայր աստուածածնին ի բազմամեղ
Առաքել պիտականուն վարդապետէ, ի նորաշէն յանապատիս, որ յա-

նուն սրբո[ւ]հոյ Աստուածածնին և Յովաննու Կարապետին, ի թվականիս Հայոց ՊԶ. (1431)*։

## 437

## ՃԱՌԸՆՏԻՐ, ՏԱՂԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 1569

Գրիչ՝ Մաթէոս
Վայր՝ Անկեղակոյա գիւղաքաղաք

382ա ... Արդ, գրեցաւ Նարեկս սուրբ վարժապետի աղաւթից կըտակս այս ի թվականութեանս Հայոց ՊԶ. (1431), ի գեաւղաքաղաքս, որ Անկեղակոյա յորջորջի, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի Լուսաւորչիս և սուրբ Թագաւորիս Սիմոնի։

Ձեռամբ անարհեստ և փցուն գրչի՝
Մաթէոս սուտանուն իրիցի,
Որ պարտականս եմ բիւր քանքարի,
Զի զտաղանդ տեառն չյարգեցի,
Այլ անիրաւ գործի կացի
. . . . . . . . . . . . . . . **

283ա Վասն այնորիկ խորհուրդ արարի
Գրել զմատեանս այս ցանկալի,
Որ է աղօթք զարմանալի,
Ոգեալ սրբոյն Գրիգորի։
Զսա ըստացայ ինձ գանձ յերկրի,
Զի զյոյս բարեացն չունէի.
Վասն այն ըզսա գծագրեցի,
Զի ապաւէն ինձ եղիցի,
Այլ յետ աստեացս իմ՝ երբ լինի,
Յորժամ նիրհիմ ի տապանի,
Զի յիշատակ սա ինձ լիցի,
Եւ ծնաւղացն իմ գովելի՝
Աղա-Սուլդան անուն կոչի,
Ու մօրն իմ գէդայ մեծ Թուխթէնի,
Բարի կենաւք կացեալ յերկրի,
Եւ [ըն]կալեալ զաւր վախճանի,
[Եւ] եղբարձ իմ կենդանի,
Զոր Փա[ռ]ուխշահ կու անուանի,
Կրսեր եղբաւրն հեզահոգի՝
Սալուք անուն քաջ մշակի,

* Առաքել Բաղիշեցու ոտանավոր այս գովեստը գտնվում է 1506 թվականին ընդօրինակված Ցայսմաւուրքի մեջ։
** Բաց ենք թողնում 35 անարժեք տող, որտեղ գրիչը պախարակում է ինքն իրեն։

Եւ հաւրեղբաւրն իմ անորդի՝
Իկիթ-Աղայ՝ գործովք բարի,
Ու ամուսնոյն իւր Թուխծամի,
Որք են ննջեալ ի տապանի,
Եղբաւրորդոյն իմ Սալթանշի,
Քաջ կարդացաւղ սարկաւագի,
283 բ Որ վախճանեաց | | | *
Իգնատիոս կարգացաւղի,
Ու լալագին մաւրն իմ Հռիփսիմի,
Վասն իւր որդոցն վախճանի,
Այլ և իմոյս մեռեալ ոգի,
Մաքոս անունՙ մեղաւք ի լի,
Յիշատակ սայ ինձ եղիցի,
Զի փափագանաւք գրեցի,
Ո՜[հ. ս]ուրբ մանկունք առագաստի,
Որք ընթեռնուք զգիրքս աղաւթի
Յիշմ[ան առն]ել զմեզ արժանի
Եւ զննջեցեալսն իմ, զոր գրեցի։
Եթէ ասէք սրտով ի լի,
Թէ թող, աստուած ձեզ ողորմի,
Թողցէ զյանցանս ձեր չարի
Եւ ազատէ ի հրոյն գեհենի։
Նա և աստուած ձեզ ողորմի
Յաւուր մեծին դատաստանի,
Յորժամ յաթոռ բազմեալ նստի
Ու գործոց հատուցմունք լինիցի.
Փառք արդարոցն յայտնի լիցի,
Աւրհնեն զաստուածն յաւիտենի։

Բ

101 բ Քրիստոս աստուած, քո սուրբ մարմնով և արեամբդ, որ միշտ պատարագիս անծախապէս, ողորմեա տառապեալ ոգւոյ գծողի սորա Մաքէոսի անարժան իրիցի, և ծնաւղացն իմ Սուլդանի և Թուխթենոյ, նաև գեղեցիկ պատանոյն իմ Ղուլիջանն կոչեցելոյն, որ և յայսմ ամսոյս առ քեզ կոչեցեր...։

Ընդ նոսին և ինձՙ մեղաւոր և անարժան Վարագեցի Յովանիսիս, որ զանունս ունիմ և զգործս ոչ։ Ընդ նոսին և ձեզ՝ յիշողաց զմեզ թողութեան մասն պարգևի, ամէն։

* Նորոգման ժամանակ փակցված թղթի տակ մնացել է չորս անվերծանելի տող։

## 438

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4923

Հետ. ստացող՝ Դրպօ
վայր՝ Ալի[վ]ա՞նք

... Ես Դրպօ և եղբայր իմ Յովսէփ՝ Մովսեսա որդիքս, գնեցինք
262 բ զսուրբ աւետարանս ի հալալ յարդեանց մերոց և տուինք || ի դուռն
սուրբ Աստուածածնին Մլիանից եկեղեցոն. Ո՜վ սուրբ քահանայք և
դասք լուսերամից, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԴրպօ, և
զկենակիցն իւր զՀաթուն, և զեղ[բ]այր իւր զ[Յ]ովսէփ, և զկենակիցն
իւր զՄլրան, և զիւրեանց ծնո[ղ]քն՝ զՄովսէս և զՀաթուն, և զամենայն
ազդակիցն իւրեանց, և զայնոսիկ, որ աւգնական են եղեր ի գին սուրբ
աւետարանիս, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասա-
ցէք...։

Վերջին գնել սուրբ աւետարանիս ի Թիվս Հայոց ՊՁ. (1431)։

## 439

## ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

Երևան 845

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Երերան վանք

243 բ ... Ի Թիւ Հայոց ՊՁ. (1431) գրեցաւ հոգիաբողբոջ բուրաստանս
վարք սուրբ Հարանց, ի վանքս ի յԵրերան, ընդ հովանեաւ սուրբ
Աստուածածնիս, և սուրբ Գէորգիս, և սուրբ Ստեփանոսիս, և սուրբ
Նշանիս, և առ ոտս Յովաննէս րաբունապետիս, և ընտրեալ աշակեր-
244 ա տացն գրոց, և սուրբ կրաւնաւորացս, | | | որք աստ կան հաւաքեալ։
Արդ, ցանկացող եղէ ես այսմ հոգիաբուղխ և ծաղկաւէտ բուրաստա-
նիս՝ Յակոբ անարժան աբեղայս, և իմով ձեռամբս գծագրեցի զսա, զի
եղիցի սայ ի վայելումն անձին իմոյ և ամենայն մանկանց Սիոնի։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսանելով, կամ
աւրինակելով, կամ կարդալով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր
զիս՝ զանարժան զստացաւղս՝ զՅակոբ կրաւնաւորս, և զծնաւղսն իմ՝
զհայրն իմ զԹադէոսն, և զմայրն իմ զՓաշիկն, և զամենայն արեան-
մերձաւորսն իմ։ Նաև առաւել զբազմերախտ ուսուցիչս և զվարդա-
պետս մեր զՅովանէս հաւրեղբայրն իմ, որ է երկրորդ ստեղծաւղ մեր;
յիշեսջիք ի Քրիստոս...։

Բ

Քրիստոս աստուած... զտէր Ստեփանոս ընդ կուսակրաւն սուրբ քահանայիցն դասեսցէ, որ սա եղև պատճառ սուրբ Հարանց Վարուցս, որ աստ կատարեցաւ։

## 440

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ՀԱ, 1917/16, էջ 63*

Վայր՝ Ռշտունիք, Շադուան գիւղ

*Արդ, գրեցաւ սա ի թիւ՟ ՊՁ. (1431), ի հայրապետութեան տէր* Դաւթի, *յերկիրս* Ռշտունեաց, *ի գիւղս, որ* Շադուան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ի դառն ժամանակիս, զոր չեմ կարող ընդ գրով արկանել։*

## 441

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նոտ. 97—98, Նշխարք (№ 4515), էջ 136—137, Բաղէշ*

*Նորոգող և կազմող՝* Ներսէս
*վայր՝* Հիզան(*)

... Հայրապետ *կրօնաւոր, զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ աստուածախօս սուրբ աւետարանիս, և գնեաց զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ի վայելումն անձին իւրում, և քուերորդւոյ իւրոյ* Մխիթար *դեռաբողբոջ և նորածաղիկ քահանայի, և ծնողացն իւրոց հօրն* Խուսէն-Բէկին *և մօրն* Խէրիքին, *ի մեծ թւականութեանս Հայոց* ՊՁ. (1431), *ի կաթուղիկոսութեան Հայկազեանս սեռի տեառն* Կոստանդեայ, *և ի մերոյ կաթուղիկոսութեան* Աղթամարայ *տեառն* Դաւթի, *և ի թագաւորութեան մերոյ* Ամիր-Դայուտի, *և ի ղանութեան աշխարհիս* Սքանտարի, *զոր տէր աստուած* Իսրայէլի *պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազին և բարձրացուսցէ զեղջիւր Սիոնի ի մէջ Հայաստանեայց...։*

*Եւ ես...* Ներսէս *մահասսի... ծրագրեցի զյիշատակարան և նորակերտեալ կազմեցի, և աղաչեմ յիշել և զիս միով աստուած-ողորմիւ, և զստացող սուրբ աւետարանիս* զՀայրապետ *հաւատարիմ կրօնաւորն, և* զՄխիթար *քահանայ, և զծնողս իւր* զԽուսէն-Բէկն *և* զԽէրիքէն, *և զերկու քոյրն* զԳուլնար *և* զՇնոռնուր, *և զերկու աղբերն* զԳրիգորն *և* զՔուրդամիրն *և* Ղազար*, *և զկողակիցն իւր* զԹանխաթուն, [*և զդուստրն*] զՄարգարիտն, *զփեսէն իմ* զՎասակ, *և զնորաբողբոջ զաւակն մեր* զՄուսէս, *և զկնքաւորն իմ* զՆիկողայոսն *յիշեցէք առ աստուած։*

---

* *Երկու եղբոր փոխարեն՝ բերված են երեքի անունները, ինչպես նաև որպես «կողակից» նշված է երկու անուն (Թանխաթուն, Մարգարիտ)։ Սրա վրա ուշադրություն է դարձրել Փիրղալեմյանը և հանգել մեր կարծիքով անհիմն եզրակացության։ Լսենք նրան. «Զոյգ անուամբ յիշէն թէ Թանխաթուն և թէ Քուրդամիրն, և այսու յայտ լինի մեզ, թէ առ. Նախնիս մեր կայր սովորութիւն զոյգ անուն գործածելոյ»։*

*Թվում է, որ պարզապես «երկու աղբերն» արտահայտությունը պետք է սրբագրել «երեք աղբերն» ձևով, և «Մարգարիտ» անունից առաջ ավելացնել «և դուստրն» բառը։ Որ Մարգարիտը, իրոք, եղել է ստացողի դուստրը, այդ երևում է նաև այն բանից, որ նրանից անմիջապես հետո հիշատակվում է ստացողի փեսան (այսինքն՝ դստեր ամուսինը). ոչ մի հիմք չունենք ենթադրելու, որ հիշատակարանի մեջ տեղ են հատկացրել փեսային, բայց արյունակից դստեր մասին լռել են։*

## 442

## ՃԱՇՈՑ

Երևան 7434

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ մերձ ի Կաֆայ

395 ա ...Սապէս և երջանիկ րաբունապետս մեր և առաքինասէր և քաջ հռետորական իմաստիւք լցեալ տէր Սարգիս վարդապետս՝ երեսփոխանն սրբոյ կաթողիկոսին և աթոռակալ Հոնաց աշխարհի և Կաֆայիս. ի մերում ժամանակիս, որ աստ պատահեցաք՝ սա խորհուրդ բարի եդեալ ի մտի, զարդարեաց զմենաստանս մեծի հաւրն սրբոյն Անտոնի շինուածովք յաւրինելով՝ յիշատակ անջնջելի ազգաց յազգս, բրգամ[ր]ք և պարսպով, և գեղեցկայարմար տնտեստնով, և ջրհորով, և հողմային ջաղջով, և պայծառագոյն ծանր ժամատեղով, և բազում բարի և հեզահոգի եղբարբք։ Նաև զմատեանս գրոյ ժամատեղաց լնուլ կամելով՝ ըղձայր փափագելի տենչմամբ, որով պատրաստէր Թուխտս յոլովագոյնս գնոց, գնելով արդեամբք իւր։

Իսկ ես փցուն և անարհեստ գրիչս Քրիստոսատուր մեղապարտ և սուտանուն կրաւնաւորս, աւգնական լինել ցանկացա սրբոյ եկեղե-
395 բ ցւոյս ըստ ի Սմում չափոյս, և յանձին կալա գրել ձեռամբ իմով զՃաշոցս զայս, ստանալ կամելով ինձ գանձ պատուական և անդրժրելի յանարիկն Սիոն, ուր ոչ գող մերձենալ կարեն և ոչ ցեց ուտիչ լինել։ Եւ հողեոր որդեակն իմ Աւգսէնտ մանուկ կրաւնաւորն աւգնական եղև կոկելովն և յարգարեալ պատրաստելով։ Քանզի պատուականութիւնն սրբասէր վարդապետին մերոյ յորդորեալ ստիպէր զամենեսեան ի լաւ անդր՝ ի բարեբարութիւն և ի սէր խաղաղութեան և ի վաստակս և յանխոնջ աշխատութիւնս, այնք՝ որոց ճնան փոխաբէնքն ի կեանսն յաւիտենականս, որք ի սէր երջանիկ վարդապետին ընթերցեալք մակաղեցտն առ սովաւ ի գութ խնամոց սորա եղբարք պիտանիք և հաւատարիմք, յորոց մինն ի սոցանէ Նախ եղբայրն մեր Թադէոս կրաւնաւոր քահանայն Աւրամենց, և զԹորոս աբեղայն զգրոց աշակերտն, և զմիւս Թորոս աբեղայն, և զՍիմէոն աբեղայն, և զՅովհաննէս աբեղայն, և զՎարդան աբեղայն՝ աշխատասէրն, և զՍտեփանոս աբեղայն՝ զլուսարարն, և զՄաղաքիա աբեղայն, և Յովանէս աբեղայն, և զխոնարհ հոգին զՍարգիս աբեղայն՝ որ ինձ՝ փցուն գրչիս լաւաւղ էր և զամենայն ժամակարգութիւնն ի մաւտս կատարաւղ էր, և զՄինաս աբեղայն։ Իսկ ստուածասէրն և ըղձալին Սահակ աւագ սարկաւագն՝ անխոնճ աշխատաւորն, որ զբովանդակ ցաւն և զհոգսն վանացս ունի յանձին իւրում հրամանաւ մեծի վարդապետին, որ է սիւն և հաստատութիւն սրտի նորին, միեղէն եղբայրութեամբք, որք աստ բնականապէս կացեալք աշխատեցան ընդ նոսա հնազանդք և հլուք գոլով, որ փախուցեալք յանտերունջ գոլոյն աստ եկեալք զկամս իւրեանց ուրացան, և զմիւս սպասաւոր վանացս՝

զԱստուածատուրն, որ է որդի պարոն Նուրատինին, և զԵսայի արե-
գայն, որ մանուկ հասակաւն իւրով ուրտցեալ զաշխարհն և զինչսն՝
եկեալ աստ կրաւնաւորեցաւ, որդի գոլով պարոն Աստուածատրին, ե
եղև պատճառ բազում բարեաց վանացս, քանզի բարեպաշտ տիկինն
խաթուն Ազիզ–Մելիքն՝ դուստրն պարոն Ամիրին, և որդին իւր Եսայի
կրաւնաւորն ետուն վանացս սուրբ Անտոնի Ճ. (100) սոմ ի պանքն
եդեալ, անդրդուելի, մնալով անդ ի կումինին գլուխքն, որ է Ճ. (100)
սոմ, և զմուտքն նորին յամենայն ամի ուտէ վանքս՝ ՌՆ. (1400)
սպ[իտակ]։

Եւ պարոն Ամիրն, որ է պապն Եսայեա՝ ԻԵ. (25) սոմ, և
մուտքն է Յ. (300) սպ[իտակ] ամ յամէ անխափան վանացս։

Եւ հայր Ստեփանոս եկեալ աստ միայնակեաց եղև, տուեալ վա-
նացս ոչխարք և շինուածք, եկեալ յարեցաւ ի սրբութիւնս ի գո-
վութիւն և ի գութ վարդապետին, ուրանալով զաշխարհ։ Զորոց տես-
եալ զայսպիսի զհաւատարմագոյն սէրն, որ առ աստուած և առ սուրբ
եկեղեցի նորա, ըղձալով փափագեցայ և ես այսպիսի գեղեցկայար-
մար և խորհրդաւոր գիրս ստանալ, որ ունի բովանդակեալ ի ծոց իւր
զբոլոր ամին ընթերցմունսն՝ զտաւնից տէրունականաց և զաստուա-
ծահաճոյից արանց և կիրակէից և զպահոց, ըստ ՅԿԵ. (365) աւուրց
396 ա տարոյն, անմոլար շաւիղ || եկեղեցւոյ մանկանց թողեալ ի հոգեկիր
արանց աստուածազգեստից, որ ի նախնեաց անտի հիմանց եկե-
ղեցւոյ սահմանեցաւ ի փառս Քրիստոսի և ի պայծառութիւն որդւոց
Սիովնի, զի յար ընթերցմամբ լուսաւորեսցին միտք մարդկան ի
պատուիրանս տեառն, որ է լոյս և լոյս տան աչաց։

Եւ եղև աւարտ սորա ի ծննդենէն կենարար փրկչին ՌՆԼԱ. (1431)
ամի, իսկ ի մերում թուականիս յաբեթական տաւմարի Հայկազան
սեռիս ՊՁ. (1431) ամի, ի մարտի ԻԶ. (26), աւր աւագ երկուշաբթի,
ի հայրապետութեանն տեառն Կոստանդնեա բարեպաշտի և աստուածա-
սիրի և իմաստնոյ, ե ի յաթոռակալութեանն և յերեսփոխանութեանն
սրբասիրի, մեծի և քաջ րաբունապետի տէր Սարգիս վարդապետի, ի
մերում Հոնաց աշխարհիս և Գազարիայ նահանգիս՝ Սուլխաթ Ղրիմի և
Կաֆայիս մայրաքաղաքիս, ի մենաստանս մեծի սրբոյն Անտոնի և
սուրբ Աստուածածնի, և առ ոտն սոցայց աղաւթից, ի վայելումն
այսմ մերում մենաստանիս սրբոյն Անտոնի, և մանկանց սոցին
յաւիտեան։ Յիշատակ մեզ՝ վերոյգրելոցս մեծի վարդապետի և ինձ՝
աշխատողի բազում տառապանաւք, քանզի ի տուէ և ի գիշերի ոչ
դադարեցի ի գրելոյ և ի ժամ նեղասրտութեան իմոյ և ժամ աշխա-
տութեան տկարանալոյ մարմնոյս ոչ արգելայ ի գրելոյ։ Վասն այ-
նորիկ աղաչեմ մի լինել մեղադիր խոշորութեան և կամ սխալանաց
սորա։ Եւ զի ծաղկեցի և կազմեցի և պաճուճեալ զարդարեցի վասն
յուսոյ ողորմութեանն աստուծոյ յիշատակ լինելոյ ինձ, և ծնողաց
իմոց Յովաննէսին և Հռփսիմէին, և հաւրքուերն իմոյ Մարանէ, և
մաւրքուերն իմոյ Եղիսաբէթին, և իւր երեք որդւոցն, և միւս մաւր-

քուերն իմոյ Սուրաթին, և երկու քերցն իմոյ՝ Խաւթլ-Մելիքին և Աննային, և ամենայն արեան մերձաւորաց իմոց։

Արդ, զՃաշոցս զայս ազատ արարեալ եդաք ի սուրբ եկեղեցիս՝ ի վանս մեծի սրբոյն Անտոնի, որ կացցէ մինչև յաւիտեան ազգ յազգէ Թիալով և տեսելով աստ։ Եւ ոչ ոք ի մերոց մերձաւորաց իշխեսցէ սորա, և ոչ յայլոց իշխողաց վանացս կամ ծախելով և կամ գրաւ գնելով և կամ երախտիք առնելով՝ մեր գոլ ասել զսա, այլ որպէս մեք ազատելով զսա տուաք աստ՝ ի սուրբ Անտոն վանքս սեփհական և անահ յուժեքէ, զի ոչ մեք, որ երախտաւորք եմք՝ վարդապետս և գրիչս և կոկողս, ասել կամ իշխել ունիմք սմայ, քանզի մեր յաւժարական կամաւքս արարաք զսա ազատ, վասն այնորիկ ոչ ունիմք մեք իշխանութիւն Ճաշոցիս ծախել, և կամ գրաւ գնել, և կամ այլ ինչ դրդուելի իրաւք զսա Նենգել և խախտել ի վանացս։ Այսպէս և մերձաւորքն ոչ ունին ամենևին հրաման իշխելով խաւսել ընդդէմ Ճաշոցիս, և որք յանդգնաբար իշխեսցեն աղագաւ բան ասիցէ խոտորեցուցանել կամելով զՃաշոցս ի վանացս, նա զվարձն Կայենի և Յուդայի և խաչահանուացն առցէ և սուտ լիցի առաջի ամենայն դատաստանաց, և Ճաշոցս այս սեփհական վանացս եղիցի։ Արդ, աղաչանաւք հայցեմք զլուսերամիցդ պարս, հանդերձ հաւատացեալ որդւոց լուսոյ ժողովրդական դասիւք, որք հանդիպիք ‖ կարդալով և կամ լսելով զյիշատակարանս զայս, յիշեցէք ի Քրիստոս աստուած, խնդրելով ի Նմանէ շնորհել մեզ զերջանիկն մեր զսրբասնեալ և զաւրինակն ամենայն բարեաց զտէր Սարգիս վարդապետն ընդ երկայն աւուրս, յամերամս ժամանակաւք, պաբագայց ամաւք, մինչև ի խորին ծերութիւնն խաղաղական կենաւք Թիալ և տեսել առ մեզ, և յետ աստեացս ելանելոյ՝ սրբոց վարդապետաց դասակից և պսակակից առնել։

Եւ զիս՝ զաղկաղկ և փանաքի գրիչս զՔրիստոսատուր աբեղայս յիշեցէք ի տէր Քրիստոս, ողորմութիւն հայցելով ինձ, և ծնողացն իմոց, և հոգևոր որդւոյն իմոյ Աւգսէնդ մանուկ կրաւնաւորի, և եղբաւրն և ծնողաց նորին։ Եւ յիշեցէք ի տէր ողորմութիւն խնդրելով և սոցա, զորս ի վերոյ յիշեցաք՝ զբարեկամք վանացս՝ զերախտաւորքն և զաշխատաւորքն, և զշնորհողն աւրինակի Ճաշոցիս զԳէորգ աբեղայն յիշեցէք ի բարի մասին ողորմիս տալով...։

## 443

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 6122

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ մերձ ի Կաֆայ

318 ա ... Գրեցաւ Շարակնոցս այս ձեռամբ բազմամեղ Յովհաննէս աբեղի ի սուրբ Գրիգոր վանք, որ է մաւտ Կաֆայի, ի ստոյգ աւրինակէ Գրիգոր Խըլուն: Եւ սա լինի յիշատակ գրողի սորա Յոհաննէս աբեղայի, և եղբաւր իւրոյ Սիմէոնի կրաւնաւորի, և հաւրն Թա-

*թոռին, և մաւր Նազայ* Թան-Մէլիքի, *և քրոջն իւրեանց* Մարիանէի, *փեսին իւրեանց տէր* Ավագի *և ճըշմարիտ քահանայի, և որդոյ Նորայ տէր* Աւքսենտին. *Ես* Յովհաննէս *աբեղայս աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, խնդրեցէք յատուծոյ մեղաց իմոց թողութիւն, և ծնաւղաց իմոց, և ամենայն ազգաց իմոց...։ Գրեցաւ սա ի թվական[ի]ս Հայոց ՊԶ. (1431), սեպտ[եմբերի] ԻԲ. (22), ի հայրապետութեան տեառն տէր* Կոստանդնեա, *և մերոյ Նահանգիս տէր* Կարապետին *և ճըշմարիտ հայրապետին, զոր տէր աստուած վայելել տացէ, ամէն, ամէն։ Այլ և յիշեցէք յաղաւթըս ձեր զաւրինակին տուաւղն՝ զ*Գորգ *սարկաւագն...։**

444

## Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

**Երևան 2961**

*Հետ. ստացող՝* Ատոմ

73 ա *Զվերջին ստացաւղ այսմ գրոց զ*Ատոմ *աբեղա, և զծընաւղսն իւր՝ զհայր իւր զ*Յակոբ, *և զմայրն իւր* Նէտիր, *որք են ի Քրիստոս հանգուցեալ, և զհարազատ եղբայրսն իմ զ*Զըրքին, զԽութլուբուղա, զՄենաս, *և զսարկաւագ եղբայրն իմ զ*Յովանէս, *և զաւագ եղբաւրորդեակքն իմ զ*Ստեփաննոս *և զ*Թաիպշա, զՅակոբ *և զ*Պարոնշա, *և զիս զմեղաւք լըցեալ ոգիս զ*Ատոմ *սուտանուն աբեղա աղաչեմ, աղաչեմ զսուրբ գաղափարողսդ այսմ գրոց, յիշել ի սուրբ աղաւթս ձեր զվերոյգրեալսդ միով աստուած ողորմայիւ...։*

*Ի թվիս Հայոց ՊԶ. (1431) ստացայ զսուրբ գիրքս ի հալալ արդեանց իմոց առ ի յիշատակ և յոյս բարեաց ինձ և ծնաւղացն իմ...։*

445

## Մ Ա Շ Տ Ո Ց

**Երևան 4265**

*Գրիչ՝* Թաւրոս

ա

15 բ *Արդ, աղաչեմ զամենեսեան, որք պատահէք սմա և կարդայք յիշեցէք ի Քրիստոս զանարժան գրիչս՝ զ*Թաւրոսս, *և զծնաւղսն իմ, և այլն, որ ի յետ և յառաջ դրեցաք։ Ես իմով տգիտութեամբս ժողովեցի զաւրինակերն աստի և անտի, և հաւաքեցի ի մի տուփ, և ձմեռն էր և ցու[ր]տ, և թանաքն մսեցաւ, և այս չափ էր կար մեր։*

*Գրեցաւ թվ. ՊՃԶ. (1431)։*

---

* *Ներքին, լուսանցքի վրա կա ԺԵ. դարի անթվական մի հիշատակարան, որտեղ ասված է. «Զվերջին ստացող դրոցս* զԽէր-Խաթունն, *[որ ստ]ացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, զաւակ /// մանուկ կրաւնաւորին, տէր* Կիւրեղին, *զոր /// վայելել տացէ, ամէն։ Այլ և յիշեցէք յաղաւթս /// տիկին, որ և նա մայրութիւն կանէ տէր* Կիւրեղին»։

Բ

133 ա ...Կատարեցաւ հոգիաքնար սուրբ մատեանս՝ մեծի աթոռոյս սուրբ Փրկչիս և սուրբ Երևմանս և սուրբ Նշանիս աթոռոյս, և ի հայրապետութեան աթոռակալէս ի տէր Սարգէս, և զգծող գրիս՝ զսուտանուն աբեղաս զԹաւրոսս յիշեսցիք, զՉոքինն և զիւր որդին զԱռաքել սարկաւագն, որ զաւրինակն շնորհեց մեզ, դարձեալ և զմեր Նախնին, և զհայրն մեր զՄկրտիչն ‖ քահանան, և զիւր ամուսին Պուլղան
133 բ յիշեցէք ի տէր և մեզաց թողութիւն խնդրեցէք, ամէն։

Արդ, գրեցաք զՄաշտոցս ի ցուրտ և ի դառն ժամանակ, որ և թանաքն սսեցաւ և ոչ եղաւ պիտոյ, որ ոչ մեղադրէք թէ սղալ կենայ, ծեր եմ։ Գրեցաւ Մաշտոցս ի կարգ և ի պատիւ ամենայն հաւատացելոց մանգանց եկեղեցոյ մաւր մերոյ Սիոնի, ի խնդրոյ զաւակի իմոյ Յովանէս սարկաւագի, ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց, յիշեսջիք ե զիւր ծնաւղն՝ զԽաս-Խաթունն և մեզաց թողութիւն խրնդրեցէք։

Արդ, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ աւրինակելով յիշեցէք ե մեզաց թողութիւն խնդրեցէք մեզ և ձեզ, ամէն։

Գրեցաւ հոգիայքնարս ի թվ. Ծ. և Ը. ՋԱ.* (1432), ձեռամբ անարժան գրչի Թորոսի։

446

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 3555

Ստացող՝ Մանուէլ

ա

285 բ ...Ի թվ. ՊՁ. (1431) ես՝ Մանուէլ աբեղա և եղբարս իմ տէր Տիրաւագ ստացաք զգանձարանս ի հալալ յընչիս մերոց ի վայելումն անձին և յիշատակ հոգւոց մերոց, ե ծնողաց, և ամենայն արեան մերձաւորաց։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրագործ յաղաւթս ձեր զվերոյգրեալսդ....։

Բ

223 բ Ո՛վ տէր իմ Տիրաւագ, զայս երգեայ, և մեղուցեալ զգրչակս յիշեայ։

447

ԱԻԵՏԱՐԱՆ

F. Macler, Rapp. sur une miss. scient. en Belgique, էջ 114—115, միջնորդութեամբ ՀԱ, 1939, սյուն. 181

Ստացող՝ Սիմէոն

Ի վերջին դարն ժամանակին, յորժամ սէրն ցամաքին և աշ-

* Իմա «ԸԾՋԱ», այսինքն՝ ՊՁԱ. (=1432)։

*խարհ մեղաւք տապալին, մարդկան յոյսն պակասին և սատանայի կամքն լինին և տեսիլ սրբոյն Սահակի ի մեզ կատարի։ Ես վերջացեալս ի էն (°) սուտանուն* Սիմէոն *աշակերտս ցանկացող եղա աստուածաշունչ գրիս ի Թվ. հայոց Պ[Ձ°]. (1431°), ի սուրբ յանապատիս, որ սուրբ Յակոբն յորջորջէի, ի շնորհազարդ վարդապետն* Ստեփանոս, *որ էր ի յերկրէն* Գաւաշից, *ի յորդոյ* Թումայէ՝ *ի* Գաւղոս[ի] *Թոռնէն, զի նա առաքելոյն նմանեալ… և զաւետարանս է ինձ տուեալ և ԺԲ.(12) Յլաւրին գին է առեալ, և իմ էլ ճար չյիմացեալ, մինչ զսա բարեխօս կալեալ, զի խիստ եմ մեղաւք լցեալ և սատանի բաժին եղեալ, ի յանապատէ եմ հեռացեալ և յաշխարհի փողոց մտեալ, զի իմ մեղքն բազմացեալ և զանապաններն աւերեալ։ Արդ, որք հանդիպիք այս սուրբ աստուածաշնչիս զիս յիշեցէք՝ զ*Սիմէոն *վարդապետս…։*



ՊՁԱ 1432

## 448

## Մ Ա Շ Տ Ո Ց

Երևան 965

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Եղեգեաց գաւառ, Երերան անապատ

377 ա ...Արդ, եղև աւարտումն հոգիաբուխ տառիս, որ կոչի Մաշդոց,
ի Թիւաբերութիւնս Հայոց Մեծաց ՊՁԱ. (1432) | | | * [ի հայրապե-
տութեան] Կոստանդեա, և յաշխարհակալութեան ըստ Ներելոյն աստու-
ծոյ՝ Սքանդարին, ի գա[ւառիս] Եղեգեաց, ի սուրբ [անապա]տս ձե-
Երերան, ընդ [հո]վանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբիս,
ռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Դաւիթ կրաւնաւորի, առ ոտս
գերերջանիկ րաբունապետի Յովանիսի, դառն և պանդուխտ կենաւք, ի
դառն ժամանակիս, որ եղև սով սաստիկ՝ մինչև ղպեղծ կենդանիս կե-
րան բազումք, նաև ի Դաւրէժ քաղաք զմարդիկ կերան, և զեւղն մար-
դոյ որպէս ղանասնոյ վաճառէին միմեանց։ Եւ եղև այս պատուհաս
ի գալ անաւրէն ազգին Պարսից, որ կոչի չաղաթայ, որ և վասն ծո-
377 բ վացեալ մեղաց մերոց եկեալ Մ[է]ր Թագաւորն Պարսից Շահռուխ յաշ-
խարհս Հայոց, յերկրորդ գալստեան իւրոյ։ Եւ աւերեալ քանդեաց ղբա-
ղում տեղիս, և զբազումս գերեաց, նաև յերկիրն Վասպուրականի և
Քաջբերունոյ կին և տղայ ոչ մնաց, այլ զամենայն առեալ տարաւ ի
Սամըրղընդ, և զկնի նորա եղև սովն, որ գրեցաք, և զամս Դ. (4) մըր-
րիկ խռովութեան ոչ դադարեաց յաշխարհէս, որ դեռ ևս է։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ տառի կամ
զխորհրդածութիւնս եկեղեցւոյ կատարելով կամ աւրինակելով, յիշես-
ջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանպիտան գծողս, որ ոչ աստու-
ծոյ եմ պիտոյ և ոչ մարդոյ, նաև զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՀնդու,
և զմայրն իմ զՄարթայ, և զքոյր մաւր իմոյ զՀոիփսիմէ՝ զհանգու-
ցեալսն ի Քրիստոս, այլ և զհարազատ եղբարքն իմ զԹումայ մաքրա-
միտ քահանայ, և զՄխիթար աշխարհական, և զայլ ամենայն արեան
մերձաւորսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ Եւ լի սրտիւ աստուած-
ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրեցէք, և ձերն թողեալ լիցի
յամենակալ տեառնէն, ամէն։

* Ձեռագիրը եղել է չափազանց վատ վիճակում, հավանաբար ԺԶ. դարում մեծ վարպետությամբ նորոգել են և որոշ էջերի վրա թուղթ են փակցրել։ Այստեղ 4 տող մնացել է նորոգման ժամանակ փակցված թղթի տակ։

Զսակաւ աշխատող սորա զորուլ | | | , որ զգիրքս ծրեցի հան-դերձ ծնօղաւքն յիշեցէք ի Քրիստոս․․․։*

բ

248 բ Ի Թուականիս մեծ Հայո ՊՁԱ. (1432) գրեցաւ տառս Մաշտոցձեռամբ տառապեալ Դաւթի՝ աշակերտի ուղափառ գրի, ի խստաբեր և ի դառն ամի, որ ամենայն հասակ մահուամբ կատարի՝ ծերք և տղայք, երիտասարդի և կուսի, և այլոց ամենայնի։

Արդ, աղաչեմ զձեզ մանկունք Սիոնի, յորժամ կատարէք զաւրէնս Քրիստոսի, յորում եդեալ կայ ի յայսմ գրի, յիշատակի արարէք արժանի ըզանիմաստ գրիչս եղկելի, նաև զծնաւղսն իմ Նազելի և դուք գրիք ի գիր կենդանի այժմ և յապայն յաւիտենի, ամէն։

449

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9223, ԺԲ**

Գրիչ՝ Կարապետ Աղթամարցի
վայր՝ Տփխիս

ա

․․․Շնորհիւ տեառն սկսա և ողորմութեամբ տեառն աստուծոյ կատարեցի ի ՊՁԱ. (1432) Թվականի Հայոց, յաւգոստոս ամսոյ ի ԺԶ. (16)։ Գրեցաւ ձեռամբ սուտանուն աբեղայի Կարապետի,*** ի մայ-
1 բ րաքաղաքս Տփխիս, ի վանքս պարոն Սալաղենց, ի ‖ դրան սուրբ Ամենափրկչիս, զոր տէր աստուած զանձեռագործ խորանն պարգևեսցէ՝ զերկնից արքայութիւնն՝ շինողաց սուրբ ուխտիս, ամէն։

Եւ ես մեղսամած գրիչ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զիս, և զծնաւղսն մեր՝ զՊետրոս քահանայ և զՇնոհուոր, և զեղբայրն իմ զՅոհանէս, և զքեոն իմ զՍուլտան՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, որ և զմիւս եղբայրս, որ աւգնական եղև ի կոկել Թղթիս․․․։

Եղբայրք, խոշորութեան գրիս և սգալանացս անմեղադիր լերուք, զի կարն մեր այդ չափ էր․

բ

1 ա Ցայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս պարոն Զալաբէն, և յետ Խ. (40) աւուր փոխեցաւ ի Քրիստոս արհեպիսկոպոսն տէր Յովանէս՝ եղ-

* Վերջին պարբերությունը գրված է 377 բ էջի ներքևում՝ շատ մանր տառերով, գիրը խունացել է և մեծ դժվարությամբ է վերծանվում։ Գրողի անունը չի կարդացվում։

** Ձեռագրից պահպանվել է միայն հիշատակարանը։

*** 1 բ էջի ստորին լուսանցքի վրա հազիվ նշմարելի մանր տառերով գրված է կիսով չափ ջնջված հիշատակագրություն, ուր կարդացվում է գրչի անունը «Կարապետ Աղթամարցի»։

բայր նորին, որդիք պարոն Փաշի, երիտասարդական մահուամբ, և թողին սուգ անբժշկելի իւրոցն և ատարաց։ Զոր տէր աստուած թողցէ զամենայն սխալանս նոցա ի յաւուր դատաստանին, ամէն։

## 450

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ե. Լալայան, Ջաւախք, Ազգ. հնդ. Բ. 1897, էջ 288

Գրիչ՝ Ծատուր
վայր՝ Բջնի

Կամաւ ամենակալին աստուծոյ հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, ի դարս վերջին և ի ժամանակս չար և անբարի, ի թուականութեան հայկազեան տումարի ՊՁԱ. (1432), յանիշխանութեան Աքարադեաճ գաւառիս, ցիր և ցան եղեալ տարաշխարհիկ ի մէջ... ազգին Վրաց։ Արդ, ի յայս և ի սոյն ժամանակի, յեպիսկոպոսութեան արհիական աթոռոյս Բըջնւոյ* տէր Յովհանէսի, ես Ծատուր՝ ծառայ ծառայից աստուծոյ, նախարար, վերակացու և առաջնորդ քաղաքիս Բջնւոյ,** և ամուսին իմ Սարիբէկ՝ հասեալ ի ժամ ծերութեան, ակն ունելով ելից ի կենցաղոյս՝ ջերմեռանդ սիրով ստացաք զսուրբ աւետարանս՝ մեզ և նախնեաց մերոց յիշատակ յաւիտենական, կտակ անվախճան կենացն, պաշար և առաջնորդ երկնաչու ճանապարհին, ի հալալ արդեանց մերոց՝ զաւակ ի Սիոնի և զանձ անկողոպտելի ի վերինն Երուսաղէմ։ Եւ ընծայեցաք զսա մեծ սիրով արհիական աթոռոյս Բջնւոյ և երկնահանգէտ մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս, յիշատակ հոգւոց մերոց։

## 451

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9450

Վաճառող՝ Մկրտիչ Սըսցի

ա

373 բ Կամաւ անմահին աստուծոյ ես՝ Մկրտիչ Սըսցի, որդի Ստեփանենոսի, եկի յաթոռն Բջնոյ, և իմ սրտի յաւժարութեամբ զիմ հալալ արգեամբ գնած աւետարանս ծախեցի Երեմիայ աբեղին և իւր եղբաւրն Սարգսին, ոչ ի հարկէ կամ ի բռնութենէ, այլ իմ սրտի յաւժարութեամբ։ Այսաւրէ վեր ոչ իմ, ոչ իմ ազգականաց, ոչ այլ մարդոց դաւի չկայ հետ սացան։ Ով հանդգնէ և դաւի անէ՝ յերից սուրբ ժողովոյն որոշեալ լիցի, և զիւրն ոչ ժառանգեսցէ, և մասն Յուդային առցէ, ամէն։

Հասաւ գինն լի և անթերի ԲԾԾ. (250) դ[ահե]կ[ան], որ անէ կէսն ՃԻԵ. (125) դկ.։

* Տպված է «Բըգնոյ»։
** Տպված է «Բգնւոյ»։

Վկայ գրոյս պարոն Սատրիկս և | | | Թամաշայ Ստեփաննոս հայրապետ, և ես Յովաննէս, որ զգիրս գրեցի։

Բ

Նուիրատու՝ Երեմիայ·

288 բ Կամաւն անմահին աստուծոյ ես՝ Երեմիայ արեղայ, որդի Աւկրին-
նի, ծընընդեամբ և սընընգեամբ Բջնոյ, ի հասեալ ժամս մահու և յելս գնացից իմոց յաշխարհէս, և յանյոյս մնացեալ էի ի յազգականաց յետ իմոյ յիշատակութեան։ Վասն այն պատճառին տուի զիմ հալալ արդեանց ստացեալ սուրբ աւետարանս Բարսեղ տրեզին, որ ինձ քառասունք կատարէ, միշտ ու հանապազ զիմ հոգիս ի բարին յիշատակէ։ Այսօրէ յետ աւետարանիս ոչ ով դաւեքար չելնի, ոչ իմոց, և ոչ աւտարաց։ Եթէ ոք յանդգնի ու զիմ անդարձս խափանել ջանայ՝ դատի յաստուծոյ և իմ մեղացն պարտական լիցի, զվարձ զՅուդայի և զԿայէնին առցէ։

Ես տէր Յոհաննէս արքեպիսկոպոս Բջնոյ և Արարատեան,* որ զգիրս գրեցի վկայ եմ, աստուած շնորհաւոր սանէ, ամէն։

452

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8410

Գրիչ՝ Սարգիս·
վայր՝ Եղեգեաց անապատ

14 ա ...Շնորհիւ ամենակալին աստուծոյ... աւարտեցաւ սուրբ աւե-
տարանս ի յանապատ[իս Եղեգեաց],** որ Քար կոչի, ընդ հովանեաւ
սուրբ Աստուածածնիս, և առ յոտս Յակոբ հրեշտակակրաւն ճգնաւորի,
ձեռամբ Սարգիս անպիտան ծառայի, վասն զի գրեցի զլուսաւոր և
314 բ զմաքրափայլ աւե || տարանս բժիշկ հոգոյ իմոյ...։
Մ՛վ մանկունք սուրբ եկեղեցոյ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք
սմա, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՄաթէոս բարի և հաւատարիմ,
քաջ և ընտրեալ քահանայն, որ է փափագ և ջերմեռանդ նախանձաւոր
շնորհացն աստուծոյ և յուսոյն կենաց, զոր տէր աստուած կատարեսցէ
զամենայն խնդրուածս իւր աստ և ի հանդերձելումն, քանզի
315 ա նա հաճեցաւ յաւժարութեամբ սրտի վասն || յուսոյ արքայութեանն
և վասն սիրոյն Քրիստոսի՝ զաւետարանիս մագաղատս ինձ ողորմութիւն
արար, և այն, որ առատն է յամենայնի՝ նմա պարգևեսցէ զիւր
յերկնից արքայութիւնն, և ծնաւղացն իւրոց մասն և բաժին շնորհեսցէ։

---

* Հիշատակարանը անթվական է. տեղադրում ենք 1432-ի թվաշարքում, որովհետև նախորդ հիշատակարանում ևս հանդես է գալիս նույն այս Յովհաննէսը, որպես Բջնիի եպիսկոպոս («յեպիսկոպոսութեան արհիական աթոռոյս Բըջնւոյ տէր Յովհաննէսի»)։

** Փակագծերի մեջ առնվածը քերված է, նկատվում են տառերի աղոտ հետքերը միայն։

Յիշեցէք և զհոգևոր հայրն իմ զՅակոբ անբիծ և արտասուալից աբեղայն, որ եղև մեզ մխիթարութիւն և հոգևոր ուրախութիւն յայսմ անապատիս, նաև զբազմերախտ տէրն իմ զԵրեմիա մաքուր և սրբասնեալ աբեղայն։ Յիշեցէք և զտէր Ստեփանոսն, որ զաւրինակն շնորհ-
315 բ եաց, յիշեցէք և զհոգևոր եղբայրն իմ՝ զմիւս Յակոբն՝ ‖ զճգնատեսակն և զկուսակրաւն աբեղայն։ Յիշեցէք և զմանկունք անապատիս զՅոհանէս հեզահոգի և ընտիր միայնակեացն և զՄարտիրոս աշխատասէր և բազմաչարչար կրաւնաւորն, որ զմարմնաւոր պիտոյսն իմ և զսպասաւորութիւնն անձանձրանալի, անտրտունջ, անթերի կատարեցին։ Յիշեցէք և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ Թադէոս, և զմայրն իմ Էլմա, և զեղբայրքն իմ Բախտիյար, Մարտիրոս, Գրիգոր, Դովլաթիյար, Գուլիյար, Արղութա, Բիրթէլ և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիսն և զհանգուցեալսն։

316 ա Դարձեալ, աղաչեմ և առ յոտս ձեր անկեալ մաղթեմ, յիշեցէք միով տէր-ողորմայիւ զիս, որ յետինս և անարգս եմ ամենեցուն՝ զՍարգիս անարհեստ գծողս...։

Թվ. ՊԶԱ. (1432)։

## 453

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՄԻՔԱՅԷԼԻ ԱՍՈՐԻՈՅ, ՎԱՐԴԱՆԱՅ ԵՒ ԿԻՐԱԿՈՍԻ

Տյուբինգեն 70, ՀԱ, 1942, սյուն. 33

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Ագուլեաց վանք

Գծագրեցաւ պատմագիրս այս... ի թուիս ՊԶԱ. (1432), ձեռամբ մեղսաներկ և անարհեստ գրչի Թումայի՝ սիրողի գրոցս, և ծնողացն իմոց Սիմէոն քահանայի, և մօրն իմոյ Սայինին: Արդ, գրեցաւ սա ի վանքս Ագուլեց, առ դրան սուրբ Առաքելոյս Թումայի, որ է աթոռ Գողթեան գաւառիս, ի թագաւորութեան պիղծ ու անօրէն և այլազգի Սքանտարիս, և ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեա, և ի վերագիտողութեան սուրբ հայրապետիս մերո տէր Տէրունականայ։

## 454

### ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Գալեմք. Յուց. Միւնխէնի, 6, էջ 19

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Մեծոփայ վանք

118 ա—119 բ ...Արդ, ես՝ Ներսէս սուտանուն կրաւնաւորս ցանկացաւղ եղէ աստուածային բուրաստանիս, և եռափափագ և տենչալի հայցմամբ խնդրեցի յաստուածարան վարդապետէն և ի քաջ բաբունապետէն Թովմայէ: Վասն որոյ ըստ բնածին բարուցն և հայրական գթոյն խոնարհեցաւ յաղաչանս տառապելոյս և ինքն շնորհեաց զքարտէսն և ետ գրել իւր ձեռնասուն աշակերտացն՝ Մկրտիչ վարդապետին և Յով-

ԵաՑՑէսիՑ և Զաքարիայի՟ և ելից զտէնչութն փափագանաց իմոց։ Վասն որոյ գրեցէ զնա աէր աստուած և զաշակերտսն իւր՝ յաւիտենական իրն և յանվախճան ուրախութիւնսն, ամէն։ Եւ արդ, գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՊՁԱ. (1432), ի հրեշտակարնակ յանապատս և ի հրաշափառ ուխտս Մեծոփայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբ հայրապետիս, և սուրբ վարդապետաց գերեզմա[նա]ցս առ ոտս նախասացեալ րաբունապետիս, որ փայլէ ի մերումս ժամանակի իբրև զարեգակն ի կորընթարթս երկնից։ Զոր և պահեսցէ զսա Քրիստոս աստուած երկար ամաւք ի պարծանս Հայոց ազգիս։ Եւ արդ, ստացայ զսա ի վայելս և ի մխիթարութիւն անձին իմոյ՝ Ներսէս կրօնաւորի, և ծնողաց իմոց՝ հօրն իմ Սարգսի, և մաւրն իմոյ Շնոհուռի, և ամենայն արեան մերձաւորաց իմոց։ Զի որք ընթեռնուք և կամ ընդյաւրինակէք և կամ հարևանցի տեսութեամբ հանդիպիք, լի սրտիւ, յաւժար կամաւք և բոլոր հաւատով ի ժամ սրբանուէր աղօթից ձերոց աստուած-ողորմի ասացէք....։

Այլ և յիշել աղաչեմ զերջանիկ և զերանաշնորհ դարհեպիսկոպոսն զտէր Մկրտիչ Ամթայ, որ երփն-երփն գունով և զանազան երանգով զարգարեաց* զսուրբ գիրքս առ ի յիշատակ բարեաց հոգւոյ իւրոյ և ի պատճառս աւրինակի տանս արևելեան...։

455

Մ Ա Շ Տ Ո Ց

Փիրգ. Նոտ. 100—101, Նշխարք (№ 4515), էջ 138, Բաղէշ՝ ի Գոմաց վանք

Ստացող՝ Մկրտիչ
վայր՝ Արճէշ

... Արդ, ես ... Մկրտիչ սոսկանուն վարդապետս եղէ ցանկացող այսմ աստուածաշունչ կտակիս, որ կոչի Մաշտոց։ Ետու դրել զսա սիրելի եղբօր մեր հոգևորի և սրբասէր քահանայի Կարապետի, յիշատակ ինձ, և հոգևոր ծնողաց իմոց՝ Կարապետ կրօնաւորի և Յակոբի, այլ և մարմնաւոր ծնողաց իմոց՝ Օրպէլին և Դովլաթին:

Դարձեալ, աղաչեմ յիշել ի բարին Քրիստոս զերջանիկ և զքաջ հռետորն և զտիեզերալոյս րաբունին զԹովմայ, որ զօրինակն շնորհեաց և բազում բարութիւնս եցոյց մեզ։ Նաև զհոգևոր եղբայրս մեր՝ զգրոց աշակերտեալ անձինս զՅովաննէս կրօնաւոր, որ զեօթն օրէնքն գրեաց և զյիշատակարանս գրոցս, և զՀայրապետ կրօնաւորն, որ զգիրս կազմեաց, նաև զհոգևոր որդեակս իմ զՄինաս դպիրն, որ զգիրս ծաղկեաց, և զԳրիգոր դպիրն, որ հանապազ մեզ սպասաւորէ, և զեղբայրն իւր զՄկրտիչ մոթն, գրեցէ զսոսա Քրիստոս աստուած ի դիրն կենաց և յանջնջելի դպրութիւնն, ամէն։

Եւ արդ, գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց ՊՁԱ. (1432), ի չար և ի դառն ժամանակիս, յորում տառապին ազգ քրիստոնէից

* Մկրտիչ Նաղաշի երեք նկարները, որոնք գտնվում են այս ձեռագրում, հրատարակիչը «տգեղ» է համարում։

զանազան պատուհասիւ ի ձեռաց անօրինաց ի Թոյլ տալոյն աստուծոյ վասն բազմութեան մեղաց մերոց։ Ի թագաւորութեան աշխարհաւէր և անիմաստ Սքանտարին, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և յեպիսկոպոսութեան տէր Յոհաննիսի, յերկիրս Քաջբերունի, ի քաղաքս, որ կոչի Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբիս, ձեռամբ Կարապետ քահանայի՝ հանճարեղ և իմաստուն քարտուղարի ...։

## 456

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՔՑՒ 8, էջ 7

Գրիչ՝ Թումայ Մարաղացի
վայր՝ Ղարայմանիս գիւղ

188 ր ... Եւ ես Թումայ տկար անձամբ
Եւ բնական Մարաղացի,
Որ եմ տխմար և անպիտան,
Փծուն գրիչ և խիստ լալի,
Քանզի չէի վարժել գրի
Եւ ոչ ուսեալ զարուեստ գծի ...։

Արդ, գրեցաւ ի գեւղս Ղարայմանիս, ընդ հովանեաւ Աստուածածնիս, ի դառն ժամանակիս և այս զարիպութենիս, և այլ զինչ ասեմ և զորն պատմեմ. Ի թուականութիւն հայոց ՊՁԱ. (1432), որ տարիս կենդայ[նա]կերպ ձուկն էր ...։

## 457

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ալիշան, Հայկարան

Գրիչ՝ Յովհաննէս Արճրումեցի
վայր՝ Ղապալոյ գաւառ, Եղունդի գիւղ

[Ստացող Յովհաննէս քահանայ, ի հասակի ծերութեան գնաց յԵրուսաղէմ ... և զնիւթն աւետարանի առեալ՝ եկն խաղաղութեամբ].* և ետ գաղափարել զսա ի ձեռն անարժան և փանաքի գրչի ի ժամանակս վերջինս, ի Թվ. Հայոց ՊՁԱ. (1432), ի դաւառիս Ղապալոյ. յառաջնորդութեան տեառն Մատթէոսի Աղուանից կաթողիկոսի ... ի մենաստանիս Ճալէթոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ աջերուն Գրիգորի և Աթանագինի, և նոցին սպասաւորի տէր Կարապետի փակակալի, որ զաւրինակն շնորհեաց ...։

* Փակագծերի մեջ առած հատվածը պատկանում է Ալիշանին, որը երկու խոսքով վերապատմում է հիշատակարանի սկզբի մասի բովանդակությունը։

Արդ, գրեցաւ սա ի լաւ և յընտիր աւրինակէ ի գիւղն Եղունդի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ձեռամբ... Յովնաննէս գրչի Արճրումեցոյ...։

## 458

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1957

Գրիչ՝ Գրիգոր Կուզեցի
վայր՝ Զմշկածագ, Երկէն-Ընկուզեց անապատ

Ստացող Հայրապետ կուսակրօն աբեղա սկսեալ յԱմիթ քաղաքի, ի վերադիտողութեան Նորին տեառն Մկրտչին, և աւարտեցաւ ի Ցաղման գաւառի, ի Նահանգին Զմշկածակի, ի սուրբ ուխտիս Երկէն-Ընկուզեց, յառաջնորդութեամբ Առաքել վարդապետի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին, ձեռամբ անարհեստ գրչի Գրիգորի Կուզեցւոյ, ի կաթողիկոսութեան Կիլիկիոյ տեառն Կոստանդեայ, և յաշխարհակալութեան Օթման-Բէկին, և ի թուականութեանս Հայոց ՊՁԱ. (1432) ամին։*

## 45

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան 66, ՀԱ, 1926, սյուն. 46—47

Գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Կիւրղի անապատ (Տիւրիկոյ գաւառ)

...Գրեցաւ սա ի թուականութեան Հայոց ՊՁԱ. (1432), ի սուրբ և ի գերահռչակ անապատս, որ կոչի Կիւրղի, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, և սրբուհւոյ Աստուածածնի, և Կարապետին և Յովհաննու, և բազմահաւաք սուրբ Նշխարացս, որ աստ։ Արդ, աղաչեմ զձեզ մանկունք Նորոյ Սիոնի, որք հանդիպիք այս սուրբ աւետարանիս և աւդտիք և աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփցուն և զխոշոր գրչակս զՅովսէփս, և յանդգնութեանս իմոյ ոչ մեղադրել, զի յաւժարութիւն և փափաք սրտիս մոռացումն եղև տկարութեանս։ Յիշեցէք և զուսուցիչսն իմ զԱրիստակէս վարդապետն, որ բազում աշխատութեամբ ուսոյց մեզ զգիրս և ինքն ի Քրիստոս փոխեցաւ, նաև զծնողն իմ զՅակոբ քահանայ, և զմայրն իմ զԱլամ-Խաթուն, և զեղբարքն իմ զԳրիգորն և զՄիքայէլն, նաև զհանգուցեալսն եղբարք իմ զԱման սարկաւագն, որ յունով առ Քրիստոս փոխեցաւ։

---

* Հրատարակածը հիշատակարանի բովանդակության համառոտ շարադրանքն է՝ կատարված Մ. Տէր-Մովսիսյանի կողմից։

## 460

## ՃԱՇՈՑ

*Ալիշան, հայկարան*

*Գրիչ՝* Ղազար Ղրիմեցի
*վայր՝* Տրապիզոն

*...Արդ, գրեցաւ սա ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչի* Ղազարի Ղրիմեցոյ, *ընդ հովանեաւ սուրբ և փառաւոր գերեզմանին լուսաւորչին մերոյ Գրիգորի, ի խնդրոյ ...պարոն* Վարդանա *և ամուսնոյն իւրոյ* Մամախաթունի...: *Եդին ի դրան սուրբ Աւքսենտիս, [զոր հիմնարկեալ է* Մելիաէ *քահանայ], որ է* Պոնտոս *քաղաքիս, յիշատակ ...հաւրն* Պարոնին *և մաւրն* Դովլաթ-խաթունին, *հարազատ եղբաւրն իւրոյ* Ցազիզբէկին...:

*Յիշեցէք ...զառաջնորդն սուրբ ուխտիս ...*զՄարտիրոս *վարդապետն և* զՄկրտիչ *հայրապետն, այլ և զկոկողք նիւթիս* զԱբրհամն *և* զՅովանէս...:

## 461

## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

*Երևան 3484*

*Գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Տրապիզոն

190 բ *Գրեցաւ գիրգս այս ի* Պոնտոս *քաղաքին, որ անուն կոչի* Տրապի-
զոն, *և ի դուռն սուրբ Փրկչին, և մատուռ Նորին սուրբ Կարապետին,
որ է արդեամբ շինեալ խոճա* Ստեփանոսին։

*Գրեցաւ Թուաբերութիւն Հայոց ՊՁԱ. (1432), յունվար Ժ. (10),
ձեռամբ բազմամեղ սուտանուն* Յակոբ *աբեղի։ Ո՜վ սուրբ ընթերցաւղք,
յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զեղկելի գծողակս և զծնօղսն
191 ա իմ, ‖ և զեղբարսն, և զամենայն արեան մերձաւորսն իմ, նաև զստա-
ցող գրիս՝* զԱւետիք *միայնակեացն, և ետ գրել յիշատակ հոգոյ իւրոյ.
և Թողութիւն մեղաց հայցեցէք, զի և ձեզ Թողցէ ողորմածն աստուած,
որ առատն է ի տուրս պարգևացն, ամէն և յամենայն ժամ։ Եւ զար-
ժանագով զհոգևոր հայրն մեր զտէր* Ղազար Ղրիմեցի՝ *գրոց աշակերտ,*
191 բ *և զմանկագոյն եղբայրս մեր կրաւնաւորսն՝ ‖ տէր* զՅովհաննէսն *և* զՂա-
զարն *յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր...։*

*Նայ և խոշորութեան և սխալանացս* անմեղադրելի լերուք, զի կար [մոր] այս չափ էր, ով սուրբ ընթերցողք։*

---

* *Բնագրում՝ «Սղխանացս»։*

## 462

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 2387

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ առընթեր Կաֆայի

252 բ Փառք ամենասուրբ երրորդութեանն, որ ետ կարողութիւն տկա-
րութեանս իմ յաւարտ ելանել գրոյս։ Գրեցաւ խազտետրս ի թվին
Հայոց ՊՁԱ. (1432) ամի, ձեռամբ ապիկար և ախմար գրչի՝ Քրիստո-
սատուր մեղապարտ կրաւնաւորի, ի վայելումն շնորհազարդ Սարգիս
սարկաւագին, որ բազում փափագանաւք ստացաւ զսա իւր հալալ ար-
դեանցն, յիշատակ իւր և ծնողացն։ Արդ, եղև սկիզբն և զրաւ խազ-
տետրիս լաւ և ընտիր աւրինակէ, որ կոչի Առաքելցի, յաշխարհս Հռ-
253 ա նաց, ի վանս, որ յանուն սուրբ Անտոնի, ‖ որ առընթեր մեծի մայ-
րաքաղաքի Կաֆայի, առաջնորդութեամբ վանացս և աթոռակալու-
թեանն մեծի վարդապետի՝ քաջ բաբունոյ տեառն Սարգսի, ի հայրա-
պետութեան տեառն Կոստանդնեա և եպիսկոպոսութեանն տէր Կարա-
պետին։ Արդ, որք հանդիպիք ի սմա ուսանելով կամ աւրինակելով
յիշեսջիք զվերոյգրեալն զՍարգիս սարկաւագն, և զհայրն իւր զՆիկո-
ղայոսն, և զմայրն իւր զԽաթլ-Մելիքն, և զհանգուցեալ եղբայրն իւր
զԽաչիկն, և զքուերսն իւր՝ զԱղութ-Խաթունն և զՓաշա-Խաթունն, և
ամենայն ազգայինսն։ Եւ զիս՝ զանպիտան և զփցուն գրիչս զՔրիս-
253 տոսատուր աբեղայս՝ զծաղկաւղ և զկազմաւղ, և զաշակերտն իմ զԱւք-
սէնտ կրաւնաւոր քահանայն, և զծնաւղսն իմ յիշեցէք ի տէր...։

## 463

## ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԷՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Վիեննա. 543, Տաշ. Ցուց. էջ 1016

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ առընթեր Կաֆայի

336 բ ...Ի թվականիս Հայոց ՊՁԱ. (1432), գրեալ ձեռամբ փցուն եւ
անարհեստ գրչի Քրիստոսատուր մեղապարտ կրաւնաւորի ստոյգ եւ
յընտիր աւրինակէ, ի վանս, որ յանուն սուրբ Անտոնի, որ առընթեր
մեծի մայրաքաղաքի Կաֆայի, ի խնդրոյ պարոն Շամշատինին, յիշա-
տակ իւր եւ ի վայելումն որդւոյն իւրոյ պարոն Խաչատրի։

## 464

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍԱՂՄՈՍԱՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

**Երևան 1125**

Գրիչ՝ Յակոբ Բերկրեցի
վայր՝ Երուսաղէմ

ա

522 ր ...Արդ, գրեցաւ սուրբ գիրս, որ կոչի Սաղմոսի Քաղուածոյ,
զոր արարեալ քաջ հռետորին և անյաղթ փիլիսոփային մեծ վարդա-
պետին Գրիգորի Որոտնեցւոյ* բազում աշխատութեամբ ի վարժումն և
յուսումն գրոց աշակերտեալ անձանց և վարդապետաց։ Զոր և տեսեալ
զսա արի և ժրաջան, հեզահոգի և ամենայն առաքինութեամբ զար-
դարեալ աստուածաբան վարդապետս Մարտիրոս՝ սպասաւոր սուրբ
Լուսաւորչի գերեզմանի, և ետ գրել զսա մատնադեղեւ և սխալագիր
գրչի Յակոբ սուտ աբեղայիս. ոչ թէ ի մակացութիւն արուեստի է
այս, այլ ի սիրոյ սրտէ եղև, զի կատարեալ սէրն մերժեաց զերկիւղն
ի բաց։ Եւ գրեցաւ սա ի սուրբ և ի փառաւորեալ աստուածակոխ քա-
ղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ սուրբ Յարութեան և սուրբ Գողգո-
թային, և աստուածընկալ և լուսափայլ սուրբ գերեզմանին Քրիստո-
523 ա սի, և սուրբ դամբարանիս Յակոբայ առաքելոյ։ Ի թուականութեանս
Հայոց ՊՁԱ. (1432), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և ի
յաթոռակալութիւն սուրբ քաղաքիս Երուսաղէմայ տէր Մարտիրոս արհ-
եպիսկոպոսի։ Գրեցաւ գիրքս այս յիշատակ բարի երիցս երանեալ
քաջ րաբունոյս՝ խաչաչարչար մշակին Քրիստոսի և կենդանի նահա-
տակիս Մարտիրոս վարդապետիս, և հոգևոր հարցն՝ խաչընդկալ Գրի-
գոր աբեղայի և Սարգիս ճգնաւոր մահդասու, և մարմնաւոր ծնողացն
իւր՝ հօրն Յովսեփայ և մօրն Ամենտիկնայ, և այլ ամենայն արեան
մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոցն։ Արդ, որք օգտիք ի
սմանէ կարդալով և տեսանելով և մասին սակ ինչ վայել[ել]ով ի սմայ,
յիշեսջիք առաջի անմահ գառինն Յիսուսի զՄարտիրոս վարդապետն
և զվերոյասացեալ ծնօղսն իւր...։

Այլ և յիշել աղաչեմք զկուսակրօն միաբան եղբայ[ր]քս իւր՝ զԵ-
բեմիայ աբեղայ, որ սպասաւորէ ի պէտս մարմնաւոր կերակրոց մեզ
և բազում աղքատաց, այլև զԱբրահամ և զՍտեփանոս սրբամաքուր
աբեղայք, և զՄկրաիչ ժրաջան աղօթող ի սուրբ տնօրինականսն, որ
և աշխատեցաւ ի թղթի կոկելն, նաև զԱմիրբէկն, որ մահդասիս, և
զայլ ամենայն երախտաւորքս աղաչեմ յիշել ի տէր։

524 բ Դարձեալ, աղաչեմ յիշել ի աէր զԳրիգոր գրոց աշակերտ՝ կու-
սակրօն աբեղայ, որ զօրինակն շնորհեաց, նաև զՄէլքիսէթ սրբամա-
քուր աբեղայ. որ ծաղկեաց զսա, զոր և պայծառացուցէ զսա տէր աս-

* Իմա «Տաթևացւոյ»։

տուած իւր անճառելի տեսլեամբ, ընդ նոսին յիշել աղաչեմ և զհոգևոր զծնօղսն մեր և զուսուցիչքն՝ զԳրիգոր մեծ վարդապետն, որ զքաղուածոյս է արարեալ, և զԹովմայ վարդապետ Մեծոփոյ, որ անչափ և անեզր խնամեալ է զիս հոգևոր և մարմնաւոր։ Եւ ի վերայ այսր ամենայնի զամէնն անցոյց սիրով և գթով՝ ստացող սուրբ գրոցս Մարտիրոս վարդապետս, զի զհրամայեալն փրկչին կատարեաց, որ ասէ Աւտար էի և ժողովեցէք զիս, մերկ՝ և զգեցուցէք, քաղցեալ և կերակրեար զմեզ, և դարձեալ, այլ առաւել մեծ պարգեաց հասոյց, զի արժանաւորեցոյց կուսածին գերեզմանին Քրիստոսի իւր ողորմութեամբըն և այլ տնօրինականացն։ Քրիստոս աստուած յորժամ գայ հայրական փառօք դսա՝ հանդերձ ծնօղօքն իւր և ամենայն երախտաւորաւքն, արժանաւորեսցէ իւր վերնոյն Երուսաղէմի, և լսել տա սմա զերանաւէտ ձայն, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հօր իմոյ ժառանգել սմա զերկնից արքայութիւնն, ամէն և եղիցի։

Այլ և աղաչեմ զձեզ սիրովն աստուծոյ չլինել մեղադիր խոշորութեան և սխալանաց սուրբ գրոցս, զի բազում փութով գրեցաք զսա, որ յաւուր մեծի հինգշաբաթին կատարեցաւ յետ պատարագին, և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմի, ամէն։

Բ

522 բ Ձեռքս փտի ու ի հող դառնայ, գիրս յիշատակ առ ձեզ մնայ, որք ընթեռնուք յիշել հայցեմք զՅակոբ գծողըս Բերկրեցի։

465

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 8242

Գրիչ՝ Տիրատուր
վայր՝ Երուսաղէմ

232 բ ...Զստացօղ գանձտետրիս՝ զՅոհանննէս սրբասէր և հեզահոգի աբեղայն, զոր փափագանօք գրել ետ ինձ անուամբ միայն աբեղայի Տիրատրոյ, ի յիշատակ իւր և ի վայելումն իւրայոցն...։

Արդ, գրեցաւ սա յԵրուսաղէմս, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս, որ է սուրբ վէմն կափարիչ և Քրիստոսի բանտն։ Յիշեսջիք ի Քրիստոս զառաջաստացեալ Յոհաննէս աբեղայն, ընդ նմին և զծնօղսն իւր, և զեղբայրըն իւր հարազատ զՍիմէոն քահանայն, և զամենայն արեան մերձաւորսն իւր՝ զկենդանիսն և զհանգուցեալսն առ Քրիստոս։

Գրեցաւ ի Թվականին ՊՁԱ. (1432), յունվարի ԻԸ. (28)։

## 466

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1956

Հետ. ստացող՝ Վասիլ խարասարցի
վայր՝ Երուսաղէմ

Զվերջին ստացաւղ սուրբ աւետարանիս զՎասիլ խարասարցին և զծնաւղս իւր աղաչեմ յիշել յաղաւթս, որ ստացաւ զսա յիշատակ իւր և ծնաւղաց իւր, ի հալալ արդեանց իւրոց, հաւրն իւրոյ Սահակի, և մաւրն Թէֆանէ, և կողակցին իւր Աւաիայ, և զաւակաց իւր, և ամենայն արեան մերձաւորացն։ Եւ ետ զսա յիշատակ անջինջ, որ կենայ ի սուրբ Յակոբայ սեփական։ Արդ, մի ոք իշխեսցէ հանել զսա ի սուրբ Յակոբայ կամ գողանալ կամ ծախել։ Եւ որ ոք յանդգնի և հանէ՝ զպատիժն զԿայէնի և զՅուդայի մատնչին և զխաչահանուացն ընկալցի. և խնամով պահողն աւրհնի յաստուծոյ և ի սուրբ Յակոբայէն...։

Գրեցաւ սակաւ յիշատակիկս ձեռամբ Թորոսի անարժանի ի թվ. ՊՁԱ. (1432), յեպիսկոպոսութեան սուրբ քաղաքիս Երուսաղէմայ տէր Մարտիրոսի:

## 467

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 287

Գրիչ՝ Վասիլ

63 բ Զվերջին ստացաւղ սուրբ տառիս զՎասիլ դպիր աղաչեմ յիշե ի տէր, ես առաւել զծնաւղսն իմ զԹորոս հազարապետ,* և զմայրն իմ զՄարիամ, և զեղբարսն իմ զԿոստանդին, և զԹադէոս, և զՍտեփաննոս՝ զհանգուցեալն առ Քրիստոս, որ և ի յայսմ ամի վախճանեցաւ...։

Գրեցաւ, ի թվ. հայոց ի Պ. և ՁԱ. (1432), և երբ զսա գրեցի էի ի ԺԸ. (18) ամաց։

## 468

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Փարիզ 43, Մ. Տ. Մ.

Նորոգողներ՝ Թումա և Ներսէս

358 ա Զվերջին ստացողի գրոցս՝ զսրբասէր կրաւնաւորքն զԹումա և Ներսէս յիշեցէք, որ ստացան զգիրս և զեղծեալ նիւթս սորա վերստին հաստատեցին և կազմեցին թուին Հայոց ՊՁԱ. (1432)։

* Բնագրում հապավված է այսպես՝ «Թ. պետ»։

## 469

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4818

Վայր՝ Օձովոց գիւղ

280 ա ...Բարէպաշտ տանուտէրն Յովսէփ ստացաւ զսուրբ աւետարանս ի թուականիս մերում Պ. և ՁԱ. (1432)։ Արդ, որք հանդիպիք սմայ յիշեցէք ի Քրիստոս զՅովսէփ, և զհայրն իւր Բուրթէլ, և զԿոստիկն, և զՅովանն, և զկողակիցն Յովաննուն՝ զԱրուս-Խաթունն, և զայլ արեան մերձաւորսն, ամէն։

Թէ ով զէս աւետարանս ի գեղէս Օձովոց, ի դրանէ Աստուածածնէն և ի սուրբ Յովաննէսէ հանէ՝ ընդանեաց կամ յաւտարաց, կամ ծախելով, կամ գրաւելով, կամ գողանալով՝ նա զանէծս զԿայինին և զՅուդային և զխաչհանողացն առցէ...։

## 470

## ՄԱՇՏՈՑ

Փիրղ. Նոտ. 100, Նիկոմիդեայ, ս. Աստուածածին եկեղեցի

Գրիչ՝ Յովաննէս

...Արդ, գրեցաւ սա ձեռամբ... Յովաննէս պիտակ անուն աբեղայի, ի վանս սուրբ Կիրակոսու,* ի թուաբերութեանս հայկազեանս տոհմի ՊՁԱ. (1432)։

* Ղ. Փիրղալեմյանը ենթադրում է, որ այդ վանքն այն է, «որ կայ ի Սպարկերտ գաւառի յաշխարհին Մոկաց՝ մերձ ի գիւղն Գեղիա»։

# 471

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 4963*

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Ի գեւղս Ուրանց

286 ա *... Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս յաստուածապահ և յան || ուա-*
*նի գեւղս* Ուրանց, *ընդ հովանեաւ սուրբ Նշանիս և ի թուին Հայոց*
*ՊՁԲ. (1433), ձեռամբ* Թումայ *կրաւնաւորի։ Եւ իմ՝ անընդունակ գոլով*
*յարուեստ գրչութեան և բազում մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ*
*ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում*
*աշխատանաւք գրեցի անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր*
*աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ, ի*
*դառն և ի վշտաբեր ժամանակիս։ Վասն զի եկեալ գաղտաբար անաւ-*
*րէնն* Փիրի-Բէկ՝ *պաշարեաց և էառ զկղզին* Աղթամար, *և մեր եղեալ*
*փախստական ի տեղոջէն՝ մերկ և թափուր ի հայրենի ընչից լինե-*
*լով, և եկեալ բնակեցաք ի քրիստոսապահ գեւղս* Ուրանց, *և գրեցաք*
*զսուրբ աւետարանս։ Արդ, որք հաշակէք յաստուածային բուրաստա-*
286 բ *նէս և || յամենալի սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և ըն-*
*թերցմամբ յիշեսջիք յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացողք սորա*
զՆերսէս *քահանայ, և զծնողքն՝* զՈւֆիկ *և* զԹանճաթուն, *և զեղբարքն*
զԳրիգոր, զՈրդանան *և* զՍտեփանոս, *և զկենակիցքն* զԸռուզ, զԻ-Հաթուն
*և* զՄարեմ, *և զողայքն* զՄարտիրոս *և* զԿիրակոս, *և զհօրքվերորդին*
զԿիրակոս, *և զըռէս* Մուսէս, *և* զՄարեմ, *և* զՄարտիրոս, *և զազգն ամե-*
*նայն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք։*

*Ընդ նոսին և զանպիտան* Թումայ *գրիչ, և զծնողքն իմ* զԿարա-
պետ *քահանայ և* զԴուռ-Մելիք, *և զեղբայրն իմ և զուսուցիչն* զԴանիէլ
*քահանայ, որ ծաղկեաց և կազմեաց, և զհարսն մեր* ըզՇամս-Հաթուն,
*և զողայքն* զՍտեփանոս *և* զՅովանէս, *և զհանգուցեալ ողայքն մեր, և*
287 ա *զհաւրեղբայրն* զՋաքարիայ *փիլիսոփայն, և զամենայն ազգականքն*
*մեր՝ զկենդանիք և զննջեցեալք...։*

*Այլ և զսպասաւորք սուրբ եկեղեցոյս, և զգեղի քահանայքս՝* զԹու-
մայ, *և* զԻարսեղ, *զմեծ* Թումայն, *և զորդին* զՄուսէս, *և* զՍարգիս, *որ*
*հայրական գթով և եղբայրական սիրով խնամեն զմեզ, Քրիստոս աս-*
*տուած վարձս բարեաց պարգևեսցէ նոցա և ծնողաց նոցա...։**

---

** Նորություն չպարունակող հիշատակարաններ կան նաև Մատթէոսի, Մարկոսի և Ղուկասի ավետարանների վերջերում՝ 85 բ, 136 բ, և 221 ա—222 ա էջերի վրա։*

## 472

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4915

Ստացող՝ Յովանէս
վայր՝ Մոկաց երկիր, Սուրբկանց գիւղ

ա

287 բ Արդ, կամաւն աստուծոյ և ողորմութեամբ Նորին ես՝ Յովանէս ունա[յ]նացեալս ի բարեաց... ըստացայ սուրբ աւետարանս և գնեցի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց Ստեփանոսին և Զմրութին, և եղբարց իմ Լէանոսին, և զօակաց Նորին՝ Ստեփանոսին, և Յոհանէսին, և Յովանէս քահանային, և Կարապետին, և զօակաց Նորին Թումային, որ անժամանակ փոխեց[աւ] ի Քրիստոս, և Պետրոս բրուտին, որ աստուած զինք անփորձ պահէ, ամէն, և Խաչատուրին, և ամենայն արեան մերձաւորաց մերոց, ամէն։ Եւ արդ, ես՝ Յովանէս, որ ոչ եմ արժանի կոչիլ ի կարգս կրաւնաւորաց, զի զանունս միայն ունիմ և ոչ զգործս, յերես անգեալ աղաչեմ զդաս լուսերամիցդ յիշելոյ արժանի առնել զանարժանութիւնս իմ, զի մեղաւք զառացեալ եմ և ցնորիւք պաշարեալ, և այլ յոյս և ապաւէն ոչ ունիմ, բայց զաստուծոյ մարդասիրութիւնն և զձեր ընդունակ աղաւթսդ, զի
288 ա թողութիւն հայցեցէք յամէն ‖ առատ մարդասէրէն աստուծոյ ինձ, և ծնողաց իմոց, և ազգականաց իմոց Ոսկեկին...:

Ես Յովանէս աբեղայս գնեցի սուրբ աւետարանս ի թվականիս Հայոց ՊՁԲ. (1433), ի յերկիրս Մոզոց, ի գեւղս, որ կոչի Սուրբկանց, ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ զօրայվ[ար]ին, որ պահէ զիս յամէն չարէ ի զատ, ամէն, ամէն*,

բ

Ոմն ժամանակակից

5 ա Վայ ասացէք հարիւր հազար,
Սուգ հասաւ** Հայոց խաւսար,
Մարտի, որ չենք տեսեր աչաւք,
Վէր մեզ տարով երէկ, իջաւ,
Բազում տներք աւերեցան,
Էլուկ էհան գել ի վերայ,
Շատոց տղայ տեսանք տարաւ
Ցարևելից հեծելն ելաւ,
Մայրաքաղաքն երեկ իջաւ.
Առ ու գերի զամէն տարաւ,
Մեզ Փիր-բէկն արար խաւար,

* Ձեռագրում կան հայերեն և արաբերեն բազմաթիվ նվիրաբերական ակտերի և այլ փաստաթղթերի ընդօրինակություններ։
** Բնագրում՝ «հասօ»։

Մտաւ կղզին յԱղթամար,
Գերի տարաւ խաչ, աւետարան։
Զիս յիշացէք, որ չեմ արժան,
Անուն չունիմ, որ ձեզ ես տամ,
Ես աստուծոյ անպիտան,
Ցայսմ հետէ մինչ յաւիտեան։*

## 473

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5172

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Արճէշ

ա

... Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքս, որ կոչի
295 ա Արճէշ, ընդ հովա || նեաւ սուրբ Աստուածածնիս և այլ համաւրէն սըր-
բոցս, ի Թվ. Հայոց ՊՁԲ. (1433), ձեռամբ անարժան և յոգնամեղ
փծուն գրչի Կարապետի: Այլ ըստ բաղում հայցման և պատկառանաց
աստուածասէր տանուտէրիս Յովանիսի ձեռն ի գործ արկի, տխեղծ
մատամբ և մեղաւոր անձամբ գրեցի անարժան ձեռաւք իմովք։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս ընթերցմամբ և գաղափար առնելով և կամ հարևանցի տե-
սութեամբ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սորա զոսկերիչ
Յովանէսն, և զեղբայրն իւր զԹըսաակէսն, և զծնաւղսն իւրեանց՝ զհայրն
Պասւակաճ, և զմայրն Ուսթիանէ, և զկենակիցն իւր Գուլակ-խաթունն,
295 բ և զզաւակսն իւրեանց զպարոն Գորգն, և զխաւլասա-խաթունն, || որ տա-
րաժամ մահուամբ փոխեցան առ Քրիստոս, և զնորաբոյս ծաղկեալ
զաւակն՝ զԹումաբէկ, և զաշխատաւոր զոքանչն իւր զՍուլտանն-Մէլիք,
և զհաւրեղբայրն զՄկրտիչ, և զքեռին զԿարապետ քահանայ, և զայլ
ամենայն արեան մերձաւորսն՝ զպապերն և զհաներն և զազգն ամե-
նայն յիշեցէք...։

Դարձեալ փծուն գրիչս Կարապետ, զիմ անարժան երեսս ձեզ ի
գետին դնելով աղաչեմ զամենեսեան և զիս միոյ աստուած-ողորմոյ
արժանի արարէք, և զծնաւղսն մեր, և զուսուցիչն իմ՝ զքաջ քարտո-
ղարն՝ Թումայ րաբունապետն, և զվերոյյիշեցեալ ստացող վըոցս՝
զԵրզընկեցի ոսկերիչ Յովանէսն, և զեղբայրն՝ Ըւքստակէս յիշեցէք և լի
սրտիւ աստուած-ողորմի ասացէք։

բ

Ծաղկող՝ Մինաս**

328 բ ԶՄինաս ծաղկողս և զծնողս իմ յիշեցէք ի Ք[րիստոս]։

---

* Բնագրում հապավված է այսպես՝ «յից.»։

** Ծաղկող Մինասը թողել է խորանների և ավետարանիչների ինքնատիպ նկարներ։

## 474

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երեւան 5509**

*Հետ. ստացող՝* Յովաննէս

334 ա *. . . Ուստի և տեսեալ զսորա փրկագործութեան խորհուրդ սրբա-*
*սէր կրաւնաւորքն* Յովաննէս *և* Մկրտիչ *հարազատ եղբարքն... գնեցին*
*զսուրբ աւետարանս ի խալալ արդեանց իւրեանց, յիշատակ իւրեանց*
*և ծնաւղացն* Նոր-Ամիրի, *և մաւրն* Մէլէքի, *և եղբարցն* Մարտիրոսի *և*
334 բ Թու || մայի *և* Յովսեփայ, *և քուերցն* Շաքար-խաթունին *և* Շամշայ-
խաթունին, *և այլ ամենայն արեանց մերձաւորացն։*

*Արդ, որք աւգտիք յաստուածային բուրաստանէս յիշեցէք զա*
*աստուած զրարէսէր և գժրաջան կրաւնաւորքս* զՅովաննէս *և* զՄկրտիչ
*զխարազատ եղբարքս, որք ստացան զանաւիկ մեծութիւնս ի պատ-*
*ճառս արքայութեանն երկնից ինքեանց, և ծնաւղացն իւրեանց, և*
*եղբարցն, և եղբաւրորդոցն* Ջանիբէկին *և* Սուլտանշին, *և այլ ամենայն*
*ազգականացն....։*

*Եւ արդ, ես յետինս ի կրաւնաւորաց և անպիտանս ի պիտակա-*
*նաց յերես անկեալ աղաչեմ և խնդրեմ ի ձէ[ն]ջ յիշման արժանի առ-*
*նէք զիս* զՅովհաննէսս, *և զեղբարն իմ* զՄկրտիչ, *և զծնաւղսն իմ* զՆոր-
Ամիրն *և* զՄէլէքն, *և աստուած-ողորմի ասացէք ի ժամ պատարագին,*
*և մեղաց թ[ողութ]իւն խնդրեցէք, ամէն։*

*Այլ և գնեցաք զսուրբ աւետարանս ի տաճկանց, ի վերջին թուիս*
**ՊՁԲ. (1433)**, *յիշատակ մեր և ծնողաց մերոց։*

## 475

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երեւան 7857**

*Հետ. ստացողք՝* Տիրատուր և Էտիլ-Մելիք

290 ա *. . . Յիշատակ է սուրբ աւետարանս պարոն* Տիրատրու *և իւր կո-*
*ղակցին* Էտիլ-Մելիքին, *և գնեցին իւրեանց հալալ արդեանցն զայս*
*սուրբ աւետարանս, աշխատեցան պարոն* Տիրատուրն *և իւր կողակիցն*
*խաթուն* Էտիլ-Մելիքն, *արծաթով զարդարեցին, և փրկչական պատկեր*
*ի վերայ խաչին կայ, և տուաք ի սուրբ Յակոբ եկեղեցին վասն յի-*
*շատակի պարոն* Տիրատրին *և իւր կողակցին* Էտիլ-Մելի[քի]ն, *և յ*Ամիր-
290 բ Սարգսին, Ֆռանգ-խաթունին՝ *փոխեցեալն առ Քրիստոս, և իւր զաւա-*
*կացն* Ուլու-խաթ || ունին, *և* Կուլաֆ-խաթունին, *և* Յազիզպէին՝ *զփո-*
*խեցեալն առ Քրիստոս, և կենդանի զաւակացն, սոքա են՝* Տրճար-
խաթունն, *և եղբաւր որդւոյն* Աւետիքն, *և իւր փեսայոց* Ուլուպէին, *և*
*մեծ* Միքայէլն *և փոքր* Միքայէլն: *Ի խնդրոյ աստուածասէր և բարէ-*
*պաշտ առն պր.* Աստուածատուրին *և հեզահոգի իւր կենակցին* Էտիլ—

Մելիքին: Յիշատակ է այս սուրբ աւետարանս անջնջելի, ոչ երէց, ոչ եկեղեցպան, ոչ տանուտէր ձեռնամուխ չի լինայ այս սուրբ աւետարանիս։ Եւ ոչ ազգ և ոչ մեծ, ոչ փոքր ձեռնամուխ չի լինայ, ոչ ծախելով և ոչ գրաւելով, բայց խնամս տանելով սուրբ աւետարանիս, որ կենայ ի սուրբ Յակոբ եկեղեցիս. ոչ ոք իշխանութիւն չունենայ
291 ա հանելոյ ǁ ի սուրբ եկեղեցոյս։ Եւ որք [յ]անդգնի և հանէ ի սուրբ եկեղեցոյս զայս սուրբ աւետարանս՝ որոշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Արդ, աղաչանք եմ ձեզ, զայս սուրբ աւետարանս, որ իմ ազդէս, թէ ազգ մնայ, նայ իշխանութիւն ունենայ, որ փըտըռեն զայս սուրբ աւետարանս, որ չծախեն և ոչ դրավեն։ Այսպէս կու պնդեմ, որ իմ յիշատակս այս սուրբ աւետարանս է, որ տարին Ա. (1) տարապայմ[ա]ն կարդան զյիշատակարանս, որ ինձ ողորմիս ասեն...։ Ի թվ. ՊՁԲ. (1433), ի վայելումն Յակոբին:*

## 476

## ԱՒԵՏԱՐԱՆ

### ԲՑՎ 196

Գրիչ՝ Ստեփանոս

Աղաչեմք զամենեսեան, ով սուրբ հարք և եղբարք, որք հանդիպիք այս սուրբ աւետարանիս, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր և աստուած-ողորմի ասացէք ստացողաց սուրբ աւետարանիս հոգւոցն հայրազատ եղբարցն՝ Մանգառեւագին և Յոհաննէսին, և իւրեանց ծնողացն հաւրն՝ Մեծատրուն, և մաւրն Սառին, և փոխեցեալ եղբաւրն Սահակին, և կենակցին իւր Շնանաւորին, և միւս եղբաւրն Յովանիսին, որ առ աստուած փոխեցաւ, և Մելիքսեթին, զի աստուած ողորմեսցի նոցա։ Ընդ նոսին և ինձ աստուած-ողորմի ասացէք, որ զսա գրեցի՝ Ստեփանոս սուտանուն քահանայի, որ զանունս ունիմ և զգործս ոչ, և կողակցին իմոյ Մինայի, որ յայսմ ամի առ աստուած փոխեցաւ, և իմոցն ամենայնի։

Գրեցաւ ի թուականիս ՊՁԲ. (1433)։

## 477

## ՅԱՂԱԳՍ ՏՆՕՐԻՆՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ, ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑՒՈՅ

### Երևան 3936

Գրիչ՝ Գուլիար

ա

229 բ Եղբայր ֆրա Սարգիս, խոշորութեան գրոյս անմեղադիր լեր վասն բազում պատճառաց, և զանարժան և զփանաքի նուաս[տս]՝ ֆրա Գուլիարս յիշեա | | |

* Ձեռագրի կազմին փակցված է արծաթե մի խաչ, որի վրա փորագրված է. «Թվին ՊՁԴ. (1435), ս[ուր]բ Նշանս եւ ս[ուր]բ ավետարանս յիշա[տակ] է Տիրատրին եւ Եղիլ-Մեջլիքին»:

Բ

Նորոգող և կազմող՝ Դոմինիկոս Շահապոնցի

39 բ Զփրա Դոմինիկոս Շահապոնցի՝ վերըստին նորոգող և կազմող յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր, ով սուրբ սիրօղք այսմ սուրբ աստուածային գանձիս։ Աղաչեմ վասն սիրոյն Քրիստոսի յիշել յաղօթս նաև զհոգևոր և զմարմնաւոր ծնօղսն իմ, որ հանգ[ուց]եալ են ի Քրիստոս։ Նորոգեցաւ ի թվ. Հայոց ՊՁԲ. (1433)։

## 478

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. նոտ. 102, Մուշ. Ս. Առաքելոց վանք

Վայր՝ Մոկունք գիւղ

Գրի մի աւետարան ի թվ. ՊՁԲ. (1433), ի պարոնութեան Ամիր-Աբտալին, ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, ի գիւղն Մոկունք:*

---

* Ղ. Փիրղալեմյանը ձեռագիրն անձամբ չի տեսել. այդ, ինչպես և մի շարք այլ ձեռագրերի մասին նա տեղեկություն է ստացել Օրսեն վարդապետ Թոխմախյանից։

## 479

## Ա Ի Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 4185

Հետ. ստացող՝ Մատթէոս կաթողիկոս Աղուանից

ա

1 ա Ես՝ Մաթէոս Աղուանից կաթողիկոս ունէի մատ Յոհանէս էրէցն՝ Առաքել իրիցուորդին ՋՌ. (6000) դեկան ստակ ու Ի. (20) թաղար ցորեն՝ ղապալու չափովն։ Ուրեանքն ի Քրիստոս փոխեցան, իրքմին չուն՛ին, որ զիմ պարտքն տէին, տանուտէրք և ք[ահանայք] մէջ ընկան, աւետարանս ու Ա. (1) ձի, Ա, (1) թ[ամբ] բերին, թէ այլ իրքմին չունին, երես դրին, թէ | | | խեղչ են, ես այլ խղչացի, ձին ու թամբն յետ տվի, զաւետարանն առի։

բ

Գնող՝ Եղիշայ էրէց

1 ա Ես Եղիշայ երէցս գնեցի զաւետարանս ի տէր Մաթէոս կաթողիկոսէն՝ ՌՄ. (1200) դեկանայ, վկաութեամբ Եղունգեցի Ովանէս իրիցուն, վկաութեամբ Խուշփայշէն Մանուէլ իրիցին, վկաութեամբ Սուկուրլու դարբուն Գաւզումին, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց, հաւրն իմոյ Շատուն, և մաւրն իմոյ Գուլգուլին, եղբաւրն իմ Արթուխշին և Սալղուրշին, ի պարոնութեան Ամիրխալիլին և որդոյն իւրոյ Վահրամին, թւին ՊՁԳ. (1434)։

## 480

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՑՈՎԱՍԱՓՈՒ ԵՒ ԲԱՐԱՂԱՄՈՒ, ԱՌԱՔԵԼԻ ԲԱՂԻՇԵՑՒՈՑ

Երևան 3081

Հեղինակ՝ Առաքել Բաղիշեցի

176 բ Ի թվականիս Հայոց, որ ութհարիւր էր,
Ութսուն 'ւ երեք ի նոյն յարաբարդեալ էր,
Ոտնաչափ շինեցաւ յայս Առաքելէ՝
Վարդապետ կոչեցեալ բանիս խնդրողէ։
Արդ, աղաչեմ ըզձեզ, որք եղանակէք
Եւ քաղցրաձայն լեզուաւ սիրով զայս երգէք՝

Զիս և զիմ ննջեցեալսն յաղաւթս յիշեցէք,
Եւ թողութիւն մեղաց մերոց հայցեցէք։
Ով որ գրողս յիշէ ի կամըս բարի
Եւ լի սրտիւ. ասէ աստուած-ողորմի,
Անփորձ կենայ նայ՝ յիշողն ի յայսմ աշխարհի,
7 բ Եւ արժանի || լիցի տեսոյն Քրիստոսի։
Ես Առաքել նուաստ ոգի
Մեղաւք լըցեալ Բաղըշեցի,
Զբանս պատմութեան նախնեաց մեծի՝
Հընդըստանայ թագաւորի՝
Աբէներայ ՚ւ Յովասափի,
Կամիմ շինել ի չափ տողի,
Դիւրահաւան երգեցողի
Եւ բարեմիտ վերծանողի,
Զի իմանան միրով սըրտի
Եւ փառըս տան տեառն արարչի,
Որ ի քարանց անրեր պըտղի
Ծնանի որդի Աբրահամի։

## 481

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 1693*

Հետ. ստացող՝ Ստեփանոս

...Որոյ մասին և իմս տկարութեան Ստեփանոս քահանայի եղև փափաքումն սիրոյ այսմ աստուածապատում աւետարանի և ծաղկաւէտ բուրաստանի. եւ ստացա զսա ի հալալ ընչից իմոց ինեղ և ի ստորասուզեալ ժամանակիս, ի թվիս ՊՁԳ. (1434) ի կաթողիկոսութեան տէր Կոստանդեա, և ի հայրապետութեան քրտնաջան նահատակին և իմաստայեղձ փեսայլին եկեղեցոյ Տէրունականայ, և րաբունապետին՝ մեծ փաղերային Մխիթարայ. և հարազատ աշակերտացն։ Արդ, ես Ստեփանոս հայրապետս՝ վերջինս ի վերջին դարուս, վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ ընծ[այ]եցի զսուրբ աւետարանս սուրբ առաքելոյն Թումայի, յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ Աղպուղին և մաւրն Խուանդին, և քուերցն, և աւոխորդ մանկանն՝ ըստ հոգւոյ արբանեկին Աբրահամ դպրին, յիշեցջիք և զամենայն եղբայրութիւնս, որ են յայս սուրբ ուխտս՝ զվարդապետս, զփակակալս, և զկրաւնաւորքս, զտէր Յակոբ, և զտէր Բարսեղ քաջ քարտուղարն, և զայլ գործաւորքս և զպաշտաւնեայք սուրբ եկեղեցւոյս։ Եւ զիս զանարժան Ստեփանոս յիշման արժանի արնէք սրտի մտաւք.,։

*Ձեռագիրն իմաստասիրական նյութերի ժողովածու է, ընդօրինակված ԺԶ. դարում, 1434 թվականին ընդօրինակված ավետարանի հիշատակարանը, որ գրված է մագաղաթի վրա, օգտագործված է այս ձեռագրի մեջ որպես պահպանակ։

Նաև զկազմող սուրբ աւետարանիս զՄխիթար կուսակրօն աբեղայ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, զի և դուք | | | եղբայրութիւնս, որ են յայս սուրբ ուխտս՝ զվարդա[պե]տս, զփակակալս, զծերս, զերիտասարդս, զդոր[ծա]ւորս, և զամենայն պաշտաւնեայս սուրբ եկեղեցոյս, թերևս եթէ արժանի առնիցէք զիս՝ զանարժան [Պետ]րոս սրտի մտաւք մեղաց թողութեան...։

## 482

## ՃԱՇՈՑ

Փիրղ. Նօա. 103, Մարզուանի ս. Աստուածածին եկեղեցի

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի
վայր՝ Մշոյ սուրբ Կարապետ

... Արդ, գրեցաւ սա ձեռամբ գրչի Ղազարի Ղրիմցւոյ, ընդ հովանեաւ սուրբ և փառաւոր գերեզմանիս լուսաւորչին մերոյ Գրիգորի, և սուրբ Փրկչիս, և Մանեայ սուրբ գերեզմանիս, ի թուին ՊՁԳ. (1434), ի խնդրոյ պատուական և հեզահոգի կրօնաւորի Սարգսի Տիւրիկեցւոյ, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց և ետ յիշատակ իւր և ծնողաց իւրոց ի սուրբ Լուսաւորչիս անապատ։

Արդ, ես՝ Սարգիս աբեղայս, որ եդի զգիրքս յիշատակ ի սուրբ Կարապետս. ոչ ոք չունի իշխանութիւն հանել զսա ի յանապատէս, ոչ հայրապետ և ոչ այլ միաբան...։

Յիշեսջիք և զառաջնորդ զերախտաւոր հոգևոր հայրն մեր զՄարտիրոս վարդապետն և զՄկրտիչ հայրապետն։

## 483

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Ցոնուղի ս. Կարապետի վանք 4, ՀԱ. 1894, էջ 51

Գրիչ՝ Յաւհանէս Կաֆեցի
վայր՝ Գերմանիկ

... Աւարտեցաւ խորհրդատետրս [ձեռամբ] անարուեստ և անարժան մեղաւք լցեալ չեմ արժանի կոչիլ քահանայ Յաւհանէս աբեղայ Կաֆեցւոյ. եկի սև Գերմանիկ և ձեռամբ գրեցի աստուածային մատեանս ի յիշատակ եղբաւրս Զաքարիէ, յիշեսջիք սրբազնասուրբ խորհրդատետրս և յիշաւղքդ յիշեալ լիջիք, և դուք տեառն աստուծոյ մերոյ | |-| մեր և ամէն. տումարական տուին ՊՁԳ. (1434), տրէ ԺԳ. (13).

## 484

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4206

Գրիչ՝ Դաւիթ

վայր՝ Զմշկածագ, Ընկուզեաց անապատ

ա

321 բ ...Աւարտեցաւ սա յամսենի
Ի քսան և ինն ի յունիսի,*
Ցաւուր տաւնի ընարեալ գնդի
Առաքելոց գլխաւորի.
Արդ, ես՝ Դաւիթս, որ գրեցի
Զաւետարանս տեառն Յիսուսի,
Զեմ արժանի այս սուրբ կարգի՝
Զի կորուսի զփառս հայրենի։
Բայց գրեցաւ սա յանապատի,
Որ Ընկուզեաց անուն կոչի,
Ի դրունս սուրբ Աստուածածնի
Եւ Մկրտչին տեառն Յիսուսի,
Ի գաւառիս Յերապաւլսի,
Որ Զմըշկածագ այժմ կոչի,
Ձեռամբ Դաւիթ կրաւնաւորի,
Որ եմ գերեալ սատանայի։
Արդ, զառաջնորդ սրբոյ ուխտիս,
ԸզԱռաքել վարդապետիս,
Տացէ Յիսուս պարգևս բարիս
Միաբանիցս առ տէրունիս,
Այլ և զկոկաւդ սրբոյ նիւթիս՝
Հարազատի Մարտիրոսիս,
Յերկար ամաւք դու ապրեսցիս,
’Ի ոչ սասանիս մինչ ծերասցիս։**

Աղաչեմ զընթերցաւղսդ, յիշել ի տէր զհայրն իմ՝ զՍաճակ քահանայ, որ գնացեալ է առ Քրիստոս՝ յոյսն մեր, և զմայրն իմ, և զամենայն արեան մերձաւորսն։ Յիշեցէք և զԱճաճէճ, որ աւգնական եղև ի նիւթս սուրբ աւետարանիս։ Ի թուիս Մեծ Հայոյն ՊՁԳ. (1434)...։

* Մատթեոսի ավետարանի վերջում Դաւիթը գրում է. «Մայիս ԺԴ. (14) էր»։ Ուստի ձեռագրի 3/4-ը՝ ավելի քան 200 մեծադիր թերթ, նա ընդօրինակել է ընդամենը 46 օրվա ընթացքում։

** Մեջ ենք բերում միայն հիշատակարանի վերջին՝ պատմական մասը։ Սկզբում գրիչը նույն տաղաչափությամբ (4+4) տալիս է ավետարանի սեղմ բովանդակությունը, կրոնական անհետաքրքիր դատողություններով համեմված։

Բ

249 ր Ո՜ սատանայ, քանի և մինչև յերբ յարուցանես զպատերազմն քո ի վերայ իմ, քանզի յոյժ տրտմութեամբ գրեցաւ։

Գ

Ստացող՝ Ռըստակէս

322 ա Յանուն Յիսուսի Քրիստոսի, ի թվ. Հայոց ՊՁԴ. (1435)-ն, ես՝ Ռըստակէս երէցս, որ ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ վաստակոց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Հայրապետին, և մաւրն իմոյ Տիկնացին, և եղբարցն իմոց Կարապետին, և Աստուածատրին, և Գրիգորին, և քուրոջն իմոյ Եղիսաբեթին, և ամենայն ազգականաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս...։

Դարձեալ աղաչեմ զձեզ յիշեցէք զՇանապն, որ աւգնական եղև ի գինս սուրբ աւետարանիս, իւր ննջեցելոց հոգւոյն, աստուած հանգուցանէ զիւր ննջեցեալքն յերկնից արքայութիւնն, և զինքն նոցա յիշատակ պահէ, ամէն։

Յիշեցէք զԼիպարիտն, որ և նա աւգնական եղև ի սուրբ աւետարանս։

Յիշեցէք զԱռաքել երէցն, որ աւգնեաց ի գինս սուրբ աւետարանիս։

Յիշեցէք ըզՇատին, և զՄարտիրոսին մայրն, և զՇատէ մայրն, և զԱղութ-խաթունն, և զԹանկ-Մամայն, և զՆուրայն, և զՊուլղանն, և զՀավթայն, և զԹուխլիշայն, և զՇատին, և զիւր կենակիցն, ամենեքեան արժանի լիցին երկնից արքայութեանն...։

322 բ Այլ դարձեալ աղաչեմ զձեզ, յիշեցէք զանէրն իմ զՓողոցն, և զզոքանչն իմ զՃուճարն, և զիւրեանց դուստրն զԹանսուխն, և զդեռաբոյս զաւաքսն մեր զՄելքիսէթն, և զՍտեփաննոսն, և զքեռակինն, և զՇահմելիքն, և ամենեքեան, որ ի Բերդկոնի ռապատս մեզ երախտաւոր են, եթէ շատ և եթէ սակաւ...։

Եւ այս սուրբ աւետարանիս բարեխաւսութեամբն Քրիստոս աստուած պահեսցէ զաշխարհս ամենայն անսասանելի՝ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն, ամէն և եղիցի։ Կրկին աղաչեմ յիշեցէք զՎարդանշահն և զիւր հաւրեղբաւր կինն։ Եւ զԴաւիթ աբեղայս, որ զյիշատակարանս գրեցի...։

485

ՄԱՇՏՈՑ

Երևան 3508

Գրիչ՝ Թադէոս
Վայր՝ Կաֆայ

Փառք... որ ետ կարողութիւն տկարութեան իմոյ յանգ ելանել ի թվին ՊՁԳ. (1434), ի հայրապետութեան տեառն Կոստանդեա և
201 բ սրբասնեալ արհիեպիսկոպոսութեան տէր Կարապետի՝ ‖ Կաֆայի աս-

տուածապահ քաղաքի և ամենայն հիւսիւսական կողմանց։ Ի լաւ և յընտիր աւրինակէ գրեցաւ, ի չար և ի դառն ժամանակի, զոր տէր աստուած տացէ անդորրութիւն, ձեռամբ Թադէոսի սուտանուն կրօնաւորի, ի քաղաքիս Կաֆաի, ի մենաստանս սուրբ, որ կոչի սուրբ Մինաս, որ է աթոռ սուրբ աէր Կարապետին։

Արդ, սխալանաց և տնարհեստութեան սորա անմեղադիր լերուք, ի կար մեր այս չափ էր։ Որք հանդիպիք սմա ուսմամբ կամ կարդալով յիշեսջիք յաղաւթս ձեր զծնողսն մեր միով տէր-ողորմաիւ...։

Արդ, որք հանդիպիք այսմ աստուածարուխ տառիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԱստուածատուր քահանայն՝ զստացաւղ գրոցս, որ ստացաւ զսայ յարդար յընչից իւրոց։ Արդ, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զծնաւղսն իւր զԱստուածատուր երէցն, և
192 ա զկենակիցն իւր զՎարդէթուփն, զՄար || աիրոսն, և զկենակիցն իւր զՈսկէաիկինն, զԹադէոս երէցն, և զԱռխատակէս երէցն. զորդին իւր Թադէոս երէցն, և զԽաչատուր արեղայն՝ զնահատակն, և զմայր իւր զՍիրմա-Խաթունն, զՅովակիմն, և զեղբայր իւր զՀերն, զպատուելի զԱստուածատուր քահանայն, և զկենակիցն իւր զԹամթան, զհամեստ զաւակն իւր զԽաթունն, զնորին զաւակն զԿարապետն, և զՅովաննէսն, նաև զհարազատ եղբայրն իմ զՅովաննէս, և զկենակիցն իւր զԼալ-Խաթունն, և զզաւակսն իւր զՇմիճ-Մելիքն, և զՄարգարէն, և զքուրն իւր զԴէսպինան, և զկողակիցն իւր զԳրիգորէս՝ այրն իւր, և զաւակն իւր զԱլեքսանոսն, և զպարոն Գորգն, և զՅովսէփն, և զՊապիկն...։

486

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8590

Հետ. ստացող՝ Յոհաննէս
վայր՝ Ղրի՞մ

ա

243 բ Քրիստոս աստուած ի քո միւսանգամ գալստեանդ նորափետուր փառաւք զարդարեա զհոգի ստացողի սուրբ աւետարանիս և վերստին նորոգեա զՅոհաննէս կրաւնաւորն և զամենայն ազգայինսն իւր։ Եւ ետ վերստին կազմել զսուրբ աւետարանս իւր յիշատակ և իւր ծնողացն։ Կազմեցաւ գանձս անկողոպտելի, մարգարիտս անծախելի, յիշատակս անջնջելի, ի Հայոց Մեծաց ի Թուականի ՊՁԳ. (1434)։
44 ա Արդ, աղաչեմ զա || մենեսեան, որք հանդիպիք կամ արդիւնիք ի սուրբ աւետարանէս, յիշեսջիք ի Քրիստոս զվերոյգրեալքս ի սմա և աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութիւնն և նմա փառք յաւիտեանս, ամէն։

բ

144 ա Ես Յոհանէս աբեղայս իմ կամաւս ծախեցի զաւետարանս մեղտեսի Տէրտէրին,* զոր աստուած վայելել տացէ նմայ, ամէն։

---

* Վաճառքը կատարվել է, ըստ երևույթին, 1451 թվականին, որովհետև նոր ստացող մեղտեսի Տէրտէրի հիշատակարանը ձեռագրի ձեռք բերման մասին գրված է 1451-ին (տես)։

Այս է իմ ձեռնագիրս և խրէքս աստուծով հաստատունս։

Գ

Ոսկող՝ Ասգսենգ

Զոսկաւղ սուրբ աւետարանիս զԱւգսենդ սուտանուն աբեղայս աղաչեմ յիշել ի տէր։

## 487

## ՄԻՍԱԼ

Ալիշան, «Հայ-Վենետ», էջ 180—181, Փարիզ

Նուիրատու՝ Գորգ
վայր՝ Վենէժ

ՌՆԼԴ. և ՊՁԳ. Հայոց (1434), Ես Գորգս կու տամ պարոն Յակոբին և իւր որդւոյն զայս Միսալս, որ է պատարագատետր։ Ով որ գայ ի Վենէժ, որ կամի պատարագ առնել, նա առնու և պատարագ անէ ի Հայ տուն...։*

## 488

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 4504

Գրիչ՝ Ոհանէս Ածղաւրեցի

ա

98 բ ...Ո՜վ քահանայ՝ ստացաւղ տառիս,
Աստուածատուր անուամբ կոչիս,
Քեզ երանի, որ հանդիպիս
Լուսափթիթ բուրաստանիս,
Հոգիարուղխ սրբոյ տառիս,
Երբ լի սրտով ծունըր կըրկնես,
Սիրով հոգւոյդ յասաուած հըլպիս,
Յայնժամ յիշեա դու զեղկելիս
ԶզՈհանէս Ածղաւրեցիս՝
Զմեղօք փարթամս և զեղկելիս,
Յառեդական մեծ տումարիս՝
Ի յութհարիւր Հայոց թվիս,
Ութսուն ու երեք յաւելորդիս (1434)
Եղև ծրել Սարգիս գրքիս։

* Ալիշանը հայտնում է նաև, որ հիշատակագիրը «Երկու տող ալ կաւելցնէ կիսատ բառերով, որով կերևի պահանջել, որ գիրքն ապահով պահեն պարոն Յակոբն և իր որդինե-

Բ

79 բ ... Ո՜վ սուրբ ընթերցողք և ունկնդրողք բանիս, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սուրբ կտակիս՝ զԱստուածատուր կրաւնաւոր, և զեղբայր իւր Զաքարիա, և զՓարխուճդի, և զծաղկեալ զատւկսն սոցա՝ զՄանեփաճոս, զԴաւիթ, զՄելքիսէթ զպ[իր], և զարեան մերձաւորսն և զերախտաւորսն սոցա՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և զմեղապարտ գրիչս զՈճանէս...։

489

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 1849

Ծաղկող՝ Յովանէս

318 ա [Յ]ուսազարդ ձայն ի յերկնից
Գոչէ բարբառ ուրախալից,
Որք ժառանգեն յաւիտենին
Ըղձալրական իւրեանց տեղի,
Զոր սրբոցն պատրաստի.
Եւ երանի ում հանդիպի,
Զոր խոստացաւ տէրն ամենի։
Զոր և լուեալ յայսմ իմա[ս]տի
ԶԱսաց-Պարոնն՝ սրբոց դասի,
ԶՏղա-Պարոնն՝ ի նոյն կարգի,
ԶԿարապետն ի նոցին շաւղուի.
Զմայրն Վարդենիկին
Եւ զքոյրն մեր զԽսմաթին,
Զեղբայրն մեր Տիրատրին:
Այս բարեխորհ և ճշմարտի
Գովեալ լեզուաց բազմադիմի,
Որք հանդիպիք այսմ տառի,
Որ յաստուծոյ սա կու խաւսի...։

Քրիստոս աստուած, ի քո միւսանգամ գալստեանն նորափետուր փառաւք զարդարեա զՂազար երեցու զննջեցելոցն զհոգիսն՝ զծնողացն և զեղբարցն և զիւրայոցն, զոր վերոյ գրեցաք, զանուանսն՝
318 բ ի գիրն կենաց գրեսցիս. և որք կան այժմուս՝ նոցին լի || ցի յիշատակ։
Որ և զստացաւ զսուրբ աւետարանս Ղազար քահանայն հալալ արդեանցն։ Եւ կազմեցաւ գանձս անկողոպտելի վերստին ձեռամբ Յոհաննէս արեղին մարգարիտս անծախելի՝ յիշատակ անջնջելի Ղազար քահանային, և մաւրն իւրեն Դիմաթին, և եղբաւրն իւր Հերապետին, քըւերն իւր Խէր-խաթունին և Ոսկէձատին, և երիցակնոջն Փաշային, և իւրեանց զաւակին, հայր Տիրատրին, [և քուերն՝ Մարիանէ]։

*Ի Հայոց Մեծաց թվականի ՊՁԳ. (1434)։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք կամ արդունիք*ի սուրբ աւետարանէս յիշեսջիք ի Քրիստոս զվերոյգրեալքս ի սմա՝ զկենդանիսս և զհանգուցեալս, և զնուազ ծրողս, որ տողեցի, զսակաւս ի մեծն համարեցէք...։***

490

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 287*

*Գրիչ՝* Վասիլ

83 ր *Ի թվ. Հայոց ՊՁԳ. (1434), ի յունիս ամսոյ ի ԺԷ. (17), ի չորեքշաբթի**** աւր՝ խաւարեցաւ արեգակն։*

491

## Մ Ա Շ Տ Ո Ց

*Վենետիկ 615*

*Գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Խարտիշարայ վանք

*Գրեալ ի վանս* Խարտիշարայ, *ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին, ձեռամբ* Ստեփանոսի *կրօնաւորի։*

492

## Մ Ա Ն Ր Ո Ւ Ս Մ Ո Ւ Ն Ք

*Երևան 8647*

*Գրիչ՝* Ս[ար]գ[իս]

103 ա *Զստացաւղ զսրբասէր և մաքրամիտ* Հ[այրա]պ[ետ] *աբեղա աղաչեմ յիշել ի տէր հանդերձ կրկին ծնօղաւք, և զմեղապարտ* Ս[ար]գ[իս] *գրիչ, թվ. ՊՁԳ. (1434)։*

---

* Իմա «արդիւնիք», այսինքն՝ օգտվեք, արդյունք ստանաք։

** Ձեռագիրը գրված է կազմելուց տասնյակ տարիներ առաջ, հավանորեն ԺԴ. դարի վերջերին։ 152 ա էջի վրա անհայտ գրիչը թողել է ստացողների մասին հիշատակագրություն. «Քրիստոս աստուած, քո կամաւոր չարչարանացդ և բարեխաւսութեամբ ողորմեայ ստացողի սորա՝ սուրբ աւետարանիս, և Վարդան քահանային զսա արար յիշատակ իւր և կենակցի իւրոյ Հեղինէ-խաթունին, և Քրիստոսի փառք յաւիտեանս»։

Նույն գրիչը 5 ա էջի վրա գրել է. «Ջեղկելիս և զանպիտանս յիշեա, ո արուեստագետ, և սղալանացս մի մեղադրեր, աղաչեմ»։

*** Բնագրում հապավված է այսպես. «Դչ.»։





## 493

### Մ Ա Շ Տ Ո Ց

*Երևան 4163*

Գրիչ՝ Գրիգոր

վայր՝ Ձմշկածագ, Կարմիր մենաստան

**ա**

116 բ *Արդ, գրեցաւ սա սուրբ մենաստանիս, որ կոչի* Կարմիր, *ի խնդ-*
*րոյ արի և քաջ հովւապետի տէր* Մելքիսէթին, *ձեռամբ մեղսամած*
*գրչի* Գրիգորի, *ի յամի* ՊՁԴ. *(1435) թուին, ի հայրապետութեանն*
*տեառն* Կոստանդեայ, *և ի բռնակալութեանն* Աւթման-Բէկին: *Արդ, որք*
*հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրա-*
*փայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալսդ ի սմա, և մեք ըստ փանաքի*
*մտաց մերոց վերըսային նորոգեցաք զսա և փարթամացուցաք քարոզով*
*և խրատական բանիւք, և զկարգս ըստ իւրաքանչիւր աստիճանացն*
117 ա *բացայայտեցաք և յատկացուցաք առ ի դիւրահաւա || նութիւն կար-*
*դացողացն ըզկարգս աստիճանացն...:*

**բ**

183 ա *Ո՜վ սուրբ մանկունք առագաստին*
*Որդիք լուսոյ նոր Սիովնին,*
*Որք հանդիպիք այս մատենի*
*Դուք յիշեցէք զստացող սորին՝*
*Զտէր* Մելքիսէթ *հովիւ բարին,*
*Զարի և զքաջ առաքինին,*
*Որ անմարմին կայ ի մարմին*
*Ի մէջ ընտրեալ իւր համացեղին.*
*Եւ զանպիտան գծող սորին*
*Ու վեց տառիւ անունս կոչին՝*
*Գիմն առաջին և Րէն վերջին,*
*Որ համարով վերաբերին՝*
*Տասը հազար բոլորովին*
*Եւ վեց հարիւր քսանուվեցին,**

---

* *Գրչի անունն է Գրիգոր: Անվան տառանիշերի թվական արժեքի գումարը, իրոք, 10626 է:*

*Որք միտս ունին՝ նա հաւանին*
*Եւ որք չունին՝ նա շիւարին։*

Գ

*Հետ. ստացող՝* Մէլիք-Բէկ

183 ա *Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք վեր-ջի ստացողի սուրբ գրոցս՝ անգին մարգարտիս և վարդափթիթ բու-րաստանիս* Մէլիք-Բէկին, *և կենակցին իւր* Սեւար-Աղին, *որ յայժմ ամի տարաժամ մահուամբ փոխեցա[ւ] առ Քրիստոս, և սուգ անմխիթար թողեալ գնաց յանցաւորէս յանանց հանգիստն յաւիտենական, յան-դառնալի և յերկարաձիգ յուղէգնաց բարի ճանապարհն իւր, և թողեալ ըզզփսքրիկ տղայքն իւր մայր[ա]կարաւտ և կաթնածարաւ և լալոտ աչաւք և հառաչմամբ սրտիւ, քանզի ոչ էին լիացեալ մօր տեսով և ծնաւղի համբուրիւ։*

183 բ *Զոր աստուած մխի ‖ թարէ* զՄէլիք-Բէկն *և փարատէ զսուգ և զտրտմութիւն, և բաշխէ արարիչն աստուած զուստերս և ըզդստերսն* Մէլիք-Բէկին՝ *զառաջին և զվերջին, ընդ երկայն աւուրս արասցէ, և ազատէ զիւր հոգին ի հրոյն յաւիտենից, և արժանի արասցէ երկնից արքայութեան զինքն և զկենակիցն իւր* զՍէւար-Բակին...։*

Դ

*Հետ. ստացող՝* Ամիր

190 ա *... Ես՝ անարժան սուտանուն* Ամիր *միակէցս գնեցի զՄաշտոցս, Թաթէի սուրբ Առաքելոցս վանս տվի, յիշատակ ինձ և ծնաւղացն իմոց՝ հաւրն իմ* Վարդանին, *և մաւրն իմ* Փաշիչանին, *ով որ կար-դայ մէկ բերան աստուած-ողորմի ասի գիրողաց, վանս տռվողաց։*

494

**ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ**

*Երուսաղէմ 25, Մ. Տ. Մ.*

*Գրիչ՝* Մինաս
*վայր՝* Զմշկածագ, Երկայն-Ընկուզեաց վանք

... [*Գրեցաւ*] *ի թվ. ՊՁԴ. (1435), ի վանքն* Երկայն-Ընկուզեաց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնայ, ի հայրապետութեան* Կոս-տանդեայ, *և յառաջնորդութեան սուրբ ուխտին* Առաքել *վարդապե-տին, ի պարոնութիւն* Օթման-Բէկ *խանի, և ի նայիպութիւն գաւառին՝* Խոշղադամին, *յորոյ անուն գիրքս գրեցաւ և վանքս շինեցաւ ի յ*Արզն։

[*Այստեղ* Աբրահամ *եպիսկոպոսն ստացել է ձեռագիրը և բերել*

---

* *Գ. և Դ. հիշատակագրությունները, ըստ հնագրական տվյալների, գրված են ԺԵ. դարի վերջերին կամ ԺԶ. դարի սկզբներին։*



24—29

Երուսաղէմ *ի թվ. ՊՂԴ (1445). գրիչն է* Մինաս, *որդի* Սուլթանշահի և Խէրիաթունի, *որ նկարներով զարդարել է իր գրած ձեռագիրը։ Թղթի կոկողն է* Դաւիթ *քարտուղար, ստացող* Դաւիթ *վարդապետ և* Արևշահ...] :*

*Ձեռաւք* Արևշաին *շինեցաւ սուրբ Ցարութիւնն, ի գիւղս* Երկայն Կոզիք, *և զսա զարգարեաց շուրջառներով, բազում խաչերով, Աւետարանով, Տարեգրով, Սարգիս գրով և ամենայն պիտոյիւք, և ետ գրել զսրբոց պատմութիւնս և եդ ի դուռն սուրբ Կարապետին։***

495

## ԽՄԲԱԴԻՐ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՋՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ

*Նրևան 1380*

*Խմբագրող՝* Թովմա Մեծոփեցի
*վայր՝* Մեծոփայ վանք

ա

343 ա *... Արդ. ես մեղապարտս ի մանկունս կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ եւ վերջին ծնունդս ի կարգս վարդապետացն առաջնոց՝ սոսկանուն վարդապետ* Թովմա՝ *աստուածային բանին խնդրաւղ եւ ճշմարիտ իմաստից հոգւոյն սրբոյ փափագաւղ, ի խնդիր ելեալ գերազանց աստուածաշունչ կտակի՝ մեկնութեան աստուածաբան առաքելոյն Պաւղոսի, եւ ի պարգեւաց հոգւոյն սրբոյ գտի մեկնեալ եւ թարգմանեալ, համառօտեալ եւ ի միասին հաւաքեալ ճշմարտասէր եւ ուղղադաւան վարժապետացն մերոց ի կրկին ազգաց՝ Յունաց եւ Ասորոց, քրիստոսածաւալ աղբեր եւ անմուտ արեգականն Յովհաննու Ոսկեբերանի եւ երջանիկ սուրբ հաւրն՝ մեծի ճգնաւորի եւ վարդապետի Եփրեմի Խորին Ասորոյ, բացայայտ եւ պարզ տեսութեամբ մտաց վարդապետաց եւ ի լուսաւորութիւն գրոց աշակերտաց անձանց, որ էր թաքուցեալ յանկեան ուրեք՝ ի խաւարի տգիտութեան, անփոյթ եղեալ յուսումնասիրաց անձանց, վասն դառնութեան ժամանակաց պատահմանց եւ վասն աւերման մերոց աշխարհաց։ Եւ յաւելեալ եդի ի սմա մեկնողաւրէն զցանդ մեծին Եւթաղի եւ զամենայն որոշմունս բաժանմանց նորա՝ զընթերցուած, զգլուխ, զվկայութիւն, զտուն, զնախագրութիւն, զվասնէրն, և եսոս. ի ձեռս մանկանց եկեղեցեացդ Հայաստանեայց՝ ճշմարտախոհ վարդապետաց եւ քաջամիտ աշակերտաց։ Զոր եւ ձեզ պարտ է մի կալ եւ մնալ ի ծուլութեան, այլ ամենայն կենցաղական հոգոց բարեաւ մընալ ասել եւ աստուածային երանութեանն արժանի լինել, վասն որոյ ուսուցանէ առաւղն իմաստու-*

* *Այս պարբերությունը վերապատմում է իր խոսքերով Մ. Տեր-Մովսիսյանը։*

** *Մ. Տեր-Մովսիսյանը հայտնում է, որ «Ցիշատակարանը բավական ընդարձակ է, (յիշում է) սուրբ Կարապետի բոլոր միաբաններին և հաղորդում նաև այլ մանրամասնություններ։ Ընդօրինակելու ժամանակ չկար»։*

թեան՝ Երանեալ է այր, որ եգիտ զիմաստութիւն և մահկանացու, որ
ետես զհանճար։ Եւ դարձեալ՝ Ցաւրէնս տեառն խորհել ի տուէ եւ ի
գիշերի, եւ ուսուցանել զճշմարիտ աստուածաբանութիւնն եւ զլոյս
վերին ճառագայթին, եւ աստուածատեսակ եւ աստուածանման առա-
343 բ քինութեան հետեւել, ‖ եւ ըստ կամացն Քրիստոսի եւ գրելոյ առաքե-
լոյս ընթանալ, առնել եւ ուսուցանել յայսմ աշխարհի, եւ յետ աս-
տեացս ելանելոյ ընդ Քրիստոսի թագաւորել յանճառ ի փառս եւ յան-
պատում ի կեանս, ըստ խոստման առաքելոյս Պօղոսի։ Վասն որոյ
յերեսս անկեալ պաղատիմ իբր անքըթիթ ակամբ, ողորմելի դիմաւք
եւ կողկողագին պաղատանաւք՝ աստուածաբան վարժապետացդ եւ ու-
սումնասէր քրիստոսակիր գրոց աշակերտեալ անձանցդ, որք հաւա-
քեալ ժողովիք առ սեղանս հոգեւոր եւ կերակրիք ի կենաց հացէս եւ
յանմահարար բաժակէս ընթերցմամբ դասի աւրինակելով եւ սակս մա-
սին սմին պատահելով, յիշեսջիք եւ զիմս անպիտանութիւն առաջի
անմահ դառինն Ցիսուսի Քրիստոսի՝ զպիտականուն վարդապետս Թով-
մա, եւ զհոգեւոր եւ զմարմնաւոր ծնաւղքն մեր՝ զՄատթէոս կրօնաւորն,
եւ զՍանփանոս, եւ զմայրն իմ, եւ զուսուցիչքն մեր եւ զվարժիչք՝ զաս-
տուածարան վարդապետքն զԳրիգոր Տաթեւացի, զՅոհանէս սուրբ ուխ-
տիս, զՍարգիս, եւ զՎարդան, զԳրիգոր նահատակն Խլաթեցի, զՅակոբ ճըգ-
նաւորն Ղըրիմեցի, զԳալուստ Վաղանդնեցի եւ զամենայն վարդապետք
այժմեան ժամանակիս, որ բազում երախտիս ունին ի վերայ մեր եւ
ամենայն Հայաստանեայց եկեղեցեացս։ Եւ մի լինիցիք բազմին առաւղ
եւ սակաւին ոչ տըւաղ, այս է՝ աստուած-ողորմի ասել մեզ եւ թո-
ղութիւն մեղաց ի տեառնէ աստուծոյ խնդրել մեզ եւ մերոցս ամե-
նեցուն...։

Այլ եւ զհամշիրակ եւ զաշակերտակից եղբարս իմ, զպատճառս բա-
զում բարութեան՝ զճգնաւոր եւ զաստուածաբան վարդապետս Մկրտիչ,
եւ զհայրն իւր Նահապետ, եւ զամենայն արեան մերձաւորսն, որ խրա-
տէ. հոգեւոր մարմնաւոր խրատով զմեզ եւ զամենայն ուխտս միաբան։
Ցիշել աղաչեմ ի սուրբ եւ ի մաքուր յաղաւթս ձեր նաև զբաղձալի
եղբարքս եւ զհոգեւոր որդիքս՝ զՍտեփանոս վարդապետ, զԱտոմ վար-
դապետ, զԶաքարէ վարդապետ, եւ զգրոց աշակերտեալ որդիքս՝ զՆեր-
սէս, եւ զՍտեփանոս, եւ զՀերապետ, եւ զՅոհանէս, զՂազար կրօնաւորն,
եւ զԱբրահամ փիլիսոփայ, զՆերսէս եկեղեցպանն, եւ զամենայն միա-
բան սուրբ տաճարիս, եւ Քրիստոս աստուած զձեզ յիշէ աստ եւ ի
հանդերձեալն, ամէն։

344 ա Այլ եւ զհոգեւոր որդեակն մեր զՅովհանէս եպիսկոպոս աստուա-
ծաբնակ սուրբ ուխտիս, եւ զՅակոբ կրաւնաւորն, զհարազատ եղ-
բարքն իմ զՅովանէս, եւ զպարոն Գորգի-Մելիքն, որ բազում նեղու-
թիւնս կրէ յանօրինաց վասն մեր եւ սուրբ ուխտիս, եւ զԱռիստակէս,
եւ զԱմիր-Մելիք, եւ զՅոհանէս քահանայ, եւ զՍօլթանշա, եւ զՄկրտիչ
քահանայ, եւ զՄկրտիչ միայնակեց, եւ զամենայն արեան մերձա-
ւորքն մեր յիշել աղաչեմ ի սուրբ աղաւթս ձեր եւ թողութիւն մեղաց
հայցել ի տեառնէ...։

Այլ եւ զամենաւրհնեալ մանկունքն զՍտեփանոս եւ զՅովանէս՝ աշակերտք մեր, որ զգիրս բաղում աշակերտութեամբ եւ. ահիւ գրեցին, եւ զհայրն իւրեանց զԿարապետ քահանայ, եւ զՄանգասար. Քրիստոս աստուած աւրհնեսցէ զսոսա, եւ բազմաժամանակեան արասցէ ի վերայ երկրի եւ յետ աստեացս զերանաւէտ բարբառն լսել տասցէ սոցա, ամէն։

Արդ, գրեցաւ գիրս յերկիրս Քաջբերունեաց, յանապատիս Աստուածածնի, առ դամբարանի քրիստոսընկալ վարդապետացն սրբոց՝ Աստուածատրու եւ Մխիթարայ, Մովսիսի եւ այլոց ճգնաւորացս, որոյ յիշատակն աւրհնութեամբն աստուածային եղիցի. Ի ՊՁԴ. (1435) թվականիս, ի փառս հաւր եւ որդւոյ եւ սուրբ հոգոյն, ամէն։

Արդ, գիտելի է, զի մինչ ոչ էր աւարտեալ սուրբ գիրս, անաւրէն թագաւորն Շահռուխ եկն բազում զօրօք յաշխարհս մեր, եւ նստաւ ի վերայ բերդին Երընջակու, եւ թուրքմանն էջ ի ներքին կողմ աշխարհիս Հայոց։ Եւ թագաւոր նոցա Սքանդար անուն սպան զթագաւորն Ամթա և բոլոր Դիարբակին՝ Օթման անուն՝ յոյժ քրիստոնեասէր և սիրաւղ եկեղեցականաց։ Իսկ մեք փախստական եղեալ հասաք ի Խլաթ քաղաք, եւ աստ տեսաք զնմանութիւն Նեռինն դառնութեան, զի բազմութիւն զօրացն մարաց՝ ի լերանց եւ ի բլրոց ձայն ետուն միմեանց, հաւաքեցան ի դիւարնակ քաղաքն, եւ կամէին որոյ ճարակ առնել զտառապեալ ազգս մեր։ Եւ ո՞վ կարէ պատմել զաղէտ տարակուսանաց եւ զձայն գոչման եւ աղաղակ ի քրիստոնէից եւ անօրինացն, զի ոչ անասնոյ, ոչ հանդերձի և ոչ հացի ետուն մնալ։ Իսկ մեք մազապուրծ եղեալ ի նոցանէ, ի գիշերի հասաք ի լերինս Բաղիշու: Եւ համբաւ հասեալ առ սրբազան արքեպիսկոպոսն տէր Ստեփանոս եւ առ ամենայն բազմութիւն քրիստոսընկալ քահանաիցն եւ
344 բ աստուածասէր ժողովրդեանն՝ ‖ մեծամեծաց եւ փոքունց, ողբս ի բերան առեալ ողբային զմեզ։ Եւ խումբ առեալ ելին ի քաղաքէն եւ ի գեղորէից՝ լալով եւ հառաչմամբ, եկեալ գտին զմեզ ի լեառն Ուրտաբու, եւ անճառելի ուրախութեամբ ուրախ եղեն։ Իսկ աստուածապատիւ եւ քրիստոսընկալ այրն աստուծոյ տէր Ստեփանոս հետիոտս եղեալ գայր առաջի մեր եւ առաջի ամենայն քահանայիցն եւ ժողովրդեանն, իբր զԴաւիթ առաջի տապանակին աստուծոյ, աւրհնէր զաստուած եւ աւրհնել տայր ամենայն ժողովրդեանն մեծաւ ուրախութեամբ, զի ողջունիւ ընկալաւ զմեզ զամենեսեան, եւ յաչս ամենեցուն սիրել ետ զմեզ՝ զանարժանքս, իբր զճշմարիտ առաքեալ եւ մարգարէ։ Եւ ոչ միայն այս, այլ եւ զաստուածաբնակ անապատս իւր մեզ սեպհականեաց՝ քահանայիւք, հացով, անասնով և ամենայն մարմնաւոր պիտոյիւք։ Որ եւ արարիչն աստուած սըմա հատուցումն եւ փոխարէն արասցէ հազարապատիկ եւ բիւրապատիկ յայսմ աշխարհի, եւ յետ աստեացս ելանելոյ՝ սրբոյն Ստեփանոսի նախավկային, եւ ամենայն արեան մերձաւորօք, մանաւանդ զորդեակս մեր զԱբրահամ փիլիսոփայ, եւ զփոքր երիցանիս զՅակոբ, զՍտեփանոս, զՀերապետ, զԿարապետ քահանայ, զՅովանէս կրօնաւորն, որդեակ իւր զԿի–

րակոս, զԴանիէլ, զմիւս Յովանէս ծերունին, եւ զԱռաքել տնտեսն, եւ զԱռաքել, եւ զՅովանէս սարկաւագն, եւ զԿիրակոս միակեցն, որ կան ի ծառայութիւն մեզ եւ սուրբ ուխտիս, եւ զհանգուցեալն ի Քրիստոս զՅոհանէս կրօնաւորն, որ ի սմին ամի գնաց առ Քրիստոս։ Քրիստոս որդին աստուծոյ հատուցումն եւ փոխարէն արասցէ սոցա եւ ամենայն ժողովրդեանս, որ յայսմ գաւառնիս եւ ի լերինս բնակեալ կան, եւ տացէ սոցա զանճառելի զփառս եւ զտեսութիւն աստուածային երեսացն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Այլ եւ զխօջա Մուրատշէն, որ ի սըմին աւուր նահատակեցաւ յԱրճկէ քաղաք ի յանօրինաց, եւ զՄերուն որդի Դամուրին, ի գէշ եւ ի զազիր ազգաց, եւ զՆւատշա տանուտէրն արժանի արասցէ Քրիստոս աստուած իւր տեսութեանն եւ իւր փառացն։ Եւ յոյս յարարիչն աստուած ունիմք, որ վաղվաղակի առցէ զվրէժ սոցա ի յանօրինաց, ամէն եւ եղիցի։

Բ

88 – Արդ, յերեսս անկեալ պաղատիմ Քրիստոսի մանկանցդ եւ գրոց աշակերտեալ անձանցդ՝ զտգեղութեամբ ախտիւ պարուրեալս ի կերպարանէ վեհին՝ զպիտականուն վարդապետս Թովմա, յաստուածաընակ ուխտէ Աստուածածընէ, որ այժմ Մեծոփայ վանք վերաձայնի, մաղթեմ պատահողացդ սմին յիշել բարեմիտ կամաւք և մեղաց թողութիւն խնդրել ի տեառնէ, եւ տարագիծ գրչիս՝ հոգեւոր որդւոյ ձմոյ Ստեփանոսիս, եւ ամենայն երախտաւորացն մերոց, եւ դուք ի վերջին եկելոցն զնոյն ընկալջիք զթողութիւն մեղաց, ամէն։

Գ

253 – Զտարտամեալս հոգով եւ զկապեալս ի տոռունս մեղաց եւ զյետնեալս ի շարս բանասիրաց՝ զսոսկ անուամբս ի կարգս վարդապետաց, աղաչեմ զդասս ճշմարիտ քարոզչաց եւ զերջանիկ գունդ աշակերտելոց բանին կենաց՝ յիշել զմեզ, եւ աստուած զձեզ յիշէ։ Այլ եւ զՍտեփանոս գծաւղիկս յիշեցէք ի Քրիստոս, որ քան ըզմազմանի աշակերտ դէպ յետ կու գնամ։

Դ

377 – ...Աղաչեմ զընթերցօղքդ սուրբ մատենիս եւ զաստուածաբան վարդապետդ, որ նստիս ի հանդիսական ատենիս, յիշել զմեզ ի սուրբ աղաւթքդ ձեր՝ զսոսկանուն վարդապետս Թովմա եւ զՄկրտիչ, եւ աստուած ողորմի ասել մեզ, որ ըստ իմում կարի կամ յաշխատութիւն սուրբ գրոցս, զի յետ մեր ելանելոյ յաշխարհէս յիշատակ մնասցէ ի ձեռնն մանկանց եկեղեցւոյ։ Զի կորուսեալ էր գիրս այս եւ ի դուրս անկեալ ի դաստանէ սուրբ վարժապետացն մերոց՝ մեծին Գրիգորի Տաթեւացւոյ, եւ սրբոցն Սարգսի, եւ Վարդանայ՝ նորին աշակերտի,

եւ մեզ վերջնոցս տուրք եւ ողորմութիւն պարգեւեսցէ յոռատածիր-պարգեւացն աստուծոյ։

Ե

197 բ Աղաչեմք զնաղելի եղբարքդ եւ զաստուածարան վարդապետք եկեղեցոյդ Հայաստանեայց, յիշեցէք ի Քրիստոս զմեղուցեալ վարդապետս Թովմա, եւ զհոգեւոր որդիքս մեր, եւ զհայր զՄկրտիչ վարդապետ սուրբ ուխտիս Մեծոփայ, եւ զՄկրտիչ վարդապետ հրաշալի ուխտին տէր Յուսկան՝ զսիրելի մեր, եւ զաշակերտեալ եղբարքս զՍտեփաննոս վարդապետ, զԱտոմ վարդապետ, Զաքարէ վարդապետ։ զՆերսէս, զՍտեփաննոս, որ կան յաշխատութիւն աստուածաշունչ տաւրից եւ յորդորեն զմեզ ելանել ի ծուլութենէ հեղգութեան, այլ եւ զպատուական որդիքն մեր՝ զՄկրտիչ վարդապետն Հիւսաէ, եւ զՂազար, եւ զՄեսրոպ, եւ զՅովաննէս Բաղիշեցի, որ տարաժամ մահուամբ փոխեցան եւ ելին ի գաղն կենացս, եւ զՅոհաննէս քահանայ՝ եղբայր մեր, եւ սուգ անմխիթար թողին մեզ, զի ի զուրն եղեւ աշխատութիւն մեր վասն մեղաց իմոց...։

Զ

215 ա Զսուտանուն վարդապետս, եւ զԿարապետ քահանայն, եւ զորդեակըն իւր՝ զհնազանդ ծառայն Քրիստոսի, որ զգիրս գրեցին, յիշեցէք ի Քրիստոս, եւ աստուած զձեզ յիշէ, ամէն։

Է

243 բ ԶԹովմա պիտակ անուն վարդապետս, որ անմահական գանձիւ աոիթ եւ պատճառ եղէ եւ ի լոյս ածի, զի առաջնորդ է սա երկնաչու ճանապարհին, այլեւ զհոգեւոր հարազատն մեր զՂազար կրաւնաւորն, եւ զՆերսէս եկեղեցպանն, եւ զՅակոբ հերպետն, որ աշխատին ի դուռն սուրբ եկեղեցոյս, Քրիստոս աստուած՝ փառաց թագաւորն, անմահութեանց պարգեւատուն՝ տացէ նոցա զանսպառ ուրախութիւնն, զանծերանալի հասակն եւ զմանկութիւն զանանցական եւ զանմահական զկեանսն, եւ փոխանակ անկեղծ սիրոյ նոցա, որ առ աստուած եւ առ մեզ ունին, Քրիստոս աստուած ընդ սիրելիս իւր դասեսցէ զնոսա, հանդերձ ծնօղօք եւ ամենայն արեան մերձաւորաւք, ամէն։

Գրեցաւ ՊԶԴ. (1435) թվականիս։

Ը

315 ա Զպիտակ անուն վարդապետս եւ զհոգեւոր եղբարքն մեր զԶաքարէ վարդապետն, որ աշխատի ի խազելն, եւ զհամշիրակ որդիս մեր եւ զերախտաւոր զՀերապետ ընտրեալ կրօնաւորն եւ գրոց աշակերտն, որ բազում աշխատութեամբ զհին գրեանքս նորոգէ, Քրիստոս աստուած նորոգէ ի կեանքն անմահական, հանդերձ ծն[ողօք] եւ ամենայն արեան մերձաւորօք, ամէն։

Ք

327 ա Այլ եւ զպիտակ անուն վարդապետս, եւ զաշխատաւոր եղբարքս մեր՝ զԹովմա սուրբ Թովմեցի, եւ զՍերուն փիլիսոփայ, եւ զԱռիստակէս, եւ զՍերուն քուերորդին մեր, որ աշխատի վասն սուրբ ուխտիս, եւ զԽաչատուր միայնակեացն յիշեցէք ի Քրիստոս, եւ զզարդարիչ եւ զծաղիկ անապատիս՝ զհեգահոգի եղբարքս մեր զԴաւիթն, զԳրիգորն, զՎարդանն, զՅոհանէսն, զՅակոբն, զԵրեմիայն...։

Ճ

334 ա Յերեսս անկեալ աղաչեմք զմանկունս եկեղեցոյ, յիշեսջիք ի բարին Քրիստոս զհոգևոր հայրն իմ զՄաթէոս կրօնաւորն, եւ զմարմնաւոր ծնօղքն զՍտեփանոս եւ զՇամշա, եւ զՄկրտիչ քահանայ հօրեղբայր, եւ զՄկրտիչ միայնակեացն, եւ զեղբայրքն մեր զՅոհանէս քահանայ, եւ զՍոլթանշա՝ հանգուցեալ ի Քրիստոս, եւ զկենդանիքն՝ զՅովանէս եւ զպարոն Գորգի-Մելիքն, զԱռիստակէսն եւ զԱմիր-Մելիքն, եւ արարիչն աստուած զձեզ յիշէ, ամէն։

ՃԱ

Գրիչ՝ Յովանէս

16 բ Զսուտ գծագրիկս զՅովանէս քաղաքացիս յիշման արժանի արարէք, ով սուրբ գրոց աշակերտեալ անձինք, որ յայս տետրակս Ջ. (900) գիր ի Ա. (1) անգամ թաթխելոյն գրեցի և այլ՝ Ի. (20), Լ. (30) աւելի, վարդապետքս վկայ։

ՃԲ

23 ա Գիրքս այս Մեծոփայ սուրբ ուխտին է, եւ Թումա րաբունապետին է յիշատակ։*

ՃԳ

229 բ Աղաչեմ զձեզ, լի բերանով աստուած-ողորմի ասացէք Յովանէս սարկաւագին եւ իւր ծնողացն, որ աւգնականութեամբ աշխատեցաւ ի յըղորդել գրոցս։ Աստուած անվորձ պահէ։**

Եւ Քրիստոս աստուած ողորմի ծնօղաց սորա եւ անփորձ պահէ ի փորձանացն սատանայի, որ այս Բ. ամ է, որ ձրի աշխատի և պանդխտութեամբ ի դուռն սուրբ Աստուածածնիս Մեծոփայ վանացս։ Եւ զընկերակից հոգևոր եղբայր իւր զՍտեփանոս դպիրն, որ միաբանութեամբ յանձն առին զգիրս եւ յաւարտ հանին, եւ զահ եւ զերկիւղ չաղաթին ոչինչ համարեցին, որ հասին ի Թաւրէզ, վայ եւ եղուկ մեզ։***

* Գրված է կարմիր թանաքով։
** Այս պարբերությունը Յովանէս գրչինն է։
*** Երկրորդ պարբերությունը գրել է Թովմա Մեծոփեցին։

ԶՍտեփանոս սարկաւագիս յիշեցէք ի Քրիստոս, որ տասն ու վեց տետր գրեցի։ Բայց ի մի թաթխելոյն Է՚Ճ. (700) գիր գրեցի։ բայց կաթաւ թանաքն, թէ չէ այլ կու գրէի։*

ժդ

327 ա Արդ, աղաչեմ զմանկունս եկեղեցոյ, որք աւգտիք ի սուրբ կտակէս Պաւղոսի՝ լի բերանով եւ փափագելի սրտիւ աստուած-ողորմի ասացէք տէր Մաքէոսին՝ շինողի տանս, որ զգիրս աւարտեցաք, այլ եւ աշակերտի սորին Կարապետ հեզահոգի կրաւնաւորի, որ զանարժանքս արժանաւոր համարեցաւ եւ մինչև ցայսաւր զմեզ ուրախ եւ քաղցր պահեաց իւր քաղցրութեամբն։ Քրիստոս աստուած զսոքա իւր քաղցր տեսուն արժանաւոր առնէ, ամէն, եւ զիս՝ զայս տարակուսեալ գծող։

ժե

Ընթերցող՝ խալիֆայ

248 ա Զխալիֆէս յիշեցէք, որ զէջս իջայ։**

## 496

## ԱՒԵՏԱՐԱՆ

Գ. Հովսեփյան, Թովմա Մեծոփեցու կյանքը, էջ Լ. (30)

Գրիչ՝ Յովհաննէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

[Յիշեցէք] եւս տուաւել զերեւելին ի մէջ ամենայնի, զլուսատուն ազգիս, զաստուածաբան և զսուրբ բաբունապետն, զհեզահոգի և զքաղցր վարդապետն Թովմա, զոր տէր աստուած ջահ անշիջանելի պահեսցէ զնա եւ հաստատուն ի վերայ գաւազանի իւրոյ։

## 497

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4840

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան քաղաք

298 բ ...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուտ գրչի և անարժան քահանայի Կարապետի, ի թվ. Հայոց ՊՁԴ. (1435), ի հայ-

* Վերջին հատվածը գրել է ձեռագրի երկրորդ մասի գրիչ Ստեփանոսը։

** Հետաքրքրական է 345 ա էջի հիշատակագրությունը, որը պարունակում է վկայություն Երզրումի արհեստավորական համքարությունների մասին։ Այնտեղ գրված է. «Յիշատակ է գիրքս Արզրումնու Թարզի ասնաֆներուն, ի ձեռն Պօղոս վարդապետին ։ Թովին ՌՃԻԴ. (1675)»։

բապետութեան Կոստանդեայ, և մերոյ առաջնորդի և աթոռակալի սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովաննէս արքեպիսկոպոսի, ի քաղաքս, որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփանոսի նախավկայի և սրբոյն Սահակայ հայրապետի, և դառն և ի վշտաշատ ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց բացաւ դուռն Խորասանայ, և եկեալ որդի Թամուրին՝ Շախռուխն ի յաշխարհս Հայոց, և որդիք Ղարա-Ուսուֆին՝
297 ա Իսքանդարն փախըս || տական գնաց ի Ներքին աշխարհն և սպան զՂարա-Օթմանն և զորդին և զայլ բազումք ընդ նմա. և միւս եղբայրըն՝ Ջհանշայն գնաց հնազանդութեամբ մօտ ի Շախռուխն, և նստաւ նորին հրամանաւ ի Թաւրէզ. և եղեն երկու եղբարքն թըշնամիք միմեանց, և ոչ գիտեմք, թէ զինչ լինելոց եմք։

Արդ, ի յայսմ դառն ժամանակիս ցանկացաւ այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս երջանիկ և հոգեսէր տանուտէրն Ստեփանոս բրուտն, և ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ ընչից իւրոց, յիշատակ իւրն, և ծնողաց իւրոց՝ հօրն Թումայի և մաւրն Մըրւաթի, և եղբաւրն Ատոմի, և կենակցին Մէլէք-խաթունի, և հօրն Մէրչի, և մօրն Փաշայի, և եղբօրն Ամիր-Մէլէքի և Ցառուխշի, որ առ աստուած փոխեցան, և զաւակացն Յովսէփի և Ցռանգշի, Աւիտիսի և Մլխամշի, և դստերն Ղադամ-Փաշի, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեացն և հանգուցելոցն
297 բ ի Քրիստոս։ Արդ, աղաչեմ զամենսե || ան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք յաղաւթս ձեր և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Ընդ նոսին և զիս յիշեցէք՝ զանարժան գրիչս զԿարապ[ետ] անարժան քահանայ, և զծնողքն իմ՝ զՍտեփանոս քահանայ և զՄինայ, և զհօրեղբայրն իմ զՄովսէս միայնակեց, և զեղբարքն իմ զՅովանէս քահանայ և զՄէլքիսէթ սարկաւագ, որ առ աստուած փոխեցան, և զորբացեալ զաւակս իմ զՄեսրոպ, զԱբդլմսեխ, և զՄելքոն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիք և զհանգուցեալք յիշեցէք...։*

498

ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 161, այուն. 372, Ջուլամերիկի Փոկան գիւղի եկեղեցի

Վայր՝ Մոկաց երկիր

... Աւարտեցաւ սուրբ աւետարանս յարքունական երկիրս Մոկաց, ի թուին Հայոց ՊԶԴ. (1435), ի վանքս, որ կոչի սուրբ Գէորգ զաւրավար, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս և սուրբ Նշանացս, [յ]առաջնորդութեան սուրբ ուխտիս Պետրոս աբեղային։

* Շարունակության մեջ գրիչը կրկին անգամ աղաչում է հիշել ստացող բրուտ Ստեփաննոսին և նրա բազմաթիվ ազգականներին, հայտնելով նոր անուններ։ Ձեռագրում կան նաև մի քանի ուշագրավ կալվածագրեր (էջ 6 բ, 296 ա, 298 բ)։

## 499

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

*Աշխար գիւղ, Մ. Տ. Մ.*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Ամիթ

*Գրիչ՝* Գրիգոր *որդի* Էրմելիքի *և* Գաւճարի, *ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *և թագաւորութեան* Աւթման-Բէկի *որդւոյ՝* Ալի-Բէկին,* *որոյ տացէ տէր աստուած նմա յաղթութիւն ընդդէմ թըշնամեաց իւրոց... ի մայրաքաղաքիս* Ամիթ... *ի յառաջնորդութեան և վերատեսչութեան մայրաքաղաքին* Ամթոյ *արքեպիսկոպոսին տէր* Մկրտչի *նկարագրի, և երեսփոխանութեան ամենայն Հայաստանեաց և արքեպիսկոպոսութեան ամենայն Միջագետաց ... ի վերա ԻԴ. (24) գաւազանաց։*

## 500

### Դ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

*Բրիտ. Թանգ.* Or. *2608, 48 54, էջ 121*

*Հետ. ստացող՝* Ստեփանոս Եպիսկոպոս Խարբերդու

278 ա *Ո՛վ քահանայք և վարդապետք... յիշեցէք... զգանձատետրիս գրաւղն և զվերջի գնաւղն զ*Պօղոս *քահանայ, և զննջեցեալս իւր... և զիս՝ անպիտան ծառայս աստուծոյ* Ստեփանոս *անարժան եպիսկոպոս* Խարբերդու, *որ անուամբ կոչեցայ և ոչ գործով. և որ զմեզ յիշէ յիշեալ էիցի... Ի թուականութեանն Հայոց ի ՊՁԴ. (1435)։*

## 501

### ՆԵՐԲՈՂԵԱՆ ԱՌԱՔԵԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երևան 83*

*Հեղինակ՝* Առաքել Բաղիշեցի
*վայր՝* Ձմշկածագ, Երկան-Ընկուզեաց վանք

380 բ *Յօրինեցաւ ճառս ի թվականիս Հայոց ՊՁԴ. (1435), ի նորաշէն յանապատիս* Երկայն-Ընկուզեաց, *որ անուն սրբուհոյ Աստուածածնին և յանուն սուրբ Կարապետին, ի գաւառին* Ցաղմնայ, *որք կարդայք՝ մեղաց թողութիւն խնդրեցէք շինողի ճառի* Առաքել *վարդապետի։*

---

* *Աք-Կոյունլու Ուզուն-Հասանի հայրը, Համզայի եղբայրը, որ ձգտում էր ինքը թագավորել։*

## 502

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 2400*

Գրիչ՝ Աւգսէնդ
վայր՝ առընթեր Կաֆայի

245 ա *... Գրեցաւ Խաղտետրս ի թվ. Հայոց ՊՁԴ. (1435) ամի, ձեռամբ ապիկար և անմար գրչի* Աւգսէնդ *մեղապարտ կրաւնաւորի, ի խնդրոյ* Եսայեայ *առաքինասէր և սրբասնեալ կուսակրօն աբեղայի, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւր ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ իւր, և ծնաւղացն իւր պարոն* Աստուածատրին *և* Ազիզ-Մելիքին,
245 բ *և եղբարցն իւր պարոն* Թումանի-Պէկին *և պարոն* || Էտիլ-Պէկին: *Արդ է[դև սկ]իզբն և զրաւ խաղտ[ետրիս յ]ընտիր աւրինակէ, որ կո[չի Առաք]ելցի, յաշխարհս* Հոնաց, *ի վ[անս], որ յանուն սրբոյն Անտոնի, որ է առընթեր մեծի մայրաքաղաքի* Կաֆայի, *առաջնորդութեան վանացս և աթոռակալութեանն մեծի վարդապետի քաջ բաբունոյ տեառն* Սարգսի, *ի հայրապետութեան տեառն* Կոստանդնեա, *և յեպիսկոպոսութեանն տէր* Կարապետի....

## 503

## ՏՕՆԱՑՈՅՑ

*Երևան 7728*

Գրիչ՝ Աւգսէնտ
վայր՝ առընթեր Կաֆայի

102 ա *... Գրեցաւ Տօնացոյցս յաշխարհիս* Ղրըմի, *առընթեր մեծի մայրաքաղաքիս* Կաֆայի, *ի թվ. Հայոց ՊՁԴ. (1435), ի հայրապետութեան տեառն* Կոստանդնեա *և յեպիսկոպոսութեանն տէր* Կարապետի,
102 բ *ձեռամբ անպիտան գրչի* Աւգսէնտ *կրաւնաւորի,* ի* || *վայելումն* Յակոբ *քահանայի և յիշատակ իւր և կենակցին իւրոյ* Ջոհար-Մելիքին, *և զաւակացն* Մկրտիչ-Պէկին *և* Մանւա՞ր-**Խաթունին,*և ծնողացն իւր*

---

* *Ամենայն հավանությամբ նույն այս Աւգսէնտ կրօնավորն է 1438 թվականին ընդօրինակել «Վարք Յովհաննու Ոսկեբերանի» այն ձեռագիրը, որի վերջում, հետագայում, ավելացված է եղել Հակոբ Կարնեցու «Տեղագիր վերին Հայոց» աշխատությունը: Աւգսէնդի ընդօրինակած այդ ձեռագիրը, ինչպես հաղորդում է Հ. Կարնեցու աշխատության հրատարակիչ Կ. Կոստանյանցը, եղել է նրա սեփական Մատենադարանի կորստյան մատնված ձեռագրերից մեկը, դրա հիման վրա է նա կազմել ու հրատարակել «Տեղագրի» բնագիրը (տես Յակոբ Կարնեցի, Տեղագիր վերին Հայոց, յիշատակարան ԺԷ դարու, Կ. Կոստանեանց, Վաղարշապատ, 1903, էջ 02):*

** *Ձեռագիրը Երևանի Մատենադարանի ամենափոքր ձեռագիրն է, մագաղաթյա թերթերի մեծությունն է 4×3,3 սմ: Շատ տառեր ու բառեր փոքրության ու մաշված լինելու պատճառով դժվար են վերծանվում: Ստացողի դստեր և հոր անունների վերծանությունը կասկածելի է:*

[զՏաւնակա՞ն] *իրիցուն, և կենակցին* Նունեա-Մելիքին*։ Արդ, որք հանդիպիք ի սմայ՝ յիշեցէք զվերոգրեալն զՅակոբ քահանայ, և զամենայն արեան մերձաւորսն իւր, և զիս* զՕգսենտ *մեղ[ապարտս]։**

## 504

### ԺԱՄՈՑ

*Ալիշան, «Կամենից», էջ 161*

*Ընթերցող՝* Ստեփաննոս Որոտնեցի
*վայր՝* Լով

*Յիշեսջիք ի Քրիստոս* զՍտեփաննոս Որոտնեցի, *ի* ՊՁԴ. *(1435) զյիշատակարանս կարդացի, ապա զանունս գրեցի, ի քաղաքս, որ* Լով *կոչի։*

* *Մյուս՝ 103 թերթի վրա գտնվում է հետագա ստացող Նիկոլի նույնպես վատ պահպանված հիշատակարանը։*





## 505

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

*Երևան 4117*

Գրիչ՝ Յոհանէս-
վայր՝ Ի մայրաքաղաքիս Տփխեաց,
մերձակա գեղս Կրծանիս

293 բ *Փառք... որ հասոյց յաւարտումն այսմ աստուածունակ տասխ*
*գիս՝ ղանարժան ծառայս աստուծոյ զՅոհանէս գրիչս։ Արդ, ես՝ մեռեալ*
*մեղաւքս և սևացեալ հոգովս, որ ձեռվ միայն ունիմ զքահանայութիւն*
*և ոչ գործովք, որ անարժանս եմ մեղապարտ։ Արդ, գրեցաւ ձեռամբ*
*մեղաւոր և անարուեստ գծողիս, և գլխագրեցաւ ձեռամբ տէր* Սարգսի
Աղուվանից *արհեպիսկոպոսի, որ հայրաբար գութ ունէր ի վերա մեր,*
*որ հանապազ գայր և քաջալերէր ի գրելն։*

*Գրեցաւ սայ ի Թվականիս Հայոց ՊՁԵ. (1436), ի յաշխարհս*
Վրացտան, *ի մայրաքաղաքիս* Տփխեաց, *մերձակայ գեղս* Կրծանիս, *ընդ*
*հովանեաւ կաթուղիկէ սուրբ Աստուածածնիս և այլ ամենայն սուրբ*
294 ա *եկեղեցեացս, ի հայր || պետութեան տեառն* Կոստընդնայ, *ի* Աղուվա-
նից *տէր* Մաքէոսի, *և մեր՝ բազում երախտաւոր, քաջ և իմաստուն*
Եզեկիէլ *վարդապետին, ի Թագաւորութեան Վրաց* Ալէքսանդրին, *ի*
*նեղ և ի դառն ժամանակիս, որ վասն իմ ծովացեալ մեղացն եկն*
*չար անաւրէն* Շաղռուխն, *ու մեծ աւերումն [արար] աշխարհին։*
*Ապայ դնացաք ի տեղիքն երախտեաց՝* Երուսաղէմ, *և համբուրեցինք*
*զսուրբ գերեզմանն, և այլ ամենայն սուրբ տնաւրինականքն։ Հետ*
*դալն՝ ի* Դմըշխայ *զգրոցս Թուխթն և այլն դրանաց առաք, և եկաք*
*բերաք ի* Վրացտուն։ *Թողաք զԹուղթս ու գնացաք ի* Գանձակ, *մեր*
*եղբաւր և ընդանացն կարաւտ էաք։ Այլ չարիքն ու պատուհասն*
*անաւրէն ջաղաթին նեղեցուց զմեզ, այլ մեք առաք զմեր եկեղեցւոյ*
*հանդերձն՝ շուրջառներ, զաւետարան, ու զգրանք, ու զրուրվառ, և*
294 բ *զայլ ամենայն հոգւոյ || և մարմնոյ զինչ որ կայր՝ զամէն առաք, ի*
Վրացտուն *կու գայաք բազում կարվան։ Եկաք մինչև* Աղեստև, *հան-*
*դիպեցաւ ջաղաթին իլղարն՝ բազում հեծեալ. և Թալանեցին զմեզ*
*ու զամէն քրիստովնեայքն, և մերկեցուցին, որ քան զոտից աման*
*այլ իրք չԹողին, այլ ձմերան աւուրք և ցուրտ։ Այլ եկաք ի* Գավա-
զանին բերթն, *քրիստովնեայքն ի վերա եկին և ծածկեցին զմեր մեր-*
*կութիւնն։ Այլ մեք եկաք լալագին աչաւք, առաք զԹուղթս։*

*Յիշեցէք* զՍարգիս *աբեղէն* Տփխե[ա]ց *կաթուղիկին աւագերէցն,*
*որ զաւրինակն շնորհեց. Քրիստոս աստուած նորայ զերկնից աքայու-*

Թիւնն պարգևէ, այլ և զհամշիրայ հոգևոր եղբայրքն իմ՝ զՅորդանան աբեղայն և զՍտեփաննոս քահանայն Կրծանեցին։

Արդ, գրեցաւ սայ ի ընտիր աւրինակէ գանձատետր և տաղա-
295 ա տետր, մեղեդի և զամենայն բովանդակ, ‖ արդ, և սուրբ գանձարանս պայծառացուցին տաւնից և ուսումնասիրաց։ Արդ, աղաչեմ զձեզ, որ խոշորութեան և սխալանաց գրոյս անմեղադիր լերուք, քանզի կար մեր այս էր, բայց սէր ունէաք և արուեստ ոչ։

Նկ. 17. Մի հատված Ցոհանէս գրչի հիշատակարանից

Քանզի անարժանս Յոհաննէս՝ անուամբ և ոչ գործաւք քահանայ, ըստացայ զսա յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և ննջեցելոցն և ամենայն երախտաւորաց, իմ եղբաւրն՝ Յովաննիսին, և իմ քոյուէրն՝ Թուղթէնոյն, և իմ գնացելոցն ի Քրիստոս՝ իմ հաւրն Հուռումին, և իմ մաւրն Գունարին, և իմ քուերացն Նիւսրաթին, Ղատամին և Հերիքին, և իմ զաւակացն՝ Մելքիսէդին և Մխիթարին, զկենդանիսն փրկեսցէ յամենայն յորոգայթից, և փախեցելոցն հանգիստ և ողորմութիւն պարգևեսցէ ի Քրիստոս աստուած։ Այլ և զիմ սանամայրն զԱրուս-խաթունն, և զիւր որ-
295 բ դիքն՝ Վաչանն և զՍալքանն, ‖ և զիւր դստերսն՝ զԻաս ապաշխարողն և զԱննայ-խաթունն, և զիւր հարսն զՀռիփսիմին, այլ և զԿրծանեց զամէն ժողովուրդն՝ զա[...]ո և զկին, զծեր և զտղայ, զայգապան և

զամենայն աշխատաւոր, որք մեզ մէկ կտոր հաց բերելով, կամ մէկ քարեղէն ապուր, և կամ մէկ փառչ ջուր տալով։ Քրիստոս աստուած մեկին ատտ զհարիւրապատիկն հատուցէ և հանդերձեալն՝ զհազարապատիկն, և զերկնից արքայութիւնն պարգևեսցէ։

Այլ և որք ուգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զմեղապարտ ծառայս, և աստուած զձեզ յիշէ իւր յերկնից արքայութիւնն, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն, ամէն։

Եւ զեղբայրայրայդուստր իմ Խոսարովիթուխթն և զայրն իւր զՂազանն յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր....*

## 506

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5543

Գրիչ՝ Դանիէլ
վայր՝ Աղթամար

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր
290 բ Զաքարիայի, և ի թուին Հայոց ՊՋԵ. (1436), ձեռամբ Դանիէլ || սուտանուն քահանայի։ Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատանաւք գրեցի, ծաղկեցի և կազմեցի անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, կենաւք, տառապանաւք և բազում պանդխտութեամբ, ի գառն և ի վշտաբեր ժամանակիս, յորում եկեալ անաւրէն բռնաւորն Փիրի-Բէկ, և առեալ զկղզիս Աղթամար, և յոյժ աւերեալ թալանեաց։ Եւ մեր փախստական եղեալ, և մերկ և թափուր ի հայրենի ընչիցն, և տարաշխարհիկ եղեալ կացաք Բ.(2) տարի ի յաստուածապահ գեւղն Ուրանց, մինչև մեծ տէրն խնդիր արարեալ և երեր զմեզ, և ինքն յաստուած փոխեցաւ, և մեք կամք երկմիտ և ի վայր մնացած։ Եւ այս ամենայն եղև վասն ծովացեալ մեղաց մերոց։

291 ա Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ՝ յիշեսջիք յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սորա զՅովաննէս, և զծնողքն իւր զտէր Աւագ և զԱզիզ-Տիկին և ըզհաւրեղբայրն ըզՏիրացու, և զնորին ծնողքն՝ զԱռաքել և ը[զ]Զմրուխ, և զկենակիցն զՄարթայ, և զեղբարքն զՍահակ, զՍտեփաննոս և զՄկրտիչ, և զկենակիցքն զՓոքր-Տիկին, զԱւագ-Տիկին և զՍիրամարգ, և զորդայքն զտէր Աւաք և զՎարդանէս և զՅոհաննէս սարկաւագ, որ առ աստուած փոխեցաւ, և զազգն ամենայն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք։ Ընդ նոսին և զանպիտան Դանիէլ գրիչ և զծնողքն իմ զԿարապետ քահանայ և զԴուա-

---

* Վերջին պարբերությունը գրված է այլ ձեռագրով ու թանաքով։

մէլիք, և զեղբայրն իմ զԹումայ կր[աւնաւոր], որ ինքն այլ գրեաց, և զքոյրքն մեր, և զուսուցիչն մեր և զհաւրեղբայրն՝ ըՅաքարիայ փիլիսոփայն, և զկենակիցն իմ զՇամսա–Հաթուն, և զողայքն զՍտեփաննոս և զՅովաննէս, և զհանգուցեալսն Ջարմանի–Հաթուն և ը[զ]Ջարպայայ և զամենայն ազգականքն մեր՝ զկենդանիք և զննջեցեալք...։

## 507

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԼԱՏԻՆԱՑՈՑ ԹՂԹՈՑՆ Ի ՄԿՐՏԻՉ ՆԿԱՐԱԳՐԷ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ՀՐԱՄԱՆԱՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԵՒ ՄԵԾ ՐԱԲՈՒՆԱՊԵՏԻՆ ԹՈՒՄԱՅԻ

*Երևան 5657*

Հեղինակ՝ Մկրաիչ Նաղաշ

150 բ Վերջինս ի մանկունս Սիոնի, անյիշելի հողիկս, անարժան
Մկրտիչ կարծեցեալ իմաստակ, բացասութեամբ եպիսկոպոս Համիթ
քաղաքի, մականուն Նաղաշ մակագրեալ, հրամանաւ տեառն իմոյ
Կոստընդին պատրիարգի, և քաջ ախոյանին և անյաղթ փ[ի]լիսոփա-
յին Թումա րաբունապետի՝ Արևելեան հռետորի, սուղ ինչ և զսուր*
տրամագատեալ պատասխանի եկեղեցոյն լատինացոց։ Զոր վերադրեալ
եղև յԱգամայ մինչ ի ծնունդ մարդացելոյն աստուծոյ ՐՃՂԸ (5198)
ամի, եւ ի մարդեղութենէն Քրիստոսի մինչ ի հայ թըվականն ՇԾԳ.
151 ա (553) ամի, ծնընդենէն Քրիստոսի մինչ առ մեզ ՌՆԼԸ (1438) ամի. ||
եւ ի Լուսաւորչէն մերոյ մինչ առ մեզ ՌՃԼԸ. (1138) ամի. եւ ի Նիկիոկոն ժողովոյն մինչ առ մեզ ՌՃԺԲ. (1112) ամի, ի Կոստանդինուպաւլսի սուրբ ժողովոյն մինչ առ մեզ ՌԽԲ. (1042) ամի, յԵփեսոսի ժողովոյն մինչ առ մեզ ՋՂԴ. (994) ամի, ի Քաղկեդոնի ժողովոյն մինչ առ մեզ ՋԾԹ. (959) ամի. ի թվականութեան յարաբարգեալ արմենագրի համարաւղական արհեստի ՊՁԵ. (885+551=1436) թվին,** յամսեանն մայիս վեշտասան, աւուր չորեքշաբաթի։ Եւ նվիրեցաք ի ձեռն Աբդլմսեճի սարկաւագի, որ է նվիրակ տեառն Եսայեա արքեպիսկոպոսի, որ եղև առ մեզ արգելական ամիսս Ժ. (10), վասն

Նկ. 18. Մի հատված Մկրտիչ Նաղաշի հիշատակարանից

* Մաշված է. Գ. Հովսեփյանը իր «Մկրտիչ Նաղաշի Թուղթը Ֆլորենտիոյ ժողովի առթիւ» հոդվածում (տես «Արարատ», 1916 թ., էջ 413—423) կարդում է՝ «գգիր», և ինքն էլ կասկածելով իր վերծանությանը՝ հարցական է դնում բառից հետո։

** Գ. Հովսեփյանը կարդում է ՊՁԼ. (1438), և իր վերոհիշյալ հոդվածում իզուր վիճում է Մ. Չամչյանի հետ, որը Նամակի գրության թվականը իրավամբ համարել է 1436-ը։

պղտորութեան ժամանակիս, որ շատ աշխատանք կրեաց, որոյ տացէ տէր ատուած մասն բարի։

Եւ ես Յոհանէս Կաֆացի,
Բացասութեամբ արեղայի
Եւ սպասաւոր ուղիղ բանի,
Առ ոտս Թումա վարդապետի,
Ձեռամբ Գրիգոր մեր մալազի։
Ո՜վ կարդացողք, ձեր աղաւթիւք
Քրիստոս ատուած կաաա[ր՞ ն]անի,
Յիշման արէք զմեզ արժանի,
Քրիստոս առնէ զձեզ արժանի
Արքայութեանն իւր ցանկալի, ամէն։

## 508

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրզ. Նոտ. 108—109, Տարօն, Առաքելոց վանք, Ալիշան, Հայկարան

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Բաղէշ

... Արդ, գրեցաւ սա ի յաստուածապահ քաղաքս Բաղէշ, ընդ հովանեաւ զօրավարացն սուրբ Սարգսի և սուրբ Գէորգայ և սուրբ Ստեփաննոսի նախավկային, ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, և յեպիսկոպոսութեան տէր Ստեփաննոսի, ի բռնակալութեան աշխարհիս Հայոց Սքանդարի՝ որդւոյ Ղարայ-Ուսուֆի* աշխարհակործան և աւերող յամենայն գաւառացս՝ ի Դարբանդէն մինչև Սեւաստ, և եղև երկրորդ Աշրաֆ ազգիս, և մեր ամիրայի Շեխ-Մահմուտի։ Յայսմ ամի մեծ վարժապետն՝ Թումայ և Կարապետ՝ եօթն վարդապէտօք և այլ բազում աշակերտօք՝ փախստեայ եկեալ ի գաւառէն Արճիշոյ՝ առ մեզ կային ժամանակ ինչ, և ի նոցին շնորհտբաշխ և առատաբուխ իմաստիցն բազումք օգտեցան պէս-պէս ուսմամբ, զոր տէր ատուած վարձս բարեաց տացէ նոցա, ամէն։

Տառատպեցաւ գիրքս ձեռամբ... Ստեփանոս երիցուն ի Թուաբերութեանս Հայոց ՊՁԵ. (1436)։ Տանուտէրն Թումայ ցանկացաւ....

## 509

## ՄԱՇՏՈՑ

Վենետիկ, Մ. Տ. Մ., «Այրարատ», էջ 163

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Սաղմոսավանք

... [Գրեցաւ] ձեռամբ սրբասէր կրաւնաւորի և կուսակրաւն քահանայի Կարապետ դպրի, յԱյրարատեան գաւառի, ի յերկնահանգէտ և

* Ալիշանի մոտ՝ «Խարա-Ուսուփ»։

ի ղերահոչակ ուխտն Սաղմոսավանից... ի Թվ. ՊՁԵ. (1436), ի բռնակալութեան Սքանդարի..., Յովհաննէս վտրդապետ փակակալ Սանահնոյ՝ ստացող... յիշատակ հաւրն Վարդանայ, և մաւրն Խոնձի, և հանոյ իւրոյ տէր Ցախունդէ, եղբարց՝ Խաչատրոյ, Աստուածատրոյ, և Մկրտչի, և Ամիր-Սարգիս սարկաւագի, և քերցն Բսրա(՞)-Խաթունի...:

## 510

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԷՈԴՈՐՈՍԻ ՉԱԻՐԱՎԱՐԻ

«Միսական», էջ 326 (տպված է նմանահանությունը)

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Ագուլեաց վանք

Գրեցաւ պատմութիւնս ի թուականութեանս Հայոց ՊՁԵ. (1436), ի թագաւորութեանս Թորգոմա Ասկանտարի՝ որդի Ուսեփին, եւ ի հայրապետութեանս տեառն Կոստանդեա, ի վանքս Ագուլեաց, ընդ հովանեաւ սուրբ Թումայիս, ձեռամբ բազմամեղ գրչի Յովհաննէս վարդապետի։

## 511

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

Փիրղ. Նոտ. 108, «Լոյս», 1906, էջ 569, հարին

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Չմշկածագ, Կարմիր վանք

...Արդ, գրեցաւ սա ի նահանգիս Փռուգիոյ, ի գաւառս Երապօլեաց, որ այժմ մականուամբ կոչի [Չմշկածագ], ի համանուանադրութիւն Չմշկիկ Յոհաննէս թագաւորի։

Արդ, գրեցաւ սուրբ տառս ի թուականութեանս մերում ՊՁԵ. (1436) ամին, հայրապետութիւն Կիւլիկեցւոց տեառն Կոստանդեայ, և յաշխարհակալութիւն Ալի-Պէկին, ի յերկիրս Չմշկածակու, ի սուրբ ուխտս Կարմիր վանք, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և աստուածընկալ սուրբ Նշանացս, ի յառաջնորդութիւն տէր Մելքիսէթի։ Եւ լրացաւ ձեռամբ... անարհեստ Մկրտչի սուտանուն կրօնաւորի։

## 512

### Ճ Ա Շ Ո Ց

Երևան 7448

Հիշատակարանի գրիչ՝ Սիմէոն աբեղայ

506 ա Զվերջին ստացող սուրբ գրոցս Ճաշոցիս, զՅակոբ կուսակրաւն աբեղայն և զընկեր նորին՝ զՍարգիս աբեղայն՝ զհանգուցեալսն առ Քրիստոս [յիշեցէք]։ Եւ սոքա միաշունչ, միախորհուրդ գոլով կային ի դուռն սուրբ Աստուածածնին վանացն, որ կոչի հայր Յովանիսի, և

բաղում աշխատութեամբ շինեցին և լցին զպակասութիւնն կահիւքն ես, այլ և սպասուք, նա ևս գրենեաւք, և զսա ևս՝ սուրբ մատեանս՝ զՃաշոց գիրքս, որ յիւրեանց աշխատանացն և հալալ արդեանցն գնեցին և գրամով եդին ի մէջ սուրբ եկեղեցոյ՝ յիշատակ իւրեանցն իբրև զանդրանիկ որդի, որպէս այն, որ ասէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն. և է սուրբ գիրքս ճշմարիտ զաւակ և կենդանի և իւրեանց մեծ յիշատակ, նաև ծնողացն ևս լիցի յիշատակ, եղբարցն և ազգականացն։

Արդ, դուք, ով ոք որ հանդիպիք սուրբ գրոցս, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զՍարգիս աբեղայն, և զհայրն նորին զԴրիմշայն, և զեղբայրն նմին զԹորոսն, և զմայրն իւրեանց։ Այլ և յիշեսջիք վերստին զՅակոբ աբեղայն, և զհայրն նորին զՏիրացու քահանայն, և զմայր նմին զԴրիմ-Խաթունն, և զքոյրն զԽաղութ-Խաթունուն, և զեղբայր նորին զՍարգիսն՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և զեղբայր՝ Եղիսէոս քահանայ՝ և զկրսեր քոյր նոցա զԲասմալոս, և զամենայն արեան մերձաւորսն նորա յիշեսջիք ի Քրիստոս, և ձեզ՝ յիշողացդ և մեզ յուսացելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած, և յիշեցէք ի Քրիստոս զերախտաւոր վանացն զպարոն Աստուածատուրն զԲաղդէնց, և ով ոք ըրբութիւն առնէ յազգականաց կամ յաբեղայից և ի հայրապետաց՝ զսուրբ գիրքս հանելով ի վանացն կամ փոխելով կամ ծախելով, առնու զանէծս սուրբ աստուածածնին և զաստուծոյ և զամենայն սրբոց։

506 բ Եւ ով որ բարի ոք լինի ի գործ սպասաւորութեանն սուրբ Աստուածածնին և պահէ զպատուէր վերոյգրեալ սուրբ գրոցս, և պահէ զսուրբ գիրքս ի դուռն սուրբ Աստուածածնին՝ առնու աւրհնութիւն...։

Եւ գրեցաւ գիրս ի Թվ. Հայոց ՊՁԵ. (1436), դեկ[տեմբերի] Թ. (9), ձեռամբ Սիմէոն աբեղիս, այլ և զկազմող գրոցս զՄաղաքիա կրօնաւորն յիշ[եցէք]...։

513

ՇԱՐԱԿՆՈՑ

«Հնութիւնք Ակնայ», էջ 78—79

Գրիչ՝ Սամուէլ
վայր՝ Երզնկայ

...Յիշեսջիք Յովհաննէս քահանայ զծաղկաւղն՝ զՄելտինցին և... Ամիրպէկ սարկաւագն, որ զաւրինակս շնորհեաց մեզ։ Գրեցաւ և ծաղկեցաւ և կազմեցաւ... ի լաւ և յընտիր աւրինակէ, որ կոչի Խլկցի, ձեռամբ Սամուէլի, ի յԵկեղեաց գաւառս, ի մայրաքաղաքս ի յԵզնկայ, ի Թուաբերութեանս Հայոց ՊՁԵ. (1436)։





## 514

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 8979*

Գրիչ՝ Շմաւոն
վայր՝ Սանահին

· ա

349ա *Փառք... որ ետ կարողութիւն տրկարութեանս մեր հասանել ի*
*վերջին գիծ Շարակնոցիս և Տաւնացուցիս, որ է զարդ սաւնից և*
*պայծառութիւն եկեղեցեաց և ի վարժումն մանկանց Սիոնի։ Արդ,*
*գրեցաւ սա ի լաւ և ի ընտիր աւրինակէ Խըլկոյ, ձեռամբ մեղսամա-*
*կարդ անձին* Շմաւոն *վարդապետի, ի վանս* Սանահնոյ, *ընդ հովա-*
*նեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կաթուղիկէիս, և այլ բազմահոյլ*
349բ *եկեղեցեացս և բազմագումար սուրբ նշանաց և սուրբ նշխարացս* ‖.
*եւ մերձ դանբիրանի քաջ հռետորի* Գրիգոր *վարդապետի* որդոյ Աբասայ:
*Ե[ւ] ի թվաբերութեան Հայկազեան տոմարի ՊՁԶ. (1437), եւ ի թա-*
*գաւորութեան Վըրաց* Ալեքսանդրի *բարեպաշտի, եւ իշխանութեան տե-*
*ղոյս իշխանաց իշխանին պարոն* Բէշքենին՝ *շառաւիղին՝ Օրբելեանց, և*
*որդոյ իւրոյ պարոն* Ռուստամին, *որ և է ինձ հոգևոր որդի, զոր տէր*
*աստուած պահեսցէ անսասան կենաւք զպարոն* Բէշքենն *ծաղկեալ զաւա-*
*կաւն իւր մինչ ի խորին ծերութիւնն։ Եւ ի յառաջնորդութեան սուրբ*
*ուխտիս առն իմաստնոյ և առաքինի անձին՝ անմարմին ի մարմնի և*
*մարմնով հաւասարեալ վերին քահանայապետութեանցն, լցեալ երկոքին*
*որակաւն՝ տեսականաւն, գործնականաւն, համբաւ բարի և գործով*
*սքանչելի և արուեստիւ նազելի, արդեալ ի յոգունց և բարգաւաճեալ*
*ամենայն լեզուաց, զոր բազում աշխատութեամբ, որ ի ճըգանցն*
*նուազեալ կայր և վասն յուսոյ արքայութեանն և բազում գըթոյն*
*հայրախնամ, զոր ունէր առ մեզ՝ տէր* Յոհաննէս, *ամենևին նմանեալ*
350ա *անուա[ն]ակցին իւր՝ սիրելի աշակերտին, թողեալ զմարմնոյ տկ‖ա-*
*րութիւնն վասն աղաչանաց և սիրոյ մերոյ և զարդարեաց զսա սո-*
*փերական ոսկով և բազմերանկ դունով, և զցրուեալն կազմով՝ ի մի*
*ժողովեաց և ընձեռեաց մեզ վասն իւր բազում գթոյն։ Զոր տէր*
*աստուած զարդարեսցէ զսայ երկոքին կենաւքն, հանդերձ իւրաեաւքն,*
*արեան մերձաւորաւքն և ձեռնասուն աշակերտաւքն՝* Ներսէս *կուսա-*
*կրաւնի և քաջ փիլիսոփայի, և* Բէհնուշ *դպրի, և* Վարդան *սարկաւագի,*
*զոր տէր աստուած պահեսցէ մինչ ի խորին ծերութիւնն անսասան*
*կենաւք, և զննջեցեալսն իւր երանական ձայնին արժանաւորէ, ամէն։*
*Այլ և իմ՝ մտածեալ զբանս իմաստնոյն, որ ասէ՝ Երանի, որ*
*ունիցի զաւակ ի Սիոն, և իմ ոչինչ գոլով մասն բարեաց, և ոչինչ*

տրէխտուր փոխարինաց, և վասն յուսոյ արքայութեան և ի պատճառ
ապաշխարութեան գրեցի զսա յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն
իմ Խաչատրոյ, և մաւրն իմ Աղուտին, և եղբարցն իմ Հովադեղին, և
Բաղթիարին, և քեերցն իմ Շիրազին, Ասուկանին և Խաթունշին, և որ-
դոց նոցին Խիմշին և Ումիտշին, և եղբաւրորդեացն իմ Միրիջանին,
350 ր Խաւնաջանին, և Խաչատ[ուրին], || և ամենայն արեան մերձաւորաց
իմոց՝ կենդանեաց և ննջեցելոց, և հոգևոր ծնաւղացն իմ տէր Առա-
քելին, և քաջ հռետորին Մխիթարա, զոր տէր աստուած դասեսցէ ընդ
նմանիսն իւրեանց։ Եւ զհամշիրաք եղբարսն իմ զԾզեկիէլ վարդա-
պետն, և զԳրիգոր վարդապետն, և զՄարտիրոս փակակալ սուրբ Առա-
քելնոյն Եւստաթէի յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր։ Այլ և զհո-
գևոր որդիս իմ զՂազար կուսակրաւն աբեղա, որ բազում միամտու-
թեամբ ծառայէր մեզ՝ յիշեցէք հանդերձ իւրաաւքն։

Արդ, դրեցի զ[ս]ա յիշատակ ինձ հոգոյ և ի վայելումն դեռաբու-
սիկ և նորբողբոջ եղբաւրորդոյս իմ Սարգ[սի՞ | | | * և ընծեռեցի սմա,
որ այլ մարդոյ դաւի չկա հետ Շարակնոցիս՝ յիմոց կամ աւտարաց,
զոր տէր աստուած վայելել տացէ սմա մինչ ի խորին ծերութիւնն,
ամէն։

Այլ և յիշեսջիք յաղաւթս ձեր զհրեշտակատիպ և զկուսակրաւն
աբեղայն զԱլեքսանոս՝ որդիս մեր, և զձեռնասուն որդիս մեր զՅո-
վաննէս դպիր, և զհայրն ի[ր] զՈւմէկ յիշեցէք ի Քրիստոս։ Դարձեալ,
աղաչեմ յիշեցէք իւր՝ ամենայն կենդանեաւք և ննջեցելաւք՝ զՅակոբ
կուսակ[ր]աւն աբեղա և զմահդասի, որ զնիւթ մագաղաթիս շնորհեաց։
Եւ դուք՝ ով ոք տեսանէք կամ գաղափարէք, յիշեցէք զվերոյասացեալ
զտէր Յոհաննէս՝ հանդերձ իւրաւքն, և զիս՝ հանդերձ իմաւքն, և զվե-
րոյգրեալսն...,

351 ա | | | տար]տեամեալ** անձամբ վասն դառնութեան ժամանա-
կիս և բազում վշտաց և աւերման աշխարհիս Հայոց, զի գալն անիծ-
եալ չար բռնաւորին և կարապետ Նեռինն, որդի անակն*** սատա-
նայի Շահռուխն, որդի Լանկ-Թամուրին, յազգէն պարսից եւաւ բազում
զաւրաւք և անթիւ հեծելաւք ի կողմանց հարաւու, և եկեալ տապալ-
եաց զաշխարհս մեր, և արար կապուտ կողոպուտ, և գերի էառ զամե-
նայն, և փախըստական արար զաշխարհակալս մեր՝ զկոչեցեալն Ըս-
կանդար՝ զորդին Յուսուֆին, յազգէն Թորգոմա։ Եւ զաղէտն և զկոծն
և զազգի ազգի վիշտ և դառնութիւն ժամանակիս ընդ գրով ո՞ կարէ
արկել, զի այս երրորդ գալն էր և աւերելն և եկեղեցեաց մերոց խա-
ւար ածելն։ Եւ վասն աւերման հրեշտակաբնակ աթոռոյն մեր Եւստա-
թէի սուրբ առաքելոյն, զի բնաջինջ աւեր ածին և, առհասարակ,
զաներն այրեցին և զստացուածքն զամենայն կողոպտեցին. և միա-

* Մի բառ ջնջված է։

** 330 և 351 թերթերի միջից ընկել է մեկ (կամ մի քանի) թերթ։ Ուստի և հիշա-
տակարանի պատմական և ամենակարևոր մասի սկիզբը չի պահպանվել։

*** Այս բառի վերծանման վրա կասկածում ենք, կարելի է կարդալ նաև «աբեանակն»,
-ջուցե և «աբբանեակին» և այլն։

բանաւք մերովք փախստական և ցանուցիր եղաք աշխարհս Վրաց,
351 բ աստուածապարգև իշխանաւս || մեր և ամենայն աւրհնութեանց արժանաւոր պարոնաց պարոն Բէշքէնաւս, և ազատաւք, և ժողովրդաւք։ Եւ վասն այս՝ պատճառիս բնակեցաք ի սուրբ ուխտս ի Սանանիա, առ ոտս բազմերանեան և ճգնազգեաց և խարազանազգեաց կուսակրաւնի Յոհաննէս նկարողի այս մատենի, զոր տէր աստուած զարդարէ զսա երկոքին քաղաքավարութեամբ, զի բազում և ազգի-ազգի տրաւք մխիթարեաց զմեզ և զմերոյքս ի տառապանս մեր. և մեք ի բազում դառնութենէ և ի տարակուսանաց ոչ հանդուրժէաք զտիւ և զգիշեր վասն աւերածուն աշխարհին մեր և խաւարելոյ եկեղեցայցն, այլ կրկին մխիթարք եղև ազգիս տառապեալ՝ պարընաց պարոնն և իշխանաց իշխանն, տիպ գեղեցիկն և ամենայն կերպիւ զարդարածն պարոն Բէշքէնն, գնաց առ բռնաւորն և առհասարակ ազատեցոյց զգերեալսն ի ղաւրաց նորին, զոր տէր աստուած ազատէ զինքն և զնախնիքն իւր ի ձեռաց սատ[ան]այի և ի պատրանաց նորին։ Եւ այս փոքր ի շատէ | | |*

Բ

10 ա Աւգնեա հոգիդ սուրբ և զսկըսեալս իմ շուտով կատարեա և զգծաւղ սորա փրկեա ի ճաղբից բանսարկուին, և լիցի սա առիթ ինձ ապաշխարութեան, և զվայելող սորա զԴանիէլ դպիր՝ անսասան կենաւք պահեա։ Եւ զհրեշտակակրաւն անձն, զլցեալն ամենայն առաքինութեամբ՝ տեսականաւն և գործնականաւն, զՅովաննէս մաքրամիտ և սրբասէր աբեղա, որ ոսկով և զանազան դունով զարդարեաց զսա՝ զարդարեսցէ տէր աստուած զքաղաքավարութիւն սորա, և յետ աստեացս ելանելոյ պսակեսցէ զսա բազմերանկ պսակով։

Գ

109 բ Ընդ իմաստուն կուսանաց և յառագաստ հարսանեաց արժանացոյ զնկարող այս երգարանաց և դասեցոյ ի խորանս անդրանկաց և պսակ սորա պայծառ պատրաստեաց։

Դ

124 ա Շմաւոն վարդապետս յիշեցէք՝ զգծող սուրբ տառիս։**

Ե

Նկարիչ՝ Յոհանէս·

218 բ Ձերանաշնորհ և զերջանիկ րաբունին զՇմաւոն՝ զառաջնորդ և զվերադիտող առաքելական աթոռոյն Սիւնեաց՝ զգրիչ և զստացող ոսկեճաճանչ բուրաստանիս յիշեցէք վերափոխման տիրա[մօր] տօնիս։ Ընդ

* Շարունակությունը չի պահպանվել։

** Գրված է 124 ա էջի լուսանցքում, Շմավոն վարդապետի նկարի շուրջը։ Շմավոնը նկարված է Քրիստոսի խաչելության պատկերի առջև, չոքած դիրքով։

նմին և դաշխատեալս ի սմա, զբազմաբիծ մե[ղօք առ]ակեալս՝ զՅոհանէս նկարող աղաչեմ յիշել սրտի մտօք ի մեղաց թողութիւն, զի որով չափով չափէք և ձեզ եղիցի։*

515

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՀ, հա. Ա, 28, էջ 64–65

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Սևերաք

577 բ ... Գրեցաւ սուրբ աւետարանս ի թվականիս ՊՁԶ. (1437), ձեռամբ Մխիթար աբեղայի, ի վայելուչ տեղս, որ կոչի Սևերաք, ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսիս, ի յաթոռակալութիւն սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին՝ տէր Կոստընդինին, ի հայրապետութիւն տէր Մկրտչին՝ վերադիտող յամուրն Արզնի բարձր Աստուածածնին և Ամիթ շահաստան քաղաքի։ Զոր և Քրիստոս՝ յոյսն ամենեցուն և զառաջնորդող ամենայն բարեաց բացցէ զդուռն ողորմութեան ընդդէմ Սևերկո քրիստոնէիցս, որ բազում կարեաւք լցուցին զպէտս մեր՝ կերակրելով և հանգուցանելով, զոր և ի Քրիստոսէ զմիոյն հարիւրապատիկն առցեն, ամէն։



Նկ. 19. Հիշատակագիր և Տաթևի եպիսկոպոս Շմավոնի դիմանկարը

Աղաչեմ զհանդիպող եղբարքդ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր, զմրող սուրբ աւետարանիս զտառապեալ ոգի Մխիթար աբեղաի։ Վայ ինձ, որ միայն անուամբս եմ և ոչ գործով, հազար եղուկ է զիս, որ զամէնն գիտութեամբ կու մեղանչեմ, վայ ինձ՝ մեղապարտ անձինս Մխիթարա, որ վասն բազում յանցանաց իմոց տարակուսեալ և երերեալ կամ, որ եմ ի Թադէոսի և Բարդողիմէոսի սուրբ առաքելոց վիճակէն՝ ի Նախավկայէն։ Որ ի բազմանալ անաւրինաց վասն իմ մեղացն եկաւ Շահռուղ իմիրզէն՝ անիծեալ շունն նետողական, բազում և անթիւ զօրաւքն, և աւեր էած աշխարհին Հայոց, և բազումս գերեաց և կոտորեաց, քակեաց և այրեաց և ի հաւատոց էհան։ Եւ մեք տեսաք և վայ կարդաւինք անձանց մերոց և լսելեացս։ Եւ մեք լալագին աչաւք ե դառն սրտիւ թողաք զծնող, զեղբայր, զքոյրս և զմայր և եկաք մինչև ի Համիթ քաղաք. և ի խնդրոյ Սևերկոյ քրիստոնէիցս Մնացաք ի տեղս և գրեցաք զսուրբ աւետարանս։ Աղաչեմ յիշել ուղիղ սրտիւ ի սուրբ աղաւթս ձեր զմեղաւք լցեալ ոգիս Մխիթար գծողիս,

* Հիշատակագրությունը գրված է Աստվածածնի փոխման, ամբողջ էջով մեկ նկարված, պատկերի ներքին լուսանցքում։ Ձախ լուսանցքում, կանգնած դիրքով, նկարված է ձեռագրի գրիչ՝ Շմավոն վարդապետը, առաջնորդական գավազանը ձեռքին (տես նկ. 19)։ Այս և ձեռագրում պահպանված մյուս բազմաթիվ նկարները վկայում են Յովանէս ծաղկողի բարձր ճաշակի և մեծ հմտության մասին։

զոր և ինքն Քրիստոս աստուածն մեր, որ առատն է ի տուրս, ձեզ՝ կարդացողացդ և մեզ՝ աշխատողացս ի միասին ողորմեսցի աղաւթիւք ձեր, ամէն։ Այլ և խոշորութեան և սխալանաց գրոցս անմեղադիր լերուք, քանզի կայր մեր այս էր, և զհաւրեղբաւր որդին՝ աշակերտն իմ զԱլթուն յիշել յաղաւթս, որ զթուխտն կոկեաց...։

## 516

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9432

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Խլաթ

... Եւ ես անպիտանս և տրուպս կարգաւորաց Աստուածատուր խնդրողս բանի մոռացայ զնեղութիւն և զաղքատութիւն անձինս և ձեռն արկեալ գրեցի զսուրբ աւետարանս ընդ հովանեաւ ԺԱ. խորանացս և սուրբ Գէորգ զաւրավարին, ի Խլաթ մայրաքաղաքի, ի հայ-
290 բ րապետութեան տեառն Կոստանդ || եա ընդհանուր կաթողիկոսի, և մերոյս նախանգի տէր Զաքարի Աղթամարայ կաթողիկոսի, ի յաշխարհակալութիւն Ջխանշայ ամիրզին, որ զեղբայրն իւր զՍքանդարն փախըստական արար, 'ւ յԱլընջայ մտաւ և ամրացաւ, և խսարեաց զնա բազում զաւրաւք։

Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի ՊՁԶ. (1437) ամինս Արդ, որք հանդիպիք սուրբ աւետարանիս տեսութեամբ կամ ընթեռնելով կամ գաղափար առնըլով ի սմանէ աւրինակի՝ յիշեցէք ի Քրիստոս զստացող սորա զԽուտ ճգնաւորն, և զեղբարքն իւր զՆուրատն, և զկողակիցն իւր զԹանկ-Խաթունն, և զՅովանէսն, և զծնողսն իւրեանց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։ Եւ զՄարթէն յիշեցէք։

Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զմեղապարտ գրիչս զԱստուածատուր անարժան քահանայս, որ բազում աշխատութեամբ գրեցի, ծաղ-
291 ա կեցի և կազմեցի զաւ || ետարանս, և զծնաւղսն իմ զԿարապետ քահանայ և զԹաղայ-Մելիքն, և զեղբարքն իմ զՅովանէս սարկաւագն, և զԽաչատուրն, և զՎարդանէսն, և զկենակիցն իմ, և զնորընձայ զաւակն իմ զԿարապետն...։

## 517

## ՇԱՐԱԿՆՈՑ

«Թորոս Աղբար», Բ., էջ 462—463, Ջնջուշի սիրահայեաց ս. Աստուածածնի վանք

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Ցուղացքար վանք

... Աւարտեցի դառն և ի նեղ ժամանակիս, որ տիրեալ էր աշխարհիս Հայոց ազգն Թուրքման, որ և զամենայն աշխարհս ի սուր և ի սով և ի գերի մաշեաց, որ ոչ ուստեք ունէաք մխիթարութիւն....

*Գրեցաւ գիրքս ի գաւառիս* Ե[ղե]գեաց, *ի վանքս* Ցաւղացքար, *ընդ հովանեաւ կենսաբեր սուրբ Նշանիս, ի լաւ և յընտիր աւրինակէ Խլիցի, ձեռամբ* Մատթէոս *քահանայի, յիշատակ ինձ և ծնողաց իմոց... ի թվին Հայոց ՊՁՁ. (1437)...։*

## 518

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 5530***

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Վան քաղաք

ա

*... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ սուտ գրչի և անար-*
282ա *ժան քահանայի* Կարապետի, || *ի թուականիս Հայոց ՊՁՁ. (1437), ի*
*հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *և ի թագաւորութեանն* Ջը-
խանշայ *ամիրզին, ի քաղաքիս, որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սրբոյն*
*Ստեփաննոսի Նախավկայի և սրբոյն Սահակայ հայրապետի, ի դառն*
*և ի վշտաշատ ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց մահ*
*տարածեցաւ յաշխարհի՝ յԱսորոց մինչև ի Հայք, և անողորմ կոտո-*
*րեցան անթիւ տղայք և մանկունք, և ոչ գիտեմք զինչ լինելոց եմք,*
*բայց յոյս ունիմք ի սուրբ Աստուածածինն, որ բարէխաւսէ առ որ-*
*դին միածին, մի թէ բառնայ զայս պատուհասս յաշխարհէ, ամէն։*

*Արդ, ի յայսմ դառնացեալ ժամանակիս ցանկացաւ այսմ... կու-*
*սակրաւն աբեղայն* Սարգիս, *և ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց,*
282բ *յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ հաւրն* Ղազարի || *և*
*մաւրն* Էլթանգի, *քուերն* Մամխաթունի, *և քուրոջ դստերն* Փաշայի, *և*
*այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցե-*
*լոցն, ամէն։*

*... Ընդ նոսին և զմեղապարտս և զչարս յամենայն գործս անօրէնութեան՝ զգծող սորա զ*Կարապետ, *և զծնողքն իմ զ*Սեփանոս *քահանայ և զ*Մինայ, *և զհօրեղբայրն իմ զ*Մովսէս *միայնակեց, և զեղբայրն իմ զ*Յովանէս *աբեղա, որ փոխեցաւ առ Քրիստոս, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ յիշման արժանի արարէք...։*

*Այլ և յիշեսջիք առաջի Քրիստոսի զպատուական հայրապետն, զուղղափառ անբիծ ախոյանն, քաջ և յաղթող, զրբասնեալ, զաղքատասէր և զողորմածն զտէր* Զաքարիա *կաթուղիկոս, զոր տէր աստուած պահեսցէ զնա ջահ անշիջանելի ի սուրբ եկեղեցի, ի պարծանս քրիստոնէից և աջն անեղին և բազուկն հզաւրին պահապան և հովանի լիցի նմա, ամէն...։*

բ

*Ստացող՝* Սարգիս

283բ *Արդ, գրեցաւ Աւետարանս այս յառաջնորդութիւն* Կարապետիս
*և տուաք Անձնանատատիս, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց,* Սարգիս
*կրոն[աւոր]իս, հաւրն* Ղազարի, *և մաւրն* Էլթանկի, *քըւերն* Մամխա-

*թուԾի, և դստերն* Փաշ[այի]: *Մի ոք իշխեսցէ [հանել զսա] ի դռանէ սուրբ եկեղ[եցւոյ, ոչ ի յառաջ]նորդեաց և ոչ ի յիպիսկոպոսեաց, ոչ ի հայրապետեաց և ոչ ի քահանայից, եթէ ոք յանդգնի զսայ ծախելով, կամ գրաւելո[վ և կ]ամ տանելով զսայ ի սուրբ եկեղեցոյ՝ զմասն զՅուդի առնէ և զանեցքն Կայենի տոցէ | | |*

## 519

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Փիրդ. Նոա. 111—112, Բաղէշ, Ամրդօլու վանք*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Արճէշ

ա

*... Եւ ես՝ անպիտանս... գրիչս* Կարապետ՝ *տեսի զփափագ ամենօրհնեալ քրիստոնէին խօճայ* Թաճդնին, *և յանձն առեալ գրեցի ի քաղաքս* Արճէշ *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարին, և այլ ամենայն սրբոցս, որք աստ կան, ի թըւականիս Հայոց ՊՁԶ. (1437), ի հայրապետութեան տէր* Կոստանդնի, *և յառաջնորդութեան երկրիս* Քաջբերունեաց *և ամենայն քրիստոնէից ազգի՝ մեծ հռետորին և քաջ քարտուղարին* Թումայ *րաբունապետին, քանզի յայսմ վերջին ժամանակիս սա միայն յայտնեցաւ ճշմարիտ քարոզող ազգիս Հայոց և պարծանք ամենայն վարդապետաց և կրօնաւորաց։ Վասն զի առնէր և ուսուցանէր ամենեցուն զսրբութիւն և զառաքինութիւն, քանզի աթեգակն էր բերան սորա և լոյս փայլէր ի պըրակաց բանիցն, որ շուրջ էին զնովաւ։*

*Եւ արդ, ես՝ անպատուղս ի բարեաց... անյիշելիս.ի գրչաց՝ սուտանուն* Կարապետ *աշխարհի երէցս, ծառայ և աշակերտ սմին, հրամանաւ սորին և միջնորդութեամբն, ըստ իմում տկարութեամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսա։ Վասն զի այսչափ գծագրելս շնորհիւ և ողորմութեամբ սորին է՝* Թումա *վարդապետի։ Որոյ տէր աստուած ընդ երկայն աւուրս հաստատուն և անշարժ պահեսցէ զսա ի վերայ գաւազանի իշխանութեան իւրոյ, և յետ ատեացս ելանելոյ՝ երկնից արքայութեան արժանիս արասցէ, հանդերձ ծնողօքն և ամենայն արեան մերձաւորօքն, ամէն։*

*Ստացող գրոցս զխօճայ* Թաճդինն *և զծնողսն իւր* Ամիր-Հասան *և զ*Թավրէզ-Մէլիքն, *զկենակիցն զ*Դիլքուշատ, *և զհանգուցեալն ի Քրիստոս զ*Ալամշա, *և զծագկեալ զաւակսն իւր զ*Սքանդար *և զ*Նասրադին, *և զեղբարսն զ*Ամիրդօլ, *զ*Աբդըլքարիմ: *Նաև զծնօղքն մեր՝ զ*Յովհաննէս *քահանայ և* Ջըմրութ, *և զեղբարքն իմ զ*Մկրտիչ, *զ*Մելքիսեթ *և զ*Վարդան *քահանայս, և զուսուցիչն մեր զ*Թումայ *վարդապետն՝ զվերոյիշեցեալն, և զ*Յովհաննէս *եպիսկոպոսն, որ զօրինակն շնորհեաց, և զորդին իմ զ*Ստեփաննոս *սարկաւագն, որ և նա գրեաց։*

Բ

Ստացող՝ Թաճդին

Ես՝ Թաճդին, Հասանի որդիս, գնեցի զջաղացն Շամօյէն՝ հայի և տաճկի վկայութեամբ, և բնական մուլք տուի սուրբ Յովանիսին, ինձ բարի յիշատակ, և իմ ծնողացն Ամիր-Հասանին և Թավրէզ-Մէլիքին, և եղբարցն իմոց Ամիրդօլին և Աբդլ-Քարամին, Կարապետին և Մկրտչին, և իմ զաւակացն Սքանդարին և Նասաբադնին, և իմ կենակցին Դիլ-քուշատին, և Ալամշին, և ամենայն արեան մերձաւորացն, ով որ կար-դայք լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք սոցա։

Եւ զջաղացն մեր Թաղի վկայութեամբ ամենու, և քաղաքաց-ւոցն՝ հայու և տաճկի վկայութեամբ, և վանից երիցանու վկայու-թեամբ. Ես՝ Բարսեղ եպիսկոպոս վկայ, ես՝ Մաաթէոս աբեղայս վկայ, ես՝ Աստուածատուրս վկայ, ես՝ Ատոմ աբեղայս վկայ, ես՝ Ղազար վար-դապետս վկայ, ես՝ Խօսրով աբեղայս վկայ. առաջի աստուծոյ վկայ ենք, որ ջաղացն վանիցն գնեցաւ՝ տաճկի և հայի ձեռօք։

## 520

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

Կիպրոս, Նիկոսիա, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Տփխիս

Ի-Թվ. Հայոց ՊՁԶ. (1437) և ի փոքր Թվ. ՅԾԴ.* (354) և ի հո-ռոմոցն ՌԴՃՁ°Թ. (148°9),** ի Թագաւորութեան վրաց Աղէքսանդրու, ի մայրաքաղաքս Տփխիս, ի յանապատս Բետղահեմ, ի դրան սուրբ Աստուածածնին, ձեռ[ամբ | | | աբեղայիս Կարապետի...:

## 521

### Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

Բրիտ. Թնգ. Add. 8999, հՑ. 47, էջ 96—97

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Հաղպատ

Արդ, գրեցաւ գիրքս այս, որ կոչի Շարակնոց ի Թվականութեանս Հայկազնեա ՊՁԶ. (1437) ամի, ի սուրբ ուխտս Հաղպատայ, ընդ հո-վանեաւ սուրբ Նշանիս, և սուրբ ԿաԹուղիկէիս, և սուրբ գերեզմանիս Սարկաւագ վարդապետիս, և Շուշանա սուրբ վկային, ի վարժապե-տութեան մեծ րաբունոյս և քաջ հռետորիս Յովանէս վարդապետիս, ի յառաջնորդութեան տէր Զաքարէի, ձեռամբ յոքնամեղ, փծուն և անարհեստ գրչի Մարտիրոսի սուտանուն աբեղայի, ի վայելս անձին

* Մ. Տեր-Մովսիսյանի մեքենագիր ցուցակում սխալմամբ տպված է ՁՄԴ. (°)։
** «Հոռոմոց» (իմա բյուզանդական) Թվականը սխալ է գրված, ըստ երևույթին, պետք է լինեք «ՌԴՃԼԹ.» (1439)։

և յետ մահուն յիշատակ հոգւոյ, և կրկին ծնողաց, և եղբարց, քերց և հոգևոր զաւակաց։

Արդ, որք հանդիպիք այսմ տառի ուսմամբ կամ ականատես և գաղափար առնելով՝ յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զվե-րոյգրեալսդ, և զհաւրեղբայրն իմ զտէր Յունան, զհայրն իմ զխոջա-դեղ, և զմայրնս իմ զխոնդիկ, զեղբայրն իմ զՍարգիս, և զամուսինն իւր զՄամքան, և զզաւակսն իւրեանց, զքոյրն իմ զՌւստիանէ, որ միամտութեամբ սպասաւորեաց մեզ, և զզաւակսն իւր և զայլ արեան մերձաւորսն՝ հանգուցեալսն և զկենդանիսն։ Եւ խոշորութեան գրոյս և սխալանացն անմեղադիր լերուք, զի այս էր կամ մեր....։

## 522

## ԱՒԵՏԱՐԱՆ

Բրիտ. Թնգ. Or. 2668, կՑ. 18, էջ 30

Գրիչ՝ Աւետիք
վայր՝ Բալու գաւառ

340 բ ... Այսմ աստուածաւանդ սուրբ աւետարանիս տենչացեալ եղև մաքրամիտ Ահլի-Մելիքս՝ դուստր Տաւլաթ-Մելիքին... և ստացաւ զսուրբ աւետարանս ի յարդար և ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ և բարեխաւս առ աստուած իւր, և բարի ծնողացն իւրոց՝ հաւրն Յովան-նիսին՝ ոսկերչին, և մաւրն Տօվլաթին, և դստերն Տիլշատին, և ամենայն արեան մերձաւորաց։

Արդ, սկսեալ եղև սուրբ աւետարանս ի դաւառս, որ կոչի Բալու, ի վանքն, որ կոչի սուրբ Գէորգ զաւրավար. և աւարտեցաւ ի նմին գաւառ, և ի վերայդիտողութեան նորին եպիսկոպոսի տէր Մինասայ: Ի դառն, և ի նեղ ժամանակի, զոր մահտարաժամն յաստուծոյ չտար թոյլ քահանայիցն հաց ուտել։

Արդ, գրեցաւ սա ձեռամբ... յոգնամեղ և անարհեստ գրչի Աւետիք սուտանուն աբեղայի, ի կաթողիկոսութեան Կիլիկ[ի]ոյ տեառն Կոստանդեայ, և յաշխարհակալութեան Միջագետաց Համզայ սուլտանին, ի թուականութեանս Հայոց ՊՁՁ. (1437)....։

Յիշեսջիք... Ահլի-Մելիքին և իւր կողակցին խօճա Ֆախրատին:

Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց և անպիտանս յամենայնի, անարգս* ...անյիշելիս ի գրչաց Աւետիք անարժան աբեղայ տեսայ զսէր և զփափաք Ահլի-Մէլիք խաթունիս... աւարտեցի զսուրբ աւետարանս...։ [Յիշեսջիք] նաև զհոգևոր հարքն և վարդապետքն մեր, ընդ նմին և զբարի ծնաւղքն իմ զԱտոմ և զխո[ն]տ-Մէլիք...:

* Տպված է «անարգս», հրատարակիչը հարցականով առաջարկել է սրբագրել «ալը-գերգս»։

523

ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 164, այուն. 378—380, կտուց անապատ

Գրիչ՝ Յուսէփ
վայր՝ Թացու

... Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խոր-հուրդ՝ աստուածասէր և հաւատարիմ տանուտէրն Դաւիթ, որ ցան-կացող եղեալ աստուածաբան սուրբ աւետարանիս, և ետ գրել զսա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնո-ղաց իւրոց՝ հաւրն Գալոցին, մօրն Թուրւանդին, էթարին, և զաւակաց Մուրատին՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և դըստերաց Զինարին, Համբէ-կուն, և եղբաւրն Խաչատրուն, և կողակցոյն Մարգարտին, և որդոցն տէր Գրիգորին և կողակցին Սալչուկին, Մէլքէսէթին և կողակցին Շա-նումին, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԴաւիթն, և զծնօղքն՝ զԳալոցն և Թուրուանդէն, և զկողակիցն Մարգարտին, և որ-դոցն տէր Գրիգորին, և կողակցին Սալչուկին, և դստերն Գօզալին, Մէլքէսէթին, և կողակցոյն Շանումին, և դստերն Թուրուանդին, ամէն։

Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուտանուն Յուսէփիս, ի գիւղն, որ կոչի Թացու, ընդ հովանեաւ սուրբ Գէորգա զօրավարին և սուրբ Ատոմա զօրավարին, ի թուականիս Հայոց ՊՁԶ. (1437), ի հայրապետութեան Ախթամարա աթոռոյն տէր Ստեփանոս կաթուղիկո-սին, և պարոնութեան Աղդալ-Բէկին, ի դառն և նեղ ժամանակիս գրե-ցաւ, անմեղադիր կալէք խոշորութեան և սխալանաց մերոց, զի կայր մեր այս է, առաջին գիրն է այս։

524

ԱՒԵՏԱՐԱՆ

«Լոյս», 1905 թ., էջ 519

Հետ. ստացող՝ Յունան
վայր՝ ի վանօրայս Բաղիշոյ

Ընդ նմին և զվերջին ստացող սուրբ աւետարանիս՝ զյետինս ի կարգաւորաց և զսրբասնեալ քահանայն Յունան, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, զի անկեալ է[ր] ի ձեռն օտարաց.... Զոր յե-տոյ կրկին նորոգել ետ, և արար իւրն յիշատակ բարի, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն Առաքելին և մաւրն Մէլէքին, զոր տէր աստուած վայե-լել տացէ երկար ժամանակաւ մինչև ի խորին ծերութիւն, և յետ նո-րա տացէ տէր աստուած ճիւղ աւրհնութեան և զաւակ բարի, զի և նա վայելեսցէ ընդ երկար աւուրս։ Այլ և զհոգևոր և զերախտաւոր հայրն իւր զԳրիգոր քահանայն, որ բազում երախտիք ունի ի վերայ սորա, որ և զհաստուցումն աստուծոյ առցէ և զպսակն ի հաւրէն լու-սոյ....

*Արդ, գրեցաւ սակաւ գիրս ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի
և յոյլ և ծոյլ կարգաւորի սուտանուն քահանայի, ընդ հովանեաւ սուրբ
Յովանիսիս և սուրբ Գէորգայ զօրավարին, առ ոտս տիեզերալոյս և
քաջ րաբունապետի* Թովմա *վարժապետի, ի ժամանակիս, որ բնակե-
ցայք ի վանօրայս* Բաղիշոյ: *Ի թվին ՊՁԶ. (1437) սրբասէր կրաւնա-
ւորն* Յունան *ի խնդիր ելեալ լուսազարդ տառիս և ետ զսա կրկին նո-
րոգել յիշատակ բարի իւրն և ծնաւղացն իւրոց...։*

## 525

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 6933**

*Գրիչ՝* Յոհանէս
*վայր՝* Խիզան, Գամաղիէլի վանք

365 բ *... [Գրեցաւ սուրբ աւետարանս] ի մեծ թուվականիս Հայոց
ՊՁԶ. (1437), ի կաթուղիկոսութեանն Հայկազեան տեառն տէր* Կոս-
տանդեայ *Կիլիկեցւոց, զոր տէր աստուած պահեսցէ զսայ յամենայն
ներգործութենէ սատանայի և բարձրացուցանէ զաթոռ հայրապետու-
թեանն, ամէն։*
366 ա *Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս այս ի վանքս, որ Գամա-
ղիէլ կոչի, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Գամաղիէլի, ձեռամբ յոգ-
նայմեղ* Յոհանէս *բանախնդրի՝ սուտ և ախմար և անարժան գրչի։ Եւ
իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան, և բազում մեղաց ցնո-
րիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մար-
դասէր հոգին սուրբ, բազում աշխատասիրեալ իմ ի սմա, դրեցի անար-
ժան ձեռաւք իմովք յընտիր ե ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառա-
պանաւք և բազում պանդխտութեամբ, ի գառն ե ի նեղ ժամանակի,
յիշատակ* Թումային, *ե իւր կողակցին* Հռիփսիմին, *և դեռաբոյս զաւա-
կացն* Աբրահամու, Գրիգորին *և* Յակոբին, *և քուերն* Թանկ-խաթունին,
*և եղբարցն* Թադէոս *քահանային,* Մարտիրոսին, *և* Յովանէսին, Անդո-
նին, *և* Մխիթարին, *քուերն* Մարգարիտին, *և ծնաւղացն* Գորգուն *և*
Թանկ-խաթունին: *Գրեցաւ սուրբ աւետարանս յիշատակ սոցին ի վա-
ելումն, զոր տէր աստուած Յիսուս Քրիստոս վայելել տացէ, ամէն։
Եւ որք կարդայք կամ աւրինակէք աստուած-ողորմի ասացէք* Աբրա-
366 բ համ || ուն *և իւր ծնաւղացն, և որ ասէ աստուած-ողորմին և աստուած
իւրն ողորմի, ամէն։*

*Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս, յիշեցէք ի Քրիստոս աստուած զ*Թումէն, *և զծնաւղսն իւր
զ*Գորգն *և զ*Թանկ-խաթունն...:

*Արդ, ես՝ յերեսս անկեալ մոխրաթաւալ և արտասուաթոր աչօք,
կողկողագին պաղատանաւք, յուսապատար հաւատով աղաչեմ զձեզ,
ո՜վ լսողք, անմոռաց յիշմամբ յիշեցէք ի Քրիստոս աստուած և բո-
լոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք ինձ՝ մեղապարտ գրչիս* Յոհանէս

վարդապետիս, և ծընաւղացն՝ հօրն Վարդանին և մօրն Դիլշատին, և հանգուցեալ ի Քրիստոս եղբաւրն Խերանետին...:*

526

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5285

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Սորոյ վանք

372 ա ... Ցերեսս անկեալ աղաչեմ ըզքեզ սուրբ Աստուածածին... ողորմեա բազմամեղ Խաչատուր աբեղայի՝ գրողի երգարանիս, անիմաստ և ճռճեալ, զի յոյժ անպիտան և անարժան ծառայ եղայ տեառն իմ Յիսուսի Քրիստոսի, ա՜, զի ողորմի և ինձ յաւր անեկի։

Արդ, գրեցաւ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, որ կոչի Սորոյ վանք, թվականիս Հայոց ՊՁԶ. (1437)։ Ո՜վ հանդիպողք, անմեղադիր լերուք սղալանաց և խոշորանաց...։

Այլ և աւրինակի տըւօղին՝ Սեթուն և իւր ծընաւղացն ողորմեսցի տէր աստուած, ամէն, եղիցի, եղիցի։

527

### ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆՔ

Բոդլեան գրադարան Ms. Arm. B. 1**
Մատենադարան, «Անհատական արխիվներ», թղթ. 119, էջ 496,
ինչպես նաև՝ ՀԱ, 1938, սյուն. 69—70

Գնող՝ Ֆրա Յօսէփ

Ցանուն աստուծոյ. յամի տեառն ՌՆԼԷ. (1437), յունիս ԺԹ. (19), ես ֆր. Յօսէփ վարդապետս և վերախնամողս գնեցի զարտաքինքս ի մեր հալալ ընչից ի տէր Յոհանէս եպիսկոպոսէն՝ ԺԱ. (11) Թ[ա]ն[կայ], միջնորդութեամբ ֆր. Գրիգորին և ֆր. Ջուանին ծննկեցն, և վկաութեամբ Գրիգորի վարդապետի և ֆր. Մխիթարչի և ֆր. Ջուանին և Թաթէոսի և Մկրտչի և Մանուէլ տղոցն։ Եւ թիւ ամաց մեր [եղ]և ի սոյն ամի ԽԹ. (49) ամ, և Ջհանշան թագաւորն։

528

### ՏԱՂԱՐԱՆ

Ալիշան, Հայկարան

Ի թվիս Հայոց ի ՊՁԶ. (1437) և հոկտեմբեր ամսոյ, ի Քրիստոս մեռաւ վարպետն Սըմբատ երէց։

---

* Հիշատակարանը հասել է մեզ ոչ իր բնագրով, այլ 1486 թվականի ընդօրինակությամբ։ Այդ թվականին Աբրահամ քահանան ձեռք է բերել գողացած ձեռագիրը և գրել է «Ցեա գողանալոյն»—հիշատակարան։ Գրչի հիշատակարանը, հավանաբար, մաշված և ջնջված է եղել, ուստի նա նորից արտագրել է այն։

** Ձեռագիրը մագաղաթյա պահպանակների հավաքածու է, հիշատակարանը վերաբերվում է փիլիսոփայական նյութերի մի ժողովածուի։

## 529

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 8358**

Գրիչ՝ Մաթէոս

224 ա Գրեցաւ գիրքս և մաշթոցս և աստուածարանս և ամենայն աւրի-
նաց կատարումն ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Մաթէոս քա-
հանայի, որ կատարեցաւ ի դուռն Գաւթայ սուրբ գերեզմանին, և
Գոհարա սուրբ Նշանին, և այլ ամենայն սրբոց, որ աստ կան հա-
ւաքեալ։ Եւ ի հայրապետութեանն տէր ԱբգարիՆ, և եղբաւրն՝ սրբա-
սնեալ քահանային տէր ՊետրոսիՆ, և այլ ամենայն սուրբ և ընտրեալ
կրաւնաւորացդ։ Եւ այլ ես աղաչեմ զամենեսեան, ով որ հանդիպիք
սմա տեսլեամբ՝ կարդալով, աւրինակելով կամ շ[աւշ]ափելով՝ Թողու-
Թիւն շնորհել Մաթ[էոս] քահանային և ծնողաց իւր և ամենայն արեան
224 բ մերձաւորաց, յիշելով ի մաքրափայլ յ|| աղաւԹս ձեր զգծող սորին և
զտշխատացեալ հոգին, որ աստ պապաքեալ և նուաղեալ և յանկ հան-
եալ, ամէն։

... Արդ, եղև գրուԹիւն [այ]սմ ամի, որ էր Թիւ Հայկազան ի ՊՁՁ. (1437), ձեռամբ սուտան[ուն կր]աւն[աւ]որ Մաթէոսի:

| | | ստացող վկաարանիս | | | Կարապետ տնտեսին | | |

## 530

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**Երևան 6283**

Գրիչ՝ Յակոբ Տրապիզոնցի
վայր՝ Տրապիզոն

436 բ ... Աշխարհասէր մարդկան՝ ընչից ցանկացեալ բազում ջանիւ յայլմէ յայլ գաւառ անցանեն. որպէս զի զշահն աճեցուցանել կարասցեն, ոմանք լայնատարած ծովու ծփանաց զանձինս առեալ, փրփրադեզ խսրոցն անդընդապատուտ ալեացն արտաշնչութիւնն կարծիւք զմեծանալոյն շահն առաջի աչաց ունելով համբերեն ամենայն վշտաց, իսկ այլք սառրիջիւք յատակս ծովուն առ ի խնդիր լուսափգձ մարգարտաց, լաւ համարելով զմահ անձանց քան զվատիցն անուն ժառանգել, որ և յոլով անգամ ի շահելն զանշահութիւն կենաց շահին։ Բայց մեք յիշատակեսցուք զանուանս այնոցիկ, որ դրեալ է ի դպրութիւն կենաց, որք ծանեան հոգով և իմացան զստութիւն կենցաղոյս, և Թողեալ կամաւ զվայելչութիւն և զմեծութիւն և զփառս՝ ակն ունելով առ յոյսն ամենեցուն Քրիստոս, ելեալ բնակեցան ի յայրս և ի ծերպս վիմաց, անդ բազում ճգնութեամբ անցուցանէին զամենայն ժամանակս կենաց իւրեանց՝ ի ցուրտ և ի տաւԹ, և ամենայն փորձանաց սատանայի ժուժկալեալք լինէին։ Նաև մարտիրոսք յաւժարութեամբ դիմէին ի սուր և ի հուր, և ի յայլ ամենայն զարհուրելի

տանջանս և ի սոսկալի մաանէին զանձինս կամաւ՝ վարդագոյն արեամբ ներկեալ զմահ ճաշակէին վասն երանաւէտ կենացն և անթառամ պսակացն արժանի լինէին, որ կա պատմութիւն սոցա ի լիակատար ճառս սոցա, զոր յետոյ կարգեալ եղև բովանդակ տաւնք սոցա աշխատութեամբ տէր Իսրայէլի, ի խնդրոյ Ջալա[լ]-Դաւլային՝ տեառն Խա-
437 ա չենոյ, հրամանաւ ‖ Վանական վարդապետի և հարազատին Գրիգորոյ՝ տէր Իսրայէլի։ Զի նոքա հրամայեցին նմա հայելով ի համբերութիւն և ի հնարիմաց դիտութիւն նորա, զի ջանս եդեալ գտցէ զաւր նահատակութեան սրբոցն, որ դրեալ կա ի լիակատար պատմութիւն նոցա, համառաւտելով նմա զսքանչելի կատարումն սոցա եդ ընդ այլ կարգի և զԱյսմաւուրս, զոր միաշունչ եղեալ անսխալ զտարին կատարեն։ Բայց ոմանք յանդէտս եղեալ հակառակին այսպիսի գեղեցիկ և սքանչելի ընթերցմանց, որ յամենայն աւր զլսելիս մեր զարհուրեցուցանեն, և դողումն ցաւագին տան անձանց մերոց և ճանաչել իմանամք, թէ այնպիսեացն է արքայութիւնն աստուծոյ։ Եւ զայս մտաւ ածեալ խորհիմք, թէ մեզ զի՞նչ լինիցի՝ ծուլիցս և հեղգացելոցս։ Այլ միայն յայս ալաւինեալ՝ յաւժար սրտիւ տաւնելով զյիշատակ սրբոցն և բարեխաւս առնել առ աստուած, զի հաշտեսցի ի մեզ և բարձցէ զպատուհաս մեղաց մերոց. տաւնք ըստ Հայոց և ըստ Հոռոմոց ամսոց, յիշատակ և վարք և վկայութիւնք ամենայն սրբոց, զոր կատարէ եկեղեցի ի փառս Քրիստոսի։ Բայց գիտել պարտ է, թէ այն, որ ասէ յիշատակ՝ միայն յիշատակ է սրբոց, զոր պատմութիւնն յիշէ վասն պիտոյից, իսկ այն, որ ասէ վարք՝ զայն յայտ առնէ, թէ առաքինութեամբ և հաճոյական վարուք ճգնեալ սուրբքն հանգեան ի Քրիստոս, իսկ որ ասէ վկայաբանութիւն՝ յայտ է թէ արեամբ նահատակեալ սուրբքն վկայութեամբ կաաարեցան ի Քրիստոս։ Եւ դուք եղբարք, անխարդախ ընկալարուք սիրով և ընթերցեալ ուրախասջիք ընդ պըսակիլ մարտիրոսացն, որք բարեխաւս են առ տէր վասն մեր, զի ընդ նոսին ընկալցուք զպսակն անթառամ ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ,
437 բ որ է աւրհնեալ։ ‖ Վասն որոյ փափագող եղեալ այս մեծազարդ սաղարթափթիթ ծաղկաւէտ բազմաբեղուն բուրաստանիս պատուելի և հոգեսէր բարեպաշտն պարոն Ստեփանոսն և ետ գրել յիւր հալալ վաստակոցն յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն մերձաւորացն։ Արդ, աղաչեմք զձեզ, ո՛վ ոըդիք նոր Սիոնի և մանկունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք սրտի մտաւք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զպարոն Ստեփաննոսն, և զհամեստ կողակիցն իւր զՌուստիանէն, և զծնաւղսն իւր զպարոն Յովանէսն, և զԳուճար-Մելիքն, և զիւր պապն զպարոն Ամիրշան, և զմամն իւր զՄարթա-Խաթունն, և զմաւրքուրն իւր զՄաքի-Մելիքն, և զպարոն Գալուստն, և զպարոն Ստեփանոսն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն, զհանգուցեալսն, և թողութիւն մեղաց խնդրել յամենագութ արարչէն, զի վասն այս յուսոյս ետուն դրել...։ Արդ, եղև կատարումն սուրբ գրոցս ի թվ. ՊՁՁ. (1437). ի յանապատս Տրապիզոնու, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս և սուրբ Յովհաննիսիս, ձե-

ռամբ անարժան և մեղաւք մեռեալ ոգոյ՝ Յակոբ Տրապիզոնցի ան-
ւամբ կրաւնաւորի։
Արդ, երես անկեալ աղաչեմ զսուրբ ընթերցողսդ յիշել ի բարի
մասին և լի սրտիւ զաստուած-ողորմին ասել անարժան գծողիս Յա-
կոբ աբեղիս Տրապիզոնցի, և ծնաւղաց իմոց՝ Պետրոս Թանանուշին և
զԳայիանէն՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, և զհարազատ եղբայրքն՝ զԹու-
436 ա մանն և զՄարգարէն, և այլ ամենայն մերձաւորաց իմոց, և մե || զաց
թողութիւն հայցեցէք...։
Արդ, երես անկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք սուրբ
գրոցս, անարհեստութեան և խոշորութեան և սխալանացս անմեղադիր
լերուք, զի կար մեր այս չափ էր, զպակասն դուք լցէք և զյաւելորդն
ի բաց ընկեցէք. և թողէք զմեզ առանց տրտնջանաց, աղաչեմ զձեզ։
Եւ դարձեալ, աղաչեմ զձեզ յիշեցէք ի բարի մասին զհամշիբակ
զհոգևոր եղբայրն իմ՝ զառաջնորդ սուրբ ուխտիս Ամենափրկչիս և
զվերատեսուչ քաղաքիս Տրապիզոնու՝ զտէր Յոհանէսն արհեպիսկո-
պոսն, և զերկրորդ ծնաւղն իմ զտէր Ղազար Ղրիմեցի՝ զգրոց աշա-
կերտն, և զայլ ճգնազգեաց զսրբասէր զկուսակրաւն կրաւ[նաւ]որքն՝
զՂազարն, և զՄարտիրոսն, և զՇերունն, և զՅովանէսն, և զայլ միեղէն եղ-
բարքն՝ զԿիրակոս սարկաւագն՝ զկոկոզ նամակիս սուրբ գրոցս, և զՍար-
գիս տնտեսն, և զ[Գրիգ]որ հովիւն, և մեղաց թողութիւն խնդրեցէք...։
Այլ և երես անկեալ աղաչեմ զսուրբ ընթերցող[սդ] յիշել սրտի
մտաւք զստացող սուրբ գրոցս զպարոնՍտեփանոսն, և զհամեստ կո-
ղակիցն իւր զՌւստիանէ խաթունն, և զծնօղսն իւր՝ զպարոն Յովանէսն
և զԳուճար-Մելիքն, և զպապն իւր զպարոն Ամիրշան, և զմամն իւր՝
զՄարթա-խաթունն, և զմաւրքոյրն իւր զՄարի-Մելիքն, և զԳալուստն, և
436 բ զՍտեփանոսն... || և ետ յիշատակ ի վերի Աստուածածինն....։ Ոչ ոք
չունի իշխանութիւն հանել զգիրքս զայս ի սուրբ Աստուածածնէն, ոչ
ի մերոց և ոչ յաւտարաց, և թէ ոք յանդգնի՝ պատիժս կրեսցեն յաս-
տուծոյ և յամենայն սրբոց, ամէն։ Ինամով պահողքն աւրհնին յաս-
տուծոյ և յամենայն սրբոց, ամէն։
Եւ զյորդորողն ի բարի և զկամակիցն սուրբ գրոցս զՅեսիլպէկ
սարկաւագն յիշեցէք ի բարի մասին, որ յորդորեաց զպարոն Ստե-
փանոսն, և նա ետ գրել, և եդ ի վերի Աստուածածինն յիշատակ իւր,
և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և դուք
յիշեցէք ի Քրիստոս։

531

**ՄԱՇՏՈՑ**

Երուսաղէմ 296

Գրիչ՝ Ղազար Ղրիմեցի
վայր՝ Տրապիզոն

Գրեց Ղազար Ղրիմեցի ի ՊՁԶ. (1437) թուին, ի խնդրոյ տէր
Յովանէս Նորընծայ Տրապիզոնի եպիսկոպոսի։*

* Այս և հաջորդ համարի տակ բերված է միայն հիշատակարանների բովան-
դակության համառոտ շարադրանքը, կատարված է Մ. Տէր-Մովսիսյանի կողմից։

## 532

### ՔԱՐՈԶԳԻՐՔ

*Երուսաղէմ 1210*

*Գրիչ՝* Ստեփանոս
*Վայր՝* Անկիւրիա

*Սրա գրիչն է* Ստեփանոս, յԱնկիւրիա, *ի թվ. ՊՁԶ. (1437), ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *և յեպիսկոպոսութեան տէր* Յովսէփայ, *ի խնդրոյ* Նիկոլայ *սարկաւագի։ Յիշատակուած են նաև* Նիկողոս *եպիսկոպոս* Աքերմանի, Մարտիրոս *եպիսկոպոս, տէր* Սահակ *կրօնաւոր, և տէր* Թորոս *աթոռակալ։*

## 533

### ՀԱՄԱՌՕՏ ԼՈՒԾՄՈՒՆՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 1394*

*Գրիչ՝* Աւգսէնտ
*Վայր՝* Ղրիմ

ա

151 ա *Զստացող սուրբ գրոցս զտէր* Սարգիս *բաբունապետն և զփցուն գրիչս* զԱւգսէնտ *սուտանուն կրաւնաւորս յիշեցէք...։*
*Գրեցաւ թվ. ՊՁԶ. (1437)։*

բ

363 բ *Զփցուն գրիչս* զԱւգսէնտ *սուտանուն աբեղայս, որ զգիրքս ծաղկեցի, աղաչեմ յիշել ի տէր։*

## 534

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Ալիշան, հայկաբան (Կ. Պոլիս)*

*Գրիչ՝* Աւգսենտ
*Վայր՝* մերձ ի Կաֆայ

*Գրեցաւ Տօնացոյցս յաշխարհս* Ղրիմ, *առնթեր մեծի մայրաքաղաքիս* Կաֆայ, *ի թվ. Հայոց ՊՁԶ. (1437), ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ *և յեպիսկոպոսութեան տէր* Կարապետի, *ձեռամբ անպիտան գրչի* Աւգսենտ *կրաւնաւորի, ի վայելումն* Յակոբ *քահանայի և ի յիշատակ կենակցին իւրոյ* Ջոհար-Մելիքին, *և զաւակացն իւր։*

535

**Ճ Ա Շ Ո Ց**

*Ալիշան, Հայկարան*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Արծկէ

*Գրեցաւ... ձեռամբ* Յովհաննիսի *սարկաւագի* | | | *քաջ և տիեզերալոյս վարդապետիս* Թոմայ, *որ քանուն և վերատեսուչ քահանայից, վարդապետաց և եպիսկոպոսաց և ամենայն ժողովրդոց, ի խնդրոյ մահտեսի* Ամիր-Փաշայի... *յիշատակ ծնողաց՝* Պարոնի *և* Մամա-Տիկնայ | | |, *զի կարգեալ է զսա որրոց հարցն և սուրբ վարդապետին* Գէորգեայ *ի սուրբ ուխտն, որ կոչի* Դրազարկ, *ի սահմանս* Կիւլիկեցւոցն | | | *սուրբ եկեղեցիք։ Իսկ երջանիկ քահանայն* Տիրացու *ի քաղաքէն* Մշոյ, *որ կարողութեամբ աստուծոյ և հրամանաւ երանեալ վարդապետին* Սահփանոսի, *որ ի վանս* Իննակնեան, *որ յանուն սուրբ Կարապետին, ի գաւառին* Տարաւնոյ, *զայս ամենեցուն բազմութիւն ծաղկանց ի հոգւոյն սրբոյ գալստեան օրէն մինչև ի մեծ պահս ազուհտցից շարագրեաց ի վայելումն և ի պայծառութիւն սրբոց եկեղեցեաց...։*

*Գրեցաւ սա ի հայրապետութեան մեծ աթոռոյն տէր* Կոստանդեայ *ընդհանուր Հայոց կաթողիկոսի, և յառաջնորդութեան աշխարհիս մերոյ քաջ և րաբունի ճգնաւոր վարդապետի* Թովմայի Մեծոփեցւոյ, *ի դառն և ի չար ժամանակիս, յորում եկն ազգն Ջաղաթից* թագաւորութեան* Շահռուխին, *և փախոյց զ*Սքանդարն, | | | *և հեծեալըն* Շահռուխին *եկն ի վերայ ամրոցին* Շամիրամայ, *որ է բերդն* Վանայ, *զի* | | | *անդ Էր] եղբայրըն Սքանդարին* Ջհանշահուն, *և նա ել ի բերդէն և գնաց առ* Շահռուխն, *և նա ներեաց զսա, և ետ զթախտն թամանովս, և գնաց։ Եւ* Սքանդարն *դարձաւ և փախոյց զեղբայրն և նստաւ ի թախտն։ Եւ մնաց ի պարոնացն* Ջհանշին *մին անիծեալ* Փիր-Ալի *անուն ի բերդն* Ամկու, *և հանապազ ելանէր ի բերդէն և գայր ի վերայ երկրիս* Արճշայ *և* Արծկայ. *չարչարէր, զոմանս սպանանէր և զոմանց զտղայսն գերի առնէր, և ծնողքն աղէխորով սրտիւ այրվէին և օգնել ոչ կարէին անմեղ գառանցն իւրեանց։*

---

* *Ալիշանի «Հայկարանից», ինչպես արդեն հայտնել ենք առաջաբանում, օգտվել ենք միջնորդությամբ Մ. Տեր-Մովսիսյանի Ձեռագրաց ցուցակի։ Այստեղ «Ջաղաթից» բառի փոխարեն, անշուշտ վրիպակով, դրված է «բաւլղարից»։*

Եւ առաւել կսկիծ տեսաք, որ մին տանուտէր և Գ. (3) տղայ և Բ. (2) կին ի մին տանէն հանել ոչ կարաց. և անօրէնքն զտունն և զնոսա անդ այրեցին, որպէս քաջ նահատակ...։*

Ցայժմ չար ժամանակիս սկսաք զգիրքս ի քաղաքի Արճէշ, ընդ հովանեաւ ամենամաքուր Աստուածածնիս և պատերազմի սուրբ Նշանիս...։

536

ՃԱՇՈՑ

Փիրղ. Նօտ. 115-116, Ալիշան, Հայապատում, Բ, էջ 557-558

Գրիչ՝ Յովհան
վայր՝ Հաղբատ

...Արդ, ես՝ Աստուածատուր մեղապարտ էրէց՝ բազում ժամանակաց այրի, ի Կոտեւոց երկրէն, ի գեղջէն Արծնոյ, ցանկացող եղէ այս հոգելից տառիս ի դառն և ի նեղ ժամանակիս, որ որդի մեծի խորազմին Թամուրին՝ Շահռուխ կոչեցեալ, չորս անգամ բազում հեծելօք, անգութ և անագորոյն և անողորմ և ծարաւի արեան քրիստոնէից՝ եկեալ ի վերայ աշխարհիս Թավրիզոյ, որ բազում և անասելի աւեր ած ի վերայ աշխարհիս Հայոց։ Զի զոր սրով կոտորեաց, և զոր անողորմ գերի վարեաց և կորոյս, և զոր սովամահ եղան, և զոր մահն տարաւ, և զորս գայլք և գազանք կերան և պատառեցին, և մնացեալքն այսր և անդր փախեան ընաջինջ և մտին յաշխարհն Վրաց: Եւ ամենևին անմարդաբնակ մնաց և աւերեցաւ աշխարհն մեր, և դրունք երկնանման տաճարաց փակեցան, և լոյսք և կանթեղք շիջան և խաւարեցան, և խունկք և նուէրք պակասեցան, և աղօթք և երգք սաղմոսաց պակասեցան և դադարեցան, և մատուցմունք պատարագաց և ամենայն սրբութիւնք եկեղեցւոյ՝ խաչ և աւետարան. և ամենայն հանդերձեղէն, սպասք եկեղեցւոյ ի ձեռն այլազգեաց գերի մատնեցան։ Եւ մեծ սուգ և ողբ և տրտմութիւն և կսկիծ հասաւ Հայոց եկեղեցեաց. և եղաք որպէս հինն Իսրայէլ՝ կոխան և այպն կատականաց ամենայն ազգաց, և այս ամենայն հասաւ և եկն ի վերայ մեր վասն ծովացեալ և անառակ և անգարձ և անզեղջ մեղաց մերոց։

Ցայս դառն և կսկծալից ժամանակիս, կարի աղքատութեամբ և չքաւորութեամբ ետու գրել զգիրքս ի յօտար երկիրս Վրաց, ի ձեռս Յոհանէս քահանայի, ի վանքս Հաղբատայ, առ դրան սուրբ Նշանիս,

* Փիր-Ալու խժդժությունների մասին խոսում է նաև Թովմա Մեծոփեցին (տես «Պատմութիւն», էջ 110-111)։ Նա գրում է. «Բայց եւ զայս գիտելի է, զի ի սոյն աւուրս պիղծ իշխանն Փիրալի անուն, որ նստէր ի քարն Ամկու, երեք անգամ ի սոյն ամի զերկիրն Արճիշու եւ Արծկու գերեաց եւ կողոպտեաց. եւ ի գիւղն Զերիշատ զձեռնաւորն Մկրտիչ անուն ութն մարդով ընտանեօք տան իւրոյ ի հուրն այրեաց։ Եւ բարեպաշտ ձեռնաւոր մի Յովհաննէս՝ սպան ի գիւղն Ասպիսնակ։ Եւ եղբայր մի ծառայիս Առիստակէս անուն ի հուրն խորովեցին իբրեւ զգառն անմեղ»։

և սուրբ մայրաքաղաք խմբարանիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, առ դամբարանի սուրբ վարդապետաց և սուրբ հայրապետաց, և մեղսաքաւիչ և աստուածաբնակ սուրբ տաճարացս, ի յառաջնորդութիւն աէր Զաքարիա արհեպիսկոպոսիս, և ի թագաւորութեան Վրաց Ալեքսանդրէի, և պարոնութեան տեղւոյս և նահանգիս Լոռոյ՝ մեծափառ և աստուածասէր իշխանաց իշխանիս՝ պարոն Բէշքենին յազգէն Օրբէլեանց, թոռին մեծ պարոնին Բիւրթէլին, ի թուականիս հայկազեան տումարիս ՊՁԷ. (1438) ամին։

537

ԱՒԵՏԱՐԱՆ

Ղուզիգիտան գիւղ, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Ախալցխոյ երկիր

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Կրացունս... յերկիրս Ախալցխոյ, ի վանքս պարոն Յակոբայ, ի մեծ թուիս Հայոց ՊՁԷ. (1438), ընդ հովանեաւ սուրբ Հրեշտակապետին, ի ժամանակիս յորում Շահռուխն երեկ ի վերայ Սքանդարին, և նա փախեաւ և գնաց մինչև Սևաստ, և բազում գաւառք աւերեաց, և զբազումս յազգէ Հայոց գերի արար և երեր, բազումք ի մերկութենէ և ցրտոյ ի սարին մեռան, և բազումք սովամահ եղեն։ Եւ ինքն գնաց ի վերայ Ջհանշին, և ի նորա զաւրութենէն հեծելն ամէն յեզբայրն դարձաւ, և նա փախեաւ ի յեղբաւրէն՝ ի Ջհանշահէն, և ամրացաւ ի յամուրն Երնջակայ, և ընկալաւ զհասն ի յաւիտենական տանջանացն...։

Այլ և կրկին յիշեցէք զստացող սուրբ աւետարանիս զբարեմիտ ճգնաւորն զԿարապետ... և զիս՝ զմեղապարտ գծաւղս՝ զՍարգիս պիտակ անուն վարդապետ, և զծնաւղսն իմ, և զհոգևոր որդիս մեր զԳրիգոր քահանայ, և զեղբայրս զԿարապետ քահանայ, որ զաւրինակն շնորհեաց...։ Այլև սխալանաց և խոշորութեան անմեղադիր լերուք, զի է դառն և ի վշտաշատ ժամանակի գրեցաւ և մեք լի տրտմութեամբ կայաք։

538

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրգ. Նօտ. 117, Նշխարք (№ 4515), էջ 149 հարճկան, Վանիկ գիւղ

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Բաղէշ

...Եւ արդ, ես՝ անպիտուղս ի բարեաց... Կիրակոս | | |* կատարեցի ի վ[ա]նս] Հինգ խորան, ի հայրապետութեան տեառն Կոստան-

* Երեք տող՝ մշակված։

դեայ, և մեր առաջնորդութեան (Բաղիշոյ) տէր Ստեփաննոսի, և ամիրութեան քաղաքիս Շեխ-Մահմատին, և զանութեան Ջհանշայ միրզին, որ յայսմ ամի Սքանդար՝ եղբայր նորա սպանաւ ձեռամբ որդւոյ իւրոյ, և նստաւ ի թաղթն Ջհանշէն, և ի թուականիս Հայոց ՊՁԷ. (1438),

Զստացող գրոյս՝ զբարեմիտ տիկին Դբիմ-խաթունն, և զայրն իւր զԱպտլէն [յիշեցէք]... որ եդ ի դուռն սուրբ Աստուածածնին և Գէորգայ զօրավարին... և Կիրակոս գրչիս, և իմ ծնողացն Էլէքսան քահանային և Եղիսաբեդին,... և կողակցին իմոյ Քնքուշ-խաթունին:

## 539

### ԲԺՇԿԱՐԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԲԺՇԿԻ

Վիեն. 310. Տաշ. Ցուց., էջ 740

Կազմող գրոյս* Աբրահամ

ա

10 ա Զսակաւագիծ աշխատողս եւ կազմողս գրոյս զԱբրահամ Նուաստ աբեղայս աղաչեմ յիշել ի տէր՝ ի մեղաց թողութին, եւ աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

բ

310 ա Զվերջի կազմողս եւ զաշխատողս գրոյս՝ զԱբրաւհամ բազմամեղս աղաչեմ յիշել ի տէր սրտի մտաւք...։ Ընդ նմին եւ զկազմել տվող զՅովաննէս հէքիմս եւ զհայրն իւր զհանգուցեալն ի Քրիստոս՝ զվարպետ Սկանդարն յիշեսջիք...։

Կազմեցաւ ի թվին Հայոց ՊՁԷ. (1438)։

գ

01 բ Աստուած ողորմայ Սկանդարին հոգուն՝ հաքիմինն։**

## 540

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 7839

Վայր՝ Տբփխիս

ա

357 ա ...Արդ, գրեցաւ սա*** ի թուականութեանս Հայոց ՊՁԷ. (1438), ի մայրաքաղաքս Տբփխիո, ընդ հովանեաւ սուրբ և հրաշափառ կաթուղի-

---

* Իմա՝ հավաքող, խմբագրող։

** Ունի մի քանի այլ աննշան հիշատակագրություններ ևս։

*** Հիշատակարանի սկզբի մասում ձեռագիրը կոչվում է «Երաժշտական սուրբ սաղ, որ կոչի Գանձարան»։

կէին սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեանս Վրաց Աղէքսանդրէի աստուածասիրի և բարեպաշտի, զոր տէր աստուած պահեսցէ զսա անփորձ կենաւք և պարագայց ամաւք՝ զաւրաւք և զաւակաւք իւրովք՝ ի վանումն և ի
357 բ հերքումն անաւրինաց խըմրից || և ի հաստատութիւն սրբոյ եկեղեցւոյ։

Արդ, որք հանդիպիք սմա երգելով, կամ աւրինակելով, կամ տեսութեամբ, յիշեսջիք ի մաքրափայլ և ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զյառաջասացեալ սացաւղ սորին զԴաւիթ կուսակրաւն քահանայ*, և զհայրն իւր զԱւետիս քահանայ, և զմայրն իւր զխուդան, և զեղբայրսն զՆերսէս և զՍիմէոն՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, և զմնացեալ եղբայրն զԱբել, և զսիրելի որդին իւր ըստ հոգւոյ,** և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զննջեցեալսն...։

Ընդ վերոյգրելոցս յիշեսջիք և զերջանիկ և զսրբակրաւն զհայր մեր ըստ հոգւոյ զտէր Սարգիս փիլիսոփայն՝ զփակակալ և առաջնորդ սուրբ Կաթուղիկէին՝ զգծագրող սորին, և զիս՝ զանարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ, որ զսակաւ պակասորդս գրեցի, հանդերձ ծնողաւք և ազգականաւք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

| | | մրխտթուն ապաշխարողն յիշեսջիք ի Քրիստոս, որ աւգնական եղև ի ծախս սորին։

Բ

Հետ. ստացող՝ Գուլշար

358 բ ...Արդ, երես անկեալ աղաչեմ զձեզ, ով դասք լուսեղէն, որ ամէն տաւնի և տաւնականի զյիշատակարանս կարդայք և մէկ բերան աստուած-ողորմի ասէք Սուրխենց հին և նոր ննջեցելոց, ամէն։

Արդ, ես՝ Գուլշարս առի սուրբ Գանձարանս իմ հաւրանց գերեզմանատան՝ ի սուրբ Կաթողիկէն, իւր ննջեցելոց հոգոյն համար, որ ամէն տարի յիշատակուին մեր ղարիպ ննջեցեալքն։ Եւ ոչ ոք ունի իշխանութիւն հանելոյ զգիրքս ի դրանէ սուրբ Կաթուղիկէիս, ոչ իմոց, և ոչ աւտարաց, ոչ եպիսկոպոսէ, և ոչ քահանայից, և ոչ աշխարհականաց, զի ազատ է գիրքս այս, ով ոք որ անտքնի, կամ յայտնի լրրութեամբ, կամ գողանալով, կամ բաշխելով, կամ ծախելով՝ դատի յաստուծոյ և ամենայն սրբոց, և զհուրն անշէջ առցէ, ամէն։***

* Հիշատակարանի սկզբի մասում լրացուցիչ ասված է, որ Դավիթը «յետ ստանալոյ բազում տաուց հին և նոր կտակարանաց, յաւել և զսա ի գանձս աստուածայինս»։
** Անունը ջնջված է։
*** Հնագրական տվյալների համաձայն հետ. ստացող Գուլշարի հիշատակարանը գրված պետք է լինի ԺԸ. դարի կեսերին։

## 541

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նօա. 117, Սերաստիոյ ս. Նշան*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Գորի մայրաքաղաք

*...Գրեցաւ սուրբ աւետարանս ի մայրաքաղաքն, որ կոչի* Գորի *ի Թագաւորութեան Վրաց* Աղեքսանդրոյ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի թուին ՊՁԷ. (1438), ձեռամբ* Յոհաննէս *գրչի, ի խնդրոյ տէր* Մատթէոս *քահանայի...։*

## 542

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 1042*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Մուխրան, ի գեղս, որ կոչի Վարդիսուպան

ա

224 ա *Քրիստոս աստուած... ջնջեա զձեռագիր յանցանաց իմոց՝ զեղկելի* Կարապետ *աբեղայիս, և զհայրն իմ* զՈվանէս *քահանայ, և զմայրն իմ* զԱզիզ, *և զուսուցիչս իմ զտէր* Սարգիս, *որ շատ երախտաւոր է մեզ, ալրհնութեամբ եղիցի, ամէն։ Եւ զհայրեղբարս իմ* զԱկոր, *և զամուսինն իւր* զԱյմելիքն, *և զորդին իւրեանց* զԱրղունշայն, *և զքեռին իմ* զԻալն, *և զորդին իւր* զՅովսէփ, *և զփեսայն իմ* զԻշխանն, *և զքոյրն իմ* զՈւստիանայն, *և զորդին իւր* զՇարիարն, *և զսանդհայր իմ՝* զՃանազիզն, *և զսանամայրն իմ՝* Սուլթանն, *և այլ զամենայն երախտաւոր,* Քմիկս, *որ շատ կու ծառայէ մեզ, և ամենեքեան աւրհնեալ աստուածոյ ի մէնջ, ամէն։*

*Գրեցաւ գիրս ի Թվականի Հայոց ՊՁԷ. (1438) էր, ի* Մուխրանիս, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի գեղս, որ կոչի* Վարդիսուպան. *երախտաւորք մեր աւրհնեալ եղիցի[ն], ամէն։*

բ

317 բ *...Եւ զայլ ամենայն կերակ[ր]ողքս մեր, որ այս գեղումս զմեզ կերակրել են, և որ շատ և որ սակաւ՝ զվարձս առցեն ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։ Եւ զ*Քիմիկս *աղաւթս յիշեցէք, և զհերեանս մեր՝* զԿարապետ, *և զամուսին իւր՝* զՄիսրիկ, *աւրհնութեամբ եղիցին, ամէն։*

գ

342 ա *Զտէր* Վարդան *եպիսկոպոսն յիշեցէք յաղաւթս ձեր, ամէն։**

---

* *Գրված է կարմիր թանաքով, նախորդ հիշատակարաններից տարբեր գրով։*

543

**ԺԱՇՈՑ**

**ԲՑՎ 254, ԼՑՎ 688, Լիմ**

Գրիչ՝ Հերապետ խալիֆա
վայր՝ Արճէշ

*...Աւարտեցաւ ... յամի ութհարիւր և ութսուն և․թներորդի Թուականութեանս Հայկազեան տոհմիս տումարիս (1438), ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի սուտանուն* Հերապետի*, որ մականուն* խալիֆա *կոչիւր, ի խնդրոյ սրբասնեալ և սրբակրաւն* Մկրտիչ *կրաւնաւորի...։*

*Այլ և այս գիտելի է, քանզի ունի աստուածաշունչ գիրքս այս զբոլոր մասունս աւնից տէրունականաց, զոր սուրբ հարքն հաստատեցին... զոր մեծաջան և ծանր աշխատութեամբ հաւաքեալ եղև ի սրբոց վարդապետացն, զորոյ և* Տիրացու *քահանայն* Մըշոյ *յետոյ ի մի գիրս ժողովեաց, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։*

*Արդ, գրեցաւ աստուածաշունչ կտակս ի քաղաքս, որ կոչի* Արճէշ, *ընդ հովանեաւ Տիրամաւր աստուածածնի տաճարիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *կամաւք և հրամանաւ հոգևոր, բարեմիտ սրբասնեալ և կուսակրաւն* Մկրտիչ *կրաւնաւորի, որ ետ գրել զսա յիշատակ իւր, և հոգևոր և մարմնաւոր ծնողաց իւրոց* Խճդուին *և* Խութլուին, *և հաւրեղբաւրն իւրոյ* Խոցադեղին, *և կենակցին* Լի–Տիկնոջն, *և որդւոյն պարոն* Մկրտչին, *և եղբաւրորդւոցն* Խճդուին *և* Հերապետին, *և քուերն իմոյ (*)* Փաշա–Մելիքին, *և եղբարց իւրոց* Յովանիսին *և* Կարապետին՝ *հանգուցելոցն ի Քրիստոս... և դեռաբոյս զաւակին իւրոյ* Մխիթարին, *և* Հերապետին, *և զաւակին իւրոյ* Սուլթան–խաթունին, *և քուերորդոյն իւրոյ* Աւաքելին, *և դստերն* Ամրար–խաթունին, *և դեռաբոյս զաւակացն* Յակոբին, խալիֆին, *և* Մխիթարին...:

*Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածաշունչ կտակիս կարդալով կամ աւրինակելով նաև ինձ՝ մեղապարտիս սուտանուն* Հերապետի *և ծնողաց իմոց Թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, որ բազում աշխատեցայ ի գրել սորին։ Եւ դարձեալ զուսուցիչն մեր զքաջ քարտուղարն* Թումա *զհեզահոգի բաբունապետն, և զբանիբուն հռետորն* զԿարապետ *վարդապետն, և* զԿարապետ *աշխարհի երէցն, որ մեզ վարպետութիւն արար և ուսոյց զմեզ,* Ստեփանոս *այրի քահանայն յիշել ի տէր, և* զՆերսէսն, *և* զԳրիգոր, *որ զաւրինակն շնորհեցին յիշեցէք։ Անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան գրիս, զի այս էր կար մեր...։*

## 544

### ԱԻԵՏԱՐԱՆ

*ԼՑՎ. 92, սույն. 182, Աղթամար*

Գրիչ՝ Կարապետ Աղթամարցի

300 ա *Զվերջին կազմող սուրբ աւետարանիս՝* զՎարդան, *և ծնողս իմ յիշեցէք յաղօթս ձեր, թվ.* ՊՁԷ. *(1438)։ Նաև ինձ՝ մեղսասէր և անարժան* Կարապետ *գրչի* Աղթամարցոյ, *և մեր ծնողացն, ամէն։*

## 545

### ԳԱՆՁԱՐԱՆ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 452—453։*
*Զնքուշի սիքահայեաց ս. Աստուածածին վանք*

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Մելիտինէ

*Գրեալ ի վանս ս. Գրիգորի* Մելիտինոյ *Հայոց, ի թվ. Հայոց* ՊՁԷ. *(1438)...։ Յիշեցէք զիս՝* զԴաւիթ *աբեղայս, և զհայրն իմ* զԻսահակ *քահանայն,...* զԿոստանդին *աւագերէցն, և զաստուածատուր զաւակսն իւր* զԹորոս *քահանայն, և* զՍտեփաննոս *հայրապետն, որ այժմ խնամատար և վերակացու են սուրբ ուխտիս...։*

## 546

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 4517*

Գրիչ՝ Ազարիայ
վայր՝ Կեսարիայ

ա

130 ա *...Ընդ նոսին և զստացող սուրբ գրոցս՝ զտէր* Յովանէս *արհեպիսկոպոսն, և զծընօղք նորին՝* զՆերսէս *քահանայն և* զԽաբիր-Խաթունն, *և զքըւէրքն իւր* զՋմրութն *և* զՍանդուխտն, *և զհօրեղբայրքն՝* զԿարապետ *կրաւնաւորն, և* զՆուրադինն, զՄաղթումն, *և* զԳրիգորն, զՄովսէս *բաբունին, և զնորին եղբայրն* զՄալիքն, *և զմեղապարտ գծողս՝* զԱզարիայ, *և զկարդացողդ և զլսաւղքդ [յիշեսջիք առ աստուած]...։*

բ

287 ա *Ո՛վ նորածին մանուկ Յիսուս... ողորմեա ամենայն հաւատացելոց քրիստոնէից, եւ առաւել ստացողի գրոց՝ պանծալի արհեպիսկոպսին* Յովանիսի, *և ծնողաց նորին* Ներսէս *քահանային,* Խաբիր-

խաթունին, և քուերն Զըմրութին, և մեծ պապուն Մանգլաւին, և Մովսէս վարդապետին, և նորին ծնողացն՝ Յիսաւին և*, և եղբաւրն Մալիքին և Մուրադին, և մեղապարտ գծողիս՝ Ազարիայի, և իմ ծնաւղացն, և ձեզ՝ կարդացողիդ և լսողացդ, և Մարգարայ կրաւնաւորին, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, ամէն։**

547

## ԳԱՆՁ ՍՈՒՐԲ ՎԱՌՎԱՌԻՆ

Փիրղ, Նօա. 116

Հեղինակ՝ Առաքել Բաղիշեցի
վայր՝ Մերձ ի Մերտին

...Որ Առաքել անուանեցայ
Եւ վարժապետ ես կոչեցայ.
Բայց ի գործոց յոյժ հեռացայ,
Այլ յոյս ի տէր Յիսուս կալայ։
Ի յութհարիւր թուականին,
Ութսուն և եօթն աւելորդին (1438),
Զբանս ասացի սուրբ Վառվառին,
Յեզր Մերտին մեծ քաղաքին։

548

## ԳԻՐՔ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

ՀԱ, 1924, սույն. 435—436

Գրիչ՝ Յակոբ Տրապիզոնցի
վայր՝ Կոստանդինուպաւլիս

Գրեցաւ գիրքս ձեռնադրութեան թվ. ՊՁԷ. (1438), ի վայելումն արհեպիսկոպոսին տէր Յովակիմին Կոստանդինուպաւլսի, զոր տէր աստուած վայելել տացէ յամերամս ժամանակաց, ամէն։

Կատարեցաւ հրամայեալն ի քէն, ով տէր պատուական, զսակաւ գծիկս ընկալ յանպիտան Յակոբ աբեղէ Տրապիզոնցոյ, իբրև գխէ-

* Մոր անվան լրացման համար տեղ է բաց թողնված։

** Ձեռագրի գլխավոր հիշատակարանը ԺԸ. դարում, նորոգման ժամանակ, եղել է մաշված և դժվարընթեռնելի վիճակում։ Նորոգողը թողել է մի հիշատակագրություն ձեռագրի գրչության վայրի և ժամանակի մասին։ Ստորև տալիս ենք այդ հիշատակագրությունը։

«Արդ, ի ծաղկալից գրքոյս թուականն յոյժ հնացեալ էր և հազիւ թէ միայն նշմարանքն երևէր, և մեք տեսեալ զնա՝ ստէն եղաք թուական գրքոյս, որ էր ՊՁԷ. (1438)-ումն, ապրիլի է. (7)-ումն, աւետեաց տօնին աւուրն եղեալ էր։ Գրեցաւ ձեռամբ Յովհաննէս վարդապետին, ի Կեսարիայ, որ է Ղայսարի քաղաքին, ի հրաշալի սուրբ աթոռն սրբոյն Յովհաննու Կարապետին։ Վասն այն գրեցաք, զի զաշխատանս նորին տեսանելով մէկ բերան տացեն զողորմին, և յիշողացն տէր ողորմեսցի իւր միւսանգամ գալստեանն և յաւուրն ահեգին, ամէն»։

Ձեռագրի գրչի անունը, ինչպես որոշակիորեն հայտնի է Ա. և Բ. հիշատակագրություններից, Ազարիայ է, ուստի նորոգողը լավ չի կարողացել վերծանել գլխավոր հիշատակարանը, և ստացողին շփոթել է գրչի հետ։

*բնէջս այրոյն։ Եւ անմեղադիր լեր խոշորութեան և անարհեստու-թեան և սխալանաց սորա, զի կար մեր այս չափ էր, և մի մոռանար ի մաաց քոց սուրբ ի բարի մասին զանարժանս, աղաչեմ։*

## 549

## ՃԱՇՈՑ

*Սեբաստիա, ս. Նշան 77, ՀԱ, 1926, սյուն. 242–243*

Գրիչ՝ Դաւիթ

ա

150 ա *...Եւ զԴաւիթ գրիչս յիշեցէք ի տէր, ՊՁԷ. (1438)։*

բ

291 բ *...Ողորմեա ստացողի գրոցս* Ներսէսի *քահանայի, և մաւրն իւրոյ* Մեծ-Խաթունին, *և հաւրն իւր* Շնոֆոր *պարոնին, և քեռոյն* Աստուածատուր *քահանայ կուսակրօն կրօնաւորին, և կենակցին իւր* Փաշային, *և որդւոց իւրոց* Աստուածատրին *և* Դաւթին՝ *հանգուցելոցն առ Քրիստոս աստուած, որոց ողորմեսցի սուրբ հոգի աստուած, և դստերն իւր* Շահտիկնայ, *և փեսային իւր* Սատաղային, *և թոռին իւր* Ստեփանոսին, *և ամենայն արեան մերձաւորացն...։*

*Այլ և ողորմեսցի հոգին սուրբ և անվթարձ պահեսցէ զհայր* Ներսէս *քահանային՝ զ*Շնոֆոր *պարոնն,* և զփեսայն իւր զ*Քուրդամիրն, *և զաստուածապարգև ղաւակսն իւր զ*Խաչատուր *քահանայ, և զ*Մկրտիչն. *և զ*Աւագն, *և զ*Աստուածատուրն, *զի բազում սպասաւորէ* Շնոֆորն Ներսէս *քահանային, և տանն, և ամենայն գալուղ և գնացողի, և գոբովագութ գթով կու խնամարկէ, զի տունս* Ներսէս *քահանայիս որպէս զվանք է, և բազում գալուղ և գնացող կայ՝ ի յեպիսկոպոսաց և ի վարդապետաց և յամենայն աղքատաց, և ամենեցուն կերակրէ, զոր տէր աստուած վարձահատոյց եղիցի, ամէն։*

գ

308 ա *Ամենազաւր սուրբ հոգի աստուած՝ ողորմեա անարժան գըրչիս* Դաւիթ *աբեղայի, և հաւր իմ* Սահակ *քահանայի, և մաւրն իմոյ* Մինայի, *և ստացողի սորին՝ այսմ ծաղկաւէտ բուրաստանի՝ պատուական և սրբասէր գովելի և հաւատարիմ, զ*Ներսէս *քահանայն, և զ*Սահակ *երէցն, և զզաւակս նորա զ*Ստեփանոսն, *և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ։ Աղաչեմ ես՝* Ներսէս *երէցս, զի խնամով պահեսջիք զայս սուրբ տարեգիրքս և լիցի սա յիշատակ մեզ անջինջ ի* Սեբաստիա *քաղաքիս, ի դուռն սուրբ Աստուածածնին վավխի շուկայի մահալան։ Աստուած զայն քահանայն և զայն ժողովուրդն աւրհնէ, որ խնամով պահէ զսայ, և մի իշխեսցին իմոյքն ծախել և կամ հանել ի դրանէ սուրբ եկեղեցւոյս, այլ պաշտօնէից սորա լիցի սայ։***

---

** Տպված է «տիկինն», ուղղում ենք համաձայն նախորդ պարբերության և 356ա էջի հիշատակագրության տվյալների։*

*** Նոր բան չպարունակող հիշատակագրություններ կան նաև 207ա–208ա, 265ա, 276բ և 356ա էջերում։*

550

## Մ Ա Շ Տ Ո Ց

*Երևան 5905*

Գրիչ՝ Խալիֆա

144 ա ... Արդ, գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊՁէ. (1438), ձեռամբ
սուտանուն Խալիֆա սարկաւագի։ Տէր աստուած ողորմեա ստացողի
գրոցս Յակոբ քահանային, և Եղիսաբեթին, և Ղարիպ-Խաթունին, և այլ
ամենայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեաց է հանգուցելոց,
յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք Եղի-
սաբեթին, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ իւրն
և ծնաւղաց իւրոց, ամէն, եղիցի։
Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոցս, ան-
մեղադիր լերուք, զի այս էր կար մեր։ Եւ դարձեալ զԿարապետ քա-
144 բ հանայն, որ եղեւ պատճառ այս Մաշթոցիս, ‖ և ետ գրել զսա
անջինջ յիշատակ յաւիտեան։ Եւ դարձեալ, յիշման արժանի արա-
րէք զստացող սորին զԵղիսաբեթն, զՅակոբ քահանայն և զԿարիպ-
Խաթունն...։

551

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 70*

Վայր՝ Երուսաղէմ

...Ողորմիա խոճայ Ճանազիզի և ծնողաց իւրոց, որ եկն ի Տփխիս քաղաքէ և բազում արդիւնս արար ի յաղքատս և ի կրաւնաւորս և յեկեղեցիս, և զսուրբ աւետարանս ետ վերստին կազմել պատուէլի և ճրգնազգեաց եպիսկոպոսին Գաբրիէլի Կարբեցոյ, որով արքայութեան արժանի առնէ Քրիստոս աստուած զՃանազիզ խոճան և զծնողսն իւր ամէն։

Ի Թվ. Հայոց ՊՁէ. (1438) կազմեցաւ սուրբ աւետարանս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ:

552

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԳՐՈՑ

*Երևան 3485*

Հետ. ստացող՝ Խաչատուր

199 բ Ի Թվին ՊՁԸ. (1439)։ Զվերջին ըստացողս՝ զԽաչատուր աբե-
ղաս յիշեցէք, ով սուրբ ընթերցողք...։





## 553

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Վիեն. 7, Տաշ. Ցուց., էջ 49—50*

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Եկեղեաց գաւառ, Աւագ վանք

ա

606 ա—607 ա *Փառք ...վասն որոյ փափագաւղ եղեալ ողջախոհ եւ իմաստուն աստուածասէր եւ հեզահոգի քահանայ* Մովսէսն, *որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց։ Եւ ի բազում ժամանակս ի խնդիր եւ ի փափագ էր սստուածագիծ տառիս, որ կոչի Այսմաւուրք...։ Եւ ետ գրել զգիրքս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց եւ ամենայն ազգականաց իւրոց կենդանեաց եւ հանգուցելոց, ձեռամբ բազմամեղ եւ անիմաստ գծողի* Սիմէոն *կրաւնաւորի, ի գաւառս, որ կոչի* Եկեղեաց *եւ* Դարանաղեաց, *ի վանքս, որ կոչի* Աւագ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, եւ սուրբ Կարապետին, եւ սուրբ Առաքելոցն, յառաջնորդութեան վանացս երջանիկ եւ առաքինի սուրբ վարդապետին* Մարտիրոսի: *Բայց գրեցաւ կէսն ի դուրս երջանիկ հաւրն մերոյ սուրբ Լուսաւորչին, եւ միւս կէսն ի դուրս սուրբ Առաքելոցն։*

*Արդ, աղաչեմ զձեզ յիշեցէք զմիաբան եղբարքս, որք աստ կան հաւաքեալ՝ հոգեւոր հայրն իմ* զԳրիգոր *աբեղայ, որ դասագլուխ էր, եւ* զՄկրտիչ *աբեղայ, որ շատ աշխատեցաւ յըզորդելն, եւ* զՄարտիրոս *աբեղայ, եւ* զՅակոբ *աբեղայ, եւ* զՆերսէսն, *եւ* զԱռաքելն, *եւ* զՄարգարէն, *եւ զմիւս* Մարտիրոսն, *զոր աստուած անսասան պահէ զսոսա, ամէն։ Վասն որոյ աղաչեմ զձեզ, ով տաւնասէր... քահանայք... յիշեսջիք ի մաքրափայլ եւ յարժանաւոր աղաւթս ձեր* զՄովսէս *քահանայն եւ զհայրն իւր* զՄխիթար *սարկաւագն,* զՄկրտիչ *սարկաւագ,* զՖռանկ *սարկաւագ, եւ զեղբայրսն իւր* զԳրիգոր *երէցն, եւ* զՅովանէսն, *եւ զկողակիցն իւր* զԹիմայն, *եւ զծնաւղսն իւր, եւ զփեսայն իւր* զԱւետիք *երէցն, որ կամակից եղեւ այս գրոցս... եւ զիւր ծնաւղսն* զՄկրտիչ *եւ* զՃուճար-խաթունն, *եւ զեղբայրն իւր զպարոն* Թադէոսն, *եւ զպարոն* Խաչատուրն: ...*Յիշեցէք զպարոն* Ֆռանկին *խաթուն* զԼալխաթունն, *որ ՃԾ. (150) դրամ երետ Յայսմաւուրացս ի գրելէն, եւ եդիր յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց ի դուրս սուրբ Ստեփանոսի։ Եւ ոչ ոք ունի յազգականաց իւրոց իշխանութիւն, որ զգիրքս յայս եկեղեցոյս հանէ, ծախելով, կամ գրաւկնելով, կամ գողանալով, կամ այլ ինչ պատճառաւ, եւ եթէ ոք յանդգնի եւ ծախէ՝ զմասն Յուդայի*

եւ զխաչահանուացն տացէ, եւ ով որ զպատուէրքս ի տեղ պահէ եւ խնամով եւ լաթով բռնէ, եւ ձէթ եւ մոմ չկաթեցուցանէ՝ աւրհնի յասաուծոյ եւ յամենայն սրբոց, ամէն։

Արդ, աղաչեմ լալագին պաղատանաւք եւ մաղթեմ յամենեցունց, որ ընթեռնոյք եւ լոէք եւ աւգտիք ի սմանէ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանարժան դծողս զՍիմէոն զանիմաստ կրաւնաւորս, եւ զծնաւղսն զՊաւղոսն եւ զՍառան, եւ գոհանամ զյասաուծոյ, որ ետ ուժ ու կարողութիւն, որ գրեցի զայս գիրքս, ի մեծ թվականիս Հայոց ՊՁԸ. (1439), ի հայրապետութեան տեառն տէր Կոստանդնեա, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, եւ յեպիսկոպոսութեան Եկեղեաց գաւառիս տէր Յոհանիսի, զոր տէր աստուած պահէ խաղաղութեամբ։

Եւ արդ, եղեւ զրաւ գրչութեան այսմ տառիս, զի սկիզըն արարաք ի սուրբ Լուսաւորիչն, եւ վասն գառն ժամանակիս, որ Խուլն երէկ ԾՌ. (100,000) զաւրաւք, եւ աւէր ոչ արար. եւ յետ այնոր եկն Այխանըլուն,* եւ շատ աւեր արար, եւ վասն այն պատճառին ոչ կարացի կենալ ի սուրբն Գրիգոր Լուսաւորիչն, եւ աւարտեցաւ ասաուծով ի յՄւաք վանքս, յապրիլ ամսոյ ի Ի. (20)...։

Եւ դարձեալ կրկին աղաչեմ յիշեսջիք զախմար գծողս, որ աչքս խացկեցաւ ի գրելն ու Բ. (2) ամի ապա գրեցաւ, աղաչեմ զձեզ անմեղադիր լերուք սգալանաց եւ խոշորութեան սորա, զի կար մեր այս չափ էր։

Կրկին աղաչեմ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր Ց. Բ. Մ. Ի. Խ. Կ. Ի. Ո. Ե. Ռ. Է. Ի. Ռ. Է. Կ. Ե. Բ.,** որ շատ աշխատեցա եւ գրեցի զայս անուանս. թէ դպիր էս կարդա, թէ չէ՝ փզիտ տուր ու հազայ...։

Բ

431 բ Ո՜վ եղբայր, անմեղադիր լերուք, զի աւրս յետի չորեքշաբթի է. զկազմարն ի վեր Թ[ափեցաւ], մուր դարձաւ. Նա ես փոխեցի զկազմարն, որ գբոցս տէրն աւր մի զմեղ մէկ հացիւ չյիշեց։

Գ

6 ա Աղաւթիւք սոցա... պարգեւեա մեզ զքո առատ զողորմութիւնդ, եւ ստացողի սորա Մովսէս քահանայի, եւ եղբաւր իւրոյ Մկրտիչ սարկաւագի, եւ Մխիթար սարկաւագի, եւ Ցռանկ սարկաւագի, որ տղա հասակաւ փոխեցան առ Քրիստոս, եւ զհաւրեղբաւրորդին իւրոյ զՆտղաշ Քարեմն, եւ ինձ մեղապարտ գրաւղիս Սիմէոն աբեղիս, եւ ծնողաց իմոց...։

* Առաջին «Ն» տառը կասկածելի է։

** Փոխարինագիր ծածկագրով (միավորի փոխարեն՝ հազարավոր, տասնավորի փոխարեն՝ հարյուրավոր) կարդացվում է տառացի այսպես՝ «զՍիմնոմ կրաւմաւորս», այսինքն՝ «զՍիմէոն կրաւնաւորս»։

դ

406 ա Ո՜վ եղբայր, անմեղագիր լեր, զի կաւկիչն արէր՝ զԹուղԹն աւ- քերեաց, գրեցաւ սուրբ Սարկսէն պահոցն. կարդա եւ զմեղաւորս յիշեա։

ե

279 ա Մի ակս խացկեցաւ ի գրել սորա։

զ

549 բ Ո՜վ եղբայրք, Թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, զի աւրս աւագ երկուշաբԹին է, մին աչքս կու ցաւէր, նա խրեցի ու մին աչոՖն՝ գրեցի՝ խիստ աշխատանաւք, եԹէ յիշման առնէք արժանի զՍիմէոն նայ դուք յիշեալ լիցիք։

է

553 ա Ո՛վ եղբայրք, յիշեսջիք յաղաւԹս ձեր զախմար գծողս զՍիմէոնս, որ աւրս աւագ երեքշաբԹի եղաւ, դեռ աչքս կու ցաւի։

ը

667 ա Ահայ ազատեցար շլրած աչկունք, կզացաց շլնեկունք, կո[արած] ոտկունք։

554

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

ՄՑՎ 12 (1007), հա. Ա., էջ 128

Վերստին նորոգող և կազմող՝ Հէքրապետ
Վայր՝ Մշոյ Առաքելոց վանք։

ա

468 ա Այլ և զվերջին կազմող լուսազարդ տառիս և ծաղկաւէտ բու- րաստանիս՝ օՀէքրապետ կրաւնաւոր աղաչեմ յիշել ի տէր ... զի խիստ փտեալ էր և բամբակ դարձեալ, ի տեղիս տեղիս ցեցն է ծակոտեալ, հազիւ կարացի ի կապ ածել...։

468 բ Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ սուրբ և պատուական ուսում- նասիրացդ և բանասիրաց անձանց, զի որք հանդիպիք սմա տե- սանելով կամ օրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօԹս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Պօղոս եպիսկոպոս, զի ի ժամանա- կիս այսմիկ, որ էր Թիւս Հայոց ՊՁԸ. (1439), էր սա առաջնորդ սուրբ ուխտիս Առաքելոց, և ի սորին աւուրքս չքահանայ ...ոՖն անուն Վարդան՝ եղև գործովն Յուդայի և մատնեաց զամենայն սըր- բուԹիւնք եկեղեցւոյն անօրինաց՝ զխաչ և զսկի, և բազում խաւար

էած աղկիս Հայոց։ Որ և զաղէտ տարակուսանացն և զկսկիծն օ՜վ կարէ ընդ գրով արկանել։

[Ապա կը նկարագրուին Թովմա բաբունապետին՝ այն է Թովմա Մեծոփեցւոյն փախստեամբ հոն գալը, բազմաթիւ վարդապետներով, աշակերտներով և գրենով, յերեսաց նեստողաց ազգին, և Առաքելոց վանքի միաբաններու կրած անլուր աղետները Մշոյ քիւրդ իշխանին և մատնիչ Վարդանի ձեռքէն]։*

## 555

### ՃԱՇՈՑ

Փիրղ. Նոտ. 120, Մարգուանի ս. Աստուածածնի եկեղեցի

Վայր՝ Դարանեղաց գաւառ, Ծնանառնոյ վանք.

...Արդ, գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՊՁԸ. (1439), ի գաւառիս, որ կոչի Դարանաղեաց և մականուն Կամախ, ի սուրբ մենաստանիս, որ կոչի Ծնանառնոյ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տէր Գրիգորի, և յեպիսկոպոսութեան Դարանաղեաց գաւառիս տէր Կիրակոսին, և յիշխանութեան Իադուբակին, որ էր նախախնամող քրիստոնէից ազգին, ապա չէր արծաթասէր, այլ նախախնամէր և հրաման տայր եկեղեցեաց որ շինէին, և այլ բազում բարութիւնս առնէր։

Յիշեսջիք զստացող. սորա՝ զպարոն Պակթամուրն, և զծնողսն իւր՝ զՔրման-խաթունն, և զԱստուածատուրն, և զկողակիցն իւր զՄամա-խաթունն, և զզաւակսն իւրեանց։

Յիշեսջիք և զառաջնորդ սուրբ ուխտիս, այլ և զպարոն Պակթամուրն, որ եռափափագ և ջերմեռանդ և յօժար սրտիւ ել և գնաց և շինեաց զեկեղեցին, որ անընակ ի մարդկանէ...։ Շինեաց զսա վանք և անապատ, և զարդարեաց հանդերձիւք և գրեանօք, ամենայն զարդիւք՝ ծառօք և տնկօք։ Ով ոք չունի իշխանութիւն ի յայս վանքըս՝ ոչ գավէ առնելով ոչ ծախելով, ոչ տանելով, ոչ գիրք և ոչ այլ ինչ, յիշատակ անջնջելի իւրն և ծնողացն։

## 556

### ՃԱՇՈՑ

Փիրղ. Նոտ. 119, Նշխարք (№ 4515), էջ 149—150, Վանի Տիրամօր եկեղեցի

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ոստան

...Եւ արդ, ես... քահանայ Կարապետ ...կատարեցի զսուրբ գիրքըս զայս ...ի քաղաքն Ոստան, որ է ծովահայեաց, ի դուռն Քարի

* Ցավոք, հիշատակարանի շարունակությունը հրատարակիչը վերապատմել է իր խոսքերով։

սուրբ Աստուածածնին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփաննոս Նախավկային, ի Թուականութեանս Հայոց ՊՁԸ. (1439), ի հայրապետութեան տէր Զաքարիայի, որ յայսմ ամի նստաւ յաթոռ հայրապետութեան...։ Զոր տեսեալ զայսպիսի գանձս ...աստուածասէր տանուտէրն Յոհաննէս ...ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողացն Թումային և Մինային և կողակցին Եղիսին, և դստերացն Ուխտի-խաթունին, և եղբօրն Ստեփանոս քահանային, և որդոյ նորին Աբրահամ քահանային։ Եւ ետ զսա նուէր և ընծայ ի դուռն սուրբ և փառաւորեալ վկային Քրիստոսի Գէորգեայ, ի գիւղն, որ կոչի Նանդենց: Նաև զսանահէրն իւր՝ զհաւատարիմ տանուտէրն զԱմիրբէկն...: Մեղաց Թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ինձ, և ծնողաց իմոց՝ Ստեփանոս քահանայի և Փաշայի:

557

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4979

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Լիմ

250 բ Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ...սուրբ վարդապետն Յովաննէս և ձեռն ի գործ արկեալ գրեաց զսուրբ աւետարանս, յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Շաղլուսի, և մաւրն Խաթունշի: Այլ որ շտեմարանն է ամենայն հոգւոց պահանջեալ շտեմարանեաց զհոգի սորա և ի կատարումն աւետարանիս ոչ ժամանեաց, այլ փոխեցաւ տարաժամ մահուամբ ի Քրիստոս։ Վասն որոյ աստուածասէր և բարեպաշտ միայնակեացն Յովսէփ եռափափագ սրտիւ ...ի քիրտն աշխատանաց իւրոց կատարել ետ զսուրբ աւետարանս՝ գրելով և ծաղկելով և կազմելով, յիշատակ բարի առ Քրիստոս հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն
251 ա Թաւաքալին և մաւրն Մէրէթին, և կենակցին իւր Աղու || թին, և զաւակացն իւրեանց՝ Աառմին, Մխիթարին, Առաքելին, Յովանիսին՝ հանգուցելոցն ի Քրիստոս...։
251 բ Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց տումարի ՊՁԸ. (1439), ի ծովահայեաց անապատս, որ կոչի Լիմն, ընդ հովանեաւ սրբոյ Գէորգեա զաւրավարին, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի: Արդ, ես՝ վարդապետ Յովաննէս և Յովսէփ միայնակեացս ընծայեցաք սուրբ աւետարանս սրբոյն Գէորգեայ յիշատակ մեզ և ննջեցելոցըն մերոց, և մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սորա, ոչ կաթողիկոս, ոչ վարդապետ, և ոչ եպիսկոպոս, և ոչ հերպետ, և ոչ յազգականաց մերոց։ Եւ թէ ոք յանդգնի հանել՝ զպատիժն Կայենի և զմասն Յուդայի ժառանգեսցէ։

Գարձեալ, աղաչեմ զամենեսեան յիշել ի Քրիստոս զտիեզերալոյս և զաստուածաբան, քաջ և երջանիկ վարդապետն Մկրաւիչ, որ

զպակասութիւն սուրբ աւետարանիս գրեաց, և ի կատարումն յիշատակարանիս ոչ ժամանեաց, այլ տարաժամ մահուամբ փոխեցաւ առ անծկալին իւր Քրիստոս, յունուար ամսոյ ի ԻԲ. (22) և հոռի ի ԻԵ. (25), և անասելի սուք և կսկիծ հասոյց մեզ։ Եւ զկազմողս զԳրի[գոր], յիշեցէք ի Քրիստոս։

558

## ԱՒԵՏԱՐԱՆ

Առ. Դավրիժեցի, Պատմութիւն, 1884, էջ 321

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Արգելան

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուիս Հայոց ՊՁԸ. (1439), ձեռամբ Գրիգորի սուտանուն կրօնաւորի, ի վանս, որ կոչի Արգելան, ընդ հովանեաւ մօրս լուսոյ սուրբ Աստուածածնին, և տեառն Յուսկայ որդւոյ սուրբ գերեզմանին, ի հայրապետութեան Լուսաւորչին, քանզի յայսմ ամի վերացեալ եղև աջն ի Սսայ, և ոչ գիտեմք զինչ եղև, ի յառաջնորդութիւն սրբոյ ուխտիս Մկրտիչ վարդապետի...* և ի հայրապետութեան կրօնաւորին Յովհաննեսի, և խաչընդուս փիլիսոփայի Յակոբի՝ հոգևոր հօրս մերոյ։

559

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՀ, հա. Ա. 39, էջ 83

Հետ. ստացող՝ Յովհաննէս

ա

595 ա ...Ի թուականութեանս Հայոց ութհարիւրերորդի ութսուներորդի ութերորդի (1439)։ Յայսմ ամի շարժեալ ի սէր աստուածային շնորհաց ...սրբասնեալ և հեզահոգի քահանայս Յոհաննէս, և ետ նորոգել զսա վերստին կրկնակի, զի յոյժ հնացեալ էր...։

Արդ, այսմ բանի աստուածայնոյ հլու և հնազանդ եղեալ քահանայս Յովհաննէս. եւ ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ և արդար վաստակոց իւրոց՝ յիշատակ իւր, և բարի յիշատակեալ ծնաւղաց իւրոց՝ հաւր իւրոյ Սահակ քահանայի և մաւր իւրոյ Քաքամին, և պարկեշտ կենակցին իւրոյ Երինէի, զի յիշատակ իւրեանց եղիցի, և ի վայելումն հրեշտակատիպ, գեղեցկագեղ, դեռաբողբոջ մանկանն իւրեանց Մանկասար դպրի, որ այժմ կոչի Մարկոս, յոյժ ուսումնասէր և բարի բնութեամբ, զոր տէր աստուած պահեսցէ զսա՝ զՄարկոս դպիրս այս ընդ երկայն աւուրս և տացէ սմա վայելել զսուրբ աւե-

* Շարունակությունը լրացնում ենք Ս. Տեր-Ավետիսյանի կազմած Նոր-Ջուղայի հայերեն ձեռագրերի ցուցակի տվյալներով։

տարանս պարագած ամաւք յամերամս ժամանակաւք, ամէն, և աստուած-ողորմի ասացէք...։

Բ

Տէր աստուած ողորմեսցի աւետարանիս գնողին, որ գնեաց զաւետարանս։ Ես՝ Յոհաննէս երէցս, որ գնեցի զաւետար[անս] յԻսկանդարէն Գ. (3) փլորի, ի Թվին ՊՁԸ. (1439), ի հալալ վաստակոց իմոց, ի յիշատակ իմ և դեռաբոյս որդոյն իմոյ Մանկասար սարկաւագին։

560

Մ Ա Շ Տ Ո Ց

Մ. Աթոռ 6, «Էջմիածին», 1956 Թ. մայիս-հունիս, էջ 86—87

Գրիչ՝ Գրիգոր

ա

33 բ—34 ա Արդ, ես Գրիգոր՝ ծրող գրոյս,
Յաղաւթս ձեր ունիմ մեծ յոյս.
Արձակեցէք զիս ի կապոյս,
Որ իմ մեղացն է տարակոյս,
Եպիսկոպոս մեր Նահանկոյս,
Տէր և տեսուչ հայկան սեռոյս,
Սուրբ քահանայք եկեղեցոյս,
Եւ նորընձայք ի յայս ժամուս,
Ունկն դրէք իմոյ խնդրոյս,
Եւ մաղթեցէք ի տէր Յիսուս,
Որ ճարն նա է գլորելոյս՝
Մաքրէ զհոգիս մեղաց տղմոյս.
Իմ դեղն դուք՝ խոցեալ հոգւոյս,
Զի յիշէցեք անտարեկոյս,
Ցիշողքդ աւրհնիք յայժմ սրբոց
և յեկեղեցւոյս (°), ամէն։

Բ

266 ա Գրեցաւ Մաշթոցս ձեռամբ անյարմար Գրիգորի և [ան]արժան ծառայի, առհասարակ՝ մեծի և փոքու, որ էր Թիւն Հայոց ՊՃՁԸ. (1439), ի դառն և ի նեղ ժամանակի, վասն ծովացեալ իմոյ մեղացն։ Որք վայելէք զՄաշտոցս և մեր ծնողացն և մեր երախտաւորաց թողութիւն խնդրեցէք ի բարերարէն Քրիստոսէ, և զձեր[ն] թողցէ ամենակարողն աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

561

## ԱՒԵՏԱՐԱՆ.

*Փիրդ. Նոտ. 119, Կ. Պոլիս, Ղալաթիոյ ս. Լուսաւորիչ եկեղեցի*

*Գրիչ՝* Մաղաքիա
*վայր՝* Կաֆա

...[*Գրեցաւ*] *ձեռամբ...* Մաղաքիա *աբեղայի։ Եւ եղև աւարտ սորա ...ի մերում* [*Թուականի*] ՊՁԸ. *(1439) ամի, ի նոյեմ. Է (7), օրն շաբաթ, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *բարեպաշտի և աստուածասիրի և իմաստնոյն, և եպիսկոպոսութեան սրբասիրի մեծի տէր* Մաղաքիայի, *ի մերում Հոռմաց աշխարհին և* Գազարիայ *նահանգիս* Սաւլխաթ Ղրիմի *և* Կաֆայիս *մայրաքաղաքիս, ի մենաստան մեծի սրբոյն Անտօնի և Աստուածածնի, ի խնդրոյ պատուական և երջանիկ քահանային* Աբրահամի:

562

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 448*

*Գրիչ՝* Սարգիս Արծկեցի Մելիքենց
*վայր՝* Երուսաղէմ

*...Քանզի գրեցաւ սա ի աստուածակոխ քաղաքս յ*Երուսաղէմ, *տասն և եօթն տետրակս ի մէջ Ցարութեանս, ընդ հովանեաւ աստուածընկալ և լուսաբուղխ գերեզմանիս և նորակնունք սուրբ վերնատանս՝ երկրորդ Գողգոթայիս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Սարգիս *անպիտան ծառայի, ի վայելումն մանկանց Սիոնի։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա տեսանելով կամ ընթեռնելով և կամ աւրինակելով՝ յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր ամենայն աւրհնութեանց արժանաւոր զտէր* Մարտիրոսն *սրբասնեալ և առաքելաշնորհ եպիսկոպոսն* Երուսաղէմայ *և զծնողս իւր, որ ետ գրել զսա...։*

563

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

*Երևան 2514*

*Հետ. ստացող՝* Յովսէփ

*170 բ* *Ո՛վ սուրբ ընթերցաւղք և մաքուր ուսումնասէրք, աղաչեմ յիշել ի տէր զվերջին ստացող Երգոց երգոյս Սօղոմոնի* զՅովսէփ *աբեղայ,**

---

* *Այս Յովսէփ աբեղան 1450 թվականին գիրքը նվիրում է Սուքիաս կրոնավորին։ Այդ առթիվ գրված հիշատակարանը տես 1450-ի թվաշարքում։*

որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ բարի իւրն, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն, ի թվին ՊՁԸ. (1439), զոր տէր աստուած վայելել տացէ, ամէն։

## 564

## ԲԱՆՔ ԵԻԱԳՐԻ

Երևան 2540

Հատ. ստացող՝ Յովսէփ

ա

183 ա Այլ և զվերջին ստացաւղ լուսաւոր պատերազմիս Եւագրեայ զՅովսէփ կրաւնաւոր և զհոգևոր համշիրակ եղբայրն իւր զՅոհանՆէս, կրօնաւոր աղաչեմ յիշել...։

Ի թվին ՊՁԸ. (1439) գնեաց զգիրքս ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ բարի իւրն և ծնօղաց իւրոց...։

բ

Ես Յովսէփ աբեղայ [բաշ]խեցի զայս գիրքս տէր ՍուքիասիՆ՝ իմ հոգևոր եղբաւրն, և է սա սեփական նմայ, և այլ ոք ոչ ունի իշխանութիւն ի վերայ սորա, բայց ի տէր ՍուքիասէՆ։*

## 565

## ՅԱՂԱԳՍ ԱԶԳԱԿԱՆՈՒԹԵԱՆՑ ԲԱԺԱՆՄԱՆ, ՅԱԿՈԲԱՑ ՂՐԻՄԵՑԻՈՅ

ՄՑՀ հս. Ա. 81, էջ 163

Գրիչ՝ Յակոբ

138 Գրեցաւ գիրքս ի թվինս Հայոց ՊՁԸ. (1439), ձեռամբ բազմամեղ անարժան Յակոբ քահանայիս, վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ՝ մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ՝ անարժանիս...։**

* Նույն այս Ցովսէփ աբեղան 1450 թվականին տէր Սուքիասին նվիրել է նաև 1439 թ. գնած Գր. Նյուսացու Երգ երգոցի մեկնությունը (տես նախորդ ծանոթագրությունը)։ Հավանաբար այս նվիրաբերությունը նույնպես կատարվել է ձեռք բերումից տարիներ հետո, գուցէ հենց նույն՝ 1450 թվականին։

** Նույն այս ձեռագրի հետ կազմված է Հակոբ գրչի 1482 թ. ընդօրինակած Մաշտոցը, որի հիշատակարանը տես 1482-ի թվաշարքում։





# 566

## ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑԻՈՑ

Երևան 976

Կազմող՝ Մխիթար
վայր՝ Մաղարդէ վանք

292 բ Արդ, աղաչեմ զձեզ, ո՜վ հանդիպող եղբայրքդ, յիշեցէք ի սուրբ
աղաւթս ձեր առ Քրիստոս յոյսն ամենեցուն՝ զստացաւղ սուրբ գրե-
ցըս զՅակոբ վարդապետ, որ յոյժ փափաքանաւք հանդիպաւ սուրբ
գանձուցս ի Խո* քաղաք, և խնդրեալ զսա ի հաւատարիմ կնոջէ մի, և
բերեալ զսա ի սուրբ ուխտս ի վանքս Մաղարդէ, ընձա սուրբ Նախա-
վկայ վկայիս, և ետ նորոգել զսա յիշատակ ոգոյ իւրոյ, և յետ աստ-
եացս բարեխաւս առ աստուած։

Ընդ սորա և զվերջին կազմողս զՄխիթար եպիսկոպոս, զԹափուրս
ի յամենայն բարեաց յիշել ի սուրբ աղօթս ձեր, և դուք յիշեալ լի-
ջիք առաջի Քրիստոսի ի յիւր անմահական սեղանն, ամէն։ Այլ և յի-
շել յաղաւթս ձեր զսուրբ Նախավկայիս կրօնաւորքն և զսրբասնունդ
քահանայքս՝ զՄաթէոս, զՈհանէս, զԲարսէղ, զԹումա, զՍտեփանոս, զՅա-
կոբ, զԽաչատուր, զԳրիգոր, զԱւետիս, զՂուկաս, զՍիմէոն, զԹադէոս,
զՄեսրոպ, զՊետրոս, և զտառապեալ ոգիս Մխիթար եպիսկոպոս, և Աւագ
եպիսկոպոս, և զայլ միաբան սուրբ ուխտիս՝ զսարկաւագունս և զայլ
ուսումնականքս և զսպասաւորքս յիշել ուղիղ սրտիւ...։

Կազմեցաւ սա ի Թվ. ՊՋԹ. (1440), ընդ հովանեաւ Նախավկայիս, ի
ժամանակիս, որ էառ չար և անիծեալ պեղծն Ջիհանշայ իմիրզան զՎրաց-
293 ա տունն, և բազում քրիստոնայք ի սուր քարշեց, և ով կարէ ճառել
[զսու.գ... քր]իստոնէից և զանթիւ կոտորուածք նոցա, որ ոչ լեզու
ճառել կարէ զանթիւ բազմութիւն մարդկան և զկանանց, զմանկանց և
զտղայոց, որ վասն հաւատոց և քրիստոնէութեան կոտորեցան վասն սի-
րոյն Քրիստոսի և յուսոյ սուրբ արքայութեանն, զմահ ի յանձն առին և
զմարտիրոսական պսակն Քրիստոսէ խնդրեցին, և սրով և քարկոծմամբ
կոտորեցան և հասին յաւիտենական կենացն. և գեղեցկատեսակ ման-
կունքն գերեալ բերին առ մեզ և մեք տեսեալ զանմեղ գառինս ի ձեռն
անաւրինաց՝ դառն և լեղի, մերկ և քաղցած, ծեծած և կոփած | | | **

* Այսինքն՝ «Խոյ»։

** Սույն՝ 293 թերթից մնացել է միայն առաջին սյունակի երկու-երրորդ մասը, հի-
շատակարանի շարունակությունը, այսպիսով, կորած է։

## 567

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5512*

*Գրիչ՝* Միհասեաց Թումայ
*վայր՝* Աղթամար

ա

36 ա *Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զպարոն* Յովանէսն, *և զծնողքն իւր՝* զՅորդորն *և* զԳօհար-Մէլիք, *և զեղբայրքն* Ստեփաննոս *և* զԱտոմ, *և զկենակիցն* զԽալիմ-Խաթունն, *և* զԽալ-Խաթունն, *և զորդեակն* զԱտոմ, *որ տռ աստուած փոխեցաւ և սուգ անմխիթար եթող ծնողաց իւրոց, և ուղիղ մտաւք և բոլորով սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք...։**

բ

298 ա *Ցամի Պ. և ութսուներորդի թվականութեան Հայկազեան տումարիս (1431) անհնարին աղէտ և մեծ կըսկիծ դիպեցաւ յաշխարհիս մերում, վասն զի ամիր* Փիրի-Բէկն՝ *ազգաւ քուրդ, թոռն ամիր* Էզդբ-նին՝ *էառ զաստուածապահ և զանառիկ կըղզին* Աղթամար, *որ տեղի էր ապաստանի ամենայն աշխարհացս, և յառ և յաւար և ի գերութիւն վարեաց զսպասք և զզարդք երկնանման տաճարին, և զբոլոր ծովեզերոյս վանորայիցս և գեղորայիցս զաստուածաշունչ մատեանքս և զայլ անուոթք սրբութեանցն, և ցան և ցրրիւ ընդ ամենայն աշխարհ տարածեաց։ Որ և մի ի բազմաց գերելոցն է աստուածաշունչ և աստուածախաւս սուրբ աւետարանս այս, որ է* Աթանան *գեղին։ Զոր ծե-*
298 բ *րունի և պատուա* ‖ *կան քահանայն* Ատոմ, *որում շնորհեաց զսուրբ աւետարանս առաջին ստացաւղ սորին աստուածասէր տանուտէրն* խաչատուր:

*Սորա ի խնդիր ելեալ մեծաւ փափագանաւք և ջերմեռանդ հաւատով և սիրով, տկարացեալ մարմնով և խաւարեալ ի լուսոյ երկոցունց աչացն, և գտեալ զսա ի* Վան *քաղաք, առ ուրեմն աստուածասիրի, որոյ անունն* Յորդորոնց Յովաննէս *ճանաչի։ Եւ բազում պաղատանաւք և արտասուաւք թափեաց զսուրբ աւետարանս զայս ի ձմանէ աստուածապատիւ քահանայն* Ատոմ, *ի հինգհարիւր և յիսուն դեկան, և եբեր զսա վերըստին ի գեօղն իւր ի յ*Աթանան, *որպէս զի հանապազ ընթերցցին զսա մանկունք եկեղեցոյ ի դուռն սուրբ Գէորգեայ տաճարին, և ուրախասցին սովաւ։*

*Արդ, աղաչեմ ղհանդիպողքդ սմա կարդալով կամ աւրինակելով, լի բերանով և ուղիղ մըտաւք աստուած-ողորմի ասացէք առաջին ստացողի սուրբ աւետարանիս* Խաչատրուն, *և ծնաւղաց նորին՝ վերո-*

** Այս անթվական հիշատակարանը, համաձայն Ի. հիշատակարանի տվյալի, գրված պետք է լինի 1440 թվականից քիչ առաջ։*

յիշելոցն ի սմա, և վերջին ստացողի սորին Ատոմ լուսաւոր քահանային և ծնօղաց նորին՝ Կարապետին և Հէրխաթունին, և կենակցին իւրոյ Դիլշատին, և որդոյն իւրեանց Թումային, և նորին կենակցին Ջաւհարին, և լերդահատոր հարազատին Էվատշին, և իւր կենակցին Ուլուխաթունին, և իւրեանց զաւակացն Խալիֆային և Խաթունշին, և քուերցն Մըրվաթին և Փաշային, և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեացն և հանգուցելոցն, և մեղաւոր Մինասենց Թումայիս և ծնօղաց իմոց աստուած-ողորմի ասացէք, որ զսակաւ յիշատակարանս գրեցի...։

Ի Պ. և ՁԹ. (1440) թվին գրեցաւ։

Գ

148 ա Ընդ առաջին ստացողացն յիշեցէք ի Քրիստոս զՅախրադին, և զծնօղսն իւր զՎարդան և զԱզիզն, և զկենակիցն իւր զՇղիսէն, և զազգն ամենայն առհասարակ, և աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն։

Քրիստոս աստուած ողորմեսցի Խաթուշին, և ծնողաց նորա, և ամենայն ազգականաց նորա, զի սոքա երախտիք ունին ի վերայ մեր, աստուած-ողորմի նոցա հոգուն, ամէն։ Եւ Թումայ քահանային և ծնողաց նորա ողորմի Քրիստոս աստուած, ամէն։

Դ

96 ա Քրիստոս աստուած ողորմի ստացողի սորա, անդերձ տուողին, և աստուած զնա զարդարէ ի յաւուր դատաստանին, որ ետուր անդերձ սուրբ աւետարանիս։

Այս Թուրւանդին և Թումային, յիշատակ իւրն և ծնողացն իւրոց, ամէն, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի յաստուծոյ և ի մէնջ, ամէն։ Մէկ՝ Աւաք և մէկ՝ Ուխտի-խաթուն յիշեցէք ի Քրիստոս, զուրենց ծնաւղս և զուրե[ն]ց հոգին, ամէն, եղիցի։ Եւ ինձ՝ մեղաւոր գըրչիս սուտանուն Սանփանոս քահտնախս մեղաց թողութիւն, ամէն, եղիցի։*

## 568

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ԵՓԵՍԱՑԻՈՑ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երևան 1382

308 բ ՊՀ. (1421) նստաւ Սքանդարն | | | ՊՀԱ. (1422) առաջին գալն Շանռուխին, ՊՀԸ. (1429) միջին գալն և Բուսաիտն | | | եդիր, և տանուտէր աղեղնաւորն, ՊՁԵ. (1436) յետին գալն և տանուտէր [խե]ցգետին։ ՊՁԹ. (1440) Ջահանշէն զՇամշուլդէ առ և կոտորեաց աւելի քան զերեք հազար և տարաւ գերի աւելի քան զինն հազար և մեծ

* Գ. և Դ. անթվական հիշատակարանները, ըստ հնագրական տվյալների, գրված են Ա. և Բ. հիշատակարանների ժամանակ կամ նրանցից միայն մի քանի տարի հետո, այն. է՝ 1440—1450-ական թվականներին։

սուք եթող քրիստոնէից,* զի բազումք թողին զՔրիստոս։ Քրիստոս աստուած ողորմեայ Կիրակոս բանասիրին, և թող զմեղք նորին՝ զմահու չափն և զներկլին, բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց գնդին, ամէն։

---

* Սամշվիլդեի կոտորածի մասին հետաքրքիր մանրամասնություններ է հաղորդում Հովհաննես գրիչը, 1458 թ. ընդօրինակած իր «Յայսմաւուրքի» մեջ, շարադրելով հատուկ «Վկայաբանութիւն» այդ մասին։ Ստորև, որոշ սղումներով, մեջ ենք բերում այդ «Վկայաբանութիւնը», քաղելով Հովհաննեսի ինքնագիր օրինակից, որը պահվում է Երևանի Մատենադարանում (ձեռագիր № 4696)։ Նույնը իր «Նշխարք պատմութեան Հայոց» աշխատության Բ. հատորում ընդօրինակել է նաև Ղ. Փիրղալեմյանը (ձեռագիր № 4515, էջ 150—153)։

«Քաղոց ի ԺԴ. (14) և դեկտեմբեր ի ԻԲ. (22)։ Յայսմ աւուր յիշատակ է և վկայաբանութիւն կոտորելոցն ուղղափառ և անմեղ քրիստոնէիցն Հայոց և Վրաց՝ Շամքուլտէ քաղաքին»։

Անօրէն և պիղծ բռնաւորն Թավրիզու Ջհանշայ անուն, որդի Յուսուֆ-Բէկին, սա եսպան զեղբայրն իւր Սմանդար բահադուռն, ի ձեռն որդոյ նորա Ղան կոչեցեալ, ի դղեակն Նրննակու, հրամանաւ և կամաւք չար թագաւորին արևելից Շահռուխ անուն։ Եւ ինքն ոխս ունելով ի մտի իւրում ընդ թագաւորին Վրաց Ալէքսիանոս կոչեցեալ, զի ոչ եկն առ նայողջոյն խաղաղութեան և ոչ ետ զսահմանեալ հարկս թագաւորական։ Վասն որոյ զայրացեալ պեղծն և ատեցաւղն քրիստոնէից իբրև զգազան արեան ծարաւի զաւրս ժողովեալ, գունդս կազմեալ, և զամենայն տռաջնորդս անաւրէնութեան Նեռին կարապետն Ջհանշաւն ժողովեալ աւելի քան զԻՌ. (20,000) ոգիս, առեալ գնաց ի տունն Վրաց ․ ․ ․։

Եւ նոցա երթեալ ի քաղաքն Տփխիս՝ քանդեցին, աւերեցին և զքաղաքն հրոյ ճարակ տուին, և զամենայն եկեղեցիսն ի հիմանց տապալեցին, և անտի յետս դարձան։ Եկն և նստաւ ի վերայ Շամքուլտէ քաղաքին աւուրս Խ. (40), ի գալստեան ծառզարդարի տաւնին, ի կիրակէին մինչ ի համբարձումն Քրիստոսի աստուծոյ մերոյ, ի մեծահրաշ կիրակէին նստաւ ի վերայ նոցա անիծեալ անաւրէնն Ջհանշաւն։ Եւ նոքա՝ քրիստոնեայքն ակն ունէին յուսով անիծեալ թագաւորին իւրեանց՝ գալ օգնել նոցա և ազատել ի նեղութենէ անաւրինացն։ Իսկ նոքա անփոյթ արարեալ զնոցանէ՝ լաւ համարեցաւ զանձն իւր կեցուցանել, քան զկորուստ քրիստոնէիցն. անարի և անմարդի գտան, որ և մին մարդոյ ծնաւ ոչ կարացին առնել։

Յայնժամ քաղաքացիքն, նեղեալ ի սովոյ և ի ծարաւոյ՝ անփոյթ արարին զպահպանութիւն բերդին։ Եւ նոքա զաղտաբար ծակեցին զպարիսպ քաղաքին և ի ներս մտին։ Եւ նոցա զահի հարեալ դողացին, կոչեցին զբռնաւորն ի դուռն քաղաքին՝ առնել ողորմութիւն ի վերայ նոցա։ Եւ նոցա երդուեալ յարարիչն աստուած սուտ երդմամբ և խաբէութեամբ, թէ ոչինչ չար առնել ձեզ և կամ ծնաւ մահու գործել։ Եւ նոքա աւատացին երդմանն, և բացին դդուռն քաղաքին, և ետուն ի ձեռս նոցա։ Եւ նոքա հանեալ զամենեսեան արտաքոյ, և հրաման ետ զամենեսեան չարչարել զերիս աւուրս, և առնել զգաղտնի և զյայտնի ստացուածս նոցա։ Եւ յետ երից աւուրց հրաման ետ զամենայն հաւատացեալսն կոչել ի հանդիսական ատենին։ Եւ զաւրաժողով եղեն ի վերայ նոցա բազմութիւն անաւրինացն, սուր առեալ ի ձեռին, յայս կոյս և յայն կոյս շրջապատեալ, զհաւատացեալսն ի միջի ունելով ․ ․ ․։

Եւ նոյն ժամայն Բ. (2) երիտասարդք ի տիօս մանկական հասակի՝ զօրեղ զաւրականք և քաջ նահատակք, զահ և զերկիւղ ի բաց բարձեալ, գոչեն մեծական ձայնիւ ի լուր ամենեցուն. Նզովեալ է Մահմետ աւրէնսդիրն ձեր, և մեք Քրիստոսի եմք աշակերտք և երկոտասան առաքելոցն, և հոգևոր որդիք սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ․ ․ ․։

Եւ ապա ձայն արձակեալ անաւրինացն, իբրև զշուն կատաղի մռմռեալ ի վերայ նոցա, նետիւ զերկոսին վկայսն անդէն լցին։ Եւ չար բռնաւորն ասէ. Ահա, ով կայք, հայհոյեցին զառաջնորդն մեր. ահա կոտորեցէք զամենեսեան սրով և, առհասարակ, գլխատեցէք և զգլուխս նոցա քարիւ ջարդեցէք։ Եւ նոքա կատարեցին զչար հրամանս նորա, սպանին ի նոցանէ աւելի քան զՌ. (1000) հոգի և Խ. (40) ի նոցանէ կրաւնաւորք, քահա-

## 569

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱՑ ԳՐՈՑ ԴԱՒԹԻ, ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑԻՈՑ

Երևան 1849

Գրիչ՝ Ներսէս

վայր՝ Մեծոփայ վանք—Մաանավանք

123 ա ...Արդ, ես՝ ունայնս ի բարեաց և լցեալս չարեաւք, ծոյլս և յոյլս և անպիտանս ի մանկունս եկեղեցոյ՝ պիտակ անունս Ներսէս, որ անուամբ աբեղայ և գործով խաբեբայ, գրեցի զշարս մարգարտեայ և զքանոնս ամենայն իմաստասիրական արհեստից և մակացութեանց հրամանաւ և արդեամբք երջանիկ և հոգիընկալ րաբունապետ-
123 բ տիս մերոյ և աստուածաբան վարդապետիս և խարազնավարք || ճըգնաւորի Թումայ րաբունապետի և հոգևոր և մարմնաւոր երախտաւորի, որ փայլէ ի ժամանակիս մերում իբրև զարեգակն պայծառ ի կամարս երկնից, յերկիրս Քաջբերունոյ, ի հռեշտակաբնակ անապատս Մեծոփայ։ Այլ և երկրորդ երախտաւորին իմոյ հոգևոր հօրն՝ Մկրտիչ վարդապետի և Յոհանէս արքեպիսկոպոսի։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց Մեծաց ՊՁԹ. (1440), ի պատուական օրինակէ, որ էր գրեալ ձեռամբ Մկրտիչ վարդապետի, որ յայս ամի փոխեցաւ ի Քրիստոս և եթող մեզ սուգ անմխիթար, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։ Վասն որոյ երես ի գետին դնելով և համբուրեմ զսուրբ գարշապար ընթերցողացդ այսմ աստուածատուր պարգևացս, որք պատահիք սմա ընթեռնլով կամ օրինակելով յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղօք զառածեալս Ներսէս, և զհարազատ եղբայրն իմ զՌըստակէս քահանայ, և զուսուցիչն իմ զՍտեփանոս կրօնաւոր, որ և զփոխարէնն յաստուծոյ առցէ, և զդեռաբոյս որդեակն իմ զԳրիգոր աբեղայ՝ իմոյս աբենակցի, որ բազում անգամ սպասաւորէ մեզ անձանձիր մտօք, և զմարմնաւոր հայրն իմ Ստեփա-

---

նայք և սարկաւագունք էին։ Եւ զոչումն ազազակի նոցա զերկիր դողացուցանէր և զհրեշտակք ի յերկինս զարմացուցանէր, և անմեղութիւն արեան նոցա իբրև զԱբէլին առ տէր աղաղակէր՝ վրէժխնդիր լինել անմեղութեան արեան նոցին։

Եւ հրաման տուեալ չար բռնաւորն՝ զամենայն կանայս և զորդիս նոցա գերի առնուլ, աւելի քան զԺՌ. (10,000) ոգի, և ցրուեալ յամենայն կողմանս Տաճկաստանեաց՝ ի Մսր և ի Խորասան։

Անդ էր տեսանել զաղէտ տարակուսանաց ամենայն քրիստոնեական ազգին, զի մայրըն լայր զորդին և որդին լայրն զմայրն աղիողորմ կսկծանաւք և դառն արտասուաւք. որդեակ իմ բաղձալի, այլ ոչ տեսանեմ զքեզ, վա՜յ արգանդիս՝որ զքեզ երկնեցի, և վա՜յ իմ աչացս՝ որ զքեզ տեսի, վայ ականջացս՝ որ զձայնդ լսեցի։ Եւ, դարձեալ, որդին գոչէր առ մայրն. Աստուածազուք ծնաւղ իմ ցանկալի, վա՜յ և եղուկ ինձ յերկրի և վա՜յ աւուրն իմ դատաստանի, զի զանապական հաւատս զիմ կորուսի և յաստուծոյ աչաց ելի։

Եւ ոչ ոք կարէ ընդ գրով արկանել զանպատմելի դառնութիւնս, որ եղև Հայոց ազգիս։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Բարեխաւսութեամբ սոցին և դառնագոյն չարչարանաւք Քրիստոս աստուած ազատեա զամենայն գերիս քրիստոնէական ազգիս ի յանաւրինացն։

Կատարեցան սոքա ի թուականիս Հայոց ՊՁԹ. (1440)...»

(Ձեռագիր № 4696, էջ 235 բ—238 բ)

Յոս, և զմայրն իմ զՇամշայ, և զԲ. եղբարքն իմ՝ զԱտոմ և զՎրդանէս, որք մտեալ են ի կարգ աշխարհի, այլ և զԲ. սարկաւագս մեր՝ զՅակոբ ճգնաւոր և զԳալուստ, որք սպասաւորեն մեզ...։

Դարձեալ, կրկին աղաչեմ սխալանացն անմեղադիր լինել, զի կար մեր այս էր...։

Սկսեալ եղեւ ի վանս Մեծոփայ և աւարտեցաւ ի վանս Մատնավանից, առ ոտս արքեպիսկոպոսի Ստեփանոսի, որ յոյժ սէր և հայրութիւն եցոյց մեզ...։

## 570

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5404

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Ոստան

200 բ Փառք... որ ետ կարողութիւն տկար և տարտամ և անարժան անձինս Կարապետ գրչի հասանել ի յաւարտ Գանձարանիս, որ աւրըստաւրէ պայծառացուցանէ զեկեղեցիս և զմանկունս սորա, որ ունի յինքնս հաւաքեալ ծնընդեան և յարութեան և ամենայն տէրունական տօնից՝ առաքելոց, մարգարէից, ճգնաւորաց, մարտիրոսաց և ամենայն սրբոց։ Որոց փափաքաւղ եղեալ աստուածասէր տանուտէրն Պետրոս և ստացաւ զսա բարի յիշա[տա]կ իւր, և ծնաւղացն իւրոյ՝ Թումային և Սիրային, և ամենայն նախնեացն, և կենակցին՝ Շամշա-խաթունին, և զաւակացն իւր՝ հանգուցելոցն, և դստերն Փաշային, և միւսն դստերն Խալիմ-խաթունին, և ամենայն ազգականացն և արեան մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոց առ աստուած։ Եւ ետ զսա ընծայ և նուէր ի դուռն սրբոյն Թումայի առաքելոյն, ի վանքն, որ կոչի Սուրբ Թումայ, զի մանկունք սուրբ եկեղեցոյս հրճուին սովաւ հանապազ և ուրախասցին ի տա[ւ]նս տէրունականս և ի յիշատակս ամենայն սրբոց, և յիշեսցեն յերկնագնաց յաղաւթս իւրեանց զստացող սուրբ գրոցս զհիւսն Պետրոս, և զծնաւղսն իւր զԹումայ և զՍիրայ, և զկողակիցն զՇամշա-խաթուն, և զհարկաւոր և զաստուածասէր և զանու[անի] զփեսայն իւր զպարոն Թումէն, որ յայսմ ամի հանգեաւ առ Քրիստոս և եղև սուգ անմխիթար, և զայլ ամենայն ազգականսն իւր...։

210 ա Եւ արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքս Ոստան, որ է ծովահայեաց. ի դուռն Քարի սուրբ Աստուածածնիս, սուրբ Ստեփաննոսի Նախավկային, և սրբոյն Սարգսի զաւրավարին, ի թուականիս Հայոց ՊՁԹ. (1440), ի հայրապետութեանն տէր Զաքարիայի Հայոց կաթողիկոսի։ Եւ արդ ես՝ անկարգս ի կարգաւորաց, անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց, անկատարս ի կատարելոց. մեղչականս յանմեղաց, տկէտս ի գիտնականաց՝ մեղաւոր Կարապետ գրիչս, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ, որք հանդիպիք և գաղափարէք և քաղցր ձայնիւ եղանակէք զսա յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանարհեստ

գրչիս Կարապետ, և զծնաւղսն իմ զՍտեփանոս քահանայ, և զմայրն իմ զՓաշայ, և զեղբայրն իմ զՅովանէս քահանայ, որ փոխեցաւ առ Քրիստոս, և զքոյրն իմ զԱրմանի, և զամենայն արեան մերձաւորսն մեր և զերախտաւորսն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք մեզ և մերոցն ամենայնի․․․։

Բ

210 բ Ես՝ հիւսն Պետրոս ի գեղջէն Նարեկայ, ետու ըղսա ընծայ և նուէր ի դուռն սուրբ Թումայ առաքելոյն․ և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ եկեղեցոյս՝ ծախելով կամ գրաւելով և կամ [այլ] ինչ պատճառաւ, ոչ ի մերոց, և ոչ ի յօտարաց, և ոչ ի քահանայից․ և եթէ ոք յանդգնի և հեռացուցանէ՝ դատապարտի յաստուծոյ և ի սուրբ Թումայ առաքելոյն, և զանէծքն զաւձին և զԿայենին ժառանգեսցէ, և զմասն զՅուդային և զայլ խաչահանուացն առցէ, և մի եղիցի նմա թողութիւն, մի յայս կեանս և մի ի հանդերձ[ել]ումըն, ամէն։

Իսկ խնամողքն և լաւ պահողքն սորին ւարհնին յաստուծոյ, ամէն։

Գ

21 բ Հազար վա ի վերայ զրոցին, անմեղադիր լերուք։

Դ

205 բ Ջոսկերիչ Քրիստոսատուրն յիշեցէք ի ՙտէր, աստուած-ողորմի ասացէք նմա, որ այսօր մեզ ծիրան յօղարկեց։*

## 571

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 7263**

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Համշէն

228 ա ․․․ Արդ, ի յանկ ելեալ աւարտեցաւ Մաշդոցս ձեռամբ անիմաստ և անարհեստ գրչի Աստուածատուր աբեղի, ի գաւառիս, որ կոչի Համշէն, և ի վանքս Խուժկա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և կենսակիր աստուածընկալ սուրբ Նշանացս, ի թուականութեանս յաբեդական տումարիս ՊՋԹ. (1440), հոռի ամսոյ Բ. (2), ի պարոնութեանն պարոն Դաւթի** և դեռաբոյս զաւակին իւրո պարոն Վարդին, զոր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն աստուծոյ, որք պատահիք
228 բ այսմ ամենալի բուրաստանի ‖ կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք

* Դ. և Դ. հիշատակագրությունները գրված են նշված էջերի ստորին լուսանցքներում։ Գ-ի գրության ուղին եղել է սխալը, որը թույլ է տվել գրիչը գրույթի հետևանքով։
** Բնագրում՝ «Դօթի»։

յերկնաթռիչ յաղաւթս ձեր զա[նար]ժան գծողս ի թողութիւն յանցանաց, նաև զծնօղսն իմ՝ զփոխեցեալսն յաստի կենաց առ յոյսն ամենայն Քրիստոնէից և զամենայն արեան մերձաւորսն իմ, որք ակն ունին առատ ողորմութեանն աստուծոյ, զի. որ առատն է ի տուրս բարեաց առհասարակ ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս ողորմեսցի յաներեկ աւուրն, ամէն։

## 572

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՀԱ, 1003, էջ 341, Կ. Պօլիս

Գրիչ՝ Մաղաքիա
Վայր՝ Կաֆայ

Եւ եղև աւարտ սորա [ի ՊՋԹ.] (1440) ամի, ի նոյեմբերի է. (7) աւրն շաբաթ, ի հայրապետութեան տեառն Գրիգորի բարեպաշտի և աստուածասիրի և իմաստնոյն, և եպիսկոպոսութեան սրբասիրի մեծի տեառն Մաղաքիայի ի մերում Հոնաց աշխարհին և Գազարեաց նահանգիս, Սալխաթ Ղրիմի և Կաֆայիս մայրաքաղաքիս, ի մենաստան մեծի սրբոյն Անտոնի և Աստուածածնի, ի խնդրոյ պատուական և երջանիկ քահանային Աբրահամի...։

Արդ, աւետարանս ազատ արարեալ եդի ի սուրբ եկեղեցիս մեծի սրբոյն Լուսաւորչի...։ Եւ որք յանդգնաբար իշխելոյ աղագաւ բան ասիցէ խոտորեցուցանել կամելով զաւետարանս ի Խալաթնա* եկեղեցւոյս՝ նա զվարձս հայենի [առցէ]...

Եւ զիս՝ զաղկաղկս և վանաքի գրիչս զՄաղաքեայն յիշեցէք ի տէր Քրիստոս, ողորմութիւն հայցելով ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն՝ իմոյ Խաաշային և մաւրն իմոյ Ազիզ-Մէլիքին, և քվերն իմոյ Շիրին-Մէլիքին, և Խութլուպէկին, և աւաք եղբաւրն իմոյ Մաղաքիա կրաւնաւորին՝ զգնացեալսն առ Քրիստոս, և զամենայն ազգականքն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալսն, յիշեցէք ի Քրիստոս զմահտեսի Մկրտիչն և զվոքելն (*) մեր զպարոն Խաչատուրն...։

## 573

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 7463

Նուիրատու՝ Յովաննէս

351 ա Ես՝ Յովաննէս երէցս, իմ յաւժար կամաւք տվի զայս Այսմաւուրքս սուրբ Աստուածածնին՝ ի Մովսէս իրիցու և իւր որդոյն՝ Յովաննէս իրիցու, ի Մուսեխ իրիցու եկեղեցին սեփական, որ ոչ ոք իշխանութիւն չունի այս գրոցս, ոչ իմ ազգ և ոչ իմ զաւակ չունի իշ-

* Իմա՛ Կոստանդնուպոլսի Ղալաթիա թաղի։

խանութիւն զայս Այսմաւուրքս ի յայս եկեղեցոյս հանել, և ոչ այս եկեղեցոյս քահանայքն՝ վաճառելով կամ ծախելով. և որ յանդգնի՝ զմասն խաչահանուացն, զՅուդային և զԿայենին առցէ։

Դրեցաւ ի թվ. ՊՂԹ. (1440), նոյեմբերի Դ. (4)։

Ես՝ Ավտուլս քարխանաճի, որդի Առաքելին՝ վկա։

Ես՝ Յովաննէս, որդի Մուսեխ քահանայի՝ վկա։

Ես՝ Ամիրս, որդի Յոհանիսին՝ վկա։

Ես՝ Յակոբշաս, որդի Անտիպէկին՝ վկա։

Ես՝ Յոհաննէսս, որդի Սիմէոն քահանայի՝ վկա...։

## 574

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 2388

Կազմող՝ Վարդան

1բ ...Արդ, աղաչեմ զձեզ, ով պատուական եղանակողք, յիշել ի մեղսաքաւիչ աղաւթս ձեր զսրբասնեալ քահանայն Ստեփաննոս, որ ստացաւ զտետրս ի հալալ վաստակոց իւրոց, ի վայելումն սրբասնեալ զաւակին իւրոյ Աստմ քահանային, զոր տէր աստուած վայելել տաց-
2ա ցէ նմա ընդ յերկայն ա||ւուրս, ամէն։

Դարձեալ, ծանուցանեմ ձեզ զաղէտս կսկրծանաց՝ զծաղիկն ձըմերային, մանուշակն գարնանային, զվարդըն փթթեալ ի կոկոնին, զփիլիսոփայն արին, զընթերցող հին և նոր կտակարանին, զճարտարն ի պատասխանին, զհսկաձևն ի մանկտին, զգեղեցիկ տիպ պատկերին, զսիրող աստուածային պատուիրանին, զցանկալին ամենայն ազգաց՝ զԹումա սարկաւաքն, զի յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս և սուք անմխիթար եթող ծնաւղաց իւրոց հաւրն իւրոյ Ստեփանոս քահանային և մաւրն իւրոյ, և եղբաւրն իւրոյ Նորընծա քահանային Ատոմին, զի ոչ միայն եղբար գոլով, այլ սնընդտկից և ուսումնակից միմեանց,
2բ զոր մխի||թարիչ հոգին՝ սուրբ աստուած ճշմարիտ մխիթարեսցէ զսուք սրտի սոցա, և զԹումա սարկաւաքն ընդ սրբոյն Ստեփաննոսի դասակից և պսակակից արասցէ, ամէն։

Կազմեցաւ թվ. Հայոց ՊՂԹ. (1440), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, ձեռամբ մեղապարտ Վարդանի, զոր աղաչեմ յիշել միով տէր ողորմայիւ։

## 575

## ԱԻԵՏԱՐԱՆ

Վրաց թանգարան 25

Վերջին կազմող՝ Վարդան

109բ Զվերջին կազմող սուրբ աւետարանիս զմեղուցեալ հողս զՎարդան և զծնողսն իմ աղաչեմ յիշել յաղօթս ձեր, ով սուրբ ընթերցողք։

Կազմեցաւ ի թվ. ՊՂԹ. (1440), տանուտէրն Կարիճն։

## 576

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3562

Գրիչ՝ Մովսէս

342 ա Արդ, եղև գրաւորութիւն սորայ ձեռամբ հոգնամեղ և փծուն գրչիս Մովսիսի քահանայ[ի], մեղսամած մատամբ գծագրեցի։ Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին աւարտեցաւ ի թվականիս մերոյ տումարիս ՊՁԹ. (1440), և այլ աւելի և պակասն աստուած գիտէ, ամէն։*

## 577

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1828

Գրիչ՝ Սարգիս

... Եւ զայրն իւր | | | Ստեփանոս, և զորդիսն իւր Ստեփանոս և Սոլթանշահ, և դստերսն իւր Խոյանդքարշահ և Գոնդիշահ ... և զհայրն իւր Նուդ | | | և զԳալուստն և զխաչնանէսն և զԱստուածատուրն | | |, զիս՝ զՍարգիս անարժան գծողս, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ Թադէոս, և զբազմերախտ և արտասուալից մայրն իմ Էլմայ, և զեղբայրն իմ...։ Յիշեցէք զԱբրահամ բարի և հաւատարիմ և կուսակրաւն մուղդեսին, որ զթուղթս կոկեաց ... թվ. ՊՁԹ. (1440)։

## 578

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

ԼՕՎ 1481, Աղթամար

Գրիչ՝ Ստեփաննոս

Արդ, գրեցաւ գիրքս այս ձեռամբ մեղսաներկի և անարհեստ գրչի Ստեփաննոս աբեղայի, ի թուականութեան Հայոց տումարի ՊՁԹ. (1440), ի հայրապետութեան տեառն | | |

Արա ողորմութիւն ստացաւղի սուրբ կտակիս՝ հոգևոր հաւրն Քուրթանշին, և ամուսնոյն իւրոյ Դիլշատին, և Շալումին, և Կարապետին, և մեղապարտ գրողի՝ Ստեփաննոս անարժան աբեղայի, և կարդացողաց, և լսողաց, և քեզ փառք։

---

* Հիշատակարանի սույն անգամահատված քաղվածքը գտնվում է Նորոզող Կարապետ եպիսկոպոսի կողմից 1601 թ. գրված հիշատակարանի մեջ և, հավանորեն, արտագրված է այժմ գոյություն չունեցող գլխավոր հիշատակարանից։ Տարակուսանք է պատճառում այն հանգամանքը, որ ձեռագրի երկու փոքր հիշատակագրությունների մեջ, որպես գրիչ հանդես է գալիս ոչ թե Մովսեսը, այլ ոմն Ըռըստակէս։ Ստորև տալիս ենք այդ հիշատակագրությունները. «Ազաչեմ յիշել ի տէր զԸռըսցակէս մեղօք լցեալ զերիս, և որ յիշէ բոլոր սրտիւ նա՝ աստուած յիշէ զյիշողն ի բարին» (էջ 336 ա)։ «Աղաչեմ յիշել ի տէր զԸռըսցակէս գրիչս՝ զմեղաւք լցեալս և զծնօղսն իմ» (էջ 260 ա)։





## 579

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 6863*

*Վայր՝ Հախբատ*

*...Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ. հոգիաբուխ քառավըռակ աս-*
300 ա *տուածաշունչ մատեանս...‖ ի մեծահռչակ և աստուածաբնակ և հրեշ-*
*տակաճեմ յաթոռս* Հախբատայ, *ընդ հովանեաւ աստուածազաւր և*
*արեամբ ներկեալ սուրբ Նշանիս, և երկնանըման Կաթողիկէիս, և*
*բարձրացեալ բազկատարած Փրկչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ*
*Կարապետիս, և Առաքելոցս,<և սուրբ Կարապետիս>, և սուրբ Գրիգո-*
*րիս, և սուրբ Յակոբիս, և սուրբ Նիկողայոսի, և սուրբ Տէրունականիս,*
*և Լեղանի սուրբ Նշանիս, և Շիկիքարի սուրբ Սարգսիս, և սուրբ*
*Երրորդութենիս, և Սարկաւագ վարդապետի սուրբ դամբարանիս, և*
300 բ *Թեփակեր ճգնաւորի սուրբ շիրմիս, և այլ բազմահաւ ‖ աք սրբոց, որ*
*աստ կան գումարեալ ի պատիւ արեամբ ներկեալ սուրբ Նշանիս, ի*
*Թվականութեանս Հայկազեանս տաւմարի Պ.-երորդի և իննսուներոր-*
*դի (1441), ի դառն և յանբարի ժամանակի, յորում սաստկացեալ էր*
*սուրն Իսմայելացոց ի վերայ մեր հալածանաւք, ըստ յառաջատես*
*տեսլեանն սրբոյն Սահակայ, որ և տատանեալ ծփիմք ամենաներհակ*
*արկածիւք ի ներքուստ և արտաքուստ, որ ափշութիւն տեսականի և*
*մինչնութա (այսպէս) գործոյս. Զի յայսմ ամի ղանն* Դայվրիժու Ջա-
ճանշայ *իմիրզայն՝ որդի Թուրքման* Ոսուֆին՝ *որդո* Ղարա-Մահմա-
301 ա տին, *ելեալ բազում զաւրաւք և ան ‖ թիւ հեծելաւք մահմետականաւք՝*
*եկն ի* Վերաստուն, *ի վերայ Վրաց, զի ոչ հնազանդէին ազգն Վրաց ղա-*
*նին Թավրիժու։ Եւ յորժամ եկն ազգն Տաճկաց՝ փախստական եղեն ազ-*
*գըն Վրաց և մտան ի* յԱփխազս, *և թաց ազգս Հայոց, որք եկեալ*
*էին և բնակեալ ի* Վրացաունս՝ *ի ձեռն անաւրինաց, և իբրև զկատա-*
*ղած գազան յարձակեցան ի վերայ Հայոց, և սուր եդեալ ի վերա, և*
*սպանին իբրև հազարաց հնգից անողորմ. և աւելի քան զվաթսուն*
*կրաւնա[ւ]որ և քահանայ սրով և քարիւ քարկոծեցին և սպանին, և*
*բազում եկեղեցիք ի հիմանց տապալեցին, և զբազում մանկունս ի*
301 բ *‖ մարցն խլէին և ընդ քարիւ հարկանէին, և մայրն զայն տեսանէր.*
*և զբազում մանկունս անմեղս մերկացուցանէին և սրով խոցոտէին,*
*և տղայն ճչէր և աղաղակէր և լայր, և անաւրէնքն ծիծաղէին և ասէ-*
*ին՝ Ահա ձայն, որ ի յիւրեանց բէհէշտէն կուգա. և մայրն զայն տե-*
*սանէր և աղեխարշեալ մորմոքէր և լայր, և ոչ ոք էր որ աւգնէր։*
*Բազում կանայք զտղայն ի գիրկն առնէին և քար ի վայր ան[կ]ա-*

նէին։ Եւ Գ. (3) ամիս նստան ի վերա ամուրին Սամշուլտու, և յորժամ խաբէութեամբ առին զբերդն, թէ որպէս յափշտակեցին զինչսն կամ որպէս բաժանեցին զայրքն ի կանանցն, կամ որպէս խլէին զորդ | | | *

580

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9450

Հետ. ստացողներ՝ Գրիգոր և Բարսեղ

372 ր Ի Թուականութեանս Հայոց ՋԾՀԹ (*) Ջահանշէն, որ զԼոռու բերդն հեսարեց՝ սուրբ աւետարանս գերի անկօ։**

Ես տէր Գրիգորս և Բարսեղ աբեղայս կանգնեցաք Ռ. (1000) դեկան տուաք, Թափեցաք ի գերութենէ յիշատակ մեզ և ծընօղաց մերոց, ամէն։

581

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Ա. Դավրիժեցի, Պատմութիւն, 1884, էջ 321—322
Ինճիճեան, Հնախօսութիւն, Ա. էջ 106—107

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

Եւ արդ, գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց Մեծաց ՊՂ. (1441) ամին, ի յերկիրս Վասպուրականի, ի քաղաքիս Վան կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, և այլ սրբոցս, [ձեռամբ Վարդան քահանայի], ի հայրապետութեան մեծ աթոռոյն Սսայ, որ յայսմ ամի զլուսաւորչի աջն գողացեալ տարան, և աթոռն ունայն մնաց, ի դառն և ի չար ժամանակիս, ի պարոնութեանն Ջհանշահին***, որ չարութեամբ իւրով լցեալ գնաց ի Վրացաուն... և էառ զդղեակն

* Շարունակությունը կտրված է։

** Թվականը ՋԾՀԹ. (1580) ձեռագրում շատ պարզ է գրված, սակայն, անտարակույս, թյուրիմացության արդյունք է։ 1580-ին Ջհանշահ անունով ոչ մի իշխող չի եղել, ուստի չի էլ արշավել Լոռու վրա։ Ջհանշահի արշավանքը դեպի Լոռի ու Վրաստան, ինչպես հաղորդում են բազմաթիվ հիշատակագիրներ, տեղի է ունեցել 1440 թվականին։ Հիշատակագրությունը տեղադրում ենք 1441 թվաշարքում, ենթադրելով, որ եթե ձեռագիրը գերի է ընկել 1440-ին, ապա մինչև գերությունից հետ գնվելը պետք է, որ որոշ ժամանակ անցած լիներ։

*** Հիշատակարանի այս հատվածը մեջ է բերում իր «Հրումն լիակատար վարուց և վկայաբանութեանց սրբոց» աշխատության ԺԱ հատորում (Վենետիկ, 1814) նաև Մ. Ավգերյանը։ Այնուհետև նա հայտնում է, որ գրիչը «յիշէ և զԹովմա վարդապետ, որ ի վանս Մեծոփայ, և զՀէրապետ կրօնաւորն յորոյ ի խնդրոյ գրեալ է մատեանս» (էջ ՀԷ–ՀԸ)։

Շամշուլսայ. և ինն հազար անձինք քրիստոնէից և այլ աւելի՝ հանդերձ քահանայիւք ի սուր սուսերի մաշեցին, և զկանայսն և զտղայսն գերեվարեցին. զորոց աղէտ տարակուսանացն ով կարէ պատմել կամ գրել. և այս ամենայն վասն մեղաց գան ի վերայ աշխարհիս։*

Ցայսմ ամի մեծ նշան եղև, քանզի լեառն Մամրուտ կոչեցեալ, որ ի մէջ Խլաթ և ի Բաղէշ է, յանկարծակի գոռաց, իբրև զսաստիկ որոտումն ամպոյ, որ երկիրն ամենայն ահաբեկ եղեալ սասանեցան, որ և տղայքն ընդ հարս և ընդ մարս ողբս առեալ լային, վասն զի տեսին, որ սառն պատառեցաւ լայն՝ իբր զքաղաք մի և այլ փոքր փոքր, և ի պատառուածէն ի վեր հուր ցոլացեալ ելանէր մառախլապատ ծխով և ժահահոտութեամբ, որ և տղայքն ի հոտոյն հիւանդանային, և քարինք եռային յահագին բոցոյն, և մեծամեծ վէմս ընդ երկինս ձգէին ձայնիւ որոտմամբ. որ և ի դղրդմանէն Խլաթ քաղաք կարծիս առեալ դողային։ Զայս ամենայն տեսին աչօք բացօք և այ գաւառք,

582

ՃԱՇՈՑ

«Թորոս Աղբար», Ա, էջ 222, Տիվրիկի ս. Աստուածածին եկեղեցի

Գրիչ՝ ՅովաՆՆէս:
վայր՝ ԱրՃէշ

ա

... Զոր տեսեալ զայսպիսի գանձս ... Մկրտիչ քահանայն, և ետ գրել զբոլոր տարեգիրքս տարւոյն անպատճառ և անթերի, յիշատակ իւր, և ծնաւղացն իւրոց ԱւՆոփրիոս քահանային, մաւրն իւր Շայմելիքին, և հաւրեղբարցն իւր պարոն Բուլքարամին, Նիկաւղաոսին, և ՍտեփաՆոսին, և մաւրեղբարցն իւր Կարապետ վարդապետին, և ՅովաՆՆէս հէրպետին, և Ազիզբակին, և զմօրքուեր որդին իւր զտէր ՍտեփաՆ եպիսկոպոսն։

Այլ և յիշեսցէ տէր աստուածն Իսրայէլի զսանամայրն իւր զՌւսալուՆ–ՄէլիքՆ, և զդուստր իւր զՄեծ-ԽաթուՆՆ, որ ի տէր Մկրտիչ հէրպետին բազում երախտիք ունին՝ հոգևոր և մարմնաւոր....

Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս զստացող գրոցս զՂազար երէց, և զծնաւղսն իւր, և զայլ արեան մերձաւորսն, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Արդ, գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի ՅովհաՆՆէս քահանայի, ի յերկիրս Քաջբերունի, ի քաղաքս, որ կոչի ԱրՃէշ, ընդ հովանեաւ կըմբեթայարկ և խորանաձև սուրբ եկեղեցոյս, որ յանուն սուրբ Գէորգայ զաւրավարին կառուցեալ կայ։

Ի թագաւորութեան ազգին Նետողաց սուլթան ՃիհաՆշային, և ի կաթողիկոսութեան սուրբ Լուսաւորչին աթոռոյն տէր Կիրակոսի, որ մականուն Խըլոց կոչի։

* Ջհանշահի անվան հիշատակությունից հետո՝ մինչև այստեղ ունի միայն Ա. Դավրիժեցին, որով և նրա մոտ հիշատակարանն ավարտվում է։

*Արդ, գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊՁՂ. (1441) Թուին, ձեռամբ յոգնամեղ և տխմար գրչի* Յովանէս *քահանայի, ի յիշատակութիւն* Մկրտիչ *քահանայի՝ ստացողի և նկարողի։**

583

### ՃԱՇՈՑ

*Երևան 1771***

Վայր՝ Արճէշ

309 ա *Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս* Արճէշ, *հանդէպ սրբարար ծովուս, որ մանր ձկունք ելանեն, ընդ հովանեաւ պատերազմի սուրբ Նշանիս և ամենամաքուր սուրբ Աստուածածնի կաթուղիկէիս, ի հայրապետութեան մեծ աթոռոյն, որ էր ի* Սիս՝ *խափանեցաւ, զի զաջն սուրբ Լուսաւորչին անդի գողացան, և երկու ամ ազգս Հայոց անաէրունչ մնաց։ Ի դառն և ի չար ժամանակիս, յորում շարժեալ էր պիղծն* Ջիհանշահ, *զի Թվականս Հայոց ՊՂ. (1441) էր, որ այս ամենայն բանս եղև։*

584

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

*Փիրզ. Նոտ. 125, Ամասիոյ ս. Նիկողայոս եկեղեցի*

*...[Գրեցաւ] ի Թուին Հայոց Մեծացն ՊՂ. (1441), յամսեանն մարտի, որ օր տասնհինգ էր, աւուր չորեքշաբթի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Առեփաննոսի նախավկային, և սուրբ Սարգսի զօրավարին, և սուրբ Կարապետին, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի *կաթուղիկոսի ամենայն Հայոց, ի սուլթանութեան Եգիպտացւոց և յաշխարհակալութեան* Մելիք–Տահրի, *որ մականուն* Չախմախ *կոչի, ի դառն և ի նեղ ժամանակի ... որ կէսքս ի սովաւ յաշխարհէ յայլ գաւառ վարեն, և կէսք յեղբարց և ի մարց բաժանեն։ Եւ յայսմ ամի ՊՂ. (1441) դարձեալ յայլ իմն պատահումն հանդիպեցաւ Հայոց ազգիս, քանզի աջ սուրբ լուսաւորչին մերոյ Գրիգորի, որ կայր հիմի քանի ժամանակ [ի* Սիս] *քաղաքի, որ յաշխարին | | |* Կ[ի]լի[կ]եայ**** անյայտ եղև։ Ոչ գիտեմք Թէ գողացան, և ոչ գիտեմք՝ ինքն զինքն ծածկեց, և ի մեծ նեղութիւն կան և ի տրտմութիւն Հայոց ազգս վասն այս*

---

** Այս նույն ձեռագրի մասին տես նաև 1450-ի Թվաշարքում։*

*** № 1771 ձեռագիրը հարուստ բովանդակությամբ ժողովածու է, որի 307 ա—312 բ էջերում ընդօրինակված են մի քանի ձեռագրերի հիշատակարաններ, որոնցից է նաև այս հիշատակարանը՝ վերնագրված այսպես՝ «Ցայլ գրքէ գտաք և գրեցաք զայս այլ»։ Ունի նաև Առաքել Դաւրիժեցին (տես «Պատմութիւն», Էջմիածին, 1884, էջ 321), նրա մոտ տարբեր է միայն հիշատակարանի սկիզբը («Եւ արդ, գրեցաւ Ճաշու գիրքս...»)։ Հնարավոր է ենթադրել, որ № 1771 ձեռագրի մեջ Լուսաւորչի աջի մասին հիշատակարաններ հավաքողը հենց ինքը Առաքել Դավրիժեցին է։*

**** Հիշատակարանի այս մասը մաշված է եղել։*

պատճառի։ Եւ զկաթուղիկոս Գրիգոր բազում չարչարեցին, և այլ եպիսկոպոսք ընդ նմա՝ վասն աջին Լուսաւորչին, և ոչ գտին զնա. որ յուսամք ամենասուրբ հոգին աստուած, զի յայտնեսցէ զաջ սուրբ Լուսաւորչին մերոյ ի ձեռն ընտրելոյ և արդարոյ առնն միոյ, որպէս զփայտն սուրբ Խաչին՝ ի ձեռն Կիւրղի, և որպէս զինքն զԼուսաւորիչն ի ձեռն հովուացն, և որպէս զխաչն Վարագայ՝ ի ձեռն Թոդիկայ սուրբ ճգնաւորի, և որպէս զնշխարն սուրբ Փօշիցն՝ ի ժամանակն վերջին, ամէն և եղիցի։

585

ՃԱՇՈՑ
Երևան 9087

Նուիրատու՝ Ամիր-Փաշայ

ա

138 բ … Այր ոմն ազնուական Ամիր-Փաշայ անուն մահդասի, ի մեծահռչակ նահանգէն և յանուանի և յականաւոր քաղաքէն Ախըլցխոյ… դնաց յԵրուսաղէմ երկիրպագանել սուրբ տեղեաց տնօրինականացն տեառն։ Եւ անդի դարձեալ եկն յարեւելս. և հանդիպեցաւ ի բանակս Շահռուխ կոչեցեալ բռնաւորի՝ որդւոյ Լանկ-Թամուրի, որ էր բանակեալ շուրջ զգղեկեաւն Երընճակոյ, որ և զգիրքս զայս գերի բերեալ յերկրէն Սիւնեաց: Եւ հանդիպեալ սըմա մեծահաւատ մահդասիս Ամիր-Փաշա, եւ ետ ի հալալ արդեանց իւրոց և յարդար վաստակոց իւրոց, և գնեաց զգիրքս և ազատեաց ի գերութենէ այլազգեաց։*

Եւ ըստ սիրալիր ըղձից իւրոց … զոր ունէր առ սուրբ առաքեալն Թադէոս՝ ընծայեաց զայս հոգէնորոգ մատեանս և զվարդափթիթ բուրա[ստա]նս յիշատակ հոգւոյ իւրոյ ի դուրս երկնահանգէտ սուրբ ուխտիս և գերահռչակ սուրբ մենաստանիս և աստուածաբնակ սուրբ տաճարիս և լոյսընծայ սուրբ գերեզմանի սուրբ առաքելոյս Թադէոսի։

Արդ, որք հանդիպիք այսմ աստուածաշունչ սուրբ տառիս կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԱմիր-Փաշայ մահդասին, և զհայրն իւր զՊարոն, և զմայր իւր զՄամա-Դեառ, զմեծ պապն իւր զՀեզու, և զմամն իւր զՄարգարիտ, և զեղբայր իւր զԱմիրջան, և զքոյր իւր զՍատրիջան, և զՋանխաթուն ,և զայլ ամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն…։

բ

Նուիրատու՝ Ովանէս Սալմաստեցի.

399 ա … Յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սուրբ գրոցս զՈվանէս աստուածասէր և բարէպաշտ քրիստոնեա, որ է

* Այսպիսով, Ամիր-Փաշայի հիշատակարանը գրված է 1441-ից տարիներ առաջ, հավանաբար Շահռուխի 1429 թվականին ձեռնարկած արշավանքի ժամանակ, երբ նա իրոք պաշարեց և գրավեց Երնջակի բերդը։

սայ ի Սալամաստա երկրէն և բարի հոգի, և եկեալ բնակեցաւ ի տեղիս, որ կոչի Ջաղացտեղ, եւ հանդիպաւղ եղև աստուածաբուխ գանձուցս... և էառ զսա ի հալալ ընչից և յարդար վաստակոց, յիշատակ իւրեանն, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն իւրո Տիրատրոյ, և մաւրն իւրոյ Մարեմին, և ամենայն ազգատոհ[մ]քին...։ Եւ ետ զսայ ընծայ սուրբ Աստուածածնիս...։

Ես Յովանէս կամեցայ, որ իմ ծնաւզացն խաչ կանկնեցնի։ Նա ի յաստմանէ սուրբ հոգոյն հանդիպեցաւ սուրբ կտակս, առի յիմ հալալ վաստակոցն զսուրբ գիրքս և դրի ի սուրբ Աստուածածինս, որ ամէն տաւնի և ի տէրունական հանգիսի աստուած-ողորմի ասեն ինձ, որ Յովաննէս եմ, և ծնաւղաց իմոց...։

Այլ և կրկին աղաչեմ զհանդիպող եղբարքդ յիշել ի սուրբ միտս ձեր աշխատողք սուրբ գրոցն զՃգեկիէլ վարդապետ, որ և գծագրեաց զսա. յետ ժամանակի գերեցաւ ի Սիւնեաց և բերաւ ի սուրբ առաքեալքն Թադէոսի. և քաջահաւատ մահդասի Ամիր-Փաշայ անուն էառ՝ ետ սուրբ առաքեալն Թադէոսի։ Եւ անդի բերաւ հրամանաւ Գրիգոր վարդապետին՝ աթոռակալ սրբոյն Թադէոսի առաքելոյն՝ ի Զորս—Շամբի, ի գեւղս Ջալալցաեղ, և ծախեաց։ Զսուրբ և քաջահաւատ Քրիստոնեայս Յովանէս զիւր հոգոյ բաժինն էրետ և էառ զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և եդ առ սուրբ Աստուածածինս։

Այրս այս էր ամենայն բարութեամբ լցեալ, էր հեզ և խոնարհ, աստուածասէր և աղաւթարար, զինչ որ աշխատութեամբ առեալ էր՝ զամէնն էրետ և գնեց զաստուածային գանձս, և եկաց ի գեաւղս՝ ընդ առն աստուածասէր և բարեպաշտ տանուտրոջ Պարսումա, որդովքն իւր Ամիրազզին, որ և կնքահայր եղև նոցայ | | |* ի թվ. ՊՂ. (1441) [էա]ռ զսուրբս, և աղաթիւք կեցեալ զամենայն աւուրս կենաց իւրոց։ Եւ ձեզ և մեզ և ամենայն աշխատաւորաց սուրբ գրոցս ի միասին ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։

586

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 3556**

Գրիչ՝ Սարգիս

ա

181 ա Ի թուականութեանըս Հայոց ՊՂ. (1441) եղև գրաւ գըրչութեան սուրբ և տիեզերալոյս և համապիտան գրրկունքս, որ կոչի Մաշթոց, ի գաւառըս Մաւրակայ սուրբ Նշանին և ի գեղակս, որ կոչի | | |**

182 բ Եւ վասն անբարի և դառի ժամանակիս, յորում եմք՝ չէ բնաւ կարողութիւն պատմել կամ ընդ գրով արկանել, յորում ազգըս մեր քրիստոնէից էին ի նեղութիւն երեքալեան թըշըուառութեամբ և

* Մեկ տող քերումով ջնջված է։
** Մի թերթ ընկած է։

հարկպահանջութեամբ և այլ ազգի ազգի վըշտաւք և նեղութեամբ վասն բազմանալոյ անաւրինաց։ Վա մեզ, և դարձեալ վա մեզ, զի կատարեցաւ մարգարէութիւն հոգելից առն աստուծոյ սըրոյն Ներսէսի, որ վասն քրիստոնէից, թէ՝ Ցամենայն կողմանց նեղին, և փոխին անզոջէ ի տեղիս, և հանգիստ ոչ գտանեն, և վասն մարդադէմ և գառնայթոյն գազանաց ազգին նետողաց։ Ահայ կատարեցաւ ամենայն, զի՝ Ասեմք լերանց, թէ ծածկեցէք զմեզ և բլրոց, թէ անկերուք ի վերայ մեր, վասն սաստիկ նեղութեանս և վասն կարի անբարի ժամանակիս։

Այս բաւ լիցի ձեզ։

182 բ Եւ դարձեալ աղաչեմ զձեզ. ով սուրբ ընթերցողք յիշեցէք զանարժան գրիչս՝ զՍարգիս սարկաւագն, և զկենակիցն իմ ըզԳայիանէն, և աստուած յիշէ զձեզ, ամէն։

Եւ դարձեալ, յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս. առհասարակ, ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։

Բ

Ա՜ւխ, թէ լինէր բազում յանցանաց իմոց թողութիւն, որ գառն խոցաւք խոցոտեալ եմ և վիրաւոր կամ ի մեղաց իմոց, ո՜վ եղբայրք։*

Գ

Ա՜ւխ եղբարք, զեղկելի գրչակս յիշեցէք, որ խիստ վիրաւոր կամ յաշխարհիս, որ չունիմ ի յաշխարհէս ինձ աւգնական՝ ոչ հայրիկ ’ւ ոչ մայրիկ ’ւ ոչ եղբայրիկ, ես միայն եմ մնացեալ քան զթուփ ի դարն։**

Դ

Ո՜վ տէր Յովանէս, եղբայր բարի,
Սրտիս ումեկ իմ աւրելի,
Պայծառ ջահ անշիջելի,
Գեղ պատկերիդ ես ցանկայի
Եւ աղաւթիցդ փափաքի,
Որ զիս յիշես ի պատարագի,
Բոլոր սրտիւ տէր-ողորմի.
Քանզի մեղաւք շաղախեցի,
Ջհոգիս մաքուր սևացուցի,
Դարձեալ ձայնեմ ողորմելի
Եւ հառաչեմ արտասուալի։***

* Գրված է 123 բ—124 ա էջերի ստորին լուսանցքում։
** Գրված է 134 բ—135 ա էջերի ստորին լուսանցքում։
*** Գրված է 150 բ—152 ա էջերի ստորին լուսանցքում։

587

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 3802**

Գրիչ՝ Թովմա Մեծոփեցի
վայր՝ Քաջբերունեաց երկիր,
Գէորգայ զօրավարի վանք

ա

313 ա …Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեանն խորհուրդ աստուածասէր և բարեպաշտուհի մահդասի կինն Գուլփաշէն* և ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և բարի ծնաւղաց իւրոց՝ հաւրն Մխիթարին և մաւրն,** և առն իւրում Առաքելին, և եղբաւրն Ղազարին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոցն։ Եւ յորժամ հաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս ընթերցմամբ, կամ գաղափար առնելով, և կամ հարեանցի տեսութեամբ, և կամ օրինակաւ՝
-315 բ յիշես || ջիք առաջի անմահ գառին Յիսուսի Քրիստոսի ստացաւղ սուրբ աւետարանիս՝ զմահդասի կինն զՓաշա-Մայրն և զծնաւղսն իւր ի մաքուր և յանաղական յաղօթս ձեր…։



Նկ. 20. Ձեռագրի ստացող մահդասի Գուլփաշայի պատկերը

Այլ և ես՝ մեղուցեալ գրիչս Թովմա Մեծեփցի, ի ծերութեան ժամանակիս, որ խիստ տկար էի մարմնովս և հոգովս, այլ վասն

---

* 10 բ էջում, ծնկաչոք դիրքով նկարված է ստացող Գուլփաշէն։ Նկարի կողքին կարդում ենք հետևյալ մակագրությունը՝ «Յիշեցէք ի Քրիստոս զմահդասի պասուզ՝ ստացող սուրբ աւետարանիս» (տե՛ս Նկ. 20)։

** Անվան գրության համար տեղ է բաց թողնված։

բազում աղաչանաց և պաղատանաց հոգևոր եղբարցն Ներսէս վարդապետին և Հերապետ կրօնաւորին և ստացողի գրոցս մահդասունն՝ ձեռն ի գործ արկի մեղաւոր անձամբ և գրեցի անարժան ձեռաւք
316 ա իմովք ի յերկիրս Քաշ ‖ բերունեաց, ընդ հովանեաւ սուրբ Գէորգեա զաւրավարիս և այլ սրբոցն, որ աստ կան։ Եւ ի Թվականիս մերոյ ՊՂ. (1441), և ի հայրապետութեանն տեառն Գրիգորի սուրբ էջմիածնի, և ի Թագաւորութեանն Ջրհանշին։

Արդ, ի յայսմ գառն ժամանակի հաւատարիմ և իմաստուն կինս այս Փաշայ-Մայրս գնաց բազում չարչարանօք ի սուրբ քաղաքն Երուսաղէմ: Եւ անտի եկն ուրախութեամբ և ետ գրել զսուրբ տէրունեան աւետարանս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոց, և զաւակացն, և մանաւանդ որդոյն իւրոյ Մխիթարին, որ յանկարծամահ յաստուած փախեցաւ և սուգ անմխիթար եթող ծնաւղացն։ Եւ ետ սուրբ աւետարանս ի վայելումն անձանց հոգևոր որդոցն՝ քաջ րաբունոյն Ներսէս վարդապետին. և այլ ոչ ոք իշխեսցէ սմին, բայց վարդապետն Ներսէս և եղբայրն իւր Ոստակէս կրօնաւորն վայելեն և աստուած-ողորմի ասեն Փաշայ-Մօրն...:

316 բ Այլ և կրկին յիշեցէք յաղաւթս զստացաւղ սուրբ աւետարանիս՝ զմահդասի Փաշայ-Մայրն, և զքեռիքն իւր՝ զպարոն Աստուածատուրն և զպարոն Խաչատուրն, և զաւակսն նոցին, և զՎարդանն, և զզաւակսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն...։

Նկ. 21. Թովմա Մեծոփեցու ինքնագիրը

588

ՇԱՐԱԿՆՈՑ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

Երևան 5667

Գրիչ՝ Թումայ
Վայր՝ Մեծոփայ վանք

146 բ Փառք... որ ետ կարողութիւն իմոյ տկարութեանս և հասոյց ‖ ի յաւարտ աստուածային երգարանիս, որ կոչի տետր և տաւանացոյց՝

Եւ գրեցի ըստ իմում կարի յիշատակ ինձ և ծնողաց իմոց Ղազար մահգասուն և Ամբարին՝ հանգուցելոցն ի Քրիստոս, և ի Թվականիս ՊՂ. (1441), ձեռամբ անիմաստ գրչիս Թումայի, ի սուրբ ուխտս Մեծոփայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ սրբոցն, որ աստ կան հանգուցեալ, և առ ոտս տիեզերալոյս վարդապետիս Թումայի, զոր և տէր աստուած պահեսցէ անսասան կենաւք, ամէն։

Եւ ես եղկելի գրիչս Թումա աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ, որք աւգաիք ի սմանէ կարդալով և ուսանելով և կամ աւրինա-

147 ա կելով, յի ‖ շեսջիք առաջի անմահ գառինն Քրիստոսի և Թողութիւն մեղաց մերոց հայցեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ [է] աւրհնեալ յաւիտեանս։

Ո՜վ եղբարք և սիրելիք, անմեղադիր լերուք վասն խոշորութեան գրիս, զի մագաղաթս հին էր, և շատ աշխատեցայ և քերեցի և ոչ կարացի զայլն հանել, զի չոր և խոշոր էր,* և ժամանակս չար, և աւուրքն ձմերայնի, զի կար մեր այս էր։

Բ

240 բ Գրեցի զսա յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց Ղազար մահդասուն, և Ամբարին՝ հանգուցելոցն ի Քրիստոս։ Անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց, զի արկար էի մարմնովս և աչաւքս...։

Գ

210 ա Դարձեալ, կրկին անգամ յիշեցէք ի Քրիստոս զտէր Վարդան կրօնաւորն, որ նախախնամեաց բազում ժամանակ զգիրքս. և յետոյ եդ ի վանս սուրբ սքանչելագործ զօրեղ սուրբ խաչին Արծրկոյ, բարեխօս այնոցիկ յորոյ վերայ սուրբ գրոցս երախտիք և աշխատանք ունի՝ տէր Թումայ վարդապետին և տէր Վարդան կրօնաւորին, և եղ-

210 բ բօրորդոցն՝ Աւետքսին, Վարդանիսին, Երիանոսին, ‖ և տէր Սաէփանոսին՝ խաչընդուս կրօնաւորին, որ մականուն Հաւիկ կոչի. և այլ նախախընամող միաբանացն սուրբ սքանչելագործին, և որ յետ սոցա նախախնամէ զսուրբ գիրքս ի դուռն սուրբ Խաչիս՝ վարձս ի Քրիստոսէ առցէ։ Եւ կացցէ գիրքս անջինջ յիշատակ տէր Թումա վարպետին, ի դուռն Սքանչելագործին, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա կամ ծախելով կամ գրաւելով, և որ յանգգնի և հեռացուցանէ զպատիժն կայենին առցէ, ամէն.**

---

* Ձեռագիրը Մատենադարանի սակավաթիվ կրկնագրերից (палимпсест) մեկն է։

** Գ. հիշատակարանը գրված է ձեռագրի գրությունից «բազում ժամանակ» (իմա. մեկ-երկու տասնամյակ) հետո, այլ ձեռագրով։

589

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5515

Գրիչ՝ Դանիէլ
Վայր՝ Աղթամար

ա

281 բ ... Արդ դրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս Աղթա || մար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, և ի թըւին Հայոց ՊՂ. (1441), ձեռամբ Դանիէլի սուտանուն քահանայի, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդըխտութեամբ, ի գառն և ի վշտաբեր ժամանակիս։ Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սորա զՄկրտիչ, ||
282 ա և զծնողքն իւր զՊարոն և զՇաքար, և զեղբարքն զԳրիգոր և զՍտեփաննոս կրաւնաւոր, և զքոյրն զԹան-Հաթուն, և զազգն ամենայն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ընդ նոսին և զանպիտան Դանիէլ գրիչ, և զծնօղքն իմ զԿարապետ քահանայ և զԴուռ-Մէլիք, և զեղբայրն իմ զԹումայ կրաւնաւոր, և զկենակիցն իմ զՇամսա-Հաթուն, և զորդիքս մեր զՍտեփաննոս կրաւնաւոր և զՈվաննէս և Զաքարայ, որ աշխատեցան ի կոկել թղթիս, և զքոյրքն մեր, և զհանգուցեալ տղայքն մեր՝ զԶաքարիայ շնորհալի սարկաւագն և զԿարապետ և զԱրմանի-Հաթուն, որք տարաժամ մահուամբ փոխեցան առ Քրիստոս և մեզ թողին սուգ անմխիթարելի, և զուսուցիչն մեր և զհաւրեղբայրն՝ զԶաքարիայ փի-
282 բ լիսոփայն, և զամենայն ազգականքն մեր՝ զկենդանիք || և զննջեցեալք....

Ես՝ Մկրտիչ մեղաւոր ծառայս աստուծոյ, յոյս առ Քրիստոս աստուած եդի հաստատուն հաւատով և եռափափագ սիրով, եռանդնաշարժ սրտիւ ետու ծրագրել զկենսաբեր սուրբ աւետարանս և ըստ կարի զարդարել յարծաթ և յոսկի ի հալալ արդեանց և ի խոնջաքիրտն երկանց աշխատանաց, Եւ ետու զսա ի դուռն գերահրաշ և երկնանման կաթուղիկէիս՝ սուրբ խաչիս Ախթամարայ, յիշատակ աննջնջելի և կտակ անդառնալի ինձ՝ Մկրտչիս, և ծնօղաց և եղբարց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց և երախտաւորաց։ Դարձեալ աղաչեմ յիշել և զԴանիէլ անարժան գրիչս, և զերախտաւորքն մեր, նաև զսպասաւորքս սուրբ տաճարիս՝ զմեծ փիլիսոփայքն զԹումայ,
283 ա և զՍարգիս, և զԽաչիկ, և զՈհաննէս, և զԱւե || տիս, և զՀէրապետ, զՅովաննէս փակակալ, և զԲարսեղ, և զՅովանէս, և զՅուսէփ, և զաշակերտքն մեր՝ զՈհանէս և զՀէր[ապե՛տ], որ հանապազ աղօթեն բազկատարած մաղթանօք զփրկութիւն ամենայն աշխարհի, Ցաղագս այսմ յուսոյ նուիրեաց Մկրտիչն զաստուածունակ կտակս կենաց ի դուռն մօրս լուսոյ, եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Խաչիս յափշտակելով, կամ գողանալով, կամ գրաւելով։ Դատի ի Քրիս-

*տոսէ, թէ յանդգնի և արասցէ անիրաւութիւն, և զմասն զՅուդային առցէ և զայլ խաչահանուացն, ամէն։*

*Եւ ինքն Քրիստոս աստուած... ողորմեսցի ստացօղին, գրօղին, և աշխատողին, կարդացողին, և լսողին, և խնամով պահօղին, և ինքն եղիցի աւրհնեալ, գովեալ և բարեբանեալ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Զ3ովանէս *միջնորդ սուրբ աւետարանիս յիշեցէք...։*

Բ

*Ծաղկող՝* Թումայ Մինասեանց

210 բ *Զմեղաւք տառապեալ գերիս* զՄինասեանց Թումայս՝ *զեղկելի*
*ոգիս, զանհանճար և զանյարմար ծաղկող աստուածախաւս կտակիս*
*աղաչեմ յիշել ի տէր սրտի մտաւք և լի բերանով աստուած-ողորմի*
*ասել ինձ և ծնօղացն իմոց, զի և դուք գտջիք ողորմութիւն ի Քրիս-*
*տոսէ յաւրհնութեանն պահու, ամէն։*

*Բայց անարհեստ ծաղկիս և անգուն գեղիս աղաչեմ չլինել մեղադիր, զի կար իմ և իմաստ այս չափ էր։*

590

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ, ՄԵՍՐՈՊԱՑ ՎԱՅՈՑՁՈՐԵՑԻՈՑ

***Երևան 1665***

Գրիչ

*վայր՝* Տայշող գիւղ

*...Արդ, գծագրեցաւ պատմութիւնս երիցս երանեալ սուրբ և*
104 ա *երջանիկ հայրապետին մեծին* Ներսեսի || *և թագաւորացն Հայոց ի թվ.*
*ՊՂ. (1441), յամսեանն մեհեկի, ի գեաւղս, որ կոչի* Տայշող, *ընդ հո-*
*վանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Ստեփաննոս Նախավկայի։ Արդ,*
*յերես անգեալ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ հայրք և եղբայրք, որք հան-*
*դիպիք սուրբ երջանիկ հայրապետի պատմութեանս, յիշեսջիք յա-*
*ղաւթս ձեր զստացողք սորայ* զԿարապետ *քահանայն, և զծնօղսն իւր՝*
զՄկրտիչ *քահանայն և* զՆսէֆ-Խաթուն, *և զկողակիցն իւր* զԲէկի-Խա-
թուն, *և զորդիքն* զՄկրտիչ *սարկաւագն և* զ3ովանէսն *յիշեցէք և աս-*
*տուած-ողորմի ասացէք, ամէն։*

*Այլ ես՝ գծագրող սորա, յերես անգեալ աղաչեմ զձեզ. մանկունք*
*սուրբ եկեղեցո, անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց գրոյս,*
104 բ *քան[զի] փոխեցաք յերկրէ երկիր՝ ոչ տո || ւն ունէաք և ոչ դադար,*
*այլ կարողութեամբն աստուծոյ գրեցի զսա։ Եւ որք ընթեռնուք զսա*
*լի բերանով և ուղիղ սրտով աստուած-ողորմի ասացէք ստացողի*
*գրոցս* Կարապետ *քահանային, և* Նսէֆ-Խաթունին, *և որդոյն* Գրիգոր
*քահանային, և Նորին որդոյն* Մկրտիչ *սարկաւագին, որ ստացաւ*

*զսուրբ գիրքս յիշատակ հոգոյ իւրոյ և ծնօղաց իւրոց և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոցն, աստուածողորմի ասացէք....։*

### Բ

189բ *Քրիստոս աստուած, քո սուրբ նահապետացն բարեխաւսութեամբն ողորմեա ստացողի գրոցս* Վարդանէ *գրակապին, և ծնողաց նորին՝ հաւրն* Աւետիսին, *և մաւրն* Տալիթային, *և եղբարցն* Քանանանապետին, *և* Յոհանիսին, Տուրուքին, *և* Ղազարին, *և քուրոչն* Քարամ-խաթունին, *և հաւրեղբաւրն* Հայրապետին, *և* Գուհար-խաթունին, *և ամենայն արեան մերձաւորացն, զի բազում աշխատութեամբ և փափաքմամբ սիրով ետ գրել զպատմութեններս զայս, որք կարդայք և լուսաւորիք՝ լի բերանով աստուած-ողոր[մ]ի ասացէք ստացողի գրոցս և ծնողաց նորին, և աստուած ձեզ ողորմ[ի, ամէն]։*

## 591

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Երնջակ», էջ 241—242*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Սիւնի՞ք

*Փառք ... որոյ շնորհաւք և ողորմութեամբ յարմարեաց զմատունս մեղուցեալ գծագրիս* Յովանէս *սուտանուն քահանայի, որ անուամբ յորջորջիմ և գործովք և ոչ իմիք, և հարազատ որդւոյս իմոյ* Յակոբ *դպրի հասանել յաւարտ այսմ հոգենորոգ և աստուածայարմար տառիս, որ ասի Ցայսմաւուր....։*

*Արդ, զայսպիսի հոգինորոգ և զանուշահոտ բուրաստանս տեսեալ սրբասնեալ և հոգիընկալ կրաւնաւորս տէր* Սարգիս *ճգնաւորս ի գաւառէն* Վայոյ—Ձորոյ, *ի սուրբ ուխտէն* Հերմոնի *վանաց, և ցանկացաւ այսմ երանաւէտ մեծութեանս և փարթամութեանս...։*

## 592

### ՃԱՇՈՑ

*Վենետիկ 813, Ալիշան, Հայկարան*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Խլաթ

Կարապետ *կրօնաւոր ետ գրել զսա յիշատակ ծնաւղացն* Յակոբին *և* Գոնարին, *և եղբաւրն* Ստեփանոսին, Կարապետին *և* Պաւղոսին, *և եղբաւրորդւոյն* Ցառուխշին ... *և գրչի* Յովանէս *քահանայի և իմ ծնաւղաց* Կարապետին *և* Թամամէլիքին, *և եղբարց* Աստուածատուր *քահանային,* Խաչատրուն, *և* Վարդանին...: *Ի թվ. ՊՂ. (1441), ի* Խլաթ *քաղաքի, ընդ հովանեաւ սրբոյն ԺԱ. (11) խորանին, սուրբ Գէորգայ, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Վարգանայ։*

593

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Հիշատակում է Գոսուբյանը, Մ.Տ.Մ.*

*Գրիչ՝* Եղիա
*վայր՝* Բերկրի

*Ի թուին Հայոց ՊՂ. (1441), յընտիր աւրինակաց սրբոց հարցն գրեալ ի լուսազարդ և գեղեցկայեղց անապատիս տէր Յուսկան որդւոյ, ի գաւառիս* Տուրքերանեաց, *որ այժմ* Բերկրի *կոչի... գրեցաւ ձեռամբ...* Եղիա *սուտանուն կրաւնաւորի, ի խնդրոյ բարեբարոյ տանուտրոջն խաւջայ* խալիֆին։

594

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փէրդ. Նոտ. 124, Մոկս, ի Թաղն Աբրահամենց*

*Գրիչ՝* Մարգարէ
*վայր՝* Մոկաց երկիր, ի գեղս Աբրահամանց

*... Եւ ետ գրել զսա* [Մկրտիչ *եպիսկոպոսն*] *յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն՝ հօրն* Կիրակոսին, *և մօրն* Հոնդ-Մէլեքին, *և հոգևոր մօրն* Մարթայ *մահդասոյն, ամէն, և ինձ՝ անյիշելոյս* Մարգարէ *գրչի,... և ծնողաց իմոց* Յոհաննէսին *և* Ոսկոյն, *և եղբարց իմոց* Թումայ *քահանային և* Յոհաննէսին:

*Արդ, աւարտեցաւ սուրբ աւետարանս ի յարքունական երկիրս* Մոկաց, *ի գեղս, որ կոչի* Աբրահամանց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի թուաբերութեանս Հայոց ՊՂ. (1441)։ Որք հանդիպիք սուրբ աւետարանիս զպարգևքն տուք՝ զաստուած-ողորմին՝ ստացողին* Մկըրտիչ *եպիսկոպոսին և ամենայն քրիստոնէից, ամէն։*

595

## Տ Օ Ն Ա Ց Ո Յ Ց

*Երևան 7203*

*Գրիչ՝* Աւգսէնդ
*վայր՝* Կաֆայ

114ա *... Արդ, գրեցաւ Տաւնացոյցս բոլոր տարոյն ի թվ. Հայոց ՊՂ. (1441) ամի, ձեռամբ անարհեստ և փցուն գրչի* Աւգսէնդ *սուտանուն աբեղայի, ի վայելումն սրբասնեալ* Եսայի *կուսակրաւն աբեղայի, ի մայրաքաղաքս ի* Կաֆայս, *առ ոտս սբբւոյն Անդոնի ճգնաւորին։*

*Արդ, որք հանդիպիք սմա ուսանելով և կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալն* զԵսայի *կրաւ-*
114բ *նաւոր քահանայն, որ փափագեցաւ այսմ և ետ գրել զսա* || *ի յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ պա-*

րոն Աստուածատրին, և մաւրն խաթուն Ազիզ-Մելիքին, և եղբարցն իւրոյ պարոն Թուման-Պէկին և պարոն էտիլ—Պէկին, և մայրենի հաւուն իւրոյ՝ պարոն Ամիրին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Ընդ նոսին յիշեսջիք և զիս և զբազմամեղ աբեղայս զՍւզսէնդս՝ զանարհեստ գրիչս և զոսկաւղս....։*

596

ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 2563

Հետ. ստացող՝ Մարտիրոս արքեպիսկոպոս.
Երուսաղէմայ

Ձվերջին ստացաւղ սուրբ աւետարանիս այս՝ զտէր Մարտիրոս Երուսաղէմա արքեպիսկոպոս յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, որ գնեցի յիմ հալալ արդեամբն զսուրբ աւետարանս և արծաթեցի զինքն և դրի ինձ յիշատակ և իմ ծնաւղացն ի սուրբ Յակոբ ողջ։ Եւ ով որ հանէ զինքն ի սուրբ Յակոբայ, կամ ծախէ, կամ գրաւէ, նա աննու զՅուդայի և զխաչահանուացն զմասն և բաժին։

Կազմեցաւ սուրբ աւետարանս արծաթով ի թվ. Հայոց ՊՂ. (1441), ի փառս աստուծոյ։

597

ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ

Վենետիկ 974, Մ.Տ.Մ.

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Երուսաղէմ

Գրիչ Գրիգոր՝ որդի Կլմէլիքի և Գոճարի, յԵրուսաղէմ, ընդ հովանեաւ Գաբրիէլի և Միքայէլի, ստացող Գրիգոր կրօնաւոր՝ հայր վանացն, որդի Յովանիսի և Սիմայ-խաթունի:**

---

* Ձեռագրի 2ա էջում պահպանվել է նաև հետագա ստացողներից՝ Վարդան աբեղայի անթվական հիշատակարանը, որն ըստ հնագրական տվյալների գրված պետք է լինի կամ ԺԵ. դարի վերջերին, կամ ԺԶ. դարում։ Հիշատակարանի կարևոր մասը հետևյալն է. «Վերջին ստացող սուրբ տաւնացուցիս զՎարդան աբեղայս գնեցի զսայ ի հալալ ընչից իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և տվի ի յաշակերան իմ Ազարիա աբեղին, զոր տէր աստուած վայելել տացէ մինչև ի խորին ծերութեան, ամէն»։

** Մ. Տէր-Մովսիսյանի ցուցակում գանում ենք միայն հիշատակարանի բովանդակության սեղմ ու հապճեպ կատարված վերապատմությունը։

## 598

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նիկոսիա, Մ.Տ.Մ.

Գրիչ՝ Գրիգոր Արճկեցի
վայր՝ Երուսաղէմ

Գրեցաւ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ձեռամբ Գրիգորի Արճկեցւոյ, ի կաթուղիկոսութեան Կիլիկեցւոց տեառն Գրիգորի և բռնակալութեան Եգիպտացւոց Ջախմախին։

## 599

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

Երևան 4227

Գրիչ՝ Դաւիթ

ա

316 բ ... Գրեցաւ գիրքս այս ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչի
Դաւթի, Թվ. ՊՂ. (1441), ի փառս Քրիստոսի մերոյ։ Արդ աղաչեմ
317 ա զհանդիպողսդ յիշել || ի բարի մասին զանարժան ծրողս զԴաւիթ, հան-
դերձ ծնօղիւք և ամենայն արեան մերձաւորաւք, և Թողութիւն մեղաց
հայցել ի տեառնէ աստուծոյ մերոյ, և Քրիստոս, որ առատն է ի
տուրս բարեաց, մեզ և ձեզ, առհասարակ, ողորմեսցի, ամէն։

բ

Ստացող՝ Եղիա

Զստացող գրոցս զԵղիա կուսակրաւն աբեղայս և զեղբայրն իմ զՂազար... յիշեսցիք...։

## 600

### ԱՒԵՏԱՐԱՆ

Բրիտ. Թնգ. Add. 19, 727, կճ 2, էջ 3

Հետ. ստացող՝ Խասսան

146 Յիշեցէք ի Քրիստոս զԽասսան և զկողակիցն իւր զՄեծ—Խաթուն, և զդուստրն իւր զՄարիամն, և զՄլուքն, և զՂամպարն, և զքորն իւր զՋայմելիքն, զհայրն իւր զԱպաէն, զմայրն իւր զԳունաշն...։ Ստացաւ զաւետարանս ի Թվականիս ՊՂ. (1441)։

## 601

## *ԳԱՆՁԱՐԱՆ ԵՒ ՄԱՇՏՈՑ*

***Երևան 6452***

*Գրիչ՝* Յովանէս

46 բ … *Գրեցաւ պակասորդ Մաշտոցիս ձեռամբ անարհեստ գրչի* Յովանիսի, *ի Թվին Հայոց ՊՂ. (1441)։ Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սորին* զՍիմէոն *կրաւնաւորն, և զհայր նորին* զԱստուածատուր, *զմայրն* | ' |

## 602

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

***Թեհրան 2, ՀԱ, 1935, սյուն. 313***

339 ա *Քրիստոս աստուած, քո սուրբ չար[չարանաց բարե] խաւսութեամբ ողորմեա* | | | Յակոբ | | | *վերատին նորոգել զսա ե [զար]դարեա և գրեա զսա [ի դպ]րութիւն կենաց։*

*Ի թվ. ՊՂ. (1441*°*)։**

---

* *Այս թերթի երկրորդ սյունակը կտրված է եզրը, ուստի տողերը պահպանվել են իրենց առաջին մասով։ Պարզ չէ, թե ՊՂ. թվականն ունեցել է արդյոք միավոր թվանշան, թե ոչ։*



**ՊՂԱ** **1442**

## 603

## *Տ Ա Ր Ն Ա Կ Ա Ն*

***Երևան 996***

*Գրիչ՝* Ոհաննէ Թմոքուեցի
*վայր՝* Երկիրս Արարատեան, ի գեղս Սերկևիլի

ա

*Արդ, ի թուաբերութեանս Հայկազեան տումարի ՊՂԱ. (1442), և*
*կենարար<ար>ին փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՆԽԴ. (1444),*
.363 բ *և յելանելոյն Ադամայ ի դը || րախտէն ՑՈԽԲ. (6642), կատարեցաւ տե-*
*սիլ Սահակա հայրապետին՝ առն աստուծոյ, որ տեսաւ սեղան չորեք-*
*կուսի ամբանման և խաչ լուսեղէն ի վերայ կանգնեալ, և սկ[ուտ]եղ*
*արծաթի ի վերայ սեղանոյն և մագաղաթ թղաչափ՝ի վերայ է. (?)*
*տողն ոսկի, յառաջքն գիր և մէջն եղծեալ և ջնջեալ, և տող մի ոս-*
*կի և կէս կարմիր՝ ի վերջքն գրեալ է. (?) ոսկի տողն Լուսաւորիչն*
*է, մինչև ի Սահակ՝ առն աստուծոյ, և մէջն, որ եղծեալ էր և ջնջեալ*
*և աթոռն ծովագոյն սառնանման սև կտաւով ծածկեալ՝ի Սահակա*
*մինչև ի մեզ կաթողիկոսք և եպիսկոպոսք, որ նստան եղծեալք և ջըն-*
*ջեալք ի բարութենէն կենաց, զի արծաթով նստան և անիծիւք և նզովիւք*
*զաշխարհս լցին։ Այս էր սև կտաւն, որ տարածեալ էր ի վերայ ազգիս։*

*Այժմ բարձաւ անէծքն սուրբ Լուսաւորչի աղաւթիւքն, որ էր*
*թուխ կտաւն եղծեալ և ջնջեալ, նորոգեցաւ աթոռ Լուսաւորչին*
*վերստին, հինն էանց և եղև ամենայն ինչ նոր, հինն անէծքն էր և*
*նորս՝ աւրհնութիւն ի ձեռն սուրբ հարանց, որ ժողովեցան յարևե-*
*լից և յարևմտից, ի հարաւոյ և ի հիւսիսոյ ի Վարդգէս՝* ի Նոր քա-
ղաքս Վաղարշապատ՝ *ի սուրբ* Էջմիածինս, *որ է մայր ամենայն եկե-*
*ղեցեաց և ծնաւղ և լուսատու Հայոց ազգիս։ Որ ի բազում ժամանա-*
*կաց անտես արարեալ էին զնա և ինքեանք ի յաստուծոյ անտեսա-*
*ցեալք էին, զի խնամք ողորմութեանն աստուծոյ [վերա]ցեալ էր ի*
*յազգէս, որպէս ասաց աստուած՝ Մի մնասցէ հոգի իմ ի դոսա, վասն*
*թողլոյ դոցա զտուն իմ։ Իսկ այժմ շարժեալ ի գութ ողորմութեան*
*արարիչն աստուած և ողորմեցաւ տառապեալ ազգիս Հայոց, և ժողո-*
*վեաց բազում իմաստունս և առաքինիս՝ բանիբուն վարդապետք, և*
-364 ա *ուղղափառ եպիսկոպոսք, և խարազ || նազգեստ կրաւնաւորք, և ողջա-*
*խոհ քահանայք, և սրբասէր ազատք և ժողովուրդք, որ ընդրեցին*
*տեսլեամբ և կամաւք ամենասուրբ երրորդութեանն՝ զհեզն, զխո-*
*նարհն, զիմաստասէրն, որ ունէր զտեսականն և զգործնական առաքի-*

նութիւնն, ըստ Պղատոնի իմաստասէր կոչեմ ոչ զոգնագէտս և զայն, որ կարող գոյն ըտզում ինչ ի բերան առնուլ, այլ զայն, որ անբիծ և անաղտ վարս ստացեալ ունին, որպէս հայր[ապետ]ս մեր՝ հոգևոր տէր Կ[ի]ւրակոս կաթողիկոսս, որ յիւր ժամանակն ոչ միս է կերել, և ոչ գին[ի] խմել, և ոչ սուտ ասել, և ոչ երդումն կերել, ոչ նզովք և անէծք ի բերանն է ելել։ ԽԷ. (47) տարի է, որ յանապատի է և սուրբ կենդանաթաղ Խոր-Վիրապին սպաս[աւ]որել։

Զսա ընդրեաց հոգին սուրբ գլուխ, առաջնորդ, հովիւ, վերատեսուչ և պատրիարգ ազգիս հայկազնոյ, սա է տող ոսկին, որ ի վերջք մագաղաթին գըրեալ էր։ Աստանաւր կատարեցաւ մարգարէութիւնառն աստուծոյ Սահակայ։

Եւ ի սոյն ժամանակի եգև կոտորումն անմեղ քրիստոնէիցն Սամշուիլդոյ, որ նահատակեցան վասն Քրիստոսի և են մարտիրոսք, վասն զի շարժեցան ի սատանայէ ազգն Սկիւթացւոց Ջահանշահ միրզէն, և առ<առ> ընդ ինքեան զբազմութիւն լեգէոն զաւրացն, և նստաւ ի վերա բերդին Դ. (4) ամիս, և ի նեղութիւն էարկ զնոսա, զի բազումք մեռան ի վշտաց։ Եւ անտւրէնքն երդուեցան յաստուած կենդանի, թէ առնել չենք ձեզ վնաս։ Եւ նոքա վստահացեալք ի սուտ երդումն նոցա՝ բացին զդուռն բերդին, և անաւրէնքն դիմեցին ի ներքս և սուր ի վերայ եդեալ կոտորեցին անխնայաբար՝ աւելի քան Վ. (3000)։ Եւ զողրումն և զաղիողորմ և զկսկիծ դառնութեան ոչ կարեմ ընդ գրով արկանել, զի զոմանս սրով խո[ղ]խողեցին, զոմանս*
564 բ քա ‖ րկոծեցին, զոմանս բրաւք ջարդեցին, զոմանց զգլուխն հատին և Գ. (3) մնիրա շինեցին։ Անդ էր տեսանել զահագին լալումն և զկոծն ի վերայ սիրելեացն. զի լայր մայր զորդին, և քոյր զեղբայրն, և հարսն զփեսայն, և ոչ ուստէք էր մխիթարութիւն նոցա, ոչ յաստուծոյ և ոչ ի մարդկանէ։

Եւ էր թիւ գերելոցն աւելի քան Թ. (9000), որ բաժանեցին ի վերայ իւրեանց։ Անդ էր տեսանել զաղէտ ծնողաց և զաւակաց, զի բաժանէին զմայր ի յորդոյ և զորդի ի մաւրէ, և զեղբայր յեղբաւրէ, և զհարսն ի փեսայէ. և զփեսայ ի հարսնէ, և զմատաղ տղայքն յափշտակէին անողորմաբար ի մաւր գրկացն և արկանէին ի գետ, և մարքն աղէխարշեալք լալով գնացին ի գերութիւն։ Զոմանս ի նոցանէ յարևելս տարան՝ ի Խորասան, զոմանս յարևմուտս՝ ի Հոռմաստան, զոմանս ի հարաւ՝ ի յԱրաբստան, զոմանս հիւսիս՝ ի Լակըստան, որպէս զհին Իսրաէղ ի Դ. (4) կողմ աշխարհիս ցրուեցին։ Բաժանեցան հայր ի յորդոյ, և դուստր ի մաւրէ, և զսիրելի ի սիրելեաց, և բարեկամք ի բարեկամաց, և գնացին անդարձ յերկիր Տաճկաց։ Եւ լային եկեղեցիք Հայաստանեայց ըստ Երեմիայի Եղկեսացւոյ, որ ասէր՝ Գնացէք, գնացէք, և ես մնացի աւերակ, ձեզ ասեմ, ձեզ ասեմ անցաւորք ճանապարհի, տեսէք զաղէտս իմ կսկծանաց և ողբացէք զիս, զի ամայի և անապատ մնացի յո[րդւ]ոց իմոց։

Բայց չէ պարտ յուսահատիլ ի յաստուծոյ, այլ հաւատով խընդ-

* Ձեռագրում՝ «զորանս»։